


**Հարգելի՛ ընթերցող,**

Ձեզ եմ ներկայացնում **Ա. Գ. Աբրահամյանի «Հայ գրի և գրչության պատմություն»** աշխատության (Երևան, 1959) էլեկտրոնային տարբերակը, որը պատրաստել եմ մեծ սիրով՝ հույս ունենալով, որ կկարողանամ օգտակար լինել այս գրքի կարիքն ունեցողին:

**Սոնա Ալավերդյան**

hominemhominemyan@gmail.com

Ա. Գ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ



# ՀԱՅ ԳՐԻ ԵՎ ԳՐՉՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ



ՀԱՅՊԵՏՀՐԱՏ
ԵՐԵՎԱՆ 1959

АБРАМЯН АШОТ ГАРЕГИНОВИЧ

**История армянского письма**
**и письменности**

**(на армянском языке)**

**Армянское государственное издательство**

**(Айпетрат),**
**Ереван, 1959**

Նվիրում եմ
հայ գրի և գրչության
բազմավաստակ ստեղծողի՝
ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ
ծննդյան 1600-ամյակին:

ՀԵՂԻՆԱԿ

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Հին մատենագրություն ունեցող բոլոր ժողովուրդներն ունեն իրենց գրի պատմությունը: Եգիպտական, ասորական, հունական, լատինական, արաբական, չինական, սլավոնական և այլ ժողովուրդների գրերի պատմության մասին կան հարյուրավոր ուսումնասիրություններ: Հայ ժողովուրդը, որը գտնվում է հին և զարգացած մատենագրություն ունեցող ժողովուրդների շարքում, հասկանալի է, չի կարող թերանալ այս ասպարեզում:

Գրականության և կուլտուրայի աննախընթաց վերելքը Սովետական Հայաստանում հրամայական պահանջ են դրել աղբյուրագիտության առջև՝ հայագիտական օժանդակ որոշ առարկաների, այդ թվում նաև հայ հնագրության (պալեոգրաֆիայի) ստեղծման համար: Պատմությամբ, գրականությամբ և գիտությունների պատմությամբ զբաղվող գիտական աշխատողները, ուսանողները, պատմության և գրականության դասատուները, հասկանալի է, առանց հնագրության համապատասխան ուղեցույցների, չեն կարող բավարար չափով օգտվել սկզբնաղբյուրներից: Օրավուր աճող ու բազմապատկվող մտավորականության առջև այս պահանջները բավարարելու նպատակով է, որ մենք պատրաստել և հրատարակության ենք հանձնել «Հայ գրի և գրչության պատմություն» ներկա աշխատությունը:

Հնագրությունը համարվում է պատմության, գրականության և գիտությունների պատմության օժանդակ առարկաներից մեկը: Հնագրության դերն է՝ օգնել ուսումնասիրողներին գրավոր սկզբնաղբյուրները ճիշտ վերծանելու գործում: Նա ուսումնասիրողների ձեռքում յուրատեսակ բրիչ է՝ փորփրելու սկզբնաղբյուրները՝ նրանցից արժեքավորները լույս աշխարհ հանելու և գիտությանը հարազատորեն ներկայացնելու համար:

Հնագրության առարկան բաղկացած է մի քանի մանր դասընթացներից։ Հնագրության բաղկացուցիչ մասերն են կազմում դրամագիտությունը (նումիզմատիկա), որն ուսումնասիրում է դրամների վրա եղած գրությունները, վիմագրությունը (էպիգրաֆիկա), որն ուսումնասիրում է վիմագիր արձանագրությունները, գրչագրությունը (մանուսկրիպտիկա), որն ուսումնասիրում է ձեռագիր գրությունները, վավերագրությունը (դիպլոմատիկա), որն ուսումնասիրում է արխիվային պաշտոնական գրագրությունը, կնքագիտությունը (սֆրագիստիկա), որն ուսումնասիրում է կնիքների վրա եղած գրությունները, և այլն։

Հայկական հնագրության ուսումնասիրության ամենակարևոր սկզբնաղբյուրները հանդիսանում են գրչագիր գրությունները (ձեռագրերը)։ Ձեռագիր են կոչվում հնում և միջին դարերում ձեռքով գրված ոչ թե ամեն մի թերթ կամ պատառիկ, այլ հարյուրավոր էջերից բաղկացած ստվարածավալ ամբողջական գրքերը, որոնք, մեծ մասամբ, լինում են տախտակյա կաշեպատ կազմերով։

Մեզ հասած հայկական ձեռագրերի թիվն աշխարհում հասնում է մոտ 25.000-ի։ Նշված թվի մեջ չեն մտնում ձեռագիր պատառիկները և պահպանակները, որոնք ամբողջական բնագրեր չեն, այլ կորած կամ ոչնչացած ձեռագրերի անդամահատված ներկայացուցիչները։ Այդ թվի մեջ չեն մտնում նաև այն ձեռագրերը, որոնք գրված են 18-րդ դարից հետո։

Դժբախտաբար, այժմ պահպանված ձեռագրերը մեր ունեցած երբեմնի հարուստ գրադարանների խղճուկ բեկորներն են միայն։ Անցյալի գրադարանների հազարավոր ու հազարավոր հարուստ ժողովածուներ ժամանակի ընթացքում կողոպտվել են Հայաստան խուժած օտարերկրյա ավարառուների կողմից։ Հայտնի են շատ դեպքեր, երբ նվաճողները նպատակադրված ձևով ոչնչացրել են հազարավոր ձեռագրեր։ Ի դեպ, նրանք այդպես են վարվել ձեռագրերի հետ ո՛չ միայն Հայաստանում, այլև իրենց գրաված բոլոր երկրներում։ Հայտնի փաստ է, որ 640 թվականին Խալիֆաթի զորքերը, Ալեքսանդրիան շրջապատած ժամանակ, երբ դիմել են Ամր խալիֆին և հարցրել, թե ինչպես վարվել ավար վերցրած հունարեն ձեռագրերի հետ, նա պատասխանել է. «Եթե հունաց գրքերը մեր ղուրանին համաձայն են, ավելորդ են, և պետք չէ պահել, իսկ թե մեր դեմ են խոսում, ուրեմն վնասակար են, պետք է ոչնչացնել»[1]։ Այդ հրամանից հետո հազարավոր ձեռա-

1 «Բազմավէպ», 1851, էջ 173։



գրեր բաժանել են բաղնիքներին, որպես վառելանյութ օգտագործելու համար։

Վայրենի այս մոլայնությամբ Հայաստանի նվաճողները հաճախ են փորձել ոչնչացնել ու ջնջել հայ ժողովրդի ստեղծած այն բոլոր արժեքները, որոնք խորթ են եղել իրենց ըմբռնումներին։ XIII դարի պատմիչ Ստեփանոս Օրբելյանը վկայում է, որ սելջուկները 1170 թվականին Տաթևի վանքը գրավելիս, նրա գրադարանում ոչնչացրել են ավելի քան 10000 ձեռագիր[1]։

Մեծ թվով ձեռագրեր փչացել են նաև անշնորհք պահպանման հետևանքով։ Ականատես մի անձնավորություն պատմում է, որ 1778—1799 թվականների միջև ընկած ժամանակամիջոցում Հաղբատի ս. Նշան վանքում Պետրոս անունով մի կրոնավոր, վանքը «մաքրելու» նպատակով, հավաքել է այնտեղի գրադարաններում եղած քայքայված ձեռագրերը, դարսել զանգակատան առջև ու, կազմելով 10—12 ոտնաչափ բարձրությամբ մի շեղջ, այրել է «իբրև անպիտան» գրականություն[2]։ Զարմանալի չէ, որ Հաղբատի վանքի ձեռագրական հարուստ ժողովածուից, որը պահվելիս է եղել յոթ տարբեր սրահներում, մեզ հասել են միայն աննշան բեկորներ։

Հնում ավելի անփույթ են վարվել առանձնապես վավերագրերի հետ։ Ըստ Թաղիադյանի վկայության, 1824 թվականին, երբ Կաթողիկոսական արխիվը ցանկացել են Էջմիածնից Հաղբատ տեղափոխել, նրա միջից ընտրել են միայն դրամական արժեք ունեցող վավերագրերը, իսկ մյուսներն այրել են որպես անպետք թղթեր[3]։

Մեզ հասած ձեռագրական անգնահատելի ժառանգությունը, դժբախտաբար, ցրված է աշխարհով մեկ։ Կարելի է ասել, որ երկրագնդի վրա չկա մի անկյուն, շատ թե քիչ խոշոր մի գրադարան, ուր կարելի չլինի գտնել հայկական ձեռագրեր։ Միջին դարերում, մեր երկրում ստեղծված ծանր պայմանների հետևանքով, հայ ժողովրդի որոշ հատվածները թողել են իրենց հայրենի հողը և «զօրէնս աստեղաց մոլորական կոչեցելոց», ինչպես պատկերավոր բնորոշել է հայ ողբերգակ պատմիչ Արիստակես Լաստիվերտցին, տարագրության ցուպը վերցրած, ցրվել են աշխարհով մեկ. ցրված

1 Ստեփաննոս Օրբելեան, Պատմութիւն նահանգին Սիսական, Տփղիս, 1910, էջ 336։

2 «Բազմավէպ», 1956, էջ 109—110։

3 Ճանապարհորդութիւն Մեսրովբայ Դ. Թաղիադեանց… ի Հայս, հատ. I, Կալկաթա, 1847, էջ 333։

հայության հետ միասին ցրվել են նաև հայկական ձեռագրերն ու կուլտուրական արժեքները։ Արտասահմանյան հայկական գաղթավայրերում հայ ձեռագրերի արտագրման աշխատանքները չեն դադարել, այլ շարունակվել են։ Տարիներ առաջ, հայկական ձեռագրերի հիշատակարանների հիման վրա, երբ մենք ցանկացանք կազմել հայ գրչության օջախների տեղագրությունը, ապա հարկ եղավ գծել ողջ աշխարհի քարտեզը։ Պարզվեց, որ հայերեն շատ ձեռագրեր են գրվել Հնդկաստանում, Չինաստանում, Եգիպտոսում, Լեհաստանում, Կիպրոսում, Ծավա կղզում և հեռավոր այլ վայրերում։

Հայկական ձեռագրերի մի մասը գտնվում է անհատների մոտ, իսկ ավելի մեծ մասը կենտրոնացված է թանգարանների կամ գրադարանների ձեռագրական ժողովածուների մեջ։

Հայ ձեռագրական ամենախոշոր ժողովածուն գտնվում է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետական Մատենադարանում, որն ունի մոտ 10000 ձեռագիր[1]։ Ձեռագրական այս ժողովածուն միայն Էջմիածնի նախկին ժողովածուից չի կազմված, ինչպես սխալմամբ կարծում են որոշ հայագետներ։ Էջմիածնի ձեռագրական ժողովածուից բացի, նրա մեջ մտել են Ներսիսյան դպրոցի, Լազարյան ճեմարանի, Տաթևի, Սևանի և մի քանի մանր այլ ժողովածուներ։ Բացի այդ, առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Արևմտյան Հայաստանից բերվել են բավականին թվով ձեռագրեր, որոնք նույնպես հանձնվել են Մատենադարանին։ Իսկ վերջին տարիներս Մատենադարանի վարչությունը մասնավոր գնումների և նվիրատվությունների ճանապարհով ավելի է հարստացրել Մատենադարանի ձեռագրական ժողովածուն։

Հայկական երկրորդ խոշոր ժողովածուն գտնվում է Վենետիկի Մխիթարյանների մոտ՝ Ս. Ղազար կղզում։ Այստեղ պահվում է ավելի քան 4000 ձեռագիր, որից միայն 318 ձեռագրի նկարագրությունն է լույս տեսել Հ. Բարսեղ Սարգիսյանի կազմած Վենետիկի ձեռագրաց «Մայր ցուցակ»-ում։

Հայկական ձեռագրերի մեծ հավաքածու ունի Երուսաղեմի Ս. Հակոբյանց միաբանությունը (Երուսաղեմի Ազգային Պատրիարքարանը), որի ժողովածուն պարունակում է մոտ 4000 ձեռագիր։ Այս հավաքածուի ձեռագրաց ցուցակը հրատարակվում է այժմ. առաջին հատորը հրատարակել է Արտավազդ եպիսկոպոս Սյուրմեյանը, իսկ մյուս հատորները ձեռնարկել ու հրատարակում է Նորայր եպիսկոպոս Պողարյանը, որը լույս է ընծայել երկրորդ, երրորդ և չորրորդ հատորները։

[1] Ձեռագրական այս ժողովածուի, ինչպես և հետո հիշվող մյուս բոլոր ժողովածուների ձեռագրաց ցուցակների ցանկը բերել ենք. աշխատության հավելվածում։



Կարևոր է Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարանի հավաքածուն, որը բաղկացած է շուրջ 1000 ձեռագրից։ (Այս հավաքածուի 580 ձեռագրի նկարագրությունը ժամանակին կատարել է պրոֆ. Ս. Վ. Տեր-Ավետիսյանը։ Այս ցուցակը, ձեռագիր վիճակում, այժմ պահվում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի արխիվում)։

Ձեռագրական արժեքավոր մի Հավաքածու գտնվում է Վիեննայի Մխիթարյանների մոտ։ Այդ ժողովածուն կազմված է մոտ 1200 ձեռագրից, որից 573-ի նկարագրությունը հրատարակել է Հ. Հակոբոս Տաշյանը՝ իր կազմած Վիեննայի ձեռագրերի արժեքավոր ցուցակում։

Բացի նշված ձեռագրական հավաքածուներից, ձեռագրական փոքրիկ ժողովածուներ կան նաև Լոնդոնի Բրիտանական թանգարանում (ձեռագրերի ցուցակը հրատարակել է Ֆ. Կոնիբերը), Փարիզի Ազգային գրադարանում (ձեռագրերի համառոտ ցուցակը հրատարակել է Ֆրեդերիկ Մակլերը), Վրաստանի Պետական թանգարանում, որն ունի 207 ձեռագիր, Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտի գրադարանում, որն ունի 316 ձեռագիր, Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան հանրային գրադարանում, որն ունի 90 ձեռագիր, Օքսֆորդի Բոդլեյան գրադարանում (այստեղ գտնվող 132 ձեռագրի մանրամասն նկարագրությունը կատարել են Կոնիբերը և Ս. Պարոնյանը, որոնց ցուցակը հրատարակվել է, և Տիրայր եպիսկոպոսը, որի ձեռագիր ցուցակը գտնվում է Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանում), Զմմառի միաբանության գրադարանն ունի մոտ 200 ձեռագիր։ Բացի այդ, հայերեն ձեռագրեր ունեն նաև Անթիլիասի մատենադարանը, Կոստանդնուպոլսի Ազգային Պատրիարքարանի գրադարանը և այլ գրադարաններ։

Վերջին տարիներս հայկական շատ ձեռագրեր, տարբեր ճանապարհներով, կենտրոնանում են Ամերիկայ Միացյալ Նահանգների Նյու-Յորք, Վաշինգտոն և Ֆրեզնո (Կալիֆոռնիա) քաղաքների գրադարաններում և մասնավոր մարդկանց մոտ։ Համաշխարհային առաջին պատերազմի տարիներին Արևմտյան Հայաստանում հայերից խլված ձեռագրերն այժմ Թուրքիայում վաճառքի են հանվում. նրանց մեծ մասը գնվում և տեղափոխվում է Ամերիկա։

Հայ հնագրության ուսումնասիրության մյուս կարևոր աղ-

բյուրը վիմագրությունն է: Վիմագիր արձանագրությունները ցրված են ինչպես պատմական Հայաստանի տերիտորիայում, այնպես էլ սփյուռքի հայ գաղթավայրերում: Վիմագրերը մեզ հանդիպում են եկեղեցիների, վանքերի և այլ հուշարձանների պատերին, ինչպես և տապանաքարերի և խաչարձանների վրա:

Հայկական վիմագրերի քանակը, նույնիսկ մոտավոր ձևով, ճշտված չէ: Հայագետների կողմից տարբեր ժամանակներում հրատարակած վիմագրական ժողովածուները չեն տալիս հայ հնագրության ամբողջական պատկերը: Հրատարակված վիմագրական ժողովածուներից ու աշխատություններից, այնուամենայնիվ, ուշադրության արժանի են՝ Կ. Կոստանյանի «Վիմական տարեգիր» ժողովածուն, պրոֆ. Կ. Ղաֆադարյանի «Հովհաննավանքի վիմագիր արձանագրությունները», Մեսրոպ եպիսկոպոսի Երուսաղեմում հրատարակած Տաթևի վանքի վիմագիր արձանագրությունները, Գ. Կաթողիկոս Հովսեփյանի «Պռոշյանք կամ Խաղբակյանք»-ում հրատարակված Վայոց Ձորի որոշ վիմագրերը, ակադ. Հ. Օրբելու կողմից «Христианский Восток»-ում տեղավորված արձանագրությունները և այլն: Հայկական առանձին վիմագրեր հրատարակվել են «Հանդէս ամսօրեայ»-ում, «Արարատ»-ում, «Էջմիածին» ամսագրում, «Բազմավէպ»-ում, «Սիոն»-ում և հայկական այլ պարբերականներում: Այժմ հայկական վիմագրերի հավաքման և հրատարակության գործով լուրջ զբաղվում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Պատմության ինստիտուտի հնագիտության սեկտորը: Ակադեմիկոս Հ. Օրբելին արդեն հրատարակության է հանձնել Անիի վիմագիր արձանագրությունների մեծարժեք ժողովածուն: Պատմական գիտ. թեկ. Ս. Բարխուդարյանը հրատարակում է Սյունիքի վիմագիր արձանագրությունների առաջին ժողովածուն: Հրատարակության է պատրաստված նաև մեծանուն գիտնական, ակադ. Հ. Աճառյանի «Հայարձան»-ը, որը պարունակում է հայկական արձանագրությունները սկզբից մինչև 1550 թվականները:

Հայկական հնագրության համար հարուստ նյութեր են պարունակում նաև պատմական արժեք ներկայացնող վավերագրերը, որոնք, համեմատաբար, ավելի նոր են: Միջին դարերում հայկական պետականության բացակայությունը և վավերագրերի նկատմամբ գոյություն ունեցող անփույթ վերաբերմունքը հին հայկական վավերագրերի մեծագույն մասի կորստյան պատճառ են դարձել:

Մեզ հասած հին վավերագրերը բնագրեր չեն, այլ պատճեններ: Այս կարգի վավերագրերից կարելի է մատնացույց անել «Գիրք



թղթոց» վավերագրերի ժողովածուն: Հայ պատմիչների աշխատությունների մեջ ևս մեկ-մեկ բերվում են առանձին վավերագրերի պատճեններ: Ինքնագրերով վավերագրեր մեզ հասել են միայն XIV—XV դարերից:

Վավերագրերի մի քանի հարյուր հազար ժողովածու գտնվում է Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանում: Ավելի նոր շրջանի՝ XVIII—XX դարերի միլիոնավոր հայերեն վավերագրեր կենտրոնացված են Երևանի, Թբիլիսիի, Բաքվի, Մոսկվայի, Լենինգրադի և Սովետական Միության այլ քաղաքների արխիվներում: Վավերագրերի փոքրիկ հավաքածուներ կան նաև Վատիկանի, Վենետիկի, Վիեննայի և Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի գրադարաններում և այլն:

Համեմատաբար քիչ են դրամների վրա եղած հայերեն գրությունները, որովհետև հին շրջանում հայ թագավորներն իրենց դրամները դրոշմել են հունարեն տառերով: Հայկական գրություններով դրամներ դրոշմել են միայն Կիլիկյան հայկական թագավորության շրջանում:

Հայկական դրամներին նվիրված ուսումնասիրություններից արժեքավոր են Ատրպետի ուսումնասիրությունները, որոնք հրատարակված են «Ազգագրական հանդէս»-ում, Վիկտոր Լանգլուայի «Numismatique générale de l'Arménie» աշխատությունը, որը լույս է տեսել 1859 թվականին, և Կ. Բասմաջյանի «Հայկական ընդհանուր դրամագիտություն, Հայաստանի վերաբերյալ դրամներ» արժեքավոր աշխատությունը, որը լույս է տեսել Վենետիկում 1936 թվականին, շնորհալի դրամագետ Կարապետյանի մի շարք ուսումնասիրությունները՝ «Հասկ»-ում, «Բազմավէպ»-ում և այլ պարբերականներում:

Անհամեմատ ավելի քիչ են կնիքների վրա եղած հայկական գրությունները: Հայկական կնիքներն ընդհանրապես մեզ քիչ են հասել. կնքված վավերագրերը ավելի նոր շրջանի են. նրանք շատ են առանձնապես XVII—XVIII դարերից:

Գրությունների ահա այս բոլոր տեսակները հնագրության ուսումնասիրության նյութն են հանդիսանում:

Ի՞նչ հիմնական խնդիրներ է դնում իր առջև հայկական հնագրությունը:

Հայկական հնագրության հիմնական խնդիրն է նախ պարզել ուսումնասիրության ենթակա ձեռագրերի, վավերագրերի կամ վիմագիր արձանագրությունների հարազատությունը և նրանց՝ ժամանակը:

Հնագրության մյուս կարևոր խնդիրն է՝ օգնել ուսումնասիրողին՝ բնագրերի վերծանության գործում։ Հայտնի է, որ հին և միջին դարերում գրությունների մեջ գործ են ածվել բազմաթիվ պատվագրություններ, գաղափարագրեր, ծածկագրություններ, հայկական տառանիշերով թվեր ու թվականներ, ուղղագրական և կետադրական տարբեր ձևեր և այլն։ Հնագրության պարտքն է՝ ուղեցույց հանդիսանալ այս բոլոր դժվարությունները հաղթահարելու համար։

Եվ, վերջապես, հնագրության խնդիրն է, համեմատական ուսումնասիրության հիման վրա, վերականգնել ձեռագրերի ընդօրինակման ժամանակ բնագրերում թույլ տրված աղավաղումները Պետք է ասել, որ գրչական աղավաղումները, մանավանդ ոչ կրոնական-կանոնական տեքստերում, բավականին շատ են։ Այդ աղավաղումների մի մասն առաջանում է անզգույշ ընդօրինակության հետևանքով, իսկ մյուսը՝ խմբագրական և սրբագրական միջամտությունների պատճառով։ Ընդօրինակող գրիչն իրավունք է համարել հին տեքստն արտագրել իր ժամանակի ուղղագրությամբ, չհասկացած բառերն ու նախադասությունները երբեմն բաց թողնել կամ ընդօրինակել իր «շտկում»-ներով և այլն։

Հնագրությունն օգնում է նաև պարզելու, թե նախագաղափար ձեռագրի համեմատությամբ ի՞նչ բառեր կրկնված են կամ ի՞նչ բառեր անզգուշությամբ բաց են թողնված։

Հնագրությունն իր գիտական ընդհանրացումներն անում է թվական ունեցող և ճշտորոշված տեքստերի հիման վրա, պարզում է նրանց առանձնահատկություններն ըստ ժամանակաշրջանների և գրչության դպրոցների ու այդ փորձի հիման վրա որոշում անթվագիր ձեռագրերի ժամանակն ու վավերականությունը։

Մի քանի խոսք հայկական հնագրության պատմության մասին։

Հայկական հնագրությանը վերաբերող առանձին հարցեր հայ մատենագրության մեջ առաջ են քաշվել դեռևս հին հայ քերականների մոտ։ Հայկական տառատեսակների և նրանց գրչական առանձնահատկությունների մասին հատվածներ կան Մովսես Քերթողին, Դավիթ Անհաղթին և Մամբրե Վերծանողին վերագրված Դիոնիսիոս Թրակացու Քերականության հայերեն մեկնությունների մեջ։ Հնագրության որոշ հարցեր առաջ են քաշված նաև Ստեփանոս Սյունեցու (VIII դար), Համամ Արևելցու (IX դար), Գրիգոր Մագիստրոսի (XI դար), Վարդան Արևելցու (XIII դար), Հովհաննես



Երզնկացու (XIV դար) և մի քանի այլ հայ հեղինակների քերականությունների մեջ[1]։

Հայ հնագրությանը վերաբերող ընդարձակ հատվածներ է պարունակում XII դարի հայ գրչության ականավոր ներկայացուցիչներից մեկի՝ Արիստակես Գրչի, Կիլիկիայում ընդօրինակած «Վերլուծութիւնք բացերևապես բայից և բառից» վերնագրով աշխատությունը, որը հեղինակը գրել է հայ գրչությամբ զբաղվողների խնդրանքով՝ «ի խնդրոյ բազմաց՝ յարհեստ գրչութեան»։

Արիստակես Գրչի այս աշխատությունը լրացրել և մեկնել է Գևորգ Սկևռացին (XIII դար)՝ Ստեփանոս Գույներեցանց նշանավոր մատենագրի հանձնարարությամբ։ Գևորգ Սկևռացու այս աշխատության վերնագիրն է՝ «Խրատ գրչութեան»։

Արիստակես Գրչի և Գևորգ Սկևռացու աշխատությունները, չնայած հիմնականում հանդիսանում են ուղղագրական ձեռնարկներ, սակայն քանի որ միջին դարերում ուղղագրությունը ևս հնագրության առարկայի մասն էր կազմում, ուստի և տարօրինակ չէ, որ նա վերնագրվել է «Խրատ գրչութեան»։

Արիստակես Գրչի և Գևորգ Սկևռացու հայ գրչության արվեստի մասին գրած այս աշխատությունները XV դարում մեկնել է Գրիգոր Տաթևացին՝ Գլաձորի համալսարանի ականավոր ուսուցչապետը։ Վերջինիս մեկնությունը վերնագրված է՝ «Լուծմունք դժուարիմաց բանից ի գիրս գրչութեան՝ որ յԱրիստակիսի և Գեորգայ Սկևռացւոյ»։ Հայ գրչության արվեստը միջին դարերում համարվել է ուղենշող, կողմնորոշող գիտություն՝ «Կանոն և գաղափար ամենայն արուեստից», ինչպես հաճախ հիշվում է այդ բնագրերը պարունակող ձեռագրերի հիշատակարաններում։ Հայ գրչության արվեստը պարտադիր կարգով դասավանդվել է դպրոցներում։ Մեզ է հասել 1357 թվականին Ղրիմի Սուրխաթ քաղաքում ընդօրինակված մի ձեռագիր, որի գրիչ Ստեփանոսը իր հիշատակարանում գրչության արվեստի մասին հետևյալն է գրել (բերում ենք թարգմանաբար). «Ինչպես անհնար է թռչուններին լուծ քաշել և ակոս բաց անել, կամ եզներին՝ թռչել օդում, այնպես և առանց գրչության արվեստի հետ ծանոթ լինելու, ոչ ոք կարող է հասկանալ գրչության մեծ արվեստի էությունը։ Եվ եթե նման

[1] Հայ քերականների աշխատությունների մեծ մասը հավաքել և հրատարակել է պրոֆ. Ն. Ադոնցը ռուսերեն թարգմանությամբ իր "Дионисий Фракийский и армянские толкователи„ վերնագրով արժեքավոր աշխատության մեջ, որը լույս է տեսել Պետերբուրգում 1915 թվականին։

մեկը հանդգնի, չի կարող գլուխ բերել այն, այլ կփչացնի արվեստը և կաղավաղի գրածը։ Նա նման կլինի անվարժ այն մսագործին, որը մորթում է անասունը, բայց մաշկել չգիտի»[1]։

Հայ հնագրությունը գիտական տեսանկյունով մշակվել է նոր ժամանակներում։ Առաջին հեղինակը, որ մասնագիտորեն ուսումնասիրել է հայ հնագրությունը և կազմել նրա դասընթացը, հանդիսացել է Հ. Տաշյանը։ Նրա աշխատությունը վերնագրված է. «Ակնարկ մը հայ հնագրության վրա»։

Հետաքրքիր է Տաշյանի հայ հնագրության դասընթացը կազմելու շարժառիթը. Շուխարդ անունով ավստրիացի մի գիտնական Եգիպտոսում հայտաբերում է հայատառ հունարեն մի պապիրուս և նրա վերծանության կապակցությամբ դիմում է Հ. Տաշյանին մի ընդարձակ հարցացուցակով՝ հայկական հնագրության տեսակների, նրանց գործածության ժամանակների և հայ հնագրությանը վերաբերող այլ հարցերի մասին պատասխան ստանալու համար։ Հ. Տաշյանը մանրամասն գրում է Շուխարդի հարցումների պատասխանը և հրատարակում այն «Հանդէս ամսօրեայ»-ում, իսկ հետո, 1898 թվականին, արտատպում առանձին գրքով։ Տաշյանն իր այդ արժեքավոր աշխատության մեջ կանգ է առել հայկական գրի տեսակների, նրանց գործածության ժամանակի, հայկական կրկնագրերի, բառատրոհության, կետադրության փոփոխությունների և այլ հարցերի վրա։

Հայկական հնագրության առանձին հարցեր և թեմաներ, ժամանակակից գիտական պահանջների համաձայն, բավականին հաջող ուսումնասիրել է բանասեր Իսահակ Հարությունյանն իր «Հայոց գիրը» աշխատության մեջ, որն արժանացել է Սահակ-Մեսրոպյան մրցանակաբաշխության և հրատարակվել 1892 թվականին։

Հայ գրի պատմության համար մեծարժեք գործ է հանդիսանում Գարեգին վարդ. Հովսեփյանի «Գրչության արվեստը հին հայոց մեջ» աշխատությունը, որը լույս է տեսել նախ 1913 թվականին հայկական գրի 1500-ամյակի կապակցությամբ էջմիածնում հրատարակված «Շողակաթ» անունով ժողովածուում, ապա արտատպվել առանձին գրքով։ Հովսեփյանը նշված աշխատության մեջ հայկական վիմագրերից և ձեռագրերից բերել է 95 լուսանկար-տախտակներ և աշխատել է ցույց տալ հայկական գրի աստիճանական զարգացումը։

Հայկական հնագրության ուսումնասիրության գործում ան-

[1] ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 292ա։



գնահատելի վաստակ ունի նաև մեծանուն գիտնական ակադեմիկոս Հ. Աճառյանը՝ իր «Հայոց գրերը» աշխատությամբ, որը շարադրել է 1905 թվականին, բայց հրատարակել բավականին ուշ՝ 1927 թվականին, «Հանդէս ամսօրեայ»-ում, որից և արտատպվել է առանձին գրքով 1928 թվականին։ Ակադեմիկոս Հ. Աճառյանը, իրեն հատուկ գիտական բարեխղճությամբ, ուսումնասիրել է հայ հնագրության բազմաթիվ հարցեր՝ Հայաստանի նախաբնիկների գրությունները, վանիեյան գրերը, մեսրոպյան գրերը և նրանց զարգացումը, հայկական մատենագրության մեջ գործածված գաղափարագրերը, ծածկագրերը և այլն։

Վերջին տարիներս լույս տեսած աշխատություններից ուշադրության արժանի է պրոֆ. Կ. Ղաֆադարյանի «Հայկական գրի սկզբնական տեսակները» վերնագրով ուսումնասիրությունը, որը լույս է տեսել Երևանում 1939 թվականին։ Այս աշխատության մեջ առանձնապես արժեքավոր է կապգրության մասին եղած բաժինը, որը հեղինակը կազմել է վիմագրության ուշադիր ուսումնասիրության հիման վրա։

Հայ հնագրության հետ որոշ չափով առնչվում է բանասեր Գ. Լևոնյանի «Հայ գիրքը և տպագրության արվեստը» խորագրով աշխատությունը, որը լույս է տեսել Երևանում նախ 1946 թվականին, ապա վերահրատարակվել 1958 թվականին։

Հայ գրչության ատաղձը և նրա նախնական ձևերը պարզաբանելու հարցում արժեքավոր ներդրում է հանդիսանում Հ. Ն. Ակինյանի «Հայերեն այբուբենի գյուտը» վերնագրով ուսումնասիրությունը, որը հրատարակվել է «Հանդէս ամսօրեայ»-ի 1938 թվականի սեպտեմբեր-դեկտեմբեր միացյալ համարներում (էջ 289—318)։

Մենք ևս հրատարակել ենք երկու փոքրիկ աշխատություն, որոնցից առաջինը լույս է տեսել 1940 թվականին «Համառոտ ուրվագիծ հայկական պալեոգրաֆիայի» վերնագրով, իսկ երկրորդը՝ 1949 թվականին «Հայկական պալեոգրաֆիա» վերնագրով։ Նշված աշխատությունները Երևանի պետական համալսարանում մեր կարդացած դասախոսությունների համառոտ սղագրություններն են։ Այդ համառոտ դասընթացները հրատարակվել են ուսանողների անմիջական պահանջները բավարարելու նպատակով և չունեն հայ հնագրության գիտական լուրջ դասընթաց լինելու հավակնությունը։ Վերջին աշխատության որոշ գլուխներ և հատվածներ մենք օգտագործել ենք ներկա աշխատության մեջ։

* * *

*Մագաղաթյա և խունացած թղթի ձեռագրերի գորշ էջերի վրա հաճախ կարելի է կարդալ մեր գրիչների հետևյալ սրտառուչ գրառումները.*

*«Ձեռքս երթայ դառնայ ի հող,*
*Գիրքս մնայ յիշատակող»:*

*Իսկապես, դարեր են անցել այս տողերը գրելու ժամանակից: Գրող ձեռքերը վաղուց են փոշիացել, հող դարձել, բայց գրիչների թողած ձեռագրերն ապրում են և դեռ կապրեն դարեր...*

*Մարդ ակամա մտածում է, որ գրի և գրականության նկատմամբ անցյալում գոյություն ունեցող այս հավատն է գուցե խթանող պատճառներից մեկը հանդիսացել, որ հայ վաստակավոր գրիչներն աշխատել են գիշեր ու ցերեկ, աշխատել խանդաղատանքով և գրել ու մեզ են թողել ձեռագրերի բազմահազար հատորներ: Նրանք համեստ մարդիկ են եղել և իրենց մեղվաջան աշխատանքի համար գալիք սերնդին խնդրել են միայն. «Յորժամ ընթեռնուք զձեռագիրն մեր, յիշեսջիք և զմեզ»:*

*Հայ հնագրության ներկա աշխատությունը, գիտական արժեք ունենալուց բացի, յուրահատուկ հուշարձան է նաև մեր երախտավոր գրիչների և փորագրիչների անմահ հիշատակին, որոնք սրի և հրի փոթորիկների մեջ, նյութական անսահման զրկանքների ծանր պայմաններում, ստեղծել են հոգևոր մշակույթի հոյակապ կոթողներ և թողել մեզ՝ գալիք սերնդին, որպես «յիշատակ անջնջելի»:*

*Հեշտ գործ չէ ուսումնասիրել 15 դարի հնություն ունեցող հարուստ մի մատենագրություն և կազմել նրա գիտական հնագրությունը: Հայաստանում և նրանից դուրս հայ գրչության հարյուրավոր դպրոցներ են եղել, որոնք ունեցել են իրենց գրչական ուրույն կարգն ու սովորությունները: Մեզ համար դժվար էր հանգամանորեն կանգ առնել նրանց բոլորի վրա: Չնայած քիչ ժամանակ չէ, որ մենք զբաղվում ենք հայկական ձեռագրերի ուսումնասիրությամբ, սակայն մեր կատարած աշխատանքը մի կաթիլ է միայն հայ հարուստ մատենագրության ընդարձակ ծովում: Հայ մատենագրության ուսումնասիրությունը սպառելու համար տարիներ են պետք: Մեր կատարած աշխատանքը նմանեցնում ենք լայնատարած դաշտավայրի վրա արորի նոր բացած մի շավղի և այն համոզումն ունենք, որ հայ մատենագրական անդաստանը մշակելու համար սերունդների աշխատանքն է պետք:*

Հայկական ձեռագիր կաշեպատ կազմով:



ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՅԼ ՆՇԱՆԱԳՐԵՐՈՎ ԵՎ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ ԳՐՎԱԾ ԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



ախքան հայկական գրի մասին խոսելը, անհրաժեշտ ենք համարում համառոտակի մի քանի խոսք ասել նրան նախորդող այն գրատեսակների մասին, որոնք գործ են ածվել Հայաստանում և հասել են մեզ։

Ամենահին նշանագրերը, ավելի ճիշտ՝ գծապատկերները, որոնք մեզ են հասել Հայաստանում ապրած մեր նախաբնիկներից, դրանք, այսպես կոչված, «էծապատկերներ»-ն են։ Նրանք «էծապատկեր» են կոչվում այն պատճառով, որ ժայռերի ու քարանձավների պատերին փորագրված են այծերի պատկերների ձևով։ Այս նշանագրերով փորագրություններ շատ կան հատկապես Արագածի փեշերի և Սևանի լճափի քարաժայռերի վրա։

«Էծապատկերներ»-ի գործածությունը, հավանական է, գալիս է տոհմատիրական հասարակության շրջանից, երբ Հայաստանի նախաբնիկների գլխավոր զբաղմունքն որսորդությունն ու անասնապահությունն էր։ Տնային և վայրի կենդանիների հետ գործ ունեցող մարդը, իբրև որսորդական գաղափարի հաղորդում, կամ գուցե որպես գեղարվեստական էմոցիայի (հույզի) արտահայտություն, քարերի վրա փորագրել է այծի պատկերներ։ Հիմք չունենք պնդելու, որ «էծապատկերներ»-ը սովորական հիերոգլիֆների նման

*իմաստավորված գրեր են. ամենից հավանականն այն է, որ նրանք ունեցել են սիմվոլիկ նշանակություն:*

*Ստորև բերում ենք «էծապատկերներ»-ի մի նմուշ՝ վերցնելով պատմական գիտությունների թեկնածու Ս. Բարխուդարյանի «Մորհրդային Հայաստանի նյութական կուլտուրայի հուշարձանները» աշխատությունից[1]:*



Մի նմուշ «էծապատկեր» գրությունից:

*«Էծապատկերներ»-ի այս ընդօրինակությունը, ըստ հրատարակողի տեղեկության, վերցված է Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի գետափին գտնվող ժայռի «էծապատկերներ»-ից:*

*Հայաստանում գործածված հնագույն շրջանի նշանագրերից է «մեհենական» կոչվող գրությունը, որի մի նմուշը հրատարակել են «Հայ ժողովրդի պատմության» դասագրքի հեղինակները[2]: Այս*

*[1] Ս. Բարխուդարյան, Սորհրդային Հայաստանի նյութական կուլտուրայի հուշարձանները, Երևան, 1935, էջ 44:*

*[2] Մենք օգտվել ենք «Հայ ժողովրդի պատմության» դասագրքի 1951 թվականի հրատարակությունից (էջ 71):*



*նշանագրերը «մեհենական» են կոչվում պայմանական ձևով. ենթադրվում է, որ նրանք հայկական մեհյաններում գործածվող գրերն են եղել, ուստի և հրատարակիչները հարմար են համարել այդ անունը տալ, թեպետ չկան այդ մասին որոշակի փաստեր: Նշանագրերի այս տեսակը դեռ մասնագիտական լուրջ ուսումնասիրության առարկա չի դարձել, և նրանց վերծանության ուղղությամբ*

Մեհենական կոչվող գրության նմուշ:

*փորձեր չեն արվել: Մեր կարծիքով, այս նշանագրերը պատկանում են հնագրության մեջ հայտնի պիկտոգրամների կամ պետրոգլիֆների[1] այն խմբին, որոնք հայտաբերվել են Հարավային Եվրոպայի Ալտամիրայում, Գասիեդայում (Շվեդիա) և Հյուսիսային Աֆրիկայի քարայրներում[2]: Այս նշանագրերի գործածության ժամանակը որոշելը դժվար է, սակայն հաստատապես կարելի է ասել, որ նրանք պատկանում են հայ ժողովրդի պատմության հեթանոսական շրջանին:*

*Առաջին իմաստավորված գրությունը Հայաստանում գործ են ածել հեթիթները և ուրարտացիները: Այս երկու ժողովուրդները, ինչպես պարզված է նորագույն ուսումնասիրությունների մեջ, հիմնականում ձուլվել են հայ ժողովրդի էթնիկական կազմի մեջ, և նրանց ստեղծած կուլտուրական ժառանգությունը փոխանցվել է հայ ժողովրդին: Ուստի անկարելի է հայկական գրության մասին խոսել առանց Հայաստանի այս նախաբնիկների գրություններին անդրադառնալու:*

*Գիրը, ըստ Էնգելսի բնորոշման, առաջանում է նախնադարյան-համայնական հասարակության վերջին շրջանում, երբ սկսում է նա քայքայվել և տեղի տալ դասակարգային հասարակությանը:*

*[1] Հնագրության մեջ պիկտոգրամ են կոչվում բացառապես պատկերագրերը, իսկ պետրոգլիֆները պարունակում են նաև երկրաչափական և այլ տեսակի գծագրական ձևեր:*

*[2] Լոուկոտկա, Գրի զարգացումը, Երևան, 1955, էջ 24:*

Հեթիթները, ինչպես հայտնի է, իրենց պետականությունն ստեղծեցին Հայաստանի արևմտյան մասում, Գայլ գետից արևմուտք և արևելք ընկած տարածության վրա, մոտավորապես XX դարում մեր թվագրությունից առաջ, և շարունակեցին իրենց գոյությունը մինչև XIII դարը մեր թվագրությունից առաջ: Հեթիթական պետությունը Հին Արևելքի հզորագույն պետություններից մեկն էր և մրցում էր իր ժամանակի այնպիսի խոշոր պետությունների հետ, ինչպիսիք էին Եգիպտոսը, Բաբելոնը և Ասորեստանը:

Հեթիթներն իրենց գոյության շուրջ 800 տարիների ընթացքում գործ են ածել սեպագիր և հիերոգլիֆ գրեր, որոնցից բավականին նմուշներ գտնվել են Թել-Ամառնայում (Եգիպտոսում, Նեղոս գետի ափին) և Բողազ-քյոյում (պատմական Խատուշաշ քաղաքի տեղում): 1906—1907 թվականներին այստեղ Վինկլերին հաջողվեց հայտաբերել հեթիթական թագավորների արխիվը՝ թրծաղյուսի սալիկների վրա:



Հեթիթական արձանագրություն:

Արևելագետներից ոմանց հաջողվեց վերծանել այդ սալիկների գրությունները: Վերծանման գործում առանձնապես մեծ վաստակ ունի չեխ արևելագետ Հրոզնին: Վերծանումից պարզվեց, որ թրծաղյուսի այդ սալիկները բովանդակում են ծիսակատարության կանոններ, հրահանգներ, ռազմական հրամաններ, պայմանագրեր, աղոթքներ, հիմների տեքստեր և այլն:



Հեթիթական հիերոգլիֆ գրությունը բաղկացած է երկու մասից՝ ամբողջական բառի հիերոգլիֆ արտահայտող նշանագրեր և տառ կամ վանկ արտահայտող ձայնանիշեր:

Ընդհանուր պատկերացում տալու համար, ամբողջական բառ արտահայտող հիերոգլիֆներից կարելի է բերել հետևյալները (վերցրել ենք ակադ. Հ. Աճառյանի «Հայոց գրերը» աշխատությունից).

| | |
|---|---|
| — մայր աստվածուհի | — Հաթի երկիրը |
| — աստված | — Կարկեմիշ |
| — թագավոր | — մեծ |
| — իշխան | — հզոր |
| — տեր | — Գուրգում կամ Մարգաշ |
| — քահանայապետ | — մի թագավորի անուն |
| — ծառա | — Արսանիա անուն |
| — որդի, ժառանգ | — թագավորի այլ գաղափարագիր |
| — երկիր | |

Վանկ կամ տառ արտահայտող ձայնանիշերից կարելի է բերել հետևյալները.

| | |
|---|---|
| — ա, օ | — մի. |
| — ի, ե | — թի |
| — կ, կա, ակ | — ար |
| — թ | — շա |
| — ն, նի | — թար |
| — մ | — րւ, րկ |
| — փ | — շ |

Բավականին զարգացած գրություն են ունեցել ուրարտացիները: Ուրարտուն, ինչպես հայտնի է, ընդգրկել է պատմական Հա-

յաստանի միջին մասը, մասնավորապես՝ Վանա, Սևանի և Ուրմիայի լճերի միջև ընկած տարածությունը: Ուրարտուի քաղաքական կազմավորումը տեղի է ունեցել IX դարում մեր թվագրությունից առաջ: Այդ ժամանակից էլ ուրարտացիները սկսել են գործածել իրենց ուրույն սեպագիր գրությունը: Ուրարտուն իր քաղաքական վերելքի շրջանն ապրեց առանձնապես ութերորդ դարում՝ Արգիշտի Թագավորի գահակալության տարիներին (778—750 թթ. մ.թ.ա.):



Ուրարտական սեպագիր արձանագրություն:

Ուրարտուում որպես գրանյութ օգտագործել են զանազան նյութեր, սակայն գլխավորապես պահպանվել են քարի վրա փորագրված արձանագրությունները: Երբեմն պատահում են ուրարտական սեպագիր արձանագրություններ նաև մետաղի և թրծադյուսի վրա: Մեզ հասած ուրարտական արձանագրությունների թիվը 400-ից ավելի է:

Ուրարտական սեպագիր արձանագրությունների մասին հայ մատենագրության մեջ առաջին հիշատակությունն ունի պատմահայր Մովսես Խորենացին: Նա հիշում է Վանի քարաժայռի սեպա-



գրերը՝ կապելով նրանք Ասորեստանի Շամիրամ թագուհու անվան հետ:

XIX դարի առաջին քառորդից սկսած, ուրարտական արձանագրությունների վերծանման ուղղությամբ որոշ արևելագետներ փորձեր կատարել են: Ուրարտական արձանագրությունների առաջին հավաքողներից է եղել Ֆ. Շուլցը, որը 1828—1829 թվականներին ընդօրինակել է Վանի սեպագիր արձանագրություններից մի քանիսը: Հետագայում ուրարտական սեպագրերի հավաքման և հրատարակման գործում խոշոր աշխատանք է կատարել Մեսրոպ Սմբատյանը:

Սկսած XIX դարի կեսերից, երբ վերծանվել են ասորա-բաբելոնական արձանագրությունները և քանդվել սեպագրերի խորհրդավոր հանգույցները, արևելագետները նույն մեթոդով փորձեր են արել վերծանելու նաև ուրարտական սեպագրերը: Առաջին հաջողությունն այդ ասպարեզում ունեցել է անգլիացի արևելագետ Սեյսը, որը վերծանել է ուրարտական մի շարք սեպագիր արձանագրություններ: Ուրարտական արձանագրությունների վերծանման և ճշտման ուղղությամբ մեծ գործ են կատարել հետագայում ռուս և հայ արևելագետները՝ Մ. Վ. Նիկոլսկին, Ն. Յա. Մառը, Ի. Մեշչանինովը, Գ. Ղափանցյանը, Հ. Ա. Օրբելին, գերմանացի արևելագետ Լեման Հաուպտը և ուրիշներ:

Ուրարտագիտության ասպարեզում մեծ աշխատանք է կատարվել և կատարվում է Սովետական Միության մեջ: Հանդես են եկել այնպիսի շնորհալի մասնագետներ, ինչպիսիք են պրոֆ. Բ. Բ. Պիոտրովսկին, որի գրչին են պատկանում Ուրարտուին նվիրված մի քանի աշխատություններ, Գ. Ա. Մելիքիշվիլին, որը հավաքել է ուրարտական արձանագրությունները և հրատարակել “Вестник древней истории„ ամսագրի մեջ՝ արժանանալով Լենինի անվան մրցանակի, պատմական գիտությունների թեկնածու Մ. Իսրայելյանը, որն զբաղված է ուրարտական արձանագրությունների վերծանությամբ ու նրանց ճշտումներով, և ուրիշներ:

Ուրարտական սեպագրությունը, հեթիթական հիերոգլիֆների նման, ունի խառը նշանագրերից բաղկացած գրության սիստեմ. նշանագրերից մի մասը գաղափարագրեր են, իսկ մյուս մասը՝ առանձին վանկերի կամ տառերի նշանագրեր: Բերենք մի քանի օրինակներ.

## Ամբողջական բառերի հիերոգլիֆներ

—տուն
—տաճար
—առաջ
—որդի
—լեռ
—աստված
—անել
—ջուր
—կով
—գնալ
—երկաթ
—որդի
—լինել

—յուղ
—գետ
—զորք
—կառավարիչ
—պարտություն
—եզ
—ճանապարհ
—տեր
—անիծել
—ստրուկ
—մեծ
—ծառա
—ձախ

## Առանձին վանկեր կամ նշանագրեր կազմող սեպագրերից նմուշներ

—բե
—բիտ
—բու
—բուր
—դան
—դին
—կուր

—ման
—մար
—մե
—նա
—փի
—տի
—սու



— ափ
—ակ
—ալ
—ամ

—աս
—բա
—բալ[1]

Հայաստանում գործածված գրություններից ուշադրության արժանի են ուրարտական գրություններ բովանդակող արձանագրությունները: Ուրարտական գրությունն իր ժամանակին գործածության մեջ է գտնվել Մերձավոր Արևելքի մի շարք երկրներում: Հայաստանը ևս, ինչպես պարզվում է այժմ, հանդիսացել է այն երկրներից մեկը, որտեղ նույնպես գործ է ածվել ուրարտական գրությունը:

Հայաստանում հայտաբերված են ուրարտական գրությամբ փորագրված երեք արձանագրություններ. մեկը գտել է ազգագրագետ Ե. Լալայանը, 1906 թվականին, Նոր Բայազետի Կարմիր (Ղուլալի) գյուղում (Սևանա լճից մոտ 6 կիլոմետր հեռավորության վրա), մյուսը՝ պատմական գիտությունների թեկնածու Ս. Բարխուդարյանը, 1932 թվականին, Մարտունու շրջանի Կզնուտ (Ղաբանլու) գյուղում (Սևանա լճից 4—5 կիլոմետր հեռավորության վրա) և երրորդը հայտաբերվեց վերջերս՝ Մարտունու շրջանի Սանգյար գյուղում:

Ուրարտական այս արձանագրությունների մասին առաջին անգամ իր հեղինակավոր կարծիքն է հայտնել ակադ. Հ. Ա. Օրբելին: Նա գտնում է, որ նշված արձանագրությունները պատկանում են Հայոց Արտաշես Ա թագավորին, որը 189 թվականին (մ. թ. ա.) ապստամբվեց Սելևկյաններից և Մեծ Հայքի թագավոր դարձավ: Նա առաջ է քաշել նաև այն կարծիքը, որ ուրարտական այդ արձանագրությունները կարող են լինել սահմանային այն քարերը, որոնց մասին հիշատակություն ունի պատմահայր Մովսես Խորենացին[2]:

---

[1] Վերը բերված բոլոր սեպագրերը և նրանց վերծանությունը մենք վերցրել ենք Մելիքիշվիլու "Урартские клинообразные надписи„ աշխատությունից, որը տպվել է "Вестник древней истории„ ամսագրի 1953 թվականի համարներում:

[2] Газета "Известия„, М., 31/1, 1941:



Արամեական արձանագրություններ:

*Հետագայում այդ արձանագրությունների վերծանությամբ զբաղվել է Լենինգրադի Էրմիտաժի ավագ գիտական աշխատող, արամեական լեզվի մասնագետ պրոֆ. Ա. Բորիսովը, որն իր ուսումնասիրությունը հրատարակել է 1946 թվականին* "Вестник древней истории„ *ամսագրում: Նա ապացուցել է, որ նշված արձանագրությունները, անվիճելի, արամերեն են, գրված* II *դարում մեր թվագրությունից առաջ և պատկանում են Հայոց Արտաշես* I *թագավորին: Սակայն նրան չհաջողվեց վերծանել արձանագրության վերջին տողը*[1]:

*Արձանագրությունը հետևյալն է.*

RTHŠSY ԱՐՏԱՇԵՍ
MLKBBZY ԹԱԳԱՎՈՐ, ՈՐԴԻ
ZRYTR HL[I] ԶԱՐԻԱԴՐԻ
RVIVDKNHLT . . . . .

*Հետագայում չվերծանված այդ տողին անդրադարձան Էրմիտաժի և ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի Արևելագիտական*

[1] А. Я. Борисов, Надписи Артаксия (Арташеса), царя Армении, ВДИ, 1946, № 298:



*Ինստիտուտի Լենինգրադի բաժանմունքի աշխատակիցներ Ի. Մ. Դյակոնովը և Կ. Բ. Ստարկովը: Նրանք չվերծանված տողում փորձեցին գտնել «հողամաս» կամ «բաժանել» արամեական բառերը*[1]: *Նույն կարծիքը վերջերս պաշտպանեց նաև երիտասարդ գիտական աշխատող Գ. Տիրացյանը*[2]:

*Չվերծանված չորրորդ տողի նկատմամբ բոլորովին այլ եզրակացության է հանգել ֆրանսիացի արամեագետ Դյուպոն-Սոմմերը, որը չորրորդ տողի մեջ ուզում է գտնել «քաշել» և «ձուկ» բառերը*[3]:

*Դյուպոն-Սոմմերի կարծիքը, ինչպես ապացուցել է ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Կ. Վ. Տրևերը, համոզեցուցիչ չէ:*

*Չենք ուզում համաձայնել նաև Գ. Տիրացյանի հետ, որ իբր արձանագրությունն ավարտված չէ, որ իբր խոսքն այստեղ «Երկիր արքունի» թագավորական հողին վերաբերող միջոցառման մասին է, և Արտաշեսը, իրեն Երվանդյան անվանելով, իբրև «իշխող խավերի գլխավորող անձնավորություն», ցանկացել է ամրապնդել իր դիրքը և այլն: Այդ ամենը, մեր կարծիքով, չհիմնավորված եզրակացություններ են:*

*Կովկասագիտության մեջ կարծիք է հայտնվել նույնպես, որ նշված արամեատառ արձանագրությունների լեզուն ալվաներենն է: Այս կարծիքն արտահայտել է Ա. Պալյազատը, որը փորձել է անգամ նրանք վերծանել ուդիերենով*[4]:

*Օտար գրերով Հայաստանում ամենից շատ հանդիպում են հունարեն արձանագրություններ: Այդպիսիք գտնվել են Արմավիրում, Տիգրանակերտում, Բաշ-Ապարանում, Էջմիածնում, Գառնիում և այլն: Այդ արձանագրությունները վերաբերում են* III *դարին մեր*

[1] И. М. Дьяконов, К. Б. Старков, Надписи Артаксия (Арташеса), царя Армении (*տես* "Вестник древней истории„, 1956, №2):

[2] *Գ. Տիրացյան, Արտաշես Ա-ի արամեական նորագյուտ արձանագրությունը (Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի «Տեղեկագիր», 1957, № 10, էջ 105-109):*

[3] A. Dupont-Sommer, Deux inscriptions Arméniennes trouvées près du lac Sévan (Arménie), Syrie, հ. XXV, 1946—1948, № 1—2, էջ 149—155:

[4] *Ա. Պալյազատ, Նյութեր հին Հայաստանի պատմության, Երևան, 1935, էջ 217—219:*

թվագրությունից առաջ և շարունակվում են մինչև մեր թվագրության IV դարը։ Արձանագրությունները գրված են հունարեն լեզվով և տառերով։

Հունարեն արձանագրություններ ամենից շատ գտնվել են Արմավիրում (յոթ արձանագրություն)։ Նրանք հայտաբերվել և ուսումնասիրվել են տարբեր ժամանակներում։ Արմավիրի հունարեն արձանագրությունները ի մի հավաքել և հրատարակել է Ա. Ի. Բոլտունովան 1942 թվականին[1]։ Նույն արձանագրությունները, կարևոր ճշտումներով և մեկնաբանություններով, հրատարակել է նաև ակադ. Հ. Մանանդյանը 1946 թվականին[2]։ Արձանագրությունների գրության ժամանակը մեր թվագրությունից առաջ II—I դարերն են։ Այս արձանագրությունները հետաքրքիր են այն տեսակետից, որ ունեն բազմախոսական բովանդակություն. այսպես, նրանցից մեկը պարունակում է Հեսիոդոսի «Աշխատանքներ և օրեր» աշխատությունից մի հատված։ Մեկ ուրիշ արձանագրության մեջ հիշված է Երվանդյանների դինաստիայի վերջին ներկայացուցչի անունը, մի կարևոր փաստ, որը գալիս է հաստատելու Մովսես Խորենացու՝ Երվանդյանների մասին հաղորդած տեղեկությունների հավաստիությունը։ Պրոֆ. Գ. Գոյանի կարծիքով, այդ արձանագրություններից մեկը պարունակում է հայոց Արտավազդ թագավորի մեզ չհասած պոեմի հատվածները[3]։

Հայաստանում գտնված հունարեն արձանագրությունների շարքում բացառիկ արժեք է ներկայացնում Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Մ. Սարյանի և գյուղատնտես Յ. Դավթյանի 1945 թվականին Գառնիում գտած արձանագրությունը, որը, ինչպես պարզվեց, պատկանում է Տրդատ I-ին։ Այս արձանագրությունն առաջին անգամ վերծանել և հրատարակել է պրոֆ. Ս. Լիսիցյանը[4]։ Այնուհետև նրանով զբաղվել և իրենց

---

[1] А. И. Болтунова, Греческая надпись Армавира («Տեղեկագիր» ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի Հայկական ֆիլիալի, 1942, № 1—2, էջ 35—61)։

[2] Հ. Մանանդյան, Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946։

[3] Г. Гоян, 2000 лет армянского театра, հատ. էջ 156։

[4] «Սովետական Հայաստան» օրաթերթ, 1945, սեպտեմբերի 25։



Գառնիի հունարեն արձանագրությունը։

ընթերցումներն են առաջարկել ակադ. Հ. Մանանդյանը[1], պրոֆ. Ա. Գ. Աբրահամյանը[2], ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Տրեվերը[3] և պրոֆ. Բ. Առաքելյանը[4]։ Վերոհիշյալ ուսումնասիրողների ընթերցումներն իրարից բավականաչափ տարբերվում են, այդ պետք է բացատրել նրանով, որ քարի աջ կողմը կոտրված է և ուսումնասիրողներից ամեն մեկը տեքստի պակաս մասը լրացնում է իր ենթադրության համաձայն և վերծանում իր նախասիրած ձևով։

Անհրաժեշտ ենք համարում բերել մեր վերծանությունը.

«Արեգակնափայլ Տրդատ Մեծ, Մեծ Հայքի թագավոր որպես դեսպոտ: Կառուցեց տաճար թագավորադստեր հիշատակին անպարտելի եղբայրը տասնևմեկ տարում իր գահակալության։ Մեծաշուք տան հովանոցի տակ աղոթողը առ մեծ քարայրին թող աղոթք մատուցանե»:

Հայաստանում գրված օտար գրություններից ուշադրության արժանի են նաև լատիներեն արձանագրությունները, որոնք թվով շատ չեն։ Նրանցից պատմական կարևորություն ունեն միայն երեքը, երկուսը՝ Խարբերդի մոտ գտնվածները և մեկը՝ Էջմիածնում։

Խարբերդի արձանագրությունները գրված են մեր թվականության սկզբում։ Արձանագրությունների մեջ հիշվում է Ներոն կայսրը։ Ստորև բերում ենք արձանագրություններից մեկի թարգմանությունը.

«Ներոն Կլավդիոս, Կեսար, Օգոստոս, Գերմանիկոս կայսր և գերագույն քուրմ, նրա տրիբունական իշխանության 11-րդ, չորրորդ կոնսուլության, իններորդ անգամ թագավոր ու հայրենիքի հայրը (հռչակված) տարում։ Գնեոս Դոմիցի, Կորբուլոնի՝ պրոպրետորի Տիտոս Ավրելիոսի, Օգոստոսի լեգատի ժամանակ։ Երրորդ Գալլիական լեգեոն»[5]։

---

[1] Я. А. Манандян, Новые заметки о греческой надписи языческом храме Гарни, Ереван, 1951։

[2] Ա. Գ. Աբրահամյան, Գառնիի հունարեն արձանագրությունը («Էջմիածին» 1947, № 3—4)։

[3] Հայաստանում գտնված այլ լեզուներով արձանագրությունները համաքել և հրատարակել է Տրեվերը "Очерки по истории культуры древней Армении» վերնագրով աշխատության մեջ։

[4] Б. Н. Аракелян, Гарни, I, Ереван, 1951, էջ 64։

[5] Լատիներեն բնագիրը հրատարակված է «Corpus inscriptionum latinarum» հ III, Suppl., p. I, 1889 (էջ 1232)։



Ենթադրվում է, որ վերը հիշված արձանագրությունները գրված են 64 թվականին, երբ, Պետոսի պարտությունից հետո, Կորբուլոնին շնորհվեց «պրոպրետոր»-ի կոչումը և երբ Կորբուլոնը գալիական լեգեոնով շարժվեց Հայաստանի վրա։ Արձանագրությունը գրվել է որևէ կառուցման, հավանական է կամուրջի կառուցման կապակցությամբ։

IMP CAESM AVREL ANTO
NINO AVG GER
MASARM MAXTRIB POT
IMPVII COSIIII PP VEXILL
LEGXV APOLL SUB CAELIOCAL
VINO LEGAVG PRPR V M
AGENTELICINIO SATVRNINO TRIB
ML ETAVREL LABPASES LEG EIVSDEN

Էջմիածնի լատիներեն արձանագրությունը։

Էջմիածնի լատիներեն արձանագրությունը, համեմատաբար, նոր է և գրված է մեր թվագրության 185-ին։ Արձանագրության երկրորդ տողում մի բառ ջնջված է. ենթադրում են, որ այդ ջընջված բառը պետք է լինի Կոմոդոս կայսեր անունը, որը համարվել է անարժան կայսր, և հռոմեական սենատը որոշում է ընդունել նրա անունը ջնջել արձանագրությունների վրայից։ Միաժամանակ կարծիքներ են եղել, որ ջնջված բառը կարող է լինել "Armeniecus" («Հայկական») բառը։ Այդ կոչումը գործ է ածել Մարկոս Ավրելիոս Վիրիոսը՝ Վաղարշապատը վերցնելուց հետո. ենթադրում են, որ հայ հայրենասերները, չհաշտվելով արձանագրության մեջ հռոմեական կայսեր «Հայկական» մականունը գործածելու իրողության

հետ, նրա անունը ջնջել են քարի վրայից։ Հավանականը այս է։

Հայաստանում գտնված են արաբական և վրացական արժեքավոր մի շարք արձանագրություններ ևս, որոնց մասին մենք չենք խոսում, որովհետև նրանք գրված են համեմատաբար ուշ շրջանում՝ հայկական ներկա գրության ստեղծումից հետո։



ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՀՆԱԳՈՒՅՆ ՏՎՅԱԼՆԵՐ ՆԱԽԱՄԵՍՐՈՊՅԱՆ ՀԱՅ ԳՐԻ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ



րդյոք Մեսրոպ Մաշտոցից առաջ հայկական գիր և գրականություն գոյություն ունեցե՞լ է։ Սա հայագիտության վիճելի հարցերից մեկն է։ Խոսքը տառանիշերի մասին չէ, այլ հին հայկական գրականության մասին ընդհանրապես։ Պետք է նկատի ունենալ, որ հայերը կարող էին գրականություն ստեղծել նաև այլ տառանիշերով։ Հայտնի է, օրինակ, որ փյունիկյան գրերը օգտագործել են եվրոպական շատ ժողովուրդներ։ Կամ՝ միջին դարերում արևելյան ժողովուրդների մեծ մասը գործ էր ածում արաբական տառանիշերը, բայց ամեն մեկը գրում էր իր մայրենի լեզվով։

Նախամեսրոպյան հայ գրի և գրականության հարցում հայագետները երկու հակադիր խմբի են բաժանվում. նրանցից ոմանք կտրականապես ժխտում են Մեսրոպ Մաշտոցից առաջ հայ գրի և գրականության գոյությունը, իսկ ոմանք՝ ընդունում։ Երկու խմբում էլ կան անվանի գիտնականներ։ Ժխտողների շարքումն են ակադեմիկոսներ Հ. Աճառյանը, Ս. Մալխասյանցը, Հ. Մանանդյանը, Մ. Աբեղյանը և ուրիշներ։ Այսպես օրինակ, ակադ. Հ. Աճառյանը,

մանրամասն քննության առնելով այն փաստերը, որոնք առաջ են քաշում նախամեսրոպյան շրջանում գիր ընդունող գիտնականները, հետևյալ եզրակացությանն է հանգել. «Ս. Մեսրոբեն առաջ հայերեն գրականություն տեսնելը, որ իբր թե ջնջեց լուսավորիչը՝ այրելով բոլոր հայերեն գրքերը, անմիտ հեքիաթ մ' է միայն»[1]։

Մեսրոպ Մաշտոցից առաջ հայկական գրականության գոյությունն ընդունում են՝ պրոֆ. Ք. Պատկանյանը, ակադ. Ն. Մառը ակադ. Հ. Օրբելին և ուրիշներ։ Մառն իր "Ани" աշխատության ներածության մեջ, անդրադառնալով հին հայկական գրականության հարցին, աներկբա ընդունում է, որ՝ «Ողջ Կովկասը, ներառյալ նաև Հայաստանը, կուլտուրական է եղել դեռևս ասորա-բաբելական քաղաքակրթության ժամանակաշրջանում։ Հայաստանում մայրենի լեզվով գրականություն գոյություն ուներ մեր ներկա թվականությունից մի քանի դար առաջ»[2]։

Նախամեսրոպյան հայ գրի և գրականության հարցով զբաղվել ենք նաև մենք։ Մեր ուսումնասիրությունը՝ «Նախամեսրոպյան գրականության հարցը» վերնագրով հրատարակվել է «Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի գիտական աշխատություններ»-ի մեջ։ Այդ հարցին հատուկ գլուխ ենք նվիրել նաև մեր «Հայկական պալեոգրաֆիա» աշխատության մեջ։ Նույն խնդրին անդրադարձել ենք 1956 թվականին Անթիլիասի Կյուլպենկյան սրահում կարդացած մեր դասախոսություններից մեկի մեջ, որը լույս է տեսել Անթիլիասում հրատարակված մեր դասախոսությունների շարքում[3]։

Մեր կարծիքով, Մեսրոպից առաջ հայ գիր և գրականություն գոյություն է ունեցել։ Ի՞նչ փաստեր են հիմք տալիս մեզ՝ նման եզրակացության համար։

1. V դարից մեզ հասել է ինչպես ինքնուրույն, այնպես էլ թարգմանական և մեկնողական գրականություն, որն իր քերականական մշակված ձևերով, հարուստ բառապաշարով, ոճով և արծարծած հարցերի կարևորությամբ ու խորությամբ գրականության պատմության սկզբնավորությանը հատուկ ստեղծագործություն չէ։ Սկսնակ շրջանի երկ չի կարելի համարել ոչ Եղիշեի, ոչ Եզնիկի և ոչ էլ V դարի մյուս մատենագիրների աշխատություններից որևէ մեկը։ Այդպիսին չէ նաև Աստվածաշնչի թարգմանությունը, որը «թարգմանությունների թագուհին» է համարվում։ Եթե

[1] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 106։

[2] Н. Я. Марр, Ани. М.-Л., 1934, էջ 5։

[3] Ա. Աբրահամյան, Յոթ դասախոսություններ, Անթիլիաս, 1955 էջ 22—37։



հայկական գրականության սկիզբը իրոք V դարը լիներ, ապա հնարավոր չէր, որ օգտագործվող գրական լեզուն այնքան հարուստ բառապաշար ունենար, ինչպիսին ունի V դարի մատենագրությունը, չօգտագործեին մեծ թվով օտար բառեր և տեղի ինքնուրույն աշխատություններն սկսեին այնպիսի բարձր թեմատիկայով, ինչպես սկսել են։

Մեզ հայտնի են Սովետական Միության մեջ մտնող այնպիսի ժողովուրդներ, որոնք իրենց գիրն ու գրականությունն ստեղծել են Սովետական իշխանության տարիներին, և նրանք, երբ թարգմանություններ են կատարում, հարկադրված են լինում բնագրի լեզուներից բազմաթիվ բառեր փոխ առնել, որովհետև իրենք այլպիսիները չունեն։ Եթե հայերեն գրական լեզուն V դարից սկիզբ առած լիներ, ապա այլ կերպ չէին կարող վարվել նաև հայ թարգմանիչները, իսկ իրականությունն այն է, որ հին հայկական մատենագրության մեջ օտարամուտ բառերը շատ քիչ են։

Կան հայագետներ, որոնք առաջ են քաշում Մեսրոպից առաջ Հայաստանում «բանավոր գրականության» գոյության տեսությունը. հայերը Մեսրոպ Մաշտոցից առաջ, ասում են նրանք, ունեցել են բանավոր գրականություն։ Այս տեսակետի հետ չի կարելի համաձայնել, որովհետև այն, ինչ գրի չի առնված, դեռևս գրականություն չէ, այլ բանահյուսություն, և ապա՝ նման «բանավոր գրականություն» իրենց գրականության ստեղծման նախօրյակին ունեցել են մեզ հայտնի գրեթե բոլոր ժողովուրդները, օրինակ՝ ներկայիս թրքերը, լազերը, գնչուները և մյուսները։ Կան նաև հայագետներ, որոնք գտնում են, որ իբր թե III—IV դարերում Ասորիքից և Կապադովկիայից եկած քրիստոնյա քարոզիչները, քրիստոնեական ուսմունքը ժողովրդին հասկանալի դարձնելու նպատակով, Աստվածաշնչի ասորերեն և հունարեն բնագրերից անվերջ թարգմանություններ էին կատարում հայերեն, և այդ թարգմանությունների ընթացքում է, որ մշակվել է հայ գրական լեզուն։ Այս կարծիքը բացահայտ անհիմն է, որովհետև III—IV դարերում Ասորիքից և Կապադովկիայից Հայաստան եկող քրիստոնյա քարոզիչները հույներն էին և ասորիները, որոնք հայերեն չգիտեին և տեղում էին սովորում։ Ապա՝ եթե ընդունենք անգամ, որ հայ գրական լեզուն մշակվեց իրոք III—IV դարերում՝ թարգմանությունների ընթացքում, այդ դեպքում նման կարծիք հայտնող հայագետները հետևողական պիտի լինեն ընդունելու, որ հայկական թարգմանական գրականություն գոյություն ուներ III—IV դարերում։ Լեզուների

գիտական ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ գրական լեզուները չեն ստեղծվում մեկ-երկու տարում կամ տասնամյակում, այլ նրանք երկար տարիների և մի շարք սերունդների մշակման արդյունք են։

2. Հայերը հին պետականություն ունեցող ժողովուրդ են եղել։ Հայաստանի նախարնիկները զարգացած գիր և գրականություն են ունեցել դեռևս հեթիթների և ուրարտացիների ժամանակ, ուստի և չէր կարող Արտաշեսյան շրջանում զարգացած պետականություն ունեցող հայ ժողովուրդը չժառանգեր իր նախորդների գրավոր ավանդույթը և կառավարվեր առանց սեփական գրի և գրականության, չվարեր, օրինակ, պետական գրագրություն, չունենար ֆինանսական հաշիվներ և այլն։

Հին մատենագիրների վկայությունից երևում է, որ Արտաշեսյան շրջանում Հայաստանում, իրապես, գոյություն է ունեցել բավականին զարգացած հելլենիստական կուլտուրա։ Հայտնի է, որ հայ թագավորներն իրենց արքունիքում ընդունել և հովանավորել են հույն պատմաբանների, փիլիսոփաների, հռետորների և այլ գիտնականների (Անփիկրատես, Մեթրոդորոս և ուրիշներ)։ Ակադ. Հ. Մանանդյանի կարծիքով, Տիգրանակերտը հանդիսացել է ոչ միայն միջազգային առևտրի, արհեստների և արդյունագործության, այլև հելլենիստական գիտության, արվեստի ու գրականության կենտրոն[1]։ Պլուտարքոսի տեղեկություններից հայտնի է, որ Տիգրան II-ի որդին՝ Արտավազդ թագավորը (55—34 թթ. մ. թ. ա.), ողբերգություններ, ճառեր և պատմական երկեր է գրել, որոնց մի մասը մնացել է մինչև Պլուտարքոսի ժամանակը։ Այդ մասին Պլուտարքոսը գրում է. «ὁ δ' Ἀρταουάσδης καὶ τραγῳδίας ἐποίει καὶ λόγους ἔγραφε καὶ ἱστορίας ὧν ἔναι»[2]։ («Արտավազդը գրում էր ողբերգություններ, ճառեր և պատմական երկեր, որոնց մի մասը պահվել է»)։

Չպետք է ժխտել, որ Արտաշեսյան դինաստիայի շրջանում հայ թագավորները հունարեն էին դրոշմում իրենց դրամները, սակայն այդ դրամները գործածության մեջ էին դնում ո՛չ միայն Հայաստանում, այլ նրանից դուրս՝ հելլենիստական Արևելքում։ Հունարեն են դրոշմել իրենց դրամները հելլենիստական Արևելքի

[1] Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր I, Երևան, 1944, էջ 172։

[2] Plutarchus Crassus, XIII, 1—5։



իշխապետության մեջ մտած գրեթե բոլոր երկրները՝ Պարսկաստանը, Կապադովկիան, Կիլիկիան, Պոնտոսը, Ծոփքը և մյուսները։

3. Պատմահայր Խորենացին վկայում է, որ II դարում Բարդածան անունով քրիստոնյա մի քարոզիչ գալիս է Հայաստանի Դարանաղյաց գավառի Անի ամրոցը, որը հնում հայ թագավորների գահանիստ կենտրոնն է եղել, տեղի մեհենական արխիվից մի պատմություն է թարգմանում ասորերեն և իր հետ տանում։ Հետագայում այդ աշխատությունը ասորերենից թարգմանվում է հունարեն, որից և օգտվել է Խորենացին։ Պատմահայրն այդ մասին գրում է. «Զրուցէ մեզ զայս Բարդածան, որ յԵդեսիայ։ Քանզի նա յաւուրս Անտոնինոսի վերջնոյ երևեցաւ պատմագրող... եկն նա այսր, որպէս զի աշակերտել զոք կարասցէ ի խուժ հեթանոսացս. և իբրև ոչ ընկալեալ եղև՝ եմուտ նա յամուրն յԱնի, և ընթերցեալ զմեհենական պատմութիւնն, յորում և զգործս թագաւորացն, յաւելեալ իւր և որ ինչ առ իւրեաւն, և փոխեաց զամենայն ի լեզու ասորի, որ և ապա անտի յեղաւ ի յոյն բան։ Յորում պատմէ ի մեհենիցն պաշտամանց՝ վերջին Տիգրանայ արքայի Հայոց... Յայսմ պատմութենէ առեալ մեր երկրորդեցաք քեզ ի թագաւորութենէն Արտաւազդայ մինչև յԱրձանն Խոսրովու»[1]։

Չորրորդ դարում օտար լեզուներով Հայաստանում քաղաքացիություն ունեին հունարենը և ասորերենը. եթե Բարդածանի արտագրածը ոչ ասորերեն էր և ոչ հունարեն, ապա մնում է ենթադրել, որ նա գրված պետք է լիներ տեղական լեզվով՝ հայերեն։

4. Նախամեսրոպյան գրականության մասին վկայող կարևոր փաստ է մեհենական գրականության գոյությունը. հեթանոսական Հայաստանում եթե կային մեհյաններ, ապա այդ մեհյաններում պետք է որ գոյություն ունենար նաև գրականություն։ Ոչ մի հիմք չունենք պնդելու, որ հայ քրմերն ամեն ինչ անգիր արած էին ծիսակատարություններ կատարում և չունեին կրոնական ծիսակատարությունների համար պատրաստված հատուկ գրքեր։ Պետք է նկատի ունենալ, որ ինչպես մյուս բոլոր ժողովուրդների, այնպես և հայերի մոտ, մեհյանները, կրոնական կենտրոններ լինելուց բացի, եղել են նաև իրենց ժամանակի մշակույթի, գրականության և գիտության օջախներ։

5. Հայ հեթանոսական աստվածների պանթեոնում հիշվում է Տիր անունով աստված, որը, ըստ Ագաթանգեղոսի վկայության,

[1] Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 201—202։

արվեստի, գիտության և ճարտարության աստվածն էր հանդիսանում: Նրա մեհյանը գտնվելիս է եղել Ջվարթնոցի մոտերքում, որը հետո կործանվեց Տրդատի կողմից: Ագաթանգեղոսը Տիր աստծու մեհյանի մասին հետևյալ ուշագրավ տեղեկությունն է հաղորդում. «Ապա ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթեալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն Անահտական դիցն, և որ յԵրազամոյն տեղիսն անուանեալ կայր: Նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազահան պաշտաման Տրի դից, դպրի գիտութեան քրմաց, անուանեալ դիւան գրչի Որմզդի, ուսման ճարտարութեան մեհեան»[1]:

Աստվածները չեն, որ մարդ են ստեղծել, այլ մարդն է, որ աստվածներ է ստեղծել: Մեր ժողովուրդը չի ստեղծել ծովի աստված, որովհետև դրա կարիքը չի ունեցել: Հույները, հռոմեացիները ստեղծել են ծովի աստվածներ, որովհետև նրանց կարիքը ունեցել են:

Ագաթանգեղոսի հիշած Տիր աստվածը համապատասխանում է Եգիպտական Թոթ և հունական Հերմես աստվածներին: Նա հայ ժողովրդի հիշողության մեջ ավանդաբար պահվել է «Գրող» աստծու անունով. «Գրողը տանի քեզ»՝ անիծում են, «Գրողն իր դաֆտարից անունդ ջնջի», «Գրողը քո անունը հիքերի դաֆտարում գրի» և այլն: Ըստ երևույթին, Գրող աստծուն վերագրվում է մի պաշտոն, որի պարտականությունն էր ծնվողներին մուտք անել, մահացածների անունները ջնջել կենդանի մարդկանց մատյանից և ուղեկցել մահացածին հանդերձյալ կյանք:

Մի ժողովուրդ, որ ստեղծել է դպրության աստված, ուրեմն նա անպայման ունեցել է նաև դպրություն:

Նախամեսրոպյան հայ գրականության գոյությունը ժխտող գիտնականներն այս փաստը հերքելու համար պնդում են, թե Տիրը հայկական աստված չէ, այլ փոխ է առնված պարսիկներից: Այս առարկությունը հիմնավոր չէ, քանի որ նախ՝ հարցական է, թե ո՛վ ումից է փոխառություն կատարել: Բայց եթե անգամ հայկականը փոխառություն է պարսկերենից, ապա կասկած լինել չի կարող, որ նման աստծու կարիքը Հայաստանում եղել է:

6. Հունական մատենագրության մեջ հայտնի է Փիլոստրատոս անունով մի հեղինակ, որն ապրել է III դարում: Սա իր «Վարք Ապողոնիոս Տվանացու» վերնագրով աշխատության մեջ

[1] Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, էջ 404:



վկայում է, որ իր ժամանակ Տավրոսում մի հովազ են բռնել, հովազի վզին ոսկե մանյակ, մանյակի վրա հայերեն տառերով գրրված. «Արշակ թագավորից՝ Նվեր Նյուսիայի աստծուն» «ἐπέγραπτο Ἀρμενίους γράμασι. Βασιλεὺς Ἀρσάκης θεῷ Νυσίῳ»)[1]: Մենք չգիտենք, թե ով է եղել այս Արշակ թագավորը, որի գազանանոցից, հավանաբար, փախած է եղել մանյակի վզնոցով հովազը, բայց մեզ համար անվիճելի է նույն հեղինակի այն տեղեկությունը, որ հովազի վզի մանյակի վրա եղած գրությունը հայերեն էր:

Փիլոստրատոսի հաղորդած այս տեղեկության մասին կասկածանք է հայտնել ակադ. Հ. Աճառյանը: Նա գտնում է, որ հայերի մոտ ընդհանրապես այդ ժամանակ Արշակ թագավոր չի եղել և այս թագավորը «ավելի պարթև թագավորի մ՚ անունն ըլլալու է և այն մատենագրությունն ալ ավելի պահլավերեն, քան թե հայերեն»[2]: Այս պատճառաբանությունը համոզեցուցիչ չէ, քանի որ Փիլոստրատոսը որոշակի խոսում է հայերեն գրերի մասին: Բայց մի րոպե եթե ընդունենք, որ Փիլոստրատոսը սխալմամբ շփոթել է՝ պահլավերեն գրերը հայերեն է կարդացել, այն դեպքում այդ ավելի է հաստատում հայերեն գրության գոյության փաստը: Ուրեմն հայերեն գրությունը III դարում այնքան տարածված և հանրածանոթ եղած պետք է լիներ, որ Արևելքում քաջ հայտնի պահլավերենը շփոթում էին հայերենի հետ: Ինչ վերաբերում է Արշակ թագավորին, ապա մենք հիմք չունենք ժխտելու նրա գոյությունը I—III դարերի հայ գահակալների խառնաշփոթ ցանկում:

7. Հիպոլիտես անունով մի հույն հեղինակ Աղեքսանդր Մամիայի թագավորության 13-րդ տարում (այսինքն՝ ներկա թվականության 234-ին) գրած իր «Ժամանակագրության» մեջ թվարկում է իրեն հայտնի բոլոր այն ժողովուրդների անունները, որոնք ունեն գրականություն, և այս ցանկում հիշում է նաև հայերին: Նա այդ մասին գրում է. «Οἱ δὲ ἐπιστάμενοι αὐτων γράμματα εἰσίν: Ἴβηρες, Λατῖνοι, οἷς Χρωται οἱ Ῥωμαῖοι, Σπάνοι, Ἕλληνες, Μῆδοι, Ἀρμένιοι»:

«Սրանցից (այսինքն՝ իր թվարկած ժողովուրդներից—Ա. Ա.), որոնք ունեն դպրություն, հետևյալներն են. եբրայեցիները, լատինացիները, որով և հռոմայեցիներն են վարում, սպանացիները, հույները, մարերը և հայերը»[3]:

[1] Տես Philostrati de vita Apollonis Tianei երկրորդ հրատարակությունը C. L. Kayser-ի, հատ. 1, էջ 44:

[2] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 65:

[3] Hippolitus Werke, 4 Bd., Die Chronik.

Հիպոլիտեսի «Ժամանակագրության» վավերականության մասին կասկածանքներ չեն եղել: Գտնված է հեղինակի կիսանդրին՝ իր աշխատությունների ցանկով, ուր հիշված է նաև «Ժամանակագրություն»-ը: Աշխատության գրելու թվականի մասին նույնպես վեճ չի եղել: Եթե III դարի հույն հեղինակը այսպիսի տեղեկություն է հաղորդում հայկական գրության մասին, ինչ հիմք ունենք չհավատալու նրան, ինչ շահ ուներ նա կեղծելու իրականությունը:

Հարց է առաջանում՝ եթե հնագույն հայ գրականությունն իրոք եղել է, ինչո՞ւ ոչ մի նմուշ մեզ չի հասել: Այդ տարօրինակ թող չերևա, քանի որ դարեր են անցել, ժողովուրդներ են անհետացել Հին Արևելքում՝ առանց հետք թողնելու, քաղաքներ են կորել, որոնց տեղերն այժմ փնտրում ենք, ի՞նչ իրավունք ունենք այդքան խստապահանջ լինելու: Ո՞ւր է մեր հարևան աղվան ժողովրդի գրականությունը, որն ստեղծվել է համեմատաբար ավելի ուշ շրջանում՝ V—XII դարերում, ինչո՞ւ նրանից ոչ մի նմուշ մեզ չի մնացել:

Պետք է նկատի ունենալ նաև, որ նախամեսրոպյան, այսինքն՝ հեթանոսական հայկական գրականությանը սպանիչ հարված հասցրեց քրիստոնեությունը: Ըստ պատմիչների վկայության, Տրդատն իր զորքի գլուխ անցած, Լուսավորչի հետ միասին, քանդում, ավերում էր հեթանոսական մեհյանները և նրանց տեղում քրիստոնեական վանքեր և եկեղեցիներ կառուցում: Այսպես, Ագաթանգեղոսը պատմում է, որ «ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատէ» մեհյանները քանդելու: Արտաշատի ճանապարհի վրա նրանք նախ Տիր աստծու տաճարը «քակեալ աւերեալ քանդեցին», Արտաշատում՝ «ամենայն շինուածք մեհենին ի հիմանց դղրդեալ տապալեցան», Թորդանում՝ «սպիտակափառ» կոչվող Վահագնի տաճարը «կործանէին և զպատկերն նորին փշրէին»[1], Երիզա ավանի մեհյանում փշրում են Անահիտի արձանը և այլն:

Հին հայ մատենագիրները նախամեսրոպյան հայ գրականության փաստի վրայով լռությամբ են անցնում, որովհետև նրանք, որպես քրիստոնյա մատենագիրներ, նպատակ ունեն հեթանոսական շրջանը ներկայացնել որպես բարբարոսական շրջան և հին հայկական ողջ մշակույթը կապել միայն քրիստոնեության հետ: Նրանց տեսակետով, Հայաստանում հեթանոսական

[1] Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, էջ 404:



շրջանում տիրում էր ագիտությունը և խավարը, և քրիստոնեությունն էր, որ եկավ լուսավորելու:

Այսպիսով, բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ Հայաստանում V դարից շատ առաջ գոյություն է ունեցել հայերեն գիր և գրականություն: Այդ գրականությունը գլխավորապես մեհյաններում էր կենտրոնացված և նրանց ավերակների տակ էլ թաղվեց: Քրիստոնեության առաջին մեծ զոհերից մեկը հեթանոսական հայկական մատենագրությունը հանդիսացավ:

* * *

Հարց է առաջանում՝ եթե իրոք եղել են նախամեսրոպյան գրեր, ապա ինչ տեսակ գրեր են եղել նրանք՝ հիերոգլիֆնե՞ր, սեպագրե՞ր, ներկա գրերի այլ տեսակնե՞ր, թե՞ մեզ բոլորովին անծանոթ գրեր: Այս հարցին հայագիտության մեջ տարբեր պատասխաններ են տրվել:

Մկրտիչ Էմինը «Об армянском алфавите» աշխատության մեջ կարծիք է հայտնել, որ Մեսրոպ Մաշտոցից առաջ Հայաստանում գործ է ածվել հիերոգլիֆ գրությունը, որի նշանագրերի մի մասը մեզ է հասել քերականական բովանդակությամբ ձեռագրերի «Նշանագիր իմաստից» կոչված ցուցակների մեջ: Այդ նշանագրերից 84-ը նա հրատարակել է վերը հիշված աշխատության հավելվածում[1]:

Հայկական ձեռագրերում, իրոք, հաճախ են պատահում համառոտագրությունների և գաղափարագրերի խառը ցուցակներ: Նրանք վերնագրված են լինում սովորաբար «Նշանագիր իմաստից» ձևով և պարունակում են ավելի քան 500 նշանագրեր: Էմինի խոսքը սրանց է վերաբերում: Այս նշանագրերի վրա հետագայում մենք հանգամանորեն կանգ ենք առնելու, իսկ այժմ կասենք, որ այս տեսակետը փորձել է հերքել պրոֆ. Աճառյանը: Նա աշխատել է ապացուցել, որ նշված գաղափարագրերը ոչ թե հին հայկական գրերն են եղել, այլ սղագրության հատուկ նշաններ, որոնք ստեղծվել են ուշ միջնադարում, երբ արդեն կային մեսրոպյան գրերը[2]:

[1] Էմինի այս աշխատությունը հրատարակվել է 1858 թվականին՝ Խորենացու Հայոց պատմության ռուսերեն թարգմանության հավելվածում: Նրա ֆրանսերեն թարգմանությունը հրատարակվել է «Revue d'orient» թերթում 1865 թվականին, իսկ հայերեն թարգմանությունը «Հայկական աշխարհ»-ում՝ 1870 թվականին, էջ 42—46:

[2] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 56—57:

Պրոֆ. Ք. Պատկանյանը գտնում է, որ Մեսրոպ Մաշտոցից առաջ գործ են ածվել դանիելյան կոչվող գրերը, որոնք, ինչպես հայտնի է, բերել տվեցին Վռամշապուհի ցուցմունքով և Մաշտոցի դպրոցում երկու տարի պարապեցին նրանով։ Պրոֆ. Պատկանյանն այս մասին Մովսես Կաղանկատվացու «Պատմության» իր կատարած թարգմանության ծանոթագրություններից մեկի մեջ հետևյալն է գրում. «Ճիշտ է այն կարծիքը, որի համեմատ Մաշտոցը ոչ թե գտավ հայկական այբուբենը, այլ արդեն եղածը, բայց ընդհանուրից չօգտագործված դանիելյան հայկական այբուբենը կատարելագործեց»[1]։ Նույն կարծիքն են հայտնել նաև ակադ. Բրոսսեն, պրոֆ. Հյուբշմանը և ուրիշներ։

Դանիելյան գրերը հին հայկական գրեր համարելը բացահայտ սխալ է։ Ժամանակակից պատմիչների տեղեկություններից պարզ երևում է, որ դանիելյան գրերը ստեղծվել էին ոչ թե վաղուց, այլ իրեն՝ Դանիելի կողմից, որը Մեսրոպ Մաշտոցին ժամանակակից անձնավորություն էր։ Ապա՝ դանիելյան այդ գրերը պակասավոր գրեր էին. Մաշտոցը երկու տարի շարունակ այդ տառերով փորձել է պարապել իր աշակերտների հետ, բայց վերջում, տեսնելով, որ ոչինչ դուրս չի գալիս, թողել է այն և ձեռնարկել հայկական նոր տառերի ստեղծմանը։

Ակադ. Օրբելին ենթադրում է, որ հայկական ներկա գրերից առաջ Հայաստանում գործ են ածվել արամեական նշանագրերը։ Նրա կարծիքով, Սևանի լճի մոտ գտնված արամեական երկու արձանագրությունները գրված են արամեական գրերով, բայց հայերեն լեզվով։ Գտնված այդ երկու արձանագրությունները, գրում է նա, որոնք «գրված են սեմիտական նշանագրերով, պետք կարդացվեն հայերեն»[2]։

Նշված արձանագրությունների վերծանությունը, սակայն, ինչպես տեսանք նախորդ գլխում, չի հաստատում մեծանուն ակադեմիկոսի ենթադրությունը։

Ենթադրություններ են եղել, որ նախամեսրոպյան գրություն լինի մի քանդակապատկերի տակ եղած նշանագրերը, որ հրատարակել է պրոֆ. Գ. Լևոնյանը[3]։ Քանդակապատկերի վրա հետևյալն է երևում. մեջտեղում դրված է մի պատվանդան, վրան եզան գլուխ, որը

[1] К. Патканов, История Каганкатваци, էջ 346։

[2] «Известия» (օրաթերթ), Москва, 31 января, 1941։

[3] Գ. Լևոնյան, Մի առեղծվածային քանդակապատկեր, «Սովետական արվեստ», 1941, էջ 69—71։



լիզում է իր կաշին. եզան գլխի աջ և ձախ կողմերում դրված են լուղակալներ։ Պատվանդանի կողքերում պատկերված է մի թագավորի և մի թագուհու նկար, որոնք երկրպագում են եզ-աստծուն։ Նրանք ձեռքերում ունեն կապուկներ, որոնք նվիրաբերում են աստծուն։ Թագավորի և թագուհու կողքերին շարված են իրենց վեց երեխաները։ Չորս փոքրիկ կճուճներ դրված են արկղաձև պատվանդանի վրա։ Այս նկարի ներքին մասում բերված է երկու տող գրություն, որի տառերի մեծ մասը հայկական է. պարզ կարելի է տեսնել «Ա», «Մ», «Ս» տառերը։ Գրությունը հաստատ հայերեն է թվում, բայց կան որոշ տառեր, որոնք մեզ անծանոթ նշանագրեր են։

Պրոֆ. Գ. Լևոնյանը, հրատարակելով այս տեքստը, հետևյալ եզրակացության է հանգել.

1) Հավանական է, որ քանդակապատկերի տակ բերված գրերը նախամեսրոպյան մեզ չհասած գրերն են, որովհետև նկարի վրա դրոշմված թագավորը և թագուհին, նրանց զգեստները, նրանց թագերը, բոլորն էլ հին են, հեթանոսական, իսկ հեթանոսական Հայաստանում հայտնի է, որ պաշտվել է եզը (Դիրաքլու և Ղուշչի գյուղերում գտնված են պաշտվող եզան գլուխներ)։ Սակայն Լևոնյանին մի բան է տարակուսանք պատճառել, թե ինչո՞ւ է գիրը ձախից աջ, եթե հեթանոսական է, պետք լիներ աջից ձախ։

2) Կարող է պատահել, որ այս քանդապատկերը պատրաստած լինեն հեթանոս հայերը, բայց այդ դեպքում ինչպես համատեղել այստեղ թագավորի ներկայությունը, որովհետև քրիստոնեության շրջանում հայ հեթանոս թագավորներ չեն եղել։

3) Հավանական է նաև, որ կեղծիք է, այն դեպքում, հարց է տալիս Լևոնյանը, ապա ի՞նչ տառեր են սրանք։

Մեր կարծիքով քանդակապատկերի այդ գրությունը բացահայտ կեղծիք է։ Այդ պարզ երևում է տառերի ձևերից՝ որոնք ուղղագիծ են։ Ուղղագիծ նման տառեր գրում էին միայն XVI—XVII դարերում։ Ըստ երևույթին, կեղծարարը ծանոթ չի եղել հայկական գրի պատմության հետ, և այդ էլ մատնում է իրեն։

Եվ, վերջապես, որոշ հայագետներ այն կարծիքն են հայտնել, որ Մեսրոպ Մաշտոցից առաջ հայերը գրել են հունարեն և ասորերեն գրերով։ Մենք ևս պաշտպանում ենք այդ տեսակետը որոշ վերապահումով, ընդունելով միաժամանակ, որ մինչև III դարի վերջերը հայկական մեհյաններում գործ է ածվել ինքնուրույն նշանագրություն։ Քրիստոնեությունը Հայաստանում մուտք գործելուց

հետո, երբ ոչնչացվեց հայ մեհենական մատենագրությունը, հայերը շարունակեցին գործածել հունական և ասորական գրերը։

Նախամեսրոպյան շրջանում Հայաստանում եղել է դպրոց և մատենագրություն։ Այդ անվիճելի է։ Փավստոսը վկայում է, որ Ներսես Մեծը (353—373 թթ.) դպրոցներ էր բաց անում Հայաստանում, ուր դասավանդում էին հուներեն և ասորերեն. «Կարգէր ի տեղիս տեղիս դպրոցս յունարէն և ասորերէն յամենայն գաւառս Հայոց»[1]։

Խորենացու տեղեկությունից հայտնի է, որ Արշակի ձերբակալությունից հետո, երբ պարսից զորքը Մերուժան Արծրունու ուղեկցությամբ մտավ Հայաստան, Մերուժանը հրամայեց վառել Հայաստանում եղած հուներեն ձեռագրերը, որոնք, նրա կարծիքով, հայերին կապում էին հույների հետ. «Եւ զորս միանգամ գիրս գտանէր՝ այրէր, և հրաման տայր մի՛ ուսանել զդպրութիւն յունարէն, այլ զպարսիկ, և մի՛ ոք իշխեսցէ յոյն խօսել կամ թարգմանել. այնպիսի ինչ պատճառաւ, զի ամենևին մի՛ լիցի Հայոց ընդ Յունաց ծանօթութիւն և հաղորդութիւն սիրոյ»[2]։

Խորենացին, քննադատելով այն մարդկանց, որոնք հին հայկական մատենագրության բացակայությունը բացատրում են հաճախ կրկնվող պատերազմներով և նշանագրերի բացակայությամբ, գտնում է այդ անարդարացի, քանի որ «... գտանին և միջոցք լեալ պատերազմացն, և գիր Պարսից և Յունաց, որովք այժմ գիւղից և գաւառաց, եւս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցած մատեանք, մանաւանդ որ սեպհական ազատութեան պայազատութիւն»[3]։ Ըստ որում, այստեղ «գիր» բառը Խորենացին որոշակի գործ է ածել «նշանագիր» իմաստով, իսկ «գրություն»-ը՝ «դպրություն»։

Նախամեսրոպյան գրի և գրականության մասին հայ պատմիչներից միջանկյալ մի ակնարկ ունի նաև Ղազար Փարպեցին։ Նա, խոսելով Մեսրոպ Մաշտոցի գրերից առաջ եկեղեցիներում ասորերեն լեզվով պաշտամունք կատարելու սովորության մասին, դատապարտում է հայ եկեղեցականներին՝ թե ինչո՞ւ նրանք գոյություն ունեցող հայերեն նշանագրերը չեն օգտագործում. «...մանաւանդ թէ գոն նշանագիրք հայերէն լեզուոյս, որով հնար է՝ ինքեան

[1] Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 119։
[2] Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 301։
[3] Նույն տեղը, էջ 11։



ձայնիւ, և ոչ մուրացածոյ բարբառով, շահել զօգիս արանց և կանանց առ հասարակ...»[1]։

Պղատոնի

ΞΔCΝΖΗΔΜΩΔΜFΔΝΩΗΝΙΔΓΘΕΛ
ΝΦΔΝΖΔΜΕΝΔΙΝΙΔΓΘΟΓΘΗΝΔΡΔΩΡ
ΝΕΓΦΔΩΕ: Ուրբեւս ΜΗΤΕCΔΝΕΝΕΓ
ΜΗΡΝΩΔCΕΝ: ΕΓΔΙΓΝΔΜΕΝΔΙΝΡΥΛ
ΕΓΧΔΜΡΕ: ΕւΡΗΤΗΧΕC -- Աշխար
ացուցին նկարագրեալ. այսպիսի ΧΔΡΕΩΗՉ
ΔΡΟΡCΗΡΔΓΔՉΗΚ: ΕΓΖΧΡΟΓΝCΔΧΕՉ
ΡՉΗΤΓΌΟՉ: ΟΡՂՎΡΡΝCՉՉΟΓΕΔΤΔ
ΚՎΛΗΝΗ: ΟΡΡΌΟΞCΕΡΜΔΝΕΔΩΜ
ΌΝCΚΕΡΔΚΡΕ: ΔΡΕՉΔΚΝΚΟΓΡΔՉΟՁՃ
ΔՉΕ ΕΓΟՋΜΤΔΝΕ. Թէդպիրէսընթէրցիրև
Թէտգէտոյիմարէցիր:

Հունատառ—հայերեն ծածկագիր գրությունը։

Դիոդորոս Սիցիլիացին (I դ. մ. թ. ա.) հայտնում է, որ Հայաստանի թագավոր Երվանդի (Օրոնտի)՝ Եվմենի վրա ուղարկած կեղծ նամակը գրված է եղել ասորերեն (Συρίοις γεγραμμένη γράμμασιν)[2]։

Այս տեսակետից ուշադրության արժանի է Երուսաղեմի Ազգային Պատրիարքարանի № 1297 ձեռագիրը, որը պարունակում է

[1] Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, էջ 14։
[2] Диодор Сицилийский, գիրք XIX, գլ. 29։

հունատառ հայերեն մի ծածկագիր, որի մեջ տարբեր նշանագրերով գրված են հայկական այն տառերը, որոնք չկան հունարեն այբուբենում։

Այս գրությունը, որի վրա մենք հանգամանորեն կանգ ենք առնելու «Ծածկագրություն» գլխում, առիթ է տալիս մեզ մտածելու, թե արդյոք այդ գրությունը հենց նախամեսրոպյան այն գրությունը չէ՞, որը պահվել է մինչև XIV դարը և անցյալի ավանդական սովորության հիման վրա կրկնվել ծածկագրության մեջ։ Վերջնական խոսք այժմ ասել չենք կարող։

Ի դեպ, 1957 թվականին լույս ընծայված ակադ. Հ. Մանանդյանի «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» երկրորդ հատորում հեղինակը հավանական է համարում, որ Մեսրոպից առաջ գոյություն է ունեցել հայ գրականություն այլ տառանիշերով. «Եվ միանգամայն հավանական կարելի է համարել,— գրում է նա, որ քրիստոնեության սկզբից հենց, ինչպես այդ երևում է աղբյուրների որոշ ակնարկներից, կարող էին փորձ արած լինել ստեղծելու հայերեն դպրություն, գլխավորապես, սեմական լեզուների այբուբենների օգնությամբ, Հարավային Հայաստանում։ Ասորական միսիոներների կամ թերևս իր՝ Դանիելի, այս առաջին փորձը ոչ թե այն էր, որ նրանք այբուբեն էին հնարել հայերեն լեզվի հնչյունաբանությանը համապատասխանող, այլ միայն այն, որ նրանք օտար լեզվի նշանագրերն աշխատել էին կիրառել հայերեն լեզվի համար»[1]։

Ներկա գրերով V դարում ստեղծված հայկական հարուստ մատենագրությունը ամայի անդաստանում չի ստեղծվել, այլ հիմնըված է հին հայկական մշակված գրական լեզվի և անցյալի հարուստ կուլտուրական ժառանգության վրա։

Ամփոփելով մեր կարծիքը նախամեսրոպյան հայ գրի և գրականության մասին, մենք գալիս ենք վճռական այն եզրակացության, որ հեթանոսական Հայաստանում գոյություն է ունեցել հայկական մեհենական գիր և գրականություն, որը ոչնչացվել է ամբողջապես քրիստոնեության կողմից։ Քրիստոնեությունը Հայաստանում ճանաչվելուց հետո մի քանի դար շարունակ գործ են ածել հունարեն և ասորերեն տառանիշերը։

---

[1] Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 258—259։



ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԳՐԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ



այկական գրերի ստեղծման մասին մենք ունենք երեք պատմական սկզբնաղբյուր՝ Կորյունի «Վարք Մաշտոցի», Մովսես Խորենացու «Պատմութիւն Հայոց» և Ղազար Փարպեցու «Պատմութիւն Հայոց» աշխատությունները։ Ուշ միջնադարյան հայ պատմիչների հաղորդած տեղեկությունները, հիմնականում, վերոհիշյալ հեղինակներից վերցրած կրկնություններն են։

Հայկական գրերի ստեղծման մասին վերև հիշված պատմիչներից ամենից ստուգախոսը Կորյունն է։ Եվ դա հասկանալի է. նա եղել է Մաշտոցի աշակերտը, լավատեղյակ է իր ուսուցչի գործունեության հետ և գործուն մասնակցություն է ունեցել հայկական գրերի ստեղծմանը։ Սակայն այդ հիմք չի տալիս թերագնահատելու հայկական մյուս պատմիչների տեղեկությունները, ինչպես վարվում են ոմանք։ Անարդարացի են նաև այն հեղինակները, որոնք թերահավատությամբ են վերաբերվում Կորյունի տեղեկություններին և առաջնությունը տալիս Ղազար Փարպեցուն։ Նշված երեք պատմիչների տեղեկությունների քննական և բազմակողմանի ուսումնասիրության հիման վրա հնարավոր է լինում կազմել հայ գրերի ստեղծման բավականին մանրամասն պատմությունը։

Հայկական ներկա գրերի պատմությունը սերտորեն կապված

է Մաշտոցի[1] անվան հետ, ուստի և անհրաժեշտ ենք համարում մեր ընթերցողին համառոտակի ծանոթացնել Մաշտոցի կյանքի և գործունեության հետ:

Մաշտոցը ծագումով գյուղացի է. նա ծնվել է Տարոն գավառի Հացեկաց գյուղում: Հոր անունն է Վարդան: Այս մասին Կորյունը հետևյալն է գրում. «Առն, զոր ի նախակարգ բանիս նշանակեմք, վասն որոյ և փոյթ արարեալ մեր պատմելոյ, էր Մաշթոց անուն, ի Տարօնական գաւառէն, ի Հացեկաց գեղջէ (ընդգծումը մերն է—Ա. Ա.), որդի առն երանելւոյն Վարդան կոչեցելոյ»[2]:

Մ. Էմինը և Հ. Գաթըրճյանը, հիմնվելով Մաշտոցի հոր Վարդան անվան, ինչպես և Մաշտոցի ծննդավայրը Տարոնը հանդիսանալու փաստերի վրա՝ ազնվական ծագում են վերագրել նրան՝ սերելով Մամիկոնյաններից[3]: Սակայն այս կարծիքը պատմական աղբյուրներով չի հաստատվում: Ճիշտ է, Շիրակացու մոտ կա մի անորոշ ակնարկ այն մասին, որ իբր Մաշտոցը «յազատ տանէ» էր[4], սակայն այդ՝ ավատական պաշտոնական մատենագրության սովորական ձգտումն է ազնվականական ծագում վերագրել հայ մատենագրության ասպարեզում աշխատող աչքի ընկնող դեմքերին: Շիրակացու այդ ակնարկը զուրկ է պատմական հիմքից:

Անհիմն է նաև հայագիտության մեջ արտահայտված մյուս տեսակետը, որ իբր Մաշտոցը «կարճազատ»-ի՝ ճորտ գյուղացու որդի է եղել: Տվյալ եզրակացության համար հիմք է ծառայել Փավստոս Բյուզանդի մի վկայությունը՝ Հացեկաց գյուղը «կարճազատ» գյուղ անվանելու մասին[5]: Բայց Փավստոսի մոտ «կարճազատ» բառը ունի ո՛չ թե «ճորտական» գյուղ, այլ «սահմանափակ ազատություն ունեցող» գյուղ իմաստը, որից գուցե կարելի լինի ենթադրել, որ այն ֆեոդալական կախվածության մեջ ընկած գյուղ է եղել:

[1] Մաշտոց անունը ձեռագրերում մեզ հանդիպում է տարբեր ուղղագրություններով՝ «Մաժդոց», «Մաշտոց», «Մաշթոց»: Որոշ հեղինակներ (Խորենացի, Շիրակացի և ուրիշներ) Մաշտոցին հիշում են Մեսրոպ անունով, որը, հավանական է, Մաշտոցի կրկնանունն է:

[2] Կորյուն, Վարք Մաշտոցի, հրատարակություն պրոֆ. Մ. Աբեղյանի, Երևան, 1941, էջ 36:

[3] Н. О. Эмин, Исследования и статьи, Москва, 1896, էջ 206: Հ. Գաթըրճյան, Տիեզերական պատմություն, Վիեննա, հատ. Բ, 1852, էջ 253:

[4] Ա. Աբրահամյան, Անանիա Շիրակացու Մատենագրությունը, Երևան, 1944, էջ 389:

[5] Փավստոս Բյուզանդ, Վենետիկ, 1889, էջ 111, գլ. ԺԹ:



Բոլոր դեպքերում, վերև բերված երկու կարծիքներն էլ ծայրահեղություններ են, սկզբնաղբյուրների հիման վրա մենք կարող ենք միայն հաստատապես ասել, որ Մաշտոցը եղել է աշխատավոր գյուղացու որդի:

Կորյունի տեղեկությունից երևում է, որ Մաշտոցը մանուկ հասակում հունական կրթություն է ստացել. «ի մանկութեան տիոն վարժեալ հելլենական դպրութեամբ»[1]: Եթե հավատալու լինենք «Պատմութիւն սրբոյն Ներսիսի» անվավերական մի գրության տեղեկության, Մաշտոցը սովորել է Ներսես Մեծի մոտ[2]: Սակայն, ինչպես իրավացի նկատել են պրոֆ. Գ. Խալաթյանը[3] և ապա. Հ. Մանանդյանը[4], այդ տեղեկությունը ստույգ չէ, քանի որ անհնար է, որ այդ մասին լռեր Մաշտոցի կենսագիրը: Ավելի հավանական է պրոֆ. Ն. Ադոնցի ենթադրությունը[5], որ Մաշտոցը սովորել է Անտիոքի հունական նշանավոր դպրոցում, որի ուսուցչապետն էր հայտնի իմաստասեր և ճարտասան Լիբանիոսը: Վերջինիս դպրոցի սաներից են եղել վաղ քրիստոնեության աչքի ընկնող մի շարք տեսաբաններ՝ Հովհաննես Ոսկեբերանը, Բարսեղ Կեսարացին, Գրիգոր Նազիանզացին, Թեոդորոս Մոպսուեստացին, Ամֆիլոքիոս Հալկացին (որը Անտիոքի համալսարանի ուսուցչապետն էր) և ուրիշներ: Մաշտոցի՝ Անտիոքի դպրոցում սովորելու օգտին է խոսում Թեոդորոս Մոպսուեստացու մտերմությունը Մաշտոցին, որը հատուկ աշխատություն է գրել Մաշտոցի համար մոգակրոնության մասին:

Բանասեր Հ. Գաթըրճյանը Մաշտոցի ծննդյան թվականն է համարում 361-ը. «Մեսրոպ... ծնեալ յամի 361»[6]: Նույն տեսակետն է պաշտպանում Հ. Ակինյանը[7]: Պրոֆ. Աճառյանը ենթադրում է, որ Մաշտոցը ծնված պիտի լինի 360 թվականին[8]:

[1] Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 36:

[2] «Սոփերք հայկականք», Է, Վենետիկ, 1853, էջ 28:

[3] Н. О. Эмин, Исследования и статьи, էջ 206:

[4] Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, էջ 250:

[5] Ն. Ադոնց, Անծանոթ էջեր Մաշտոցի և նրա աշակերտների կյանքից՝ ըստ օտար աղբյուրների («Հանդէս ամսօրեայ», 1952, էջ 195):

[6] Հ. Գաթըրճյան, Տիեզերական պատմութիւն. հատ. Բ, էջ 523:

[7] Ն. Ակինյան, Ս. Մաշտոց վարդապետ, Վիեննա, 1949, էջ 26:

[8] Հ. Աճառյան, Մեսրոպ Մաշտոց («Էջմիածին», 1954, № 11, էջ 30):

Մաշտոցի ծննդյան տարեթվի մասին թեպետ հաստատուն տվյալներ չկան, սակայն տոմարական որոշ հաշիվներ հիմք են տալիս ենթադրելու, որ նշված գիտնականների հաշվումները մոտավորապես ճիշտ են—Մաշտոցը ծնված պետք է լինի 361—364 թվականներին (այս մասին խոսք կլինի առջևում)։

Հացեկացի երիտասարդը, տեղում կրթություն ստանալուց հետո, գալիս է Վաղարշապատ և ծառայության մտնում Խոսրով Երրորդի (383/4—388/9 թթ.) արքունիքում իբրև դիվանադպիր Առավան հազարապետի ձեռքի տակ։

Մաշտոցն իր ժամանակի կրթված անձնավորություններից մեկն է եղել։ Այն փաստը, որ նա կարողացել է դպրի պաշտոնով, առանց դժվարությունների, աշխատանքի ընդունվել արքունիքում, վկայում է նրա բարձր պատրաստականության մասին։

Սկզբնաղբյուրներում եղած ակնարկներից կարելի է ենթադրել, որ Մաշտոցը արքունիքում որոշ ժամանակ դիվանադպրի պաշտոնում ծառայելուց հետո անցնում է զինվորական ծառայության։ Բայց այստեղ ևս երկար չի մնում։ Շուտով նա թողնում է արքունիքի իր պաշտոնը և հոգևոր կոչում ընդունում՝ միաբանելով Գողթնի վանքերից մեկում։ Պրոֆ. Մ. Աբեղյանը ենթադրում է, որ նա միաբանած պետք է լինի Երնջակ գավառի Մեսրոպավանք կամ Մարավանք գյուղում[1]։ Ըստ Կորյունի, Մաշտոցի՝ զինվորական ծառայությունը թողնելը և հոգևոր կոչում ընդունելը տեղի է ունեցել Վռամ Դ Կրմանի չորրորդ տարին, այսինքն՝ 391/2 թվականին (Վռամ Դ-ն գահակալել է 388 օգոստոս—389 հուլիս տարում)։

Հոգևորական դառնալուց հետո Մաշտոցը արագ բարձրանում է եկեղեցական հիերարխիայի սանդուղքով և հասնում քորեպիսկոպոսության աստիճանի՝ զբաղվելով շրջիկ քարոզչությամբ։ Պետք է նկատի ունենալ, որ այդ ժամանակ հեթանոսությունը բավականաչափ ամուր հիմքեր ուներ Հայաստանի լեռնային շրջաններում, և նման քարոզչության աշխատանքի կարիքը խիստ զգացվում էր։

Ենթադրվում է, որ Թեոդորոս Մոպսուեստացին 391/2 թվականին է գրել մոգակրոնության մասին իր աշխատությունը Մաշտոցի համար, որովհետև տվյալ աշխատության վերնագրում Մաշտոցն անվանված է «քորեպիսկոպոս» (Χωρεπίσκοπος), իսկ ինքը Թեոդորոսը՝ «երեց» (πρεσβυτέρος)[1]։

[1] Մ. Աբեղյան, Մեսրոպ Մաշտոցը և հայ գրի ու գրականության սկիզբը («Սովետական գրականություն», 1941, № 1, էջ 48)։



Մեզ հայտնի է, որ Մաշտոցը քորեպիսկոպոսի կոչում է ստացել 391/2 թվականներին, իսկ Թեոդորոսը քահանայության աստիճանում մնացել է մինչև 383 թվականը, իսկ այնուհետև՝ Մոպսուեստի եպիսկոպոս, հետևապես, այդ անգի պիտի ունեցած լինի 391/2 թվականներին[2]։

Մաշտոցի առաջին գործն է լինում քարոզչության մեկնել Գողթն գավառը։ Այստեղ է, որ նա, մոտիկից շփվելով ժողովրդի հետ, տեսնում է, թե ինչպես հունական և ասորական ազդեցությունները սպառնում են տեղական կուլտուրային։

Եվ Մաշտոցը, տեսնելով այս ամենը, խոր վիշտ է զգում. «... յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշտոց՝ տեսանելով զմեծ ջանն և զառաւելապէս ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս, որք բազում թոշակօք և հեռագնաց ճանապարհօք և բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեանն»[3]։ Նա ըմբռնում էր այն պարզ ճշմարտությունը, որ հունարեն և ասորերեն լեզուների գերիշխող այդ վիճակը վնասակար կարող է լինել հայ ժողովրդի համար։ Եվ դրա դեմ կռվելու լավագույն միջոցը՝ սեփական գիր և գրականություն ստեղծելն էր։

Մաշտոցը Գողթնից վերադառնալուց հետո լինում է կաթողիկոս Սահակ Պարթևի մոտ և պատմում ժողովրդի ծանր վիճակի մասին ու հայտնում իր մտահոգությունը՝ հայերեն գրերի ստեղծման գործին ձեռնարկելու մասին։ Այնուհետև Սահակ կաթողիկոսը, Մաշտոցի հետ միասին, դիմում է Վռամշապուհ թագավորին։ Վերջինս հավանություն է տալիս նրանց մտադրությանը և հայտնում, թե ինքը տեղեկություն ունի, որ Աղձնիքի Արզն քաղաքի Դանիել եպիսկոպոսն արդեն ունի կազմած հայերեն գրեր։ Որոշվում է բերել տալ այդ գրերը։ Դանիելից գրեր բերելու համար ուղարկում են Վահրիճ անունով մեկին, որը գնում է Դանիելի բարեկամ Հաբել քահանայի մոտ և վերջինիս միջոցով բերել տալիս դանիելյան գրերը։ Այս տեղի է ունեցել, ըստ վարքագրի տեղեկության, Վռամշապուհի գահակալության հինգերորդ տարին, այսինքն՝ 406—407 թվականներին[4]։

[1] Photii biblioteca, 81 (Migne, Patrologia graeca, 103, 281)։—Հմմտ. Ն. Ադոնց, Մաշտոց և նրա աշակերտները, էջ 7—8։

[2] Հ. Աճառյան, Մեսրոպ Մաշտոց, «Էջմիածին», 1954, № 11, էջ 26։

[3] Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, էջ 13։

[4] Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 44։

Մաշտոցը դպրոց է բաց անում, աշակերտներ հավաքում և սկսում պարապել դանիելյան այս գրերով։ Սակայն երկու տարի («ամս երկու». պրոֆ. Հ. Աճառյանի կարծիքով՝ երկու ամիս «ամիսս երկու») այդ տառերով պարապելուց հետո տեսնում են, որ նրանք մեծ թերություններ ունեն և չեն արտահայտում հայկական հարուստ լեզվի հնչյունական առանձնահատկությունները[1]։

Այբուբենի այս պակասը լրացնելու նպատակով, Մաշտոցը Սահակի հանձնարարությամբ, իր հետ վերցնելով մի խումբ աշակերտներ, մեկնում է Միջագետք՝ հայկական համապատասխան այբուբենն այնտեղ ստեղծելու նպատակով։

Միջագետքն այդ ժամանակ փայլում էր իր բարձրագույն դպրոցներով։ Այնտեղ էին գտնվում ականավոր գիտնականներ[2]. Եդեսիայում այդ ժամանակ գործում էր պարսկական նշանավոր դպրոցը՝ Իբասի գլխավորությամբ, Ամիդի դպրոցը՝ Ակակիոսի գլխավորությամբ, և այլն[3]։

Մաշտոցը լինում է Ամիդ և Եդեսիա քաղաքներում։ Նա արտակարգ լավ ընդունելություն է գտնում այդ վայրերի հույն և. ասորի մտավորականների կողմից։ Իր հետ տարած աշակերտներին նա բաժանում է երկու խմբի՝ մի մասին հանձնարարում է հունարեն սովորել, իսկ մյուսին՝ ասորերեն, իսկ ինքը, տեղացի գիտնականների աջակցությամբ, զբաղվում է հայկական այբուբենի ձևավորումով։

Պրոֆ. Ն. Ադոնցը, Փոտ պատրիարքի «Գրադարան» աշխատության մեջ հայտաբերած Թեոդորոս Մոպսուեստացու աշխատություններից մեկի վերը հիշված համառոտագրության մեջ, որը, ինչպես ասացինք, նվիրված է եղել Մաշտոցին, եկել է այն եզրակացության, որ Մեսրոպը դպրոցական շրջանից, ծանոթության մեջ գտնվելով Թեոդորոս Մոպսուեստացու՝ քրիստոնեական աղանդապետ Նեստորի ուսուցչի հետ, և, հավանական է, նրա օգնությամբ էլ կազմել է հայկական այբուբենը[4]։

Մաշտոցը, հայկական այբուբենը ստեղծելուց հետո, հայկական գրերը ձևավորել է տալիս Սամոսատ քաղաքում (Եփրատի վրա), Հռուփանոս Rufinus անունով մի գեղագրի միջոցով։

---

[1] Հ. Աճառյան, երկու ուղղում Կորյունի մեջ (Տեղեկագիր ԱրմՖանի, 1941, № 1 (6), էջ 170)։

[2] Հ. Աճառյան, Մեսրոպ Մաշտոց, «Էջմիածին», 1954, № 1, էջ 25։

[3] Peeters, Revue des études arméniennes, № 9, էջ 209։

[4] Ն. Ադոնց, Անծանոթ էջեր Մաշտոցի և նրա աշակերտների կյանքից՝ ըստ օտար աղբյուրների («Հանդէս ամսօրեայ», 1952, էջ 195)։



Հայկական այբուբենն ստեղծելու աշխատանքն ավարտելուց հետո Մաշտոցն իր երկու աշակերտների՝ Հովսեփ Պաղնացու և Հովհան Եկեղեցացու օգնությամբ, նորաստեղծ նշանագրերով հայերին է թարգմանում Սողոմոնի առակները, որը մանր խրատական ասացվածքներ է պարունակում և հարմար էր նորակիրթ երեխաներին դաստիարակելու համար, ու մեծ հանդիսավորությամբ վերադառնում է Հայաստան։

Կորյունի տեղեկություններից երևում է, որ գրերի ստեղծմանը բացառիկ մեծ նշանակություն է տրվել Հայաստանում. Վաղարշապատ վերադառնալիս Մեսրոպին դիմավորելու են դուրս գալիս թագավորն ու կաթողիկոսը, «առեալ զամենայն նախարարազունդ ուագանւոյն ամբոխ»[1]։

Հայկական նշանագրերը Միջագետքից բերելուց հետո Մաշտոցը և Սահակը բաց են անում դպրոցներ և զբաղվում դաստիարակությամբ։

Մաշտոցը նախ կարգավորում է մայրաքաղաքի՝ Արտաշատի, դպրոցական գործերը և ապա մեկնում Գողթն, «յառաջին դաստակերտին իւր»։ Այստեղ նա, տեղի իշխան Շաբիթի աջակցությամբ, հավաքում է երեխաներ և դպրոցներ հիմնում։ Ապա մեկնում է Սյունիք, նույնը կատարում նաև այնտեղ՝ Վասակ Սյունեցու օգնությամբ։ Այնուհետև նա պտտում է Արևելյան Հայաստանի մյուս շրջանները և ամենուրեք նոր դպրոցներ բաց անում։

Արևելյան Հայաստանում նորաստեղծ գիրը գործածության մեջ դնելուց հետո անհրաժեշտ էր այն գործածության մեջ դնել նաև Արևմտյան Հայաստանում՝ մյուս «... կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հոռոմոց»[2]։ Մաշտոցի այդ ուղղությամբ կատարած առաջին փորձն անհաջողությամբ է վերջանում. տեղական իշխանության ներկայացուցիչները թույլ չեն տալիս նրան դպրոցներ բաց անել։ Մաշտոցը հարկադրված է լինում իր հետ տարած աշակերտներին թողնել Մելիտինեի Ակակիոս եպիսկոպոսի մոտ և մեկնել Բյուզանդիոն՝ Թեոդոս Բ կայսեր (408—450 թթ.) թույլտվությունը ստանալու։

Բյուզանդական կայսրության քաղաքական վիճակն այդ ժամանակ այնպիսին էր, որ նա հայերի նկատմամբ վերցրել էր սիրաշահելու քաղաքականություն, ուստի կայսրն ընդառաջում է Մաշտոցի խնդրանքին և անդամ հանձն է առնում դպրոցների

---

[1] Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 54։

[2] Նույն տեղը, էջ 64։

*ծախսերը վերցնել արքունիքի վրա։ Մաշտոցն իր աշակերտներով պտտում է Արևմտյան Հայաստանում և մի շարք վայրերում դպրոցներ բաց անում։*

*Մաշտոցի՝ Արևմտյան Հայաստան գնալու և դպրոցներ բաց անելու այս փաստը տեղի պետք է ունեցած լինի ոչ շուտ, քան 419—420 թվականներին, որովհետև Ակակիոսը Մելիտինեի եպիսկոպոս է կարգվել այդ թվականներին և ոչ ուշ 425 թվականից, որովհետև Մաշտոցը Կոստանդնուպոլսում հանդիպում է ունեցել Ատտիկոս պատրիարքի հետ, իսկ վերջինս մահացել է 425 թվականի հոկտեմբերի 10-ին։*

*Սակայն Մաշտոցը միայն դպրոցներ բաց անելով չէ, որ զբաղվում է։ Նա Սահակ Պարթևի և իր աշակերտների հետ միասին ձեռնարկում է թարգմանական խոշոր աշխատանքի. թարգմանում են ինչպես ասորերենից, այնպես էլ հունարենից։ Թարգմանիչների շարքումն են գտնվել հայ երկու ականավոր մատենագիրներ՝ Եզնիկ Կողբացին և Կորյունը։*

*Ե՞րբ է տեղի ունեցել հայկական գրերի ստեղծումը։ Այս հարցի մասին հայագիտության մեջ տարբեր կարծիքներ են հայտնվել։*

*Բանասեր Գալուստ Տեր-Մկրտչյանը, մանրակրկիտ ուսումնասիրելով սկզբնաղբյուրները, եկել է այն եզրակացության, որ դանիելյան] գրերի ստեղծումը տեղի է ունեցել 405 թվականին, իսկ Մաշտոցի կատարած լրացումը և կատարելագործումը՝ 412—416 թվականներին[1]։*

*Տեր-Մկրտչյանի տեսակետը ժամանակին պաշտոնապես ընդունելություն է գտել հայագիտության մեջ, և 1912 թվականին (հոկտեմբերի 12—13-ին) Էջմիածնում և Օշականում նշվել է հայկական գրերի ստեղծման 1500-ամյա հոբելյանը։*

*Պրոֆ. Ն. Ադոնցը, հիմնվելով այն փաստի վրա, որ Թեոդորոս Մոպսուեստացին աշխատություն է նվիրել Մաշտոցի գործունեությանը, ենթադրում է, որ Մաշտոցը հայկական այբուբենը կազմած պետք է լինի Թեոդորոս Մոպսուեստացու օգնությամբ Եդեսիայում, նրա քահանայության տարիներին՝ 383—392 թվականներին։ Նրա կարծիքով հայերեն գրերի ձևավորողը Թեոդորոսի աշակերտ Հռուփանոսն է եղել[2]։*

[1] *Գ. Տեր-Մկրտչյան, Հայկական գրության 1500-ամյակի առթիվ («Արարատ», 1912, էջ 499—511)։*

[2] *Ն. Ադոնց, Անծանոթ էջեր Մաշտոցի և նրա աշակերտների կյանքից («Հանդէս ամսօրեայ», 1925, էջ 439)։*



*Ակադ. Հ. Մանանդյանն անվերապահ ընդունում է պրոֆ. Ն. Ադոնցի այս կարծիքը փոքրիկ ուղղումով, կոնկրետ թվական ընդունելով Թեոդորոս Մոպսուեստացու կյանքի վերջին տարին՝ 392 թվականը[1]։*

*Հ. Ն. Ակինյանը հայկական գրերի ստեղծման թվականը համարում է 406—407 թվականները և գտնում, որ հայերեն նոր գրերը Միջագետքից Հայաստան են բերվել 407—408 թվականներին[2]։*

*Մեր կարծիքով, ամենից հավանական տեսակետը վերջինն է, և այս էլ պետք է ընդունել հետևյալ նկատառումով.*

*1) Կորյունի աշխատության վերջաբանում ասված է, որ հայկական գրերը ստեղծվել են Մաշտոցի մահվանից 35 տարի առաջ՝ «Ի դպրութենէն Հայոց մինչև ցվախճան Սրբոյն (այսինքն՝ Մաշտոցի—Ա. Ա.)՝ ամք երեսուն և հինգ»։ Տոմարական անվիճելի հաշիվներով պարզված է, որ Մաշտոցը մահացել է 440 թվականի փետրվարի 17-ին. եթե գրերը ստեղծվել են Մաշտոցի մահվանից 35 տարի առաջ, ապա հայկական գրերի ստեղծումը տեղի պետք է ունեցած լինի 406 թվականին։*

*2) Կորյունը, նույն վերջաբանում, գրերի ստեղծման թվականը հիշում է նաև Հազկերտ Առաջինի թագավորության ութերորդ տարին։ Հազկերտը գահ է բարձրացել 399 թվականին. նրա ութերորդ տարին դարձյալ համապատասխանում է 406 թվականին։*

*3) Կորյունի աշխատությունից հայտնի է, որ Մաշտոցը Միջագետքում գտնված ժամանակ հանդիպում է Ակակիոս և Բաբիլաս եպիսկոպոսներին։ Ակակիոսը Ամիդում եպիսկոպոսական աթոռի վրա է գտնվել 400—409 թվականներին, իսկ Բաբիլաս անունը ենթադրվում է, որ աղավաղված է և պետք է եղած լինի Պակիդաս[3], ինչպես առաջարկել է Հ. Ն. Ակինյանը, իսկ Պակիդասը՝ Եդեսիայի եպիսկոպոս է եղել 398—409 թվականներին[4]։*

*Ահա այս փաստերը մեզ հիմք են տալիս ենթադրելու, որ հայկական գրերի ստեղծման հավանական թվականը պետք է համարել 406—407 թվականները։*

[1] Я. А. Манандян Месроп-Маштоц и борьба армянского народа за культурную самобытность, Ереван, 1941, էջ 26։

[2] *Ն. Վ. Ակինյան, Ս. Մաշտոց վարդապետ, էջ 108։*

[3] *Կորյուն, Վարք Մաշտոցի («Հանդէս ամսօրեայ», 1935, էջ 512)։*

[4] Braun, Das Buch der Synhados, էջ 1587—1588։

Մաշտոցը մահացել է 440 թվականի մեհեկան ամսի 13-ին, շաբաթ օրը, որը ներկա ամսաթվով (հաշվելով շարժական օրերի քանակը) փետրվարի 17-ն է, և թաղվել է Օշական գյուղում: Մահվանից 3 տարի հետո Վահան Ամատունին նրա շիրիմի վրա կանգնեցրել է «խորան տաշածոյ վիմօք»[1]:

Մաշտոցի կյանքի և գործունեության հայտնի թվականների հիման վրա կարելի է մոտավոր ճշտությամբ պարզել նաև նրա ծննդյան տարին:

Մեզ հայտնի են Մաշտոցի կյանքի և գործունեության հետ կապված հետևյալ թվականները.

391/2 թ.—եկեղեցական կոչում է ընդունում:

392/3 թ. — Թեոդորոս Մոպսուեստացին աշխատություն է գրում նրա համար:

406/7 թ.—գրերն է ստեղծում Միջագետքում:

407/8 թ.—նորաստեղծ գրերը բերում է Հայաստան:

420—425 թթ.— դպրոցների բացումը Արևմտյան Հայաստանում:

440 թ.—մահը:

Ծննդյան ժամանակը որոշելու համար կարևոր են սկզբի և վերջի թվականները:

Մենք տեսանք, որ եպիսկոպոսության աստիճան է շնորհված Մաշտոցին 391 թվականին: Այդ ժամանակ Մաշտոցը պետք է որ բավականին հասուն, կազմակերպված անձնավորություն եղած լիներ: Եթե ընդունենք, որ նա այդ թվականին եղել է 30—34 տարեկան, ապա նա ծնված պետք է լինի 360—364 թվականներին:

Մաշտոցը մահացել է 440 թվականին, ծերության հասակում: Եթե ընդունենք, որ մահվան տարին նա 80—84 տարեկան ծերունի է եղել, ուրեմն նրա ծննդյան ժամանակը դարձյալ համընկնում է 360—364 թվականներին:

* * *

Հայկական գրության պատմության հետ կապված մյուս կարևոր հարցը՝ հայկական գրության սկզբնաղբյուրի խնդիրն է, այսինքն՝ այն այբուբենի հարցը, որի տառաձևերը և սիստեմը օգտագործվել են հայկական գրության ստեղծման ժամանակ:

[1] Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 94:



Այս հարցի մասին հայագիտության մեջ տարբեր կարծիքներ են հայտնվել: Կանգ առնենք նրանցից կարևորների վրա:

Չամչյանի կարծիքով Մաշտոցը ոչ մի գրությունից չի օգտվել և բոլոր տառանիշերն էլ ինքն է ստեղծել: Նա գտնում է, որ մի մարդու համար, որը կարող էր հարևան վրացիների և աղվանների համար ինքնուրույն գիր ստեղծել, դժվար չէր իր ժողովրդի համար տառանիշեր ստեղծել առանց ուրիշից օգտվելու[1]:

Ղազարոս Աղայանը գտնում է, որ հայկական այբուբենի 22 տառեր ասորա-բաբելական ծագում ունեն, 7 տառ հետագայում Մեսրոպն է ավելացրել: Մյուս յոթ տառերի վրայով նա լռությամբ է անցնում[2]:

Հյուբշմանը ենթադրում է, որ Մաշտոցի՝ Դանիելից վերցրած գրերը, թվով 22, հունական են եղել, իսկ մնացած 14 նշանագրերը ինքն է ստեղծել[3]:

Ի. Հարությունյանի կարծիքով, հայկական այբուբենի 22 տառանիշեր փյունիկեցիներից է վերցված, 2 տառանիշ՝ հունարենից, իսկ մնացած 12 տառանիշերն ինքն է ստեղծել[4]:

Բ. Սարգիսյանը ենթադրում է, որ հայկական այբուբենը երեք տարբեր այբուբենների խառնուրդ է՝ ասորերենի, պարսկերենի և հունարենի՝ ասորերենից վերցրել է 2 տառանիշ, պարսկերենից՝ 12 տառանիշ և հունարենից՝ 22 տառանիշ[5]:

Եվրոպացի հայագետ Մյուլլերը, որը հայկական գրի ատաղձի մասին խոսել է իր երեք հոդվածներում, գտնում է, որ դանիելյան 22 տառերը, որոնք օգտագործել է Մաշտոցը, ասորական ծագում են ունեցել (վերցվել են պալմիրականից) և 7 ձայնավոր ու 7 բաղաձայն տառեր վերցվել են զենդական այբուբենից[6]:

Պրոֆ. Հ. Աճառյանը, որ ամենից հանգամանորեն քննել է հայ գրերի սկզբնավորության հարցը, եկել է այն եզրակացության, որ հայկական այբուբենի 20 տառերը հունարենից են վերցված,

[1] Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հատ. Ա, էջ 700—701:

[2] Տես «Մուրճ» ամսագիր, 1890, էջ 1587—1588:

[3] Hübschmann, Über Aussprache und Umschreibung der Altarmenischen (ZDMG, 1876, էջ 63):

[4] Ի. Հարությունյան, Հայոց գիրը, էջ 309—314:

[5] Տե՛ս «Բազմավէպ», 1889, էջ 34—35:

[6] Müller, Über den ursprung der arm. Schrift, SWAW, 48,438 և մյուս հոդվածները:

4—6-ը՝ հայկական են, իսկ մնացածը՝ իրանական կամ ասորական ծագում ունեն[1]։

Ն. Ակինյանը ենթադրում է, որ հայկական 36 տառերից 33-ը հունարենից են վերցված, իսկ երեքը՝ ասորերենից։ Ասորերենից, նրա կարծիքով, Մաշտոցը վերցրել է «Հ», «Ծ» և «Խ» տառաձևերը[2]։

Հայկական նշանագրերի սկզբնաղբյուրին անդրադարձել ենք նաև մենք մեր «Հայկական պալեոգրաֆիա»-յի մեջ[3] և այն տեսակետը պաշտպանել, որ հայկական այբուբենը կազմված է երկու շերտից, որոնցից առաջինը, թվով 24 տառանիշ, դանիելյան գրերն են, իսկ երկրորդը, թվով 12, Մաշտոցի լրացրած տառերը։ Անհրաժեշտ ենք համարում ստորև բերել հունական և հայկական այբուբենների համեմատությունը։

Դանիել Ասորին իր այբուբենը կազմել է հունականի վրա՝ սկզբունք ունենալով ձևափոխել հունական տառերը։ Այս հիման վրա նա հունական որոշ տառեր շուռ է տվել այս կամ այն կողմը, որոշ տառերի ելուններ է ավելացրել, ձևափոխել է սյունագծերը և այլն։ Բայց նա չի փոխել հունական տառերի հնչյունները, ինչպես և նրանց վրա չի ավելացրել ոչ մի նոր հնչյուն։

Նման այբուբենը, պարզ է, չէր կարող համապատասխանել հայկական լեզվի առանձնահատկություններին։ Այդ շուտով զգում են Սահակը և Մեսրոպը՝ Դանիելի այբուբենը դպրոցում գործածության մեջ դնելուց հետո։ Անհրաժեշտ էր ստեղծել հայկական լեզվին համապատասխան նոր տառանիշեր և տառահնչյուններ։ Այդ կարևոր գործն իր վրա է վերցնում ինքը Մաշտոցը։ Նա ուսումնասիրում է հայկական լեզուն և լրացուցիչ ստեղծում վերև հիշված 12՝ հայկական լեզվին հատուկ հնչյունները, որոնք չկային հունարենում։

Ուշադրության արժանի է այն, որ Մաշտոցը Դանիելի այբուբենի վրա ավելացրած իր տառերը պատահական, մտացածին ձևով չի ստեղծել, այլ հիմք է ունեցել Դանիելի այս կամ այն տառը՝ իր ձևած տառանիշերը դնելով նախագաղափար տառի կողքին։

[1] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 271։

[2] Հ. Աճառյան, Մաշտոց վարդապետ Հացեկացի («Հանդէս ամսօրեայ», 1935, էջ 512)։

[3] Ա. Աբրահամյան, Հայկական պալեոգրաֆիա, էջ 34—35։



| Հունական մայրեր V դարի | Հին հայկական տառեր V դարի | |
|---|---|---|
| Λ | Ա | —Կորված է ալֆայի վերևից։ |
| Β | Բ | —Կորված է բետայի աջ երկու դարձվածքները։ |
| Γ | Գ | —Գամմայի աջևից կլոր է ավելացված։ |
| — | Դ | —Ծագել է հայկական «Գ»-ից։ |
| Є | Ե | —Կորված է վերին կտուցը։ |
| Ζ | Զ | —Զետայի վերևում կլոր է միացված։ |
| Η | Է | —Կորված է էտայի աջ սյունագիծը և ձախից պոչ ավելացված։ |
| — | Ը | —Ծագել է հայկական «Է»-ից։ |
| Θ | Թ | —Թետայի կլորը բաց է արված։ |
| — | Ժ | —Ծագել է հայկական «Թ» տառից. նրա աջ կորված թեն է։ |
| Ι | Ի | —Իոտայի սյունագծին թև է ավելացված։ |
| Λ | Լ | —Շուռ է տրված լամդա տառը։ |
| — | Խ | —Ծագել է հայկական «Ի»-ից։ |
| — | Ծ | —Ծագել է հայկական «Ձ»-ից։ |
| Κ | Կ | —Կորված է կապպայի աջ թեքվածքի և սյունագծի կեսը։ |
| — | Հ | —Ծագել է հայկական «Կ»-ից։ |
| — | Ձ | —Ծագել է հայկական «Զ»-ից։ |
| — | Ղ | —Ծագել է հայկական «Լ»-ից։ |

| | | |
|---|---|---|
| Δ | Դ | —Դելտայի վերևից փոքրիկ պոչիկ է ավելացված։ |
| Μ | Մ | —Շուռ է տրված մու տառը և ելուն ավելացված։ |
| Ω | Յ | —Օմեգան նստեցված է։ |
| Ν | Ն | —Նստեցված է նու տառը և վրան ելուն դըրված։ |
| Ξ | Շ | —Կտրված է քսի տառի վերին բարդությունը։ |
| Ο | Ո | —Կտրված է օմիկրոնի ներքևից։ |
| — | Չ | —Ծագել է հայկական «Ո»-ից։ |
| Π | Պ | —Պիի վերին գիծը երկարացված է և կեռ ըստեղծված։ |
| — | Ջ | —Ձևված է հունական koppa-յի (90-ի թվանշանագրի հիման վրա)։ |
| — | Ռ | —Կազմված է երկու «ր»-երի միացումից։ |
| C | Ս | —Սիգման նստեցված է։ |
| Ϋ | Վ | —Ձևված է պսիի հիման վրա։ |
| Τ | Տ | —Վերին ձախ թևը կտրվել է և ավելացվել վերևից։ |
| Ρ | Ր | —Րհոյի վերին կլորը բաց է արված։ |
| — | Ց | —Կազմված է հունական sampl (900-ի թվանշանագրից)։ |
| Υ | Ւ | —Ձախ թևը սյունագիծ է դարձված, իսկ աջը վեր է ածված թևի։ |
| Φ | Փ | —Կազմված է աննշան փոփոխություններով։ |
| Χ | Ք | —Ուղղահայաց ձև է տրված և վրան գլուխ դրված։ |



Հույն-հայերեն տառաձևերի վերև բերված համեմատությունը մեզ բերում է հետևյալ եզրակացության.

1. Միանգամայն ճիշտ է Խորենացու տեղեկությունը, որ հայկական այբուբենի հիմքը Դանիել Ասորու տառերն են հանդիսացել, որոնք ստեղծված են եղել «ըստ ձևոյ օրինակին հունականին» (էջ 326)։ Ճիշտ է նաև Կորյունի տեղեկությունը, որ Դանիելը «ի յայլոց դպրութեանց թաղեալ և յարուցեալ գիւտեցաւ» (էջ 46), միայն այս նախադասության մեջ անհրաժեշտ է գրչական երկու ուղղում կատարել՝ «թաղեալ» բառն ուղղել «քաղեալ» ձևով, ինչպես ունեն Կորյունի հնագույն բնագրերը[1] և «յարուցեալ» բառն ուղղել «յանկուցեալ» ձևով[2], այսինքն՝ հարմարեցված, ինչպես հանդիպում ենք Կորյունի մոտ մի այլ կապակցությամբ («[գնշանագիրսն] յօրինեալ և յանկուցեալ») (էջ 50)։

Իրապես, անմտություն կլինի մտածել, թե Դանիելը այլ դպրությունից վերցրած տառերը թաղել էր գետնի տակ և հետո «հարություն տվել» (!)։ Կորյունի մոտ պարզապես ասված է, որ Դանիելի տառերը «քաղված էին այլ դպրությունից և հարմարեցված», մի իրողություն, որ չի կարելի այժմ ժխտել տառաձևերի վերև բերված համեմատությունը տեսնելուց հետո։

2. Դանիել Ասորին հունական այբուբենից վերցրել է հետևյալ 24 տառերը. «ա, բ, գ, դ, ե, զ, է, թ, ի, լ, կ, մ, յ, ն, շ, ո, պ, ր, ս, վ, տ, ւ, փ, ք»։ Պարզվում է, որ տառաքանակի մասին հայ մատենագրության մեջ հաղորդվող տեղեկություններից հավաստին պահվել է Դավիթ Անհաղթին նվիրված այն հանելուկի մեջ՝ «Զափ հասակի իմոյ երկիցս երկոտասան, այժմ եմ երիցս երկոտասան»[3], այսինքն՝ առաջ հայկական այբուբենը բաղկացած էր 24 տառից ($12\times2$), իսկ այժմ՝ 36 տառից ($12\times3$)։

3. Դանիելը հայկական տառերը հունական կաղապարով ձևելու որոշակի սկզբունք է ունեցել՝ տառերը չվերցնել նույնությամբ, այլ փոփոխություն կատարել. տեղ-տեղ կտրել է, բաց է արել տառերի կլոր մասերը, տեղ-տեղ ելուններ է ավելացրել, մի քանի տառ շուռ է տվել և այլ փոփոխություններ կատարել։ Բայց նա աշխատել է հարազատությամբ պահպանել հունական տառերի հընչյունական արժեքը։

[1] Կորյունի հնագույն այդ տեքստերն ընդօրինակված են XIII—XIV դարերի գրչություն ունեցող ՀՊՄ № 3787 և № 3797 ձեռագրերից։

[2] Այս ուղղումն առաջարկել է Հ. Ն. Ակինյանը (տես «Ս. Մեսրոպ Մաշտոց», էջ 241)։

[3] «Բազմավէպ», 1948, էջ 192։

4. Դանիել Ասորու այս այբուբենը չէր համապատասխանում հայկական լեզվի հնչյունական առանձնահատկություններին. պակասում էին այն տառերը, որոնք բնորոշ էին հայոց լեզվին և որոնք չկային հունարեն այբուբենում. դրանք հետևյալներն էին. «ը, ժ, խ, ծ, հ, ձ, ղ, ճ, չ, ջ, ռ, ց»։

Նման այբուբենով աշակերտներ սովորեցնել և գիր ու գրականություն ստեղծել, իհարկե, դժվար էր։ Շուտով զգում է այդ Մաշտոցը և ձեռնարկում լրացնելու պակասող տառերը։ Խորենացու ակնարկը, որ Դանիելի «մուրացիկ և կարկատան» այբուբենը բավական չէր «հոլովել զհեգենայ բառից հայկականաց» (էջ 326), պետք է հասկանալ՝ «չէր արտահայտում հայկական բառերի վանկերի հնչյունական հարազատությունը»։ Նույն իմաստն ունի նաև Կորյունի տեղեկությունը, որ Դանիելից բերված նշանագրերը «չեն բաւական... ողջ ածել զսիղոբայս, զկապս հայերէն լեզուին», այսինքն՝ չեն կարող ճշտությամբ արտահայտել հայերեն լեզվի հնչյունական հարազատությունը։

5. Մաշտոցը, ինչպես երևում է, այբուբենը կազմելիս ինքնուրույն մոտեցում է ունեցել. Նա վերցրել է Դանիելի ձևափոխած և հայացրած պատրաստի տառերը և նրանց հիման վրա ձևել և լրացրել հայկական այբուբենը՝ «Գ»-ից ձևել է «Դ»-ն, «Թ»-ից՝ «Ժ»-ն, «Կ»-ից՝ «Խ»-ն, «Զ»-ից՝ «Ղ»-ն, «Ո»-ից՝ «Ջ»-ն և այլն։ Ըստ որում, նոր ստեղծած տառերը նա իր այբուբենում, մեծ մասամբ, դրել է կաղապարված տառի կողքին։

Հավանական է, Մաշտոցը իր այբուբենում փոփոխել և տեղաշարժել է «Դ» տառը, որը Դանիելի մոտ եղած պիտի լիներ հունական դելտա տառի նման՝ Δ։ Նա այդ արել է, հավանական է, հունականի նմանությունից հեռանալու համար—այդ տառը տարել է Ծ-ի տեղ, իսկ ինքը հայկական «Գ»-ն ձևել է հայկական «Դ» տառից։

Մաշտոցի ինքնուրույն կազմած այս 36 տառանիշ այբուբենը հանձնարարվում է Հռուփանոս անունով մի գեղագրի՝ Մաշտոցի հսկողությամբ վերջնական ձևավորման համար։ Այս մասին պատմահայրը գրում է. «[Մեսրոպն] եստեղծ զնշանագիրս մեր, հանգերձ Հռուփանոսիւ կերպաձևեալ զգիրն...» (էջ 327)։

Ավելի ուշ, կիլիկյան շրջանում, հայկական այբուբենի վրա, լատինական ազդեցության տակ, ավելանում է երեք տառ ևս՝ «և», «օ», «ֆ», որի մասին խոսք կլինի իր տեղում։



* * *

Ո՞րն է հայկական ներկա գրի ստեղծման նշանակությունը հայ ժողովրդի պատմության մեջ։

Այս հարցին պատասխանելու համար անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական դրությանը IV դարի վերջերում և V դարի սկզբներում։

Սկսած մեր թվագրության IV դարից, ինչպես պարզված է, Հայաստանում իշխում էին ֆեոդալական սոցիալ-տնտեսական հարաբերությունները։ Իշխող նոր դասակարգը, բնական է, չէր կարող սահմանափակվել հին, մեռնող դասակարգի գաղափարներով։ Քրիստոնեական եկեղեցին, որը գործուն մասնակցություն ունեցավ հայ ավատական գաղափարախոսության ստեղծման և օրինականացման ուղղությամբ, չորրորդ դարում եռանդուն փորձեր էր կատարում նոր գաղափարախոսության տարածման և ամրացման ուղղությամբ։ Փավստոսի տեղեկություններից, օրինակ, մենք գիտենք, որ Ներսես Մեծը բաց է անում դպրոցներ և զբաղվում դաստիարակությամբ։ Եվ պատահական չէ, որ հայ գրի ստեղծման հարցով զբաղվում են քաղաքական և հոգևորական երկու խոշոր պետերը՝ Վռամշապուհ թագավորը և Սահակ Պարթև կաթողիկոսը։

Հայկական գրի ստեղծումն ավելի անմիջական հարց դարձավ IV դարի վերջերին և V դարի սկզբներին, երբ հայ ժողովուրդը կանգնեց էթնիկական ձուլման սպառնալիքի առաջ։ Ակադ. Հ. Մանանդյանը շատ ճիշտ գտնում է, որ մեր թվականության IV դարի վերջը և V դարը հայ ժողովրդի պատմական կյանքի ամենածանր և բախտորոշող շրջաններից մեկն է հանդիսացել[1]։

Հայաստանը 387 թվականին, ինչպես հայտնի է, բաժանվեց մրցակից Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդական կայսրության միջև։ Այդ բաժանումից հետո նա ընկավ վասալական կախվածության մեջ։ Նվաճող կողմերից ամեն մեկն աշխատում էր վերջ դնել Հայաստանի ներքին անկախությանը և ասիմիլյացիայի ենթարկել ժողովրդին։ Պարսկաստանի և Բյուզանդիայի քաղաքականությունը Հայաստանում պատահական բնույթ չուներ, այլ բխում էր Հայաստանում նրանց ամրանալու դարավոր ձգտումից։ Հայաստանը գտնվելով Արևելքի և Արևմուտքի մրցակցության հանգույ-

[1] Я. А. Манандян, Месроп-Маштоц…, էջ 5։

ցում, նրա ստրատեգիական կարևորությունը գիտակցում էին և՛ պարսկական շահերը, և՛ բյուզանդական կայսրները։ Եվ գիտակցելով այդ, նրանցից ամեն մեկն աշխատում էր ամրանալ այնտեղ։ Բացի այդ, մրցակից կողմերից ո՛չ մեկի համար ցանկալի չէր Հայաստանում ունենալ թշնամաբար տրամադրված մի հատված, որը նեղ օրում կարող էր վտանգ սպառնալ իրեն։ Ահա թե ինչու, Հայաստանի բաժանումից հետո, Պարսկաստանը և Բյուզանդիան բացահայտ կամ գաղտնի, բռնությամբ թե խաղաղ ճանապարհով, բայց հաստատ հետևողականությամբ, շարունակում էին իրենց ասիմիլյատորական քաղաքականությունը։

Հայաստանի բաժանումից հետո, ճիշտ է, ժամանակավորապես դադարեցին Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև սկսած արյունոտ պատերազմները, որից, առաջին հերթին, ոտնակոխ էր լինում, ավերվում Հայաստանը։ Սակայն այժմ նախկին մրցակից երկրները Հայաստանի նկատմամբ կիրառեցին ավելի վտանգավոր քաղաքականություն՝ աշխատեցին ձուլել հայ ժողովրդին Պարսկաստանը մի կողմից, իսկ Բյուզանդիան մյուս կողմից, բոլոր միջոցներով սկսեցին եռանդուն ջանքեր գործադրել՝ վերջ դնելու հայ ժողովրդի կուլտուրական ինքնուրույնությանը։ Պարսկաստանն իր այդ քաղաքականությունը Հայաստանում արդյունավորելու համար շեշտ էր դնում զրադաշտական կրոնի վրա։

Մի այլ վտանգ հայ ժողովրդին սպառնում էր հարավից և արևմուտքից։ Քրիստոնեությունը պետական կրոն ճանաչվելուց հետո Հայաստանը ողողվել էր ասորի և հույն քարոզիչներով, որոնք իրենց հետ բերում էին ո՛չ միայն քրիստոնեության գաղափարները, այլև իրենց մայրենի լեզուն, իրենց կուլտուրան, իսկ այդ՝ պակաս վտանգ չէր ստեղծում տեղական կուլտուրայի համար։ Թե որքա՜ն վտանգավոր էին օտարամուտ այդ լեզուները և կուլտուրաները հայ իրականության համար, կարելի է դատել այն փաստից, որ Հայաստանը ողողված էր ասորի և հույն քարոզիչներով, որոնք խոսում, գրում էին ասորերեն և հունարեն։ Հայկական նորաստեղծ գրությունը մի զենք էր՝ կռվելու պարսկական և բյուզանդական ասիմիլյատորական քաղաքականության դեմ և ցեմենտող մի միջոց՝ քաղաքականապես ջլատված, թուլացած Հայաստանի երկու մասերի համար։ Ահա թե ինչու հայրենասեր որոշ մտավորականներ, Մաշտոցի գլխավորությամբ, այնքան հետևողականորեն նախաձեռնում են հայկական ինքնուրույն գրի հորինման գործը և ստեղծում այն։



Հայկական գրի ստեղծման անհրաժեշտության հարցը, իհարկե, առանձին անձանց մտահղացման արդյունք չէր, ինչպես կարծում են որոշ հայագետներ, և ոչ էլ պայմանավորված էր միայն հայ ժողովրդի կուլտուրային, հետևապես և նրա անկախությունը սպառնացող վտանգի դեմ մաքառելու անհրաժեշտությունից։ Առանձին անհատները, տվյալ դեպքում Մեսրոպ Մաշտոցը և նրան աջակցող և սատարող անձինք՝ Սահակ Պարթևը և Վռամշապուհը, անշուշտ, խոշոր դեր են ունեցել։ Դրսից սպառնացող վտանգը իր հերթին խթանել, արագացրել է գրերի ստեղծումը։ Սակայն հայկական գրերի ստեղծման հարցն առաջադրել է ինքը կյանքը, իսկ Մաշտոցը, նրա գործակիցները և աշակերտները գործնականորեն իրագործել են այն։

Այս է ահա Մաշտոցի հիմնական դերը հայ գրի և գրականության ստեղծման գործում։

Բացառիկ մեծ է Մաշտոցի և իր աշակերտների ջանքերով ստեղծված գրի նշանակությունը հայ ժողովրդի պատմության մեջ։ Նոր հորինված ինքնուրույն գրերով և մայրենի լեզվով ստեղծվեց հսկայական մի մատենագրություն, որն իր պատվավոր տեղը գրավեց համամարդկային գրականության պատմության մեջ։

Սակայն ավելի խոշոր է հայ գրի ստեղծման քաղաքական նշանակությունը։ Նա անչափ խոշոր դեր կատարեց հայ ժողովրդի ինքնագիտակցության բարձրացման գործում և պաշտպանող վահան դարձավ օտարերկրացիների ասիմիլյացիոն քաղաքականության առջև։

Գերմանացի գիտնական Հ. Մարկվարտը, խոսելով Մաշտոցի և նրա զինակիցների հայ մատենագրության ասպարեզում ունեցած դերի մասին, Մաշտոցին և իր աջակիցներին համեմատում է Պեպինոսի և Վինֆրիդի հետ և գտնում, որ եթե մենք նկատի ունենանք քաղաքական այն ծանր իրադրությունը, որի մեջ Մաշտոցը կարողացավ զարթեցնել ազգային գիտակցությունը, ապա «Պեպինոս և թե յուր զինակիրը Վինֆրիդ—խեղճ թզուկներ կերևան համեմատությամբ մտքի այն հսկաներու»[1]։

[1] Հ. Մարկվարտ, Պատմություն հայերեն նշանագրերու և վարուց Ս. Մաշտոցի, Վիեննա, 1913, էջ 8։



ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ



# ՀԱՅԿԱԿԱՆ ԳՐԵՐԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԳՈՐԾԱԾՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ

*րերը V դարից մինչև մեր օրերն անփոփոխ չեն մնացել: Տասնհինգ երկարաձիգ դարերի ընթացքում նրանք ենթարկվել են զգալի փոփոխությունների: Չկա մի տառ, որ անփոփոխ հասած լինի մեզ V դարից: Տառեր կան, որոնք փոփոխության են ենթարկվել ոչ թե մեկ, այլ մի քանի անգամ: Աղբյուրագետները, տարբեր ժամանակներում կատարված այս փոփոխությունները հիմք ընդունելով, հայկական տառերը դասավորում են ըստ առանձին տառատեսակների և որոշում նրանց յուրաքանչյուրի գործածության մոտավոր ժամանակը: Համեմատական այս մեթոդը կարևոր է հնագրության համար, որովհետև եթե մեզ հայտնի են գրատեսակների բնորոշ առանձնահատկությունները ըստ ժամանակների, ապա այդ հիման վրա դժվար չէ որոշել նաև թվական չունեցող հին հայկական գրությունների ժամանակները:*

*Հայկական տառերի խմբավորման առաջին փորձը կատարել է Հ. Ղ. Ինճիճյանն իր «Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի» աշխատության մեջ և կազմել առանձին գրատեսակների գործածության հետևյալ ժամանակագրությունը.*

1. Երկաթագիր—*Մաշտոցի ձևավորած գրերը,* V—IX *դդ.:*
2. Միջակագիր—*բոլորգրին անցնող երկաթագրի մանր տեսակը,* X—XI *դդ.:*



3. Բոլորգիր—XI—XII *դդ.:*
4. Նոտրգիր—*նոտարների սովորական գրերը՝* XIV—XV *դդ.*[1]*:*

*Ինճիճյանը, առանց ժամանակագրական շրջանակները որոշելու, հիշում է նաև մասնակի գործածության մեջ դրված գրերի սորև բերված տեսակները.*

5. Դրամագիր—*Ռուբինյանց գործածած դրամների վրա դրոշմված գրերը:*
6. Կոնդակագիր—*կոնդակների համար գործածվող գրերը:*
7. Փառագիր—*ծաղկագրերը, թռչնագրերը և մյուս զարդագրերը:*
8. Փակագիր—*կապագիրը, գլխավորապես վիմագրության մեջ:*
9. Վարազագիր—*մատանու և կնիքների վրա փորագրված գրերը:*
10. Նշանագիր—*գաղափարագրերը, Ագաթանգեղոսի ժամանակից*[2]*:*

*Հայկական գրերի տեսակավորման հարցով զբաղվել է նաև Քարամյանցը: Նա իր ցուցակի մեջ նշում է հայկական յոթ տեսակ գրեր և տալիս նրանց գրչության հետևյալ ժամանակը՝ դարերով.*

1. Մեսրոպյան երկաթագիր—V—VII *դդ.:*
2. Միջակ գիր —VIII—X *դդ.:*
3. Փոքր երկաթագիր —IX—XII *դդ.:*
4. Բոլորգիր (Rundschrift)—XII—XIV *դդ.:* *(եկեղեցական ձեռագրերը մինչև* XIII *դ.):*
5. Նոտրգիր —XIII—XVIII *դդ.:*
6. Շեղագիր —XVIII—XIX *դդ.:*
7. Նոր շեղագիր —XIX *դարից մինչև մեր օրերը*[3]*:*

*Հայկական գրերի տեսակավորման նոր փորձ է արել Հ. Տաշյանն իր* «Ակնարկ մը հայ հնագրութեան վրա» *աշխատության մեջ, որը և անփոփոխ ընդունել է ակադ. Հ. Աճառյանն իր* «Հայոց գրերը» *աշխատությունում: Տաշյանը, բացի գրերի հիմնական տե-*

---

[1]. *Ղ. Ինճիճեան, Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, Գ հատ., էջ 77—78:*

[2]. *Նույն տեղը, էջ 78—79:*

[3]. N. Karamianz, Die Handschriften—Verzeichnisse der Königlichen Bibliothek zu Berlin, Berlin 1888, *էջ 88:*

սակներից, ընդունում է նաև անցման գրեր։ Հայկական գրերը նա տեսակավորում է յոթ խմբի մեջ.

1. Գլխագիր երկաթագիր։
2. Միջին Մեսրոպյան երկաթագիր։
3. Փոքր երկաթագիր։
4. Անցման գիր։
5. Բոլորգիր։
6. Նոտրգիր։
7. Շղագիր։

Նրա կարծիքով երկաթագիրը գործածվող գրի հիմնական տեսակ է հանդիսացել V դարից մինչև XI դարը, բոլորգիրն իշխող գրի տեսակ է դարձել XII դարից, իսկ նոտրգիրը գործածվել է սկսել XIII—XIV դարերից[1]։

Անհրաժեշտ է նշել, որ Հ. Տաշյանն առաջինն է, որ հակառակ նախորդ աղբյուրագետների թյուր կարծիքների, ապացուցել է, որ միջին Մեսրոպյան գրերն ավելի հնից են գալիս, քան ենթադրվում է։ Նրա ենթադրությամբ միջին Մեսրոպյան երկաթագրերը պատմա-գիտական գրականության մեջ օգտագործվել են սկսած V դարից։

Գարեգին վարդապետ Հովսեփյանի կարծիքով. «Հայ գրի տեսակները չորսի կարելի է բաժանել. երկաթագիր, բոլորագիր նոտրագիր և շեղագիր՝ յուրաքանչյուրն իր ստորաբաժանումներով և անցման շրջաններով»[2]։

Գրերի գիտական տեսակավորման փորձ է արել նաև պրոֆ. Կ. Ղաֆադարյանն իր «Հայկական գրի սկզբնական տեսակները» աշխատության մեջ։ Խմբավորման հիմքը համարելով գծագրական առանձնահատկությունները, նա գրերի հետևյալ հինգ տեսակներն է ընդունում.

1. Բոլորաձև երկաթագիր։
2. Ուղղագիծ երկաթագիր։
3. Բոլորգիր։
4. Շղագիր։
5. Նոտրգիր։

Պրոֆ. Ղաֆադարյանը գրերի տեսակներից ոչ մեկը ժամա-

[1] Հ. Տաշյան, Ակնարկ մը հայ հնագրության վրա, էջ 34—49։

[2] Գարեգին վրդ. Հովսեփյան, Հայոց գրի գլխավոր տեսակները («Տաճար», 1912, № 10, էջ 168—172)։



նակի մեջ չի սահմանագծում։ Նա գտնում է, որ գրերի գրեթե բոլոր տեսակները (բացի շղագրից) ստեղծվել են Մեսրոպի ձեռքով և գործ են ածվել բոլոր ժամանակներում[1]։

Ճիշտ համարելով պրոֆ. Կ. Ղաֆադարյանի կատարած գրերի տեսակավորման սկզբունքը, որը գրերի խմբավորումը կատարել է ըստ գրերի գծագրական առանձնահատկությունների, ինչպես ընդունված է նաև այլ լեզուների պալեոգրաֆիաների մեջ, սակայն չի կարելի համաձայնել պրոֆ. Ղաֆադարյանի հայտնած այն կարծիքի հետ, որ իբր թե հայկական գրերի բոլոր տեսակները V դարում են ստեղծվել։ Այդ կարծիքը չի հաստատվում մեզ հասած գրության հնագույն նմուշներով։ Գրերի որոշ տեսակներ կարող են ավելի հին լինել, քան ենթադրվում է, բայց որ հայկական բոլոր գրատեսակները, ինչպես մյուս բոլոր ժողովուրդների գրերն են, մեկեն չեն ստեղծվել և ունեցել են իրենց զարգացումն ու փոփոխությունը, այդ ևս կասկածից դուրս է։

Պրոֆ. Կ. Ղաֆադարյանի մոտ այս հարցի առաջադրման համար հիմք է ծառայել Կորյունի այն տեղեկությունը, որ Հռոփանոսը «զնրբագոյնս, զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւորն միանգամայն յօրինեալ և յանկուցեալ»։ Պրոֆ. Ղաֆադարյանի կարծիքով, «Կորյունի հիշյալ հինգ բառերը ցույց են տալիս ո՛չ թե միևնույն այբուբենի ներքին շարքերը (գրերի բարձրության աստիճանները), այլ այդ բառերից յուրաքանչյուրի գրության մի նոր տեսակի անունը»[2]։ Ըստ որում, նրա կարծիքով, «կրկնաւոր»-ը՝ փակագիրն է, «նրբագոյն»-ը՝ նոտրգիրն է, «կարճ»-ը՝ ուղղագիծ երկաթագիրն է, «երկայն»-ը՝ բոլորաձև երկաթագիրն է։

Մեր կարծիքով, Կորյունն այստեղ խոսում է տառերի ո՛չ թե ներքին շարքի կամ գրչության տեսակների, այլ տառերի հնչական առանձնահատկությունների մասին։ Այդ պարզ կարելի է տեսնել Դիոնիսիոս Թրակացու «Քերականության» մեջ և նրա հայ մեկնիչների մոտ, ուր այդ նույն բառերը բերված են իրենց բացատրություններով։

Թրակացին «երկայն» ասելով նկատի ունի երկար հնչվող երկու տառերը՝ «է»-ն և «ա»-ն (և ձայնաւորացն երկայնք են երկու՝ է, ω (վերջինս գրվել է «ու» ձևով) «Τῶν δὲ φωνηέντων μακρὰ μέν ἐστι δύο ῆ καὶ ῶ»)[3]։

[1] Կ. Ղաֆադարյան, Հայկական գրի սկզբնական տեսակները, էջ 35—36։

[2] Նույն տեղը, էջ 35։

[3] Н. Адонц, Дионисий Фракийский и армянские толкователи, էջ 5։

«Կարճ»-ը՝ կարճ հնչվող «ե», «ո», [ո] ձայնավորներն են («Եւ սուղք»՝ «կարճ», ըստ Ստեփանոս Սյունեցու քերականության) [են] երեք՝ ե, ո, ւ, «Βραχέα δύο ε̃ καὶ ο̃»[1]:

«Կրկնաւոր» այն բառերն են, որոնք երկու տառի հնչյուն ունեն («Եւ կրկնակք են ի սոցանէ ութ. զ, լ, խ, շ, չ, ջ, ռ, ց»[2]: «Առանձինք»՝ ոչ կրկնվող բաղաձայներն են՝ բ, գ, դ, ձ, ղ և այլն:

Եվ, վերջապես, «Նուրբք»-ը հետևյալ տասը տառերն են՝ «պ», «կ», «տ», «զ», «ճ», «ծ», «շ», «մ» «ս», «ր»: «Եւ են սոքա նուրբք»,— գրում է հեղինակը և թվարկում է վերև բերված տասը տառերը:

Հայկական գրերը, մեր կարծիքով, պետք է բաժանել հինգ հիմնական տեսակների. բուն մեսրոպյան երկաթագիր, միջին մեսրոպյան երկաթագիր, ուղղանկյուն երկաթագիր, բոլորգիր, նոտրգիր և շղագիր: Գոյություն ունեն նաև անցման շրջանի երեք տեսակ գրեր՝ երկաթագրից բոլորգրին անցնող, բոլորգրից նոտրգրին և նոտրգրից շղագրին անցնող գրեր:

Նախքան առանձին գրատեսակների մասին խոսելը, անհրաժեշտ ենք համարում նշել, որ կենտրոնացած պետականության բացակայության պայմաններում համատարած գործածվող միասնական որևէ գրատեսակ Հայաստանում գոյություն չի ունեցել ոչ մի դարաշրջանում: Գրերի այս կամ այն տեսակի ընտրությունը կախված է եղել գլխավորապես գրչության առանձին դպրոցների նախասիրությունից: Ավելին. հաճախ տարբեր գրաձևերով են գրված ոչ միայն իրար մոտիկ գտնված գրչության առանձին դպրոցների գրչագրերը, այլև նույն գրչության դպրոցում գրված ձեռագիր ժողովածուների առանձին մասերը:

Կանգ առնենք հայկական գրի տեսակների վրա առանձին-առանձին և փորձենք որոշել նրանց յուրաքանչյուրի գործածության մոտավոր ժամանակը:

## ԲՈՒՆ ՄԵՍՐՈՊՅԱՆ ԲՈԼՈՐԳԻԾ, ՄԻՋԻՆ ՄԵՍՐՈՊՅԱՆ ԵՎ ՈՒՂՂԱՆԿՅՈՒՆ ԵՐԿԱԹԱԳՐԵՐԸ

Հայկական գրերից ամենից հինը, մեր կարծիքով, երկուսն են՝ բուն մեսրոպյան բոլորգիծ երկաթագիրը և միջին մեսրոպյան երկաթագիրը: Մինչև X դարը մեզ հասած բոլոր գրությունների մեջ մեզ հանդիպում են միայն այդ գրատեսակները:

[1] Н. Адонц, Дионисий Фракийский и армянские толкователи, էջ 5:
[2] Նույն տեղը, էջ 8:



Ենթադրվում է, որ նրանք երկաթագիր են կոչվել այն պատճառով, որ գրվել են երկաթե ձողերով՝ սկզբում գուցե մոմի վրա, իսկ հետագայում՝ մագաղաթի: Կան նաև բանասերներ, որոնք երկաթագրի անունը կապում են ոչ թե երկաթե ձողերով գրելու, այլ երկաթի ժանգից (երկաթ-օքսիդից) թանաք գործածելու հետ:

Երկաթագրով են գրված մեզ հասած հին հայկական գրեթե բոլոր ձեռագրերն ու վիմագիր արձանագրությունները. կանոնական-կրոնական բովանդակություն ունեցող գրականությունը հին ձեռագրերում գրված է մեսրոպյան բոլորգիծ երկաթագրով, իսկ պատմա-գիտական և մեկնողական գրականությունը՝ միջին մեսրոպյան երկաթագրով:

Մեսրոպյան երկաթագրերը, հայկական մյուս տեսակի գրերի համեմատությամբ, ունեն հետևյալ առանձնահատկությունները.

ա) Երկաթագիրը մի քանի անգամ խոշոր է, քան հայկական գրության մյուս տեսակները:

բ) Երկաթագրով գրված տեքստերի մեծ մասը բառանջատում չունի. երեք, չորս և երբեմն ավելի բառեր գրվում են միացած. բառանջատումը կատարվում է գլխավորապես կետերից հետո:

գ) Երկաթագիր տեքստերը չունեն միացյալ «և», «օ» և «ֆ» տառերը. «և»-ը գրվում է «եւ» ձևով (սովորաբար միացված հաջորդող բառին, «օ» տառը գրվում է «աւ» ձևով, իսկ «ֆ» տառին փոխարինում է «փ»-ն, օրինակ՝ «փրանկս հզաւրս» փոխանակ «ֆրանկս հզաւրս»-ի:

դ) Բոլորաձև երկաթագրով գրված տեքստը, նոր տողից սկսելիս, սկզբի առաջին տառը, իր մեծության կեսի չափով, տեքստի առաջին գծից դուրս է գրվում:

ե) Բոլորաձև երկաթագիրն ունի կլոր ձև, տառասյուները միացնող գծերը կամարաձև են և ուղղագիծ երկաթագրերի նման քառակուսի ձևով չեն նստում տողի վրա:

զ) Բոլորաձև երկաթագիրը, բացի միջակետից, ուրիշ կետադրական նշան չունի: Ըստ որում, միջակետն երկարող քառակուսու ձևով է և գրվում է տողից վերև:

է) Բոլորաձև երկաթագիր տեքստերում հապավված են լինում միայն մի քանի անուններ, որոնց վրա կանգ կառնենք հապավումների գլխում:

ը) Բոլորաձև երկաթագրից տարբերվում են հետևյալները.

«Թ»-ի աջ սյունագիծն իջնում է մինչև տողը.

«Ս»-ի ձախ սյունագիծն ավելի երկար է և թեք.

«Վ»-ի ձախ սյունագիծն հավասարվում է երկրորդին.
«Կ»-ի աջ սյունագիծը շատ կարճ է և թեք.
«Հ»-ն սկսվում է տառի վերջին երկարությունից:

Շատ ավելի հին ձեռագրերում, օրինակ՝ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի հին գրչության ունեցող պատառիկում, տարբերվում են հետևյալ տառերը՝ Ա, Ե և Ր:

Մեսրոպյան բոլորգիծ և միջին մեսրոպյան գրերը չունեն մեծատառի և փոքրատառի տարբերությունները:

Հայկական հնագույն գրչությունից Լազարյան ավետարանում նկատվում են ուղղագրական հետևյալ տարբեր ձևերը, որոնց մեծ մասը բնորոշ է հին հայկական տեքստերին[1].

Ավելադրություն յ տառի—յայնքեցան, դարձոյ, մատոյ, հատոյ, գործեայ, կոչեայ, նմայ, սմայ և այլն:

Հապավում ը տառի՝ յնթրիս, զնկեր, զնտրեալ, յնչից, յնծայսն և այլն:

Հապավում յ տառի. բառի մեջ՝ զգոշ, վկաից, հայհոութիւն. բառի վերջում՝ ողորմեցա. հաճեցա, բանա, երկեա, քաղցեա, ատեա, պիտո, գո, սատանա, միո, արտաքո, յորդւո, թզենո և այլն:

Գրվում է ե փոխանակ է-ի—թե, եթե, թեպետ, ե, եին, եիր, խնդրեին, հարցանեին, ուտեին, որպես, տեսանեաք, այնպես, եղեց, ապաքեն, պատուեր, գքեն, ի Նազարեթե և այլն:

Գրվում է է փոխանակ ե-ի—արէգակն, փէսա, ցէրեկ, էղաւ, էհան, էթող, էհար և այլն:

Գրվում է գ փոխանակ կ-ի—անգեան, մանգունք, յանգողին. անգեալ, ցանգացան և այլն:

Գրվում է ով փոխանակ աւ-ի—ամովթ, նոքովք, արտասուովք, համբովել, ղենջակովն և այլն:

Գրվում է աւ փոխանակ ո, ով, ոյ և ու տառերի—աւսաւխ, պատանաւց, Յաւհաննէս, Նազաւրաւցի, անաւշ, նշաւղ, տանաւտէր:

Գրվում է ո և ու փոխանակ աւ-ի—ոգուտ, յուժար, յուժարել, ծնողք:

Գրվում է ի, իւ փոխանուկ ե-ի և հակառակը—շիղ, սփիռս, ուղիւղ, Պիւղատոս:

Գրվում է ու փոխանակ ե-ի—ումուք, ուրումն (և որումն):

Հապավվում է նախավերջին և վերջին ր տառը—արդեամք,

[1] Այս մասին խոսել է պրոֆ. Գ. Խալաթյանցը Լազարյան գրչագիր ավետարանի լուսատիպ հրատարակության առաջաբանում (էջ Թ—Ժ), և մենք օգտվել ենք նրանից:

մատամն, քարամք, եղեգամ, տեսլեամ, իշխանութեամ, ճշմարտութեամ:

Փոխարինվում է որոշ բառերում լ տառը ղ-ով—այղ-այլ, թոյղ-թոյլ, այղակերպեալ-այլակերպեալ:

Փոխարինվում են իւ տառերը եւ-ով—աղբեւր, եղջեւր, առեւծ և այլն:

Նշված տարբերակներից ոմանք կարող են լինել գրչական սխալներ, սակայն նրանց մեծ մասը նման ուղղագրական ձևով են գրվում հին ձեռագրերում:

Հնագրության համար կարևոր է պարզել, թե V դարից մինչև X դարը ի՞նչ փոփոխությունների են ենթարկվել մեսրոպյան երկաթագիր տառերը, և ինչ օրինաչափություն կարելի է մատնացույց անել նրանց ձևերի միջև:

Այս հարցի լուսաբանությամբ թեպետ երկար ժամանակ է, որ մենք զբաղվում ենք, բայց պետք է խոստովանենք, որ ձեռք բերված արդյունքները շատ մեծ չեն: Դժվարությունը կայանում է նրանում, որ հնագույն հայ հեղինակների աշխատությունների մեծ մասը, այդ թվում նաև հայ հեղինակների աշխատությունները, մեզ չեն հասել իրենց ինքնագրերով: Նրանց աշխատություններն ընդօրինակվել են ուշ շրջանի արտագրողների կողմից և այդ ընդօրինակություններով են հայտնի մեզ: Այսպես, մեզ չեն հասել ո՛չ Խորենացու, ո՛չ Եղիշեի, ո՛չ Շիրակացու, ո՛չ Ղևոնդի և ո՛չ էլ հին հայ մատենագիրներից որևէ մեկի աշխատության ինքնագիրը: Ինքնագիր ունեցող հայ մատենագիրներին մատների վրա կարելի է հաշվել: Ըստ որում, այսպիսիները ուշ միջնադարյան հեղինակներ են՝ Եսայի Նչեցի, Ստեփանոս Օրբելյան, Ամիրդովլաթ, Գրիգոր Տաթևացի և մի քանի ուրիշներ:

Հին գրություններ ամենից շատ պարունակում են կրոնական-կանոնական բովանդակություն ունեցող տեքստերը և վիմագիր արձանագրությունները, բայց նրանք էլ ունեն այն հիմնական պակասությունը, որ չեն թվագրված: Մինչև ութերորդ դարը միաշար թվագրություն գործածելը սովորություն չի եղել Հայաստանում: Այս մասին խոսք կլինի մեր այս աշխատության ժամանակագրության բաժնում: Մեզ են հասել առանց թվականի բազմաթիվ հին ձեռագիր պատառիկներ և պահպանակներ, որոնց գրերը հաճախ շատ ավելի հին են, քան մեզ ծանոթ հայկական հին և ունիկում գրություն ունեցող տեքստերը, բայց որովհետև նրանք թվական չունեն, ուստի որոշ վերապահությամբ ենք մոտենում նրանց:

Բացի այդ, հաստատուն ժամանակի հետ կապված հին հայկական գրությունները գլխավորապես վիմագրերն են և, բնական է, որ նրանք պիտի հենակներ ծառայեն հարյուրավոր անթվագիր գրությունների ժամանակը որոշելու համար, սակայն երբ ուշադիր համեմատում ենք վիմագիր գրերը գրչագրերի հետ, ապա տարբերությունններն ակներևս են դառնում. ձեռագրեր գրելիս ընդօրինակողները շատ ազատ են շարժել իրենց գրիչները, քան այդ կարողացել են անել կարծր քարի վրա փորագրող քանդակագործները:

Մեզ հասած հնագույն հայերեն գրությունը V դարից է: Նա պահվել է Տեկորի տաճարի արևմտյան դռան ճակատին՝ վիմագիր արձանագրության մեջ: Արձանագրությունն ունի հետևյալ բովանդակությունը.

«...ՊԻՍԿԱ(Պ)ՈՍԻ ԵՒ ՏԱՅՐՈՆԻ ՏԵԿՈՐՈՅ ՎԱՆԱՑ ԵՐԻՑՈՒ ԵՒ ՄԱՆԱՆԱՅ ՀԱԶԱՐԱՊԵՏԻ ՈՒՐԱՆԱՅ ՀՈՌՈՄԻ. ՈՐ ԵՒ ՀԻՄՆԱՐԿԵՅԱՒ ՏԵՂԻՍ Ի ՁԵՌՆ ՅՈՀԱՆՈՒ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ ԵՒ ՅՈՀԱՆՈՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱ[Յ] ՅԻՒՐ ԲԱՐԵԽԱՒՍՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՈԼՈՐ ԱԶԳԻՆ ԵՒ ԱՄՈՒՍՆԻ ԵՒ ՈՐԴԵԿԱՑ ԵՒ ՍԻՐԵԼԵԱՑ ԵՒ ՍԱՀԱԿ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ ՇԻՆԵԱՑ Զ[ԱՅ]Ս ՎԿԱՅԱՐԱՆ ՍՐԲՈՅ ՍԱՐԳՍԻ»[1]:

Արձանագրության մեջ հիշված Հովհաննես կաթողիկոսը՝ Հովհան Մանդակունին է, որը V դարի անձնավորություն է. նա կաթողիկոս է եղել 478—490 թվականներին: Արձանագրության մեջ հիշված տաճարի կառուցող Սահակ Կամսարականը նույնպես V դարի անձնավորություն է: Ըստ Ղազար Փարպեցու տեղեկության, Վահան Մամիկոնյանը Սահակ Կամսարականին պատգամավոր է ուղարկել Միհր-Վշնասպի հետ բանակցելու համար: Կասկածանքներ են եղել բուն տաճարի կառուցման ժամանակի նկատմամբ: Ենթադրվում է, որ Տեկորի ներկա շենքը կարող էր կառուցված լինել VII դարում, իսկ դրանից առաջ, նույն տեղում, գտնվել է Տեկորի նախկին տաճարը՝ V դարից, որի վիմագրերից է վերը հիշված արձանագրությունը[2]:

Պրոֆ. Հ. Աճառյանը հինգերորդ դարի գրություն է համարում նախկին Սանասարյան վարժարանի մատենադարանի № 1 մագաղաթի ձեռագրի առջևում փակցված 6 թերթ կրկնագիրը (պա-

[1] Գարեգին վրդ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին հայոց մեջ, էջ 5—6:

[2] Թ. Թորամանյան, Հայկական ճարտարապետություն, հատ. 1, էջ 218:





Սանասարյան վարժարանի ձեռագրում օգտագործված հնագույն պատառիկը:

*(լիմսեատը) և նույն ձեռագրում օգտագործված հին ձեռագրի մի թերթ, որը գտնվում է 328 և 329 էջահամարի տակ: Սանասարյան վարժարանի այդ ձեռագիրն այժմ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի սեփականությունն է և գրանցված է № 7735-ի տակ: Ձեռագրի բուն տեքստը գրված է 986 թվականին՝* «Ի ՆԼԵ տումարիս Հայոց»: *Վերը հիշված կրկնագիրն այդ ձեռագրում օգտագործված է որպես հին, քայքայված ձեռագրի պատառիկ: Նախկին ձեռագրի թերթերը 986 թվականին, ներկա ձեռագիրը գրելիս, վերցրել և օգտագործել են. Նրա վրա գրել են ավետարանի համաբարբառը, նկարել են տերունական նկարներ, իսկ մի էջ անփոփոխ տեղավորել ձեռագրի մեջ: 986 թվականին գրված կրկնագիր տառերի տակից պարզ երևում են հին տառերը: Պրոֆ. Հ. Աճառյանի կարծիքով, հին* քայքայված ձեռագիրը եթե ունեցած լիներ թեկուզ 4 դարի հնություն, ապա նա գրված պետք է լիներ V դարում: *Աճառյանն անվերապահ ընդունելով պատառիկների գրությունը* V *դարից, մեր երիտասարդ քիմիկոսներին հրավիրում է քիմիական միջոցներով վերականգնել սրբված կրկնագրի նախկին տառերը, «մեր հինգերորդ դարի այդ ամենահին ձեռագիրը, որպեսզի տեսնենք, թե ինչ հնագրական արժեք է ներկայացնում»[1]:*

*Պրոֆ. Կ. Ղաֆադարյանը ևս, պրոֆ. Հ. Աճառյանի համաձայնությամբ, ուսումնասիրել է նշված կրկնագրերը և եկել հետևյալ եզրակացության. «Եթե իրոք* IX *դարում մագաղաթյա մի ձեռագիր մատյան արդեն այնքան էր հնացել, որ նրա թերթերը պոկոտում էին փոքրացնելու և այլ մատյանի մեջ իբրև պահպանակ օգտագործելու նպատակով, ապա այդ հին ձեռագիրը պատկանելու էր հայոց գրերի գրեթե սկզբնական շրջանին, հավանաբար* V *դարին»[2]:*

*Հայկական գրության ամենահնագույն նմուշներից են, մեր կարծիքով, Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 1577 ձեռագրի մագաղաթյա պահպանակները: Այն ձեռագիրը, որին կցված են նշված պահպանակները, գրվել և կազմվել է 1238 թվականին, իսկ պահպանակները, որպես քայքայված ձեռագրի պատառիկներ, վերցրել և օգտագործել են ձեռագրի ներսում: Նշված պահպանակների գրության պալեոգրաֆիկ ուսումնասիրությունը*

---

*[1] Հ. Աճառյան, Հինգերորդ դարից հայերեն ձեռագիր (Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի «Տեղեկագիր», 1952, № 11, էջ 70):*

*[2] Նույն տեղը, էջ 71:*



*մեզ բերել է այն համոզման, որ այս գրերը, իրենց գծագրական ձևերով, ճիշտ նման են Տեկորի և Երուսաղեմի մոզաիկ հայկական հին արձանագրությունների գրերին, իսկ որոշ տառաձևերում նույնիսկ ավելի հին են: Պահպանակների գրության մեջ մենք առաջին անգամ հանդիպում ենք հայկական գրաձևերի հետաքրքիր նորություններին: Այսպես, «Ր»-ի վերին բոլորող գիծը հունարեն «ρ»-ի նման այնքան է կորացած, որ գրեթե կպչում է սյունագծին: «Ք»-ի և «Փ»-ի սյունագծերը սովորական գրերից անհամեմատ երկար են և սեպի նման իջնում ու անցնում են անգամ հաջորդ տողից: «Ա»-ի աջ թեքվող ելունը ոչ թե ներքև է իջնում, ինչպես այդ Լազարյան ավետարանի գրության մեջ է կամ* IX—X *դարերի հայկական մյուս գրությունների մեջ, այլ հունականի նման կեռվում է դեպի վերև: «Թ»-ի ներքև իջնող աջ թևը հունականի նման գրեթե մտնում է ձախ սյունագծին և այլն: Ուշադրության արժանի է նաև այն, որ պահպանակների տեքստը, որը բովանդակությամբ ավետարանից է, դեռ չունի համաբարբառ: Պահպանակների գրության հնության մասին է խոսում նաև տառերի խոշորությունը:*

V—VI *դարերից մեզ հասած հայերեն արձանագրություններից մեծ արժեք են ներկայացնում Երուսաղեմի մոզաիկ արձանագրությունները, որոնցից կարևորը Ձիթենյաց լեռան վրա, ռուսաց եկեղեցու հիմքում բացված մոզաիկն է՝ հայերեն արձանագրու-*

ԲԱՐԷԽԱՒՍՈՒՆԵԼՈՎ
ԱՌԱԾԶՍՈՒՐԲ Է
ՍԱՅՒ ԵՒԶԵՐԱՆԵԼԻ
✠ՀԱՐՍՍԵՍՎԱՂԱՆԱ
ՐԱՐԻԱԱՍՆԹՈՂՈՒ
ԹԵԱՆՄԵՂԱՅԶ ՅԻ
ՇԱՄԱԿԱՐԱՆՍԶԱՅՍ

Երուսաղեմի մոզաիկ արձանագրություններից մեկը:

*թյամբ: Արձանագրության ժամանակը համարվում է* VI *դարը: Արձանագրությունը հիշատակ է ոմն Վաղանի և ունի հետևյալ բովանդակությունը.*

«ԲԱՐԵԽԱՒՍ ՈՒՆԵԼՈՎ ԱՌ ԱԾ ԶՍՈՒՐԲ ԷՍԱՅԻ ԵՒ ԶԵՐԱՆԵԼԻ ՀԱՐՍՍ ԵՍ ՎԱՂԱՆ ԱՐԱՐԻ ՎԱՍՆ ԹՈՂՈՒԹԵԱՆ ՄԵՂԱՑ ԶՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՍ ԶԱՅՍ»[1]։

Մոզաիկ այս արձանագրության հնության Երուսաղեմում հայտաբերված է երեք այլ արձանագրություն ևս, որոնցից մեկը նվիրված է այն հերոսների հիշատակին, որոնք ընկել են պատերազմում և անուններով հայտնի չեն։ Ենթադրվում է, որ ակնարկված այդ անհիշատակ հերոսները՝ V դարի ազատագրական պատերազմում ընկած մարտիկներն են, որոնց հիշատակի հավերժացմանն է նվիրված այս արձանագրությունը։

VII դարի արձանագրություն է Հռիփսիմեի տաճարի արևմըտյան պատի վրա փորագրված արձանագրությունը, որը պարունակում է հետևյալ տեքստը. «Ես Կոմիտաս եկեղեցապան սըրբոյ Հռիփսիմէի կոչեցայ յաթոռ Սրբոյն Գրիգորի. շինեցի զտաճար սրբոց վկայիցս Քի»[2]։ Արձանագրությունը չնայած թվական չունի, բայց Սեբեոսի մի տեղեկությունից երևում է, որ նա կառուցվել է 618 թվականին։ (Սեբեոսը հայտնում է, որ Հռիփսիմեի տաճարը ցածրաշեն, մութ շենք էր, Կոմիտաս կաթողիկոսը պարսից Խոս-

ԵՍԿՈՄԻՏԱՍԵԿԵՂԵՑԱՊԱՆՍՐ
ԲՈՅՀՌԻՓՍԻՄԷԻԿՈՉԵՑԱՅՅԱ
ԹՈՌՍՐԲՈՅՆԳՐԻԳՈՐԻՇԻՆԵՑԻ
ԶՏԱՃԱՐՍՐԲՈՑՎԿԱՅԻՑՍՔԻ

Հռիփսիմեի տաճարի արձանագրությունը։

րով Ապրվեզ Թագավորի 28-րդ տարին քանդեց և նրա տեղ քարակոփ ներկա շենքը կառուցեց։ Հայտնի է, որ Խոսրով Ապրվեզը գահակալել է 589 թվականին, ուրեմն, նրա 28-րդ տարին կլինի

[1] Գարեգին վրդ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին հայոց մեջ, էջ 5։

[2] Թ. Թորամանյան, Հայկական ճարտարապետությունը, հատ. I, էջ 23—44։



618 թվականը)։ Սեբեոսի այս տեղեկությունը հաստատում են այլ մատենագիրներ ևս։

Յոթերորդ դարի լավագույն արձանագրություններից են Մաստարայի եկեղեցու հինգ արձանագրությունները՝ VII դարի կեսերից։

«ՅԱՄՍ ՏՆ ԹԵՈԴՈՐՈՍԻ ԳՆՈՒՆԵԱՑ ԵՊԻՍԿԱՊՈՍԻ ՇԻՆԵՑԱՒ ԱԾԱՅԻՆ ՏՈՒՆՍ ՔԱՒԵՂ ԶԳՐԻԳՈՐԱՍ ԱՆԱՐԺԱՆ... ԱԾ ԳԹԱ Ի ԳՐԻԳՈՐԱՍ ՄԵՂԱՒՈՐ ԵՒ ԻՆՋ ԿԵՓ...»[1]։

Նրա մեջ հիշված է Թեոդորոս եպիսկոպոսը, որը VII դարի անձնավորություն է, 648 թվականին մասնակցել է Դվինում գումարված ժողովին։ Արձանագրության բովանդակությունը հետևյալն է.

Վիմագիր գրություններից է հին Անիի միջնաբերդի Կամսարականների բազիլիկ եկեղեցու վրա եղած արձանագրությունը, որի վերջը թերի է։ Ակադ. Ն. Մառի կարծիքով, նա գրված պիտի լինի 622 թվականին։ Արձանագրությունը կարդացվում է.

«ԵՍ ԱԲՐԱՀԱՄ ՎԱՐԴԱՊԵՏՍ ՇԻՆԵՑԻ ԶԵԿԵՂԵՑԻՍ ԶԱՅՍ Ի ԹՈՒԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱ...»[2]։

Նորագույն ուսումնասիրությունները պարզել են, սակայն, որ բերված արձանագրության վերջին տառերը՝ ՀԱ՝ թվական չէ, այլ ՀԱ(ՅՈՑ) բառի սկզբի երկու տառերը, ինչպես նկատել է պրոֆ. Կ. Ղաֆադարյանը։ Արձանագրության ժամանակը, ըստ հնագրական տվյալների, VII դարի կարելի է համարել։

VII դարի հայ գրության ընտիր նմուշներից է Բագավանի տաճարի արձանագրությունը, որը փորագրված է 639 թվականին։ Արձանագրությունը տեղավորված է տաճարի հարավային պատի արևելյան կողմում։ Արձանագրությունից երևում է, որ տաճարի կառուցումը ձեռնարկվել է Հերակլ կայսեր 21-րդ տարում և ավարտվել 8 տարուց հետո՝ 639 թվականին։ Արձանագրության գիտական վերծանությունը հրատարակել է ակադ. Հ. Օրբելին։ Արձանագրության տեքստը հետևյալն է.

[1] Գարեգին վրդ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին հայոց մեջ, էջ 174։

[2] Н. Я. Марр, Новые археологические данные о постройках типа Ерерyйской базилики (տես „ЗВО“, XIX, էջ 141)։

«ՔՍԱՆ ԵՒ ՄԻ ԱՄԻՈՅՆ ԱԾԱՊԱՀ ԵՐԱԿՂԻ ԹԱԳԱ-ՒՈՐԻ, ՀՐՈՏԻՑ ԱՄՍՈՅՆ ՈՐ ԱՒՐ ԵՐԵՍՈՒՆ ԷՐ, ԵՍ ՏՐ ԵԶՐԱՍ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՍ ԵՒ ՍՈՒՐԲ ՎԱՆԻՑ ԵՐԷՑ ՀԱՃՈՅՈՒՔՆ ԱՑ ՀԻՄՆ ԱՐԿԻ ՍՐԲՈՑ ԵԿԵՂԵՑ-ՒՈՅՍ ԵՒ Ի ՔՍԱՆ ԵՒ ԻՆՆԵՐՈՐԴ ԱՄԻ ՆՈՅՆ ԵՐԱԿՂԻ ԹԱԳԱՒՈՐԻ, ՅԱՄՍԵԱՆՆ ՆԱՒԱՍԱՐԴԻ, ՈՐ ԱՒՐ ՔՍԱՆ ԷՐ ՅԱՒՈՒՐՆ ՈՒՐԲԱԹ, ԵՂԵՒ ԿԱՏԱՐՈՒՄՆ ՆՈՅՆ ԳՈՐԾՈՅՍ ՏԵՂԻՈՅՍ ՎՋԵՆԱԿԱՒ ԱՄԵՆԱՅՆ ԻՐԱՒՔ. ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՄԲ ԻՍՐԱՅԵՂԻ ԳՈՌԱՂՃԵՑԻՈՅ»[1]։

Որպես գրության հնագույն նմուշ արժեքավոր է Գրիգոր Մամիկոնյանի արձանագրությունը Թալինում։ Այն գրված է Կոստանդ կայսեր 29-րդ տարում, այսինքն՝ 639 թվականին։ Արձանագրությունը վերծանվում է.

«Ի ԵԻԹ ԱՄԻ ԿՈՍՏԱՆՏՆԻ ՄԱՐԵՐԻ ԱՄՍՈՅ-ՈՐ ԱՒ[Ր]Ժ ԵՒ Ե ՀԻՄՆԱՐԿԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԿԱԹՈՂԻԿԷՍ Ի ՁԵՌՆ ԳՐԻԳՈՐԻ ՄԱՄԻԿՈՆԵՆԻ ՀԱՅԻՈՑ ԻՇԽԱՆԻ ԵՒ ՀԵՂԻՆԷԻ ՆՈՐԻՆ ԶՈՒԳԱԿՑԻ Ի ԲԱՐԵԽԱՒՍՈՒԹԻՒՆ ՇԻՆԱՒՂԱՑ ԶՍԱ»[2]։

ԻԵԻԹԱՄԻԿՈՍՏԱՆՏՆԻՄԱՐԵ
ՐԻ ԱՄՍՈՅՈՐԱՒ ԺԵՒԵՀԻՄՆ
ԱՐԿԵՑԱՒՍՈՒՐԲԿԱԹՈՂԻԿԷՍ
ԻՁԵՌՆԳՐԻԳՈՐԻՄԱՄԻԿՈՆԵՆԻ
ՀԱՅԻՈՑԻՇԽԱՆԻԵՒՀԵՂԻՆԷ
Ի ՆՈՐԻ. ՆԶՈՒ ԳԱԿՑԻ
ԻԲԱ ՐԵԽԱՒՍՈՒԹԻՒՆՇԻՆԱՒ
ՂԱՑ ԶՍԱ.

Գրիգոր Մամիկոնյանի արձանագրությունը։

Հայկական թվականով մեզ հասած ամենահին գրությունը՝ Ուխտատուր վանականի արձանագրությունն է Թալինի մայր եկեղեցու ձախակողմյան սյան արևմտյան երեսին՝ 783 թվականից։

[1] И. А. Орбели, Багаванская надпись 639 года (տե՛ս „Христианский Восток", հատ. II, մաս I, էջ 105—122)։

[2] Գարեգին վրդ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին հայոց մեջ, էջ 175։





Խորենացու պատմության հնագույն պատառիկը X դ.։

(Գարեգին կաթողիկոս Հովսեփյանը սխալմամբ հայկական թվականով հնագույն գրությունը Անիի միջնաբերդի արձանագրությունն է համարում)։

Ուխտատուրի արձանագրությունը հետևյալ բովանդակությունն ունի.

«ՄԼԲ ԹՈՒԱԿ[Ա]ՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ԵՍ ՈՒԽՏԱՅՏՈՒՐ ՎԱՆԱԿ[Ա]ՆՍ ԵՒ ՏՈՒՏԻ ԵՂԲԱՅՐ ԻՄ ԲԵՐԱՔ [Ջ]ԱՂԲԻՒՐԱՆԻՍ Ի ՔԱՐԱԿԱՊՆՈՒ ԱՏԵՆ Ի ԹԱԼԻՆ. ԹԷ ՅԻՇԽ[Ա]ՆԱՑ ՈՔ ԽԼԵ ԻՄ ՄԵՂԱՅՍ [ՊԱՐ]Ր[Տ]ԱԿԱՆ ԵՂ[Ի]ՑԻ»[1]։

VII դարի արժեքավոր արձանագրություններից է Թալինի մատուռի արևմտյան պատի բոլորաձև երկաթագիր գրված գեղեցիկ արձանագրությունը, որը թողել է Ներսես Կամսարականը VII դարի առաջին կեսում։ Արձանագրության մեջ ասված է.

«ԵՍ ՆԵՐՍԵՀ ԱՊՈՀԻՒՊԱՏ ՊԱՏՐԻԿ ՇԻՐԱԿԱՅ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ ՏԷՐ. ՇԻՆԵՑԻ ՋԵԿԵՂԵՑԻՍ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ Ի ԲԱՐԵԽԱՒՍՈՒԹԻՒՆ ԻՆՁ ԵՒ ՇՈՒՇԱՆԱՅ ԱՄՈՒՍՆՈՅ ԻՄՈՅ ԵՒ ՀՐԱՀԱՏԱՅ ՈՐԴՒՈՅ ՄԵՐՈՅ»[2]։

Հին տապանաքարերի վրա մնացած գրություններից առանձնապես ուշադրության արժանի է Արտավազդ Կամսարականի տապանաքարի արձանագրությունը, որը գտնվում է Հին Նախիջևանում։ Արտավազդ Կամսարականը, ինչպես պարզել է Գարեգին կաթողիկոս Հովսեփյանը, Ներսեհ Կամսարականի թոռն է և մահացել է VIII դարի առաջին քառորդում։ Տապանի վերին մասը բութ օրորոցաձև է, որը հատուկ է եղել արաբական շրջանի գերեզմաններին։ Արձանագրությունը հետևյալն է.

«ԱԾԱՀՐԱՄԱՆԱՒՔ ԵՒ ՔՍԱԿՈՉ ՀՐԱԺԱՐՄԱՄԲ Ի ՍՄԱ Է ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԸՆԴ ՀԱՐՍ ԻՒՐ ԵՐԱՆԵԼԻ ՏՐ ԱՐՏԱՒԱԶԴ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ ԱՊԱՀԻՒՊԱՏ ՊԱՏՐԻԿ ԵՒ

1 Գարեգին վրդ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին հայոց մեջ, էջ 176։

2 Այս արձանագրության մասին տես ակադ. Հ. Օրբելու հոդվածը „Надпись о построении талинской церкви“ վերնագրով, տեղավորված „Христианский Восток“-ում, հատ. III, մաս III, էջ 300—306։



ԻՇԽԱՆ ՀԱՅՈՑ ՈՐԴԻ [ՀՐԱՀԱՏԱ ՊԱՏՐԿԻ ՇԻՐԱԿԱՅ ԵՒ ԱՇԱՐՈՒՆԵԱՑ ՏՆՆ ԵՒ ԱՄՈՒՍԻՆ ՇՈՒՇԱՆԱՅ ՄԱՄԻԿՈՆԵՆԻ»[1]։

Հայերեն լեզվով մեզ հասած ամենահին ձեռագիրն աշխարհում, որը թվական ունի, այդ Լազարյան կոչվող նշանավոր ավետարանն է, որը գրված է 887 թվականին Աշոտ իշխանաց իշխանի ժամանակ։ Ձեռագիրը Լազարյան է կոչվում այն պատճառով, որ նա երբեմնի Մոսկվայի Լազարյանների սեփականությունն է եղել։ Ձեռագրի լուսատիպ նմանահանությունը հրատարակել է պրոֆ. Գ. Խալաթյանը Մոսկվայում 1889 թվականին։ Ձեռագիրն ունի թվական պարունակող գրչի հետևյալ հիշատակարանը.

«ԳՐԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԵՒ ԿԵՆՍԱԲԵՐ ԱՒԵՏԱՐԱՆՍ ԱՅՍ ՅԼՋ (886) ԹՈՒԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆՆ ԳԵՈՐԳԱՅ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԵՒ ՅԻՇԽԱՆՈՒԹԵԱՆՆ ԱՇՈՏԻ ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆԻ ԵՒ Ի ՏԵՐՈՒԹԵԱՆՆ ՍՄԲԱՏԱՅ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՅ. ԵՍ ՍԱՀԱԿ ՎԱՆԱՆԴԱՅԻ ՈՐԴԻ ՎԱՐԴԱ ՎԱՆԱՆԴԱՅԻՈՅ ՈՐՈՒՄ ԿՐԿԻՆ ՄԼԵՀ ԿՈՉԷԻ[Ն]» (թ. 229ա)։

Գրչական կարևոր ունիկում է Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի սեփականությունը հանդիսացող 989 թվականի «Փղոսկրյա» կոչվող ավետարանը։ Ձեռագրի գրության մասին հիշատակարանում կարդում ենք.

«ԵՒ ԳՐԵՑԱՒ ՅԱՄԻ ԹՈՒՈՑ ՀԱՅԱԶԱՆՑ ՆԼԸ ԵՒ ԸՍՏ ԹՈՒՈՑ ՀՌՈՄՈՑ ՉԽԲ ՅԻՍՄԱՅԵՂԱԿԱՆ ԲՌՆԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՅՀԹ»։

«Փղոսկրյա» ավետարանը մեզ համար կարևոր ունիկում է ոչ միայն որպես հայ գրչության հնագույն նմուշ, այլ իր փղոսկրյա կազմով և պարունակած գեղեցիկ մանրանկարչությամբ։ Ձեռագիրը գրված է Վայոց Ձորի Նորավանքի գրչության դպրոցում Հովհաննես գրչի կողմից։

Հայ գրչության և մանրանկարչության համար ունիկում ձեռագիր է Վիեննայի Մխիթարյանների մատենադարանի մի ձեռագիր, որը պատվիրատուի անունով հայտնի է Մլքեի ձեռագիր անունով։ Մլքեն Գագիկ Արծրունի թագավորի կինն էր, որը գրել

1 Գարեգին վրդ. Հովսեփյան, Գրչության արվեստը հին հայոց մեջ, էջ 175—176։

է ավել ձեռագիրը 902 թվականին և նվիրել Վարագա վանքին։ Ձեռագրի մանրանկարները 1902 թվականին, նրա Գրչության հազարամյակի լրացման կապակցությամբ, գունատիպ նմանահանությամբ հրատարակել են Վենետիկի Մխիթարյանները։

Հայ գրչության պատմության համար բացառիկ արժեք ունի Հայկ. ՍՍՌ Պետ. Մատենադարանի № 2673 ձեռագիրը, որն անցյալում հայտնի էր 102 համարով։ Այս ձեռագիրը թղթի վրա գրված հայկական հնագույն ձեռագիրն է աշխարհում։ Այն ընդօրինակել է Ղուկաս գրիչն իր հոր Դավիթ քահանայի պատվերով 971 թվականին։ Ձեռագիրը գրվելուց տասը տարի հետո նորոգվել է, և նորոգողը թողել է հետևյալ հիշատակագրությունը. «Եւ նորոգումն սորա ՆԼ թուականութեամս հայոց» (թ. 52ա)։ Այս ձեռագիրը հայ գրչության մեջ կարևոր ունիկում է նաև իր բովանդակությամբ. նա պատմա-գիտական բովանդակությամբ մեզ հասած հնագույն ժողովածուներից մեկն է։

Բոլորաձև երկաթագիրը մեկ-մեկ պատահում է նաև XI դարում։ Նման բացառությունների թվին է պատկանում Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 3793 ձեռագիր ավետարանը, որը գրել է Հովհաննես երեցը 1053 թվականին։ (Ձեռագրի բնագիրը գրված է բոլորաձև երկաթագրով, իսկ տողատակ համաբարբառը՝ ուղղագիծ մանր երկաթագրով)։

Մեսրոպյան բոլորգիծ երկաթագրի բերված նմուշներից երևում է, որ հայկական գրությունը V—X դարերի ընթացքում քիչ է փոփոխվել։ Սակայն հաշվի առնելով մի շարք հանգամանքներ՝ տառերի գծագրական ձևերը, գրանյութի հնությունը, ուղղագրությունը, կետադրությունը և այլն, կարելի է մոտավոր ճշտությամբ որոշել հին գրությունների ժամանակը դարերով։

Պրոֆ. Հ. Աճառյանը մեսրոպյան բոլորգիծ գրերից հնագույնն է համարում այն գրերը, որոնք չեն ենթարկված վայրահակության օրենքին, այսինքն՝ տառերի պոչերը, թևերը և գլուխները չեն թեքվում ներքև, այլ ուղիղ ձև ունեն։

Իրոք, եթե մենք նայելու լինենք V—VII դարերի արձանագրությունների գրերին, ապա նրանք գրվում են առանց վայրահակության։ Սակայն այդ անխախտ օրենք չէ, մեկ-մեկ պատահում են հին տեքստեր, որոնք ենթարկվել են վայրահակության։ Այսպես է օրինակ՝ պրոֆ. Հ. Աճառյանի մատնացույց արած Սանասարյան վարժարանի V դարի համարվող ձեռագրի գրությունը, որոշ տառեր վայր են հակված։ Նման տառեր կան նաև Հռիփսիմեի արձանագրության մեջ և հին այլ բնագրերում։



Վիմագիր արձանագրությունների V—VII դարերի գրությունները հավասար շարքով են գրվում. չկան շարքից վերև բարձրացող կամ ներքև իջնող տառերը։ Գրչագրությունը փոքր-ինչ տարբերվում է վիմագրերից. այստեղ նույնպես տառերը հավասար բարձրությամբ են գրվում, բացառությամբ Ջ, Ք, Ղ, Լ, Փ տառերի։

Ձեռագրի հնության խնդրում կարևոր է տառերի խոշորությունը. որքան տառերը մեծ են, այնքան ավելի հին են նրանք։ Մենք նկատի ունենք կանոնական բովանդակություն ունեցող ձեռագրերի գրությունները։ Սակայն պատահում է, որ ուշ շրջանում ձեռագիրը գրում են արխաիկ ձևով՝ պահպանելով նաև նախկին բնագրի տառերի խոշորությունը։

Հայագետներից ոմանք ձեռագրի գրության հնությունը որոշելու խնդրում կարևոր ցուցանիշ են համարում մագաղաթի խունացած լինելը, եթե մագաղաթը դեղնած է, հնության կնիք ունի, հետևապես վաղ շրջանում է գրված, իսկ եթե մագաղաթը սպիտակ է՝ գրությունը նոր է։ Որոշ չափով այս ճիշտ է, բայց այս և որոշիչ ցուցանիշ համարել չի կարելի, որովհետև գրանյութի խունացումը կապված է գլխավորապես պահպանությունից, եթե ձեռագիրը չի ընկել ջրի մեջ կամ կաթիլքի տակ, պահվել է չոր տեղում, խունացած չի լինում։ Պատահում է նաև հակառակը, շատ ավելի նոր ձեռագիր, եթե պահպանությունը լավ չի եղել, արագ խունացել է։ Մենք գիտենք այնպիսի պահպանակներ, որոնց մի երեսը խունացել է՝ տառերն անճանաչելի աստիճանի, իսկ մյուս երեսը՝ թղթի սպիտակությամբ մաքուր է։

Գրության հնությունը որոշելու հիմնական միջոցը՝ տառերի գծագրական առանձնահատկություններն են։ Անհրաժեշտ ենք համարում կանգ առնել մեսրոպյան երկաթագիր տառերի վրա առանձին-առանձին։

**Ա**—Երկու սյունագծերը միանում են ներքին կամարակոր գծիկով։ Աջ կողմից տառի ներսից սկսում է բարակ մի գիծ, որը մահիկի ձևով իջնում է մինչև սյան ծայրը, ճեղքում, դուրս է գալիս և հունական ալֆայի նման վեր բարձրանում։ Հետագա դարերում այդ գծիկը, վայրահակության օրենքով, սկսում է թեքվել ներքև։ Ուղղագիծ երկաթագրում երկրորդ սյունագիծը բաժանվում է երկու մասի և միանում մազագծով։

**Բ**—Գլխիկը բոլոր ձև ունի։ Տառանիշը որքան հին է, այնքան թևը, վերին գլխիկի համեմատությամբ, փոքր է, իսկ հետագայում երկարում է և կախ ընկնում ներքև։ Ուղղագիծ երկաթագրում կլոր գլուխը անկյունավոր ձև է ստանում։

| Տեկոր 490 թ. № 1 | Պահպ. V-VI դ. № 2 | Հռիփ. 610 թ. № 3 | Արուճ 668 թ. № 4 | Պատ. VIII դ. № 5 | Լազ. 887 թ. № 6 | Վիեն. VIII-IX դ. № 7 | Ագաթ. IX-X դ. № 8 |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա |
| Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ |
| Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ |
| Դ | Դ | Դ | | Դ | Դ | Դ | Դ |
| Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե |
| Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ |
| | Է | Է | Է | Է | Է | Է | Է |
| | Ը | Ը | Ը | | Ը | Ը | Ը |
| Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ |
| | Ժ | Ժ | Ժ | | Ժ | Ժ | Ժ |
| Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի |
| Լ | | | | Լ | Լ | Լ | Լ |



| Տեկոր 490 թ. № 1 | Պահպ. V-VI դ. № 2 | Հռիփ. 610 թ. № 3 | Արուճ 668 թ. № 4 | Պատ. VIII դ. № 5 | Լազ. 887 թ. № 6 | Վիեն. VIII-IX դ. № 7 | Ագաթ. IX-X դ. № 8 |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | Խ | Խ | Խ | Խ | Խ | Խ |
| | Ծ | Ծ | | | Ծ | Ծ | Ծ |
| Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ |
| Հ | Հ | | Հ | Հ | Հ | Հ | Հ |
| Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ |
| Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ |
| | | Ճ | | | Ճ | Ճ | Ճ |
| Մ | Մ | Մ | Մ | Մ | Մ | Մ | Մ |
| Յ | Յ | Յ | Յ | Յ | Յ | Յ | Յ |
| Ն | Ն | Ն | Ն | Ն | Ն | Ն | Ն |
| Շ | | Շ | Շ | | Շ | Շ | Շ |
| Ո | Ո | | Ո | Ո | Ո | Ո | Ո |

| Տեկոր 490 թ. № 1 | Պահպ. V-VI դ. № 2 | Հռիփ. 610 թ. № 3 | Արուճ. 668 թ. № 4 | Պատ. VIII դ. № 5 | Լազ. 887 թ. № 6 | Վիեն. VIII-IX դ. № 7 | Ագաթ. IX-X դ. № 8 |
|---|---|---|---|---|---|---|---|
| | Ձ | | | | Ձ | Ձ | Ձ |
| Պ | Պ | Պ | | Պ | Պ | Պ | Պ |
| | Ջ | | | Ջ | Ջ | Ջ | Ջ |
| Ռ | Ռ | Ռ | Ռ | Ռ | Ռ | Ռ | Ռ |
| Ս | Ս | Ս | Ս | Ս | Ս | Ս | Ս |
| Վ | Վ | Վ | | Վ | Վ | Վ | Վ |
| Տ | Տ | Տ | Տ | Տ | Տ | Տ | Տ |
| Ր | Ր | Ր | Ր | Ր | Ր | Ր | Ր |
| Ց | Ց | Ց | Ց | Ց | Ց | Ց | Ց |
| Ւ | Ւ | | Ւ | Ւ | Ւ | Ւ | Ւ |
| | Փ | Փ | | Փ | Փ | Փ | Փ |
| | Ք | Ք | | Ք | Ք | Ք | Ք |

Հին հայկական խունացած մագաղաթի էջ:

**Գ**—Գլխիկը փոքր է և կլոր. մեծությունը հավասար է տառի մեկ երրորդին: Աջ թևը սկսում է ներքևի աղեղի ուղղությունից քիչ վերև: Յոթերորդ դարից թևը սկսում է ներքև կախվել: Ուղղագիծ երկաթագրի ժամանակ կլոր գլխիկը քառանկյունու ձև է ստանում:

**Դ**—Ճիշտ «Գ»-ի նմանություն ունի, միայն գլխիկը բացված է: Տառի հետագա զարգացումը ընթանում է նախորդ տառի ձևով:

**Ե**—Սյունագիծն ուղիղ իջնում է մինչև տողը և, կեռվելով, կազմում գլխիկը: Հին տառանիշերում դեպի աջ երկարող թևը, համեմատաբար, կարճ է և ուղիղ, իսկ հետագայում երկարում է և ներքև կախվում: Պատահում են հին տառանիշեր, երբ թևն սկըսում է ոչ թե սյունագծի կեսից, այլ վերին ծայրից: Ուղղագիծ երկաթագրում կլոր գլխիկն անկյունների է փոխվում:

**Զ**—Հին տեքստերում ձվաձև մեծ կլոր է, իսկ ներքևից միանում է հորիզոնական մի գիծ. կլոր օղակը նստում է անմիջապես գծի վրա՝ առանց վզիկի: Հետագա դարերում կլոր օղն սկսում է փոքրանալ, և առաջանում է վզիկը, որը գնալով երկարում և հորիզոնական գծի երկու ծայրերում ելուններ է ստեղծում: Ուշ դարերում աջ ելունը ջնջվում է, և թև է գոյանում:

**Է**—Հնագույն տառանիշը պարզ ձև ունի. սյունագծին միանում են երկու թևեր՝ մեկը սյունագծի ներքևից, իսկ մյուսը՝ միջին մասից, որոնք սկզբում քիչ թեքություն ունեն, իսկ հետագայում զարգանում և կախվում են ներքև: Ուղղագիծ երկաթագրում գլխիկը և թևը սյունագծին միանալու տեղերում անկյուններ են ստեղծում:

**Ը**—Հնագույն ձևը պարզ է. վերին գլխիկը հավասար կիսակլոր է, իսկ ներքևի հորիզոնական գիծը՝ ուղիղ: Հետագա դարերում հորիզոնական այդ գիծը վահանաձև թեքվում է ներքև, և ներքևից վայր իջնող փոքրիկ գծիկ ավելացվում:

**Թ**—Բավականին տարբերվում է ներկա տառաձևից. աջ կողմի ոլորքը հավասար է սյունագծին, նույնիսկ փոքր-ինչ կարճ է: Հին տառաձևերում ոլորքից դուրս եկող գծիկը հորիզոնական ձև ունի, իսկ հետագա դարերում նա, վայրահակության օրենքով, ներքև է կախվում: Մոտավորապես X դարից ոլորքը ուղղագիծ երկաթագրում սկսում է բարձրանալ, իսկ հետագա դարերում վերին կլորը բացվում և անկյուններ է կազմում:

**Ժ**—Հին ձևը փաստորեն «Թ» հնագույն տառի ոլորքն է՝ գրեթե առանց փոփոխության: Հին տառաձևի հորիզոնական դուրս ելնող գծիկը ուղիղ է, իսկ հետագա դարերում սկսում է ներքև

կախվել: Սյունագծի վերին ծայրում հին տառաձևերը պահել են «Թ»-ի ոլորքը սյունագծի հետ միացնող վերին կոր գիծը: Ուղղագիծ երկաթագրում տառի բոլորակը քառանկյունի ձև է ստանում:

**Ի**—Հին տառաձևերում սյունագծին միացող աջ թևը վահանաձև կորություն ունի, իսկ հետագա դարերում նա սկսում է ներքև կախվել և անկյուն տալ:

**Լ**—Հին տառաձևերում տողաշարքի բարձրությունն ունի, իսկ ներքևի թևը՝ ուղիղ, հորիզոնական: Հետագա դարերում նա սկսում է տողաշարքից ներքև իջնել վահանաձև կորությամբ, իսկ X դարից սկսած, ուղղաձիգ բոլորգիր տեքստերում այդ կորությունը փոխարինվում է անկյունի:

**Խ**—Նման է «Ի» տառի հնագույն ձևին, միայն նրա աջ թևի վրա դեպի վերև թեքված մի ելուն է ավելանում: Հին տառաձևերում թևերը տարբեր բարձրությամբ են միանում սյունագծին, ոմանք՝ միջից, իսկ ոմանք՝ փոքր-ինչ վերևից կամ ներքևից: Հետագա դարերում ուղղագիծ երկաթագրում ծռվող թևը անկյուններ է տալիս:

**Ծ**—Հին ձևը պարզ է, կլոր գծիկը բոլորվում է և միանում մյուս ծայրի հետ և, խաչաձևվելով, մի ծայրը թեք գնում է աջ, իսկ մյուս ծայրը՝ ձախ: Հետագա դարերում ձախ ծայրը թեքվում է դեպի ներքև, իսկ աջը՝ վերև: Ըստ որում, փոքրանում է նաև կլորը:

**Կ**—Հին տառաձևերում առաջին սյունագիծը երկարում է մինչև տողը, իսկ մյուս սյունագիծը ստորակետի նմանություն ունի: Երկու սյունագծերը միանում են իրար բոլոր գծիկով: Հետագա դարերում ձախ սյունագիծն սկսում է վերև բարձրանալ, իսկ աջը՝ ներքև կախվել: Ուղղագիծ բոլորգրերում սյունագծերը միացնող գծիկն անկյուններ է տալիս:

**Հ**—Տառի ամենից հնագույն ձևը մեր ներկա տպագրության մեջ օգտագործված «Հ» տառի նման է, բայց առանց վերևի պոչիկի. ձախից աջ թեքվող գծիկը պարզ վերջավորություն ունի: Յոթերորդ դարից սկսած այդ թեք գծիկի վրա փոքրիկ ելուն է ավելանում, որը հետագա դարերում զարգանալով բավականին թեքված է ստեղծում, իսկ տառի եռանկյունին ավելի է սրվում:

**Ձ**—Հին տառաձևերում ձախ թեքված աղեղը մեծ է, և վերին գծիկը շատ քիչ է թեքված դեպի ներքև, իսկ յոթերորդ դարից սկսած այդ գծիկը հետզհետե սկսում է կեռվել, մինչև որ բոլորովին մոտենում է ներքին գծին: Ուղղագիծ երկաթագրում 2 թվանշանի ձև ունի:



**Ղ**—Հին տառաձևը շատ նման է ներկայումս գործածվող փոքրատառ «շ»-ին և գրվում է տառաշարքի հավասար բարձրությամբ, իսկ յոթերորդ դարից սկսած սյունագիծը տողաշարքից ներքև է կախվում: Ուղղագիծ երկաթագրի մեջ վերին գլխիկի բոլոր գիծը անկյունների է վերածվում:

**Ճ**—Հին ձևը հունական «Δ»-ին է նման, միայն աջ և ձախ գծերն իրար հետ միանալուց՝ հետո թեք ուղղություններով շարունակում են բարձրանալ: Տառի հորիզոնական գիծը դեռ ուղիղ է: Ուշ դարերի բոլորաձև երկաթագրերում խաչաձև երկարող գծիկներից առաջինն սկսում է ներքև ճկվել, իսկ երկրորդը ելուն է ընդունում, որ առաջներում գոյություն չուներ: Ուղղագիծ տառաձևերում ներքին հորիզոնական ուղիղ գիծը մեջտեղից վահանաձև կորությամբ վերև է բարձրանում:

**Մ**—Երկու սյունագծերը իջնում են մինչև տողը և միանում կլոր բոլորով: Վերևում, աջ սյունագծի վերին ծայրում միանում է փոքրիկ ելուն, որը սկզբում ուղիղ է, իսկ հետագայում սկսում է կեռվել: Ուղղագիծ երկաթագրում տառի ներքին բոլորը ուղղագիծ ձև է ընդունում:

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը Թ Ժ Ի Լ Խ Ծ

Կ Հ Ձ Ղ Ճ Մ Յ Ն Ո Չ Պ Ջ Ռ Ս Վ

Տ Ր Ց Փ Ք

ա բ գ դ ե զ է ը թ ժ ի լ խ ծ կ հ ձ ղ

ճ մ յ ն շ ո չ պ ջ ռ ս վ տ ր ց ւ փ ք

Միջին և փոքր երկաթագրերի նմուշներ:

**Յ**—Տառի հին ձևը շատ է նմանվում ներկայումս գործածվող 3 թվանշանին. երկու կիսաբոլորակներ դեպի ձախ ուղղված բացվածքներով նստած են իրար վրա: Որոշ բոլորաձև երկաթագրերում միջին ձախ թեքված գիծը երկարում է, քառանկյունի կետ է ընդունում իր վրա և, մոտենալով վերին և ներքևի գծերին, աքցանի ձև է ստանում:



Հովհաննես Կրոնավորի ինքնագիրը 1118 թվականից:



**Ն**—Տառի հին ձևի մեջ վերին կեռ կոտուցը թույլ է, իսկ հետագայում, գնալով, զարգանում է։ Շատ նմանվում է շուռ տված «շ» տառին։ Ուղղագիծ երկաթագրում տողի վրա նստած աղեղը անկյունների է վերածվում, իսկ վերին կոտուցը տողաշարքից դուրս է գալիս դեպի վերև։

**Շ**—Հին ձևը կիսաբոլոր աջ բացվածքով տառ է՝ վերին վերջավորության վրա բութ ընդունած ձևով։ Տառի բացված գիծը վերջանում է պարզ ձևով, առանց որևէ բարդության։ Հետագա դարերում տառի պոչը երկարում է դեպի աջ, և վայրահակության օրենքով ներքև թեքվող ելուն ավելանում։ Ժամանակի ընթացքում այդ ձևափոխվում է այնքան, որ դրանից առաջանում է բոլորգիր «շ»-ն։

**Ո**—Հին տառաձևը բոլոր է և սյունագծերը փոքր-ինչ թեքություն ունեն. առաջին սյունագիծը քիչ կարճ է երկրորդից։ Ուղղագիծ երկաթագրում վերին բոլորակը անկյունների է վերածվում։

**Չ**—Հին ձևը խոշոր կիսաբոլոր է, թեքված է դեպի ձախ և ներքևից բթաձև ելուն է ընդունում իր վրա։ Կորի վերին ծայրը պարզ է, առանց բարդացումների։ VII—VIII դարերում ներքին բութ գիծը երկարում և վերին կորի վրա կոտուց է ընդունում։

**Պ**—Ներքև իջնող երեք գծիկներից առաջինը բավականին կարճ է և քիչ բացված, երկրորդը տառաշարքի միջին երկարությունն ունի, իսկ երրորդը իջնում է մինչև տողը։ Վերին միացող գիծը վահանաձև կիսաբոլոր է։ VII—VIII դարերում կտրվում է երկու մասի և դառնում երկու փոքրիկ աղեղ, որոնցից առաջինն ավելի է ներքև հակվում։ Ուղղագիծ երկաթագրում վերին բոլոր գծերը անկյունների են վերածվում։

**Ջ**—Հին տառաձևի գլուխը փոքր է, նեղ, թեք և երկար։ Նրա գլխիկից երկարող բարակ ծայրը հատվում է քառակուսի մի կետով, որից սկիզբ է առնում ներքև իջնող մի գիծ, որը հետագա դարերում ալիքաձև կորություն է ընդունում։

**Ռ**—Տառի հիմնական կմախքը բոլորաձև երկաթագիր «Ո» տառից է կազմվում, որի աջ սյունագծին միանում է մի փոքրիկ ելուն։ Որոշ տառերում այդ ելունը հորիզոնական դիրքով փոքրիկ գիծ է, իսկ երբեմն վեր է ածվում ներքև թեքվող թևի։ Ուղղագիծ երկաթագրում տառի վերին բոլորը անկյունների է վերածվում։

**Ս**—Ներքևի սյունագծերը միացնող գիծը բոլոր է, աղեղնաձև, իսկ ուղղագիծ երկաթագրում ուղիղ ձև է ընդունում և անկյուններ տալիս։ Հին տառաձևերում երկրորդ սյունագիծը քիչ կարճ է։

**Վ**—Տառի նախնական ձևը մեծատառ բոլորգիր «Ա»-ին է նմանվում, միայն աջ ելունը ներքևից ուղիղ երկարում է դեպի աջ: Տառը հազիվ նկատելի վզիկ ունի: Տառի հետևյալ զարգացումը տեղի է ունենում հետևյալ կերպ. նախ պոչիկը հորիզոնական դիրքից ներքև է կախվում, հետագայում տառի վրա փոքրիկ կորությամբ վզիկ է սկսում ավելանալ և ներքին պոչը տողաշարքից ցած իջնում: Հետագայում տառի առաջին սյունը սկսում է կարճանալ:

**Տ**—Նման է ներկայիս «մ» տառին: Հանդիպում է երկու ձևով. մի դեպքում վերին գլխիկը ներքև կախված, իսկ մյուս դեպքում՝ հորիզոնական ուղիղ գծիկի ձև առած: Տառի հին ձևերում երկու կորությունները էլ բոլոր են, իսկ ուղղագիծ երկաթագրերում անկյուններ են վերածվում:

**Ր**—Տառի սկզբնական ձևը շատ նման է հունական «ρ» ռհո տառին: Գլուխը կլոր է և փոքրիկ շերտով է միայն բաժանվում սյունագծիկից: Հետագա դարերում, գնալով, վերին գիծը սկսում է թեքվել դեպի ներքև, վերևում ստեղծելով անկյուն:

**Ց**—Հին ձևը իրար վրա ձախ դարձվածքով նստած կիսաբոլորներ են, որոնցից վերինը փոքր է, իսկ ներքևինը՝ մեծ: Ուշ բոլորաձև երկաթագրերում և ուղղագիծ երկաթագրերում վերին բոլորակի բացված գծերը մոտենում են իրար և միանում, իսկ երկրորդը՝ մնում է անփոփոխ:

**Ւ**—Սկզբում տառն ունի շատ պարզ ձև. տառաշարքի բարձրությամբ մի սյունագիծ է, որից միանում է աջ թեքվող թևը: Տառի հին ձևերում այդ թևը հորիզոնական դիրքով կարճ գծիկ է, իսկ հետագայում վեր է ածվում ներքև թեքվող թևի:

**Փ**—Հին տառաձևը պարզ է. մի սյունագիծը իջնում է վերից վար և ներքևում սյան ձև ընդունում: Սյունագիծը բավականին տարածությամբ անցնում է սովորական տառաշարքից դեպի ներքև և պարող մարդու կանթված թևերի նման թևեր ընդունում իր վրա:

**Ք**—Իր ձևով շատ նման է նախորդ տառին և կազմված է նրա սկզբունքով. վերից վար իջնում է մի սյունագիծ, կտրում, անցնում է տառաշարքի սահմանը և սուր ծայրով ներքև կախվում: Վերևում, սյունագծի աջ կողմում, միանում է մի փոքրիկ գլուխ, իսկ սյունագծի միջին մասից թեք խաչաձևումով անցնում է հորիզոնական ուղղություն ունեցող մի այլ գիծ, որը, յոթերորդ դարից սկսած, ելուններ է ընդունում իր վրա:

Մեսրոպյան բոլորգիծ երկաթագիրը կրոնական-կանոնական գրականության մեջ հայկական գրի հիմնական տեսակն է հանդի-





Կաղանկատվացու Պատմության 1289 թ. ձեռագրի մեկ էջը:

սացել V դարից մինչև X դարը, իսկ միջին մեսրոպյան գրերը՝ պատմա-գիտական ձեռագրերում և ավետարանների համաբարբառներում՝ V դարից մինչև XII դարը։

Ուղղանկյուն երկաթագիր գրությունները մեզ հանդիպում են IX դարից, բայց գործածական գրի տեսակ են դառնում X—XI դարերում։ Նրանք իրենց գծագրական առանձնահատկություններով շատ նման են մեսրոպյան բոլորգիծ երկաթագրին, միայն թե տառաձևերի նախկին կորությունը փոխվում է ուղղագիծ անկյուններ և տառերի մեծությունը քիչ փոքր է։

Ուղղանկյուն երկաթագրերից կարելի է մատնացույց անել Մովսես Խորենացու Պատմության գլխացանկ տառերը, Տիմոթեոս Էլուրոսի «Հակաճառությունն»-ը (ՀՊՄ ձեռ. № 1958) 10-րդ դարից, Էջմիածնի Ճաշոցը (ՀՊՄ ձեռ. № 832) 1154 թվականից, Հայրապետ գրչի ձեռագիրը (ՀՊՄ ձեռ. № 987) 1211 թվականից, Իգնատիոս գրչի ձեռագիրը (ՀՊՄ ձեռ. № 1519) 1231 թվականից և ուրիշներ։

Ուղղանկյուն երկաթագրի հին տեքստերում բառանջատում չի կատարվում, բայց XI դարից տեքստերն սկսում են բառանջատել։ Սկսում են երևալ բոլորովին նոր տառաձևեր։ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 283 ձեռագրի հիշատակարանում, որը գրված է 1033 թվականին, մեզ հանդիպում են միացյալ «և», եռատամ «ա», կեռվող գծայունով «յ» և փակված գլխով «ց» տառերը (Հովսեփյան, Հիշատակարանք, էջ 218)։

Անցման շրջանի հետաքրքիր գրություն ունի ակադ. Ն. Մառի ուսումնասիրած Պիշպեքի գերեզմանատան մի տապանաքարի հայկական արձանագրությունը[1]։ Այստեղ գլխագիր «Ա» տառը սկսել է փոխվել երեք ճյուղ ունեցող «ա»-ի, բայց դեռ ամբողջապես չի ձևակերպվել և չի կորցրել երկաթագրի որոշ ձևերը։

## ԲՈԼՈՐԳԻՐ

Տառաձևերի փոփոխությունն առանձնապես նկատելի է դառնում XII դարում. մեզ հասած ձեռագրերի մեջ բավականին թիվ են կազմում ուղղագիծ երկաթագրից բոլորգիր գրի անցնող տեսակները։ Ըստ որում, ձեռագրերը որքան հին են, այնքան նրանց տառաձևերը խոշոր են։ Մեզ հանդիպում են բոլորգրի այնպիսի տեսակներ, որոնք կրկնակի անգամ մեծ են սովորական բոլորգրից։

[1] Н. Я. Марр, Надгробный камень из Семиречий (տես „Записки Восточн. имп. арх. об—ва“ VIII, էջ 344—349)։





Մի էջ Եղիշեի Պատմության 1172 թ. ձեռագրից։

XII դարում առաջանում է բոլորգրի երկու տեսակ—Կիլիկյան բոլորգիր և Արևելյան բոլորգիր: Բոլորգրի այս երկու տեսակների զանազանությունը նկատել է Գարեգին կաթողիկոս Հովսեփյանն իր «Գրչության արվեստը» աշխատության մեջ և «Կոնստանդին կաթողիկոսը որպես հայ մանրանկարչության մեծ հովանավոր» վերնագրով հոդվածում: Վերջին ուսումնասիրության մեջ նա գրում է. «Կիլիկյան շրջանի հնագույն ձեռագիրներն էլ երկաթագիր են. հետո միայն մշակվում և տիրապետող է դառնում Կիլիկյան բոլորգիրը, որը տարբեր է Արևելյան բոլորգրից, որին ուրիշներն անցման երկաթագիր են կոչել»[1]:

Կիլիկյան բոլորգիրն ունի ճիշտ «կորպուս» կոչվող գրի ձևը, ինչ որ ներկայումս գործ է ածվում մեր տպագրության մեջ, իսկ Արևելյան բոլորգիրը նրանից քիչ տարբերվում է տառերի խոշորությամբ և մի քանի տառաձևերով՝ «չ», «շ», «ձ», «ջ», «ք» և այլն:

Արևելյան բոլորգրի լավագույն նմուշներից են՝ Կոստանդնուպոլսի Ազգային մատենադարանի № 68 ավետարանի գրությունը՝ 1253 թվականից, Մարտիրոս գրչի ընդօրինակած Նարեկը՝ 1283 թվականից (ՀՊՄ ձեռ. № 6764), Խոսրով Անձևացու ժամագրոց մեկնությունը՝ 1278 թվականից (ՀՊՄ ձեռ. № 1328), Թումա գրչի ընդօրինակած ավետարանը՝ 1315 թվականից (ՀՊՄ ձեռ. № 2930), և ուրիշներ:

XI—XII դարերում հայ գրի պատմության մեջ նկատելի է մի նոր երևույթ. հանդես է գալիս շղագրությունը, որը տեղ խնայող և արագագիր գրության տեսակ է: Շղագրով են գրված ՀՊՄ-ի № 2877 և № 2684 ձեռագրերի հիշատակարանները, որոնցից առաջինը գրված է XI դարում Գրիգոր գրչի կողմից, իսկ երկրորդը՝ կազմարար Հովնանի կողմից, 1159 թվականին: Այս հիշատակարաններից առաջինի մասին խոսել է Գարեգին կաթողիկոս Հովսեփյանն իր կազմած «Հիշատակարանք ձեռագրաց»-ի մեջ և ձեռագրի գրչության առթիվ տվել հետևյալ ծանոթագրությունը. «Այս փոքրիկ հիշատակարանը գրված է շղագրով, որով և շատ հետաքրքրական է հնագրության համար»[2]: Սակայն շղագրությունը, ինչպես և XI—XII դարերի մշակույթի առաջադիմական մի շարք երևույթներ, դժբախտաբար, իրենց զարգացումը չունեցան, որովհետև հայ ժողովրդի գլխին պայթեց աննախընթաց

[1] Գարեգին արքեպիսկ. Հովսեփյան, Նյու-Յորք, 1943 («Նյութեր և ուսումնասիրություններ», պրակ Բ, էջ 16):

[2] Գարեգին կաթողիկոս Հովսեփյան, Հիշատակարանք ձեռագրաց, Անթիլիաս, 1951, էջ 378:





Ամիրդովլաթի «Օգուտն բժշկութեան» ինքնագիր ձեռագրի մեկ էջը:

մի նոր փոփորիկ, երկիրը տակնուվրա եղավ, և հայ մշակույթը ենթարկվեց լճացման. այնուհետև հարկավոր եղավ ևս սպասել մոտ վեց դար, որպեսզի նորից հանդես գա շղագրությունը և իշխող գրի տեսակ դառնա։

Բոլորգիրը հայ մատենագրության մեջ իշխող գրի տեսակ դարձավ սկսած XIII դարից։ Մեր խոսքն, իհարկե, մասսայական գործածության մասին է, այլապես այս գրի հին տեսակները մենք ունենք դեռ X դարից։ Նրա հին օրինակը Պողոսի թղթերի մեկնությունն է՝ 999 թվականից (նմանահանությունը հրատարակված է Ալիշանի «Այրարատ»-ում, էջ 498)։ Այնուհետև, այս գրի հին օրինակներից է Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 229 ձեռագիր ավետարանը, 1033 թվականից, և այլ ձեռագրեր։

Մեզ հայտնի չէ, թե ինչից է առաջացել գրի «բոլորգիր» անունը. ինչու է «բոլորագիր» կոչվում։ Նայելով նրա անվանը, թվում է, թե գրի այս տեսակն իրոք կլոր պիտի լիներ, բայց, իրապես, նա բոլորովին էլ կլոր չէ, այլ անկյունավոր է և հավասար նստում է տողի վրա։ Գուցե նա այդ անունը ժառանգել է նախկին բոլորաձև երկաթագրից, որից նա առաջացել է։ Համենայն դեպս, այժմ նրա անվան մասին որոշակի ոչինչ ասել չենք կարող։

Բոլորգիրը մի քանի անգամ ավելի փոքր է, քան բոլորաձև երկաթագիրը, և, ի տարբերություն նրա, նախկինի նման ոչ թե նկարվում է, այլ գրվում։ Գրչի մեկ-երկու գծումով ավարտվում է ավյալ տառը։ Արագության հետևանքով գրերը փոքր-ինչ թեքաձև են ընդունում։ Հեշտ գրելու հետևանքով որոշ գրեր պարզեցվում են և փոխվում նախկինի համեմատությամբ (տես այս մասին բերված գրերի նմանահանությունները)։ Գրեթե բոլորովին փոխվում են՝ ա, զ, թ, հ, ձ, մ, յ, շ, չ, ջ, ռ, տ, ց, ւ, փ, ք տառերը։

Այս գրության մեջ հայկական այբուբենի վրա ավելանում են «և», «օ» և «ֆ» տառերը, որոնք առաջ չկային։ Սակայն միշտ չէ, որ գործ են ածվում նրանք։ Հատկապես հին տեքստերում, որոնք ընդօրինակվում են, գրիչները հետևում են հին սովորությանը— «և»-ը գրում են անջատ «եւ» ձևով, «օ»-ն գրում են «աւ» ձևով, իսկ «ֆ»-ի փոխարեն գործ են ածում «փ»։

Բոլորգիրը գեղարվեստական կատարելության է հասնում առանձնապես Կիլիկյան և Ղրիմի գրչության դպրոցներում (Հռոմկլա, Ակներ, Կաֆա, Սուրխաթ և այլն)։ Երբեմն բոլորգրով գրըված այնքան գեղեցիկ համաչափ տեքստեր են պատահում, որ



ամենևին չի կարելի տարբերել տպագրից։ Կիլիկիայի գրչության դպրոցից հայտնի են առանձին գեղագիր գրիչներ, որոնց մասին



Մի էջ Շիրակացու «Աշխարհացոյց»-ի XII դ. ձեռագրից:

մեծ գովեստով են խոսում նրանց աշակերտները կամ լծակից ընկերները։

Բոլորգիր տեքստերում գրեթե միշտ կատարվում է բառ-

անջատում: Պատահում է, որ «և»-ը շարունակում են միացնել նախորդ բառի հետ: Բոլորգիր տեքստերում սկսում են գործածել բազմաթիվ կետադրական նշաններ, նշում կարճ և երկար վանկի նշանները, տողադարձի նշաններ են դնում և այլն:

ԱՅՍ ԲԱՆՔ ՔԵՐԴՈՂԱԿԱ
ՆՔ ԱՍԱՑԵԱԼ ՄԵԾ Ի
ՊՈՒԵՏԻԿՈՍԻՆ ՍԱՐԿԱՒԱ
ԳԻՆ ՈՐ Ի ՄԻՋԻ ԵՐԱՀՌՉԱԿՈՒ
ՄԻՆ ՀԱՂԲԱՏ. ԳՏԵԱՆ ՆՈՐ
ԱՍՏ ՈՄՆ Ի ՄԱՆԿՈՒՆՍ ԵԿԵՂԵ
ՑԻՈՅ· ԱՐԴ ՄԻՈՔ ՅԱՆԴԳՆԵԱԼ
ԻՃԽԵԱՑԵ ՅԱՒԵԼՈՒԼ ԿԱՄ ՊԱ
ԿԱՍԵՑՈՒՑԱՆԵԼ Ի ԲԱՆԻՑ ԿԱ
ՄԻ ՄԱՆՑ ԵՒ ՅԱՐՈՒԵՍՏԻՑ·
ՔԻ ԵՒ ՄԵՔ ՈՉ ԻՃԽԵՑԱՔ ՅԱՒ Ե
ԼՈՒԼ ԵՒ ՊԱԿԱՍԵՑՈՒՑԱՆԵԼ
ՉՈՐ ԻՍՔՆ ԻՍ ԻՒՐՈՎ ՁԵՌԱՄԲ Ն
ԳՐԵԱԼ ԷՐ· ԵՒ ԸՍՏ ԱՅՍՄ ԱՒ Ր
ԲՆԱԿԻ ԵՐԿ ՄԱԿՆ ՅՈՐՈՒՄ ԵՐԱԿ·
ԱՒԻՉԷՆՆ ԵՒ ԿԱՏԱՐԱՑՈՒՑԵԱԼ

Մի էջ Հովհաննես Իմաստասերի
1211 թ. հիշատակարանից:

Բոլորգրի տեքստում սկսում է առանձնանալ մեծատառի և փոքրատառի տարբերությունը: Մեծատառով կամ գլխատառով սկսում են գրել տեքստի սկզբի տառերը, առանձին հատվածների սկզբնատառերը և այլն: Ուշադրության արժանի է այն, որ այդ



ժամանակ ևս հատուկ անունները որոշ տեքստերում շարունակում են գրվել փոքրատառերով: Վերնագրերը ընդգծելու համար գրում են կարմիր թանաքով կամ զարդանկարում:

Այս կապակցությամբ անհրաժեշտ է նշել, որ Գրիգոր Տաթևացին Գևորգ Սկևռացու գրչության արվեստի իր մեկնության մեջ երեք տեսակ գլխագիր է նշում՝ «ծաղկի», «երկաթի» և «հասարակ». «Երեք են գլխագիր: Նախ՝ ծաղկի, երկրորդ՝ երկաթի, երրորդ՝ հասարակ գլխի» (ՀՊՄ ձեռ. № 3587, էջ 238):

Արագ գրելու և տեղի խնայողության պահանջը հարկադրում է մարդկանց տառերը գրելու նոր և պարզ ձև մշակել: Սակայն այժմ ևս հատուկ ուշադրություն է դարձվում գեղագրության վրա: Մեզ է հասել Կիլիկյան շրջանից մի հետաքրքիր տեղեկություն, որը ցույց է տալիս այն ժամանակվա գեղագրության բարձր պահանջը: Այդ տեղեկությունը բերում է Ալիշանն իր «Սիսուան»-ի մեջ: Տարսոնցի մի հայ օրիորդ, Ալիծ անունով, որը հմուտ է եղել հայկական գրչության մեջ, գեղեցիկ ձևով գրում է հայերեն մի այբուբեն և հայտարարում, որ ով կարողանա իր նման գեղեցիկ գրել, նա իրավունք կունենա իր ձեռքը խնդրել: Երկու երիտասարդներ փորձում են իրենց բախտը, գրում բերում են, բայց օրիորդը չի հավանում, հայտարարելով, որ նրանց գիրը «Չէ նըմանիր գիրն Ալիծին»: Ալիծը նորից հայտարարում է, որ ով կարողանա բերել այնպիսի գիր, որ նման լինի իր գրին «նա կու լինի փեսայ Ալիծին»:

Շնորհալի մի երիտասարդ շատ գեղեցիկ գրում է հայկական տառերը և բերում Ալիծին: Օրիորդը նայում է երիտասարդի գրին և հավանում՝ հայտարարելով. «...կու նըմանի գիրն Ալիծին»[1]:

Բոլորգիրն իշխող գրի տեսակ է մնում մինչև XVI դարը ներառյալ, որից հետո աստիճանաբար ասպարեզը զիջում է նոտրգրին, չնայած XVI—XVII դարերում ևս պատահում են բոլորգիր ձեռագրեր:

## ՆՈՏՐԳԻՐ ԵՎ ՇՂԱԳԻՐ

Նոտար բառը ծագում է հունական νοτάριος կամ լատինական notarius բառերից, որ ունեն գրագիր, դպիր իմաստը, իսկ նոտր գիր՝ գրագիրների, դպիրների գիր: Նա համարվում է արագագիր գրու-

[1] Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 520:



Մի էջ առաջին հայ գրքի 1512 թ. «Ուրբաթագրքից»:



թյուն և ըստ բառի իմաստի համապատասխան է ռուսական „скоропись"-ին: Գրի այս տեսակը նպատակ էր դնում, որքան կարելի է, արագ գրել և քիչ տարածության վրա շատ տառեր տեղավորել:

Նոտր բառը, նոտարել բայաձևով, մեզ հայտնի է դեռ XV դարից: Հակոբ Ղրիմեցին իր հիշատակարաններից մեկում այդ բառը գործ է ածել հետևյալ նախադասության մեջ. «ընթերցեալ տեսաք և փափաքմամբ նոտրեցաք» (Հայկազ. բառ. II, էջ 456): Սակայն նոտրգիրը որպես գրության իշխող տեսակ հանդես է գալիս միայն XVII—XVIII դարերում: 1666 թվականին գրված մի հիշատակարանում նոտրգիրը հիշված է նոտրգիծ ձևով, ինչպես որ բոլորգիրը՝ բոլորգիծ:

Նոտրգիրը գրի իշխող տեսակ դառնալուց հետո ևս բոլորգիրը շարունակում է գործածվել: Այդ տեսակետից ուշագրավ է XVIII դարի մի գրչի հիշատակարան, որը մատնացույց է արել Հ. Հ. Տաշյանը: Ղազար անունով մի գրիչ ընդօրինակած ձեռագրի առաջին մասը գրել է բոլորգիր, իսկ երկրորդը՝ նոտրգիր և թողել հետևյալ հիշատակությունը. «Ես Ղազար աբեղայս բոլոր գրեցի մինչև ի հոս, նոտր ուսայ՝ նոտր գրեցի»[1]:

Նոտրգիրը, ամենից առաջ, հայկական գրի բոլոր տեսակների մեջ ամենից մանրն է, այնքան մանր, որ որոշ տառեր կարծես կազմված լինեն միջակետերից՝ «ս»-ն, «ո»-ն, թվում է, երկու կետից են, «ա»-ն, «տ»-ն՝ երեք, «թ»-ն այնքան է փոքրանում, որ կորցնում է իր փաթեթը և սովորական «ր»-ի ձև առնում՝ փոքրիկ ելունով, «ւ» տառը կորցնում է հորիզոնական կարճ սյունագիծը և պարզ գծիկ դառնում, «ք» տառը գրվում է ծուռ խաչի նման «X», գլխիկների փոքրացման հետևանքով գրեթե աննկատելի են դառնում «դ» և «գ», «շ» և «ղ», «չ» և «ղ» տառերի տարբերությունները և այլն:

Նոտրգիրը ուղղագրության, կետադրության, համառոտումների, գաղափարագրի և այլ հարցերում հետևում է բոլորգրին: Այստեղ փոքր-ինչ ավելի են հանդիպում համառոտումները, և մեկ-մեկ թվականները սկսում են գրվել արաբական նշաններով:

Գեղագրության տեսակետից նոտրգիրը, երկաթագրի և բոլորգրի համեմատությամբ, բավականին փոխվել է. տառերը կորցնում են իրենց համաչափությունը, վերև և ներքև բարձրացող և իջնող

[1] Հ. Տաշյան, Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ, էջ 32:

սյունագծերը սկսում են թեքությամբ երկարել, անհամաչափ երկարում են նաև «ւ»-ի, «և»-ի, «զ»-ի, «շ»-ի, «չ»-ի պոչիկները, տողերը վերջանում են անհավասար ձևով և այլն։

Զարդագրերը շարունակում են գործածվել՝ վերցնելով նրանց բոլոր տեսակները ըստ նախասիրության։ Սակայն մեծատառերը քավականին ձևափոխվում են։

Դավիթ Բեկի պատմության մեկ էջը՝ նոտրգիր։

Նոտրգիրը շատ երկար կյանք չի ունենում։ Նա XIX դարում իր դիրքն սկսում է զիջել շղագրին։ Մենք «շղագիր» ասելով նկատի չունենք տպագրության մեջ ներկայումս գործածական և



Բոլորգիր և նոտրգիր տառաձևերի աղյուսակ։

| Պահպ. IX դ. | Թղթի 971 թ. | Նարեկ 1172 | Ձեռ. XII դ. | Ձեռ. XIV դ. | Հնատ. 1512 | Հնատ. 1512 | Նոտր. XVII | Նոտր. XVII | Շրգ. XVIII |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա | Ա |
| Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ | Բ |
| Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ | Գ |
| Դ | Դ | Դ | Դ | Դ | Դ | Դ | Դ | Դ | Դ |
| Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե | Ե |
| Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ | Զ |
| Է | Է | Է | Է | Է | Է | Է | Է | Է | Է |
| Ը | Ը | Ը | Ը | Ը | Ը | Ը | Ը | Ը | Ը |
| Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ | Թ |
| Ժ | Ժ | Ժ | Ժ | Ժ | Ժ | Ժ | Ժ | Ժ | Ժ |
| Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի | Ի |
| Լ | Լ | Լ | Լ | Լ | Լ | Լ | Լ | Լ | Լ |
| Խ | Խ | Խ | Խ | Խ | Խ | Խ | Խ | Խ | Խ |
| Ծ | Ծ | Ծ | Ծ | Ծ | Ծ | Ծ | Ծ | Ծ | Ծ |
| Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ | Կ |
| Հ | Հ | Հ | Հ | Հ | Հ | Հ | Հ | Հ | Հ |
| Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ | Ձ |
| Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ | Ղ |

Բոլորգիր և նոտրգիր տառաձևերի աղյուսակ:

| Պահպ. IX դ. | Թղթի 971 թ. | Նարեկ 1172 | Ձեռ. XII դ. | Ձեռ. XIV դ. | Հնատ. 1512 | Հնատ. 1512 | Նոտր. XVII | Նոտր. XVII | Շրղ. XVIII |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ճ | ճ | Ճ | ճ | ճ | Ճ | ճ | Ճ | ճ | Ճ |
| Մ | մ | Մ | մ | մ | Մ | մ | Մ | մ | Մ |
| Յ | յ | Յ | յ | յ | Յ | յ | Յ | յ | Յ |
| Ն | ն | Ն | ն | ն | Ն | ն | Ն | ն | Ն |
| Շ | շ | Շ | շ | շ | Շ | շ | Շ | շ | Շ |
| Ո | ո | Ո | ո | ո | Ո | ո | Ո | ո | Ո |
| Չ | չ | Չ | չ | չ | Չ | չ | Չ | չ | Չ |
| Պ | պ | Պ | պ | պ | Պ | պ | Պ | պ | Պ |
| Ջ | ջ | Ջ | ջ | ջ | Ջ | ջ | Ջ | ջ | Ջ |
| Ռ | ռ | Ռ | ռ | ռ | Ռ | ռ | Ռ | ռ | Ռ |
| Ս | ս | Ս | ս | ս | Ս | ս | Ս | ս | Ս |
| Վ | վ | Վ | վ | վ | Վ | վ | Վ | վ | Վ |
| Տ | տ | Տ | տ | տ | Տ | տ | Տ | տ | Տ |
| Ր | ր | Ր | ր | ր | Ր | ր | Ր | ր | Ր |
| Ց | ց | Ց | ց | ց | Ց | ց | Ց | ց | Ց |
| Ւ | ւ | Ւ | ւ | ւ | Ւ | ւ | Ւ | ւ | Ւ |
| Փ | փ | Փ | փ | փ | Փ | փ | Փ | փ | Փ |
| Ք | ք | Ք | ք | ք | Ք | ք | Ք | ք | Ք |



հայտնի նույնանուն տառը, այլ շեղ գրված տառերը, որի գեղեցիկ նմուշներից է ստորև բերված լուսանկարը:

Շղագիրը հայ գրչության մեջ հանդես է գալիս շատ վաղուց, դեռևս X—XI դարերում: ՀԳՄ-ի № 2877 ձեռագրի փոքրիկ հիշատակարանը գրված է շղագրով: Այդ հիշատակարանի մասին Գարեգին կաթողիկոս Հովսեփյանն իր «Հիշատակարանք ձեռագրաց»-ի մեջ ունի հետևյալ ծանոթությունը. «Շղագրի հնագույն մի այլ հիշատակարան մեզ հասել է 1034 թվականից» («Հանդէս ամսօրեայ», 1898 թ., էջ 166): Սակայն հետագա դարերում այդ գիրը չկարողացավ ճանապարհ հարթել իր համար, որոշ ժամանակ մոռացության տրվեց, մինչև XIX դարը, և ապա մեկեն գրի ուրույն տեսակ դարձավ:

---



ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ



## ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Բոլոր տեսակի հայկական գրությունների մեջ հաճախ կարելի է հանդիպել պատվի նշանով բառերում կատարված մեկ կամ ավելի տառերի սղումների, որոնք կոչվում են պատվագրություն կամ համառոտագրություն։ Ձեռագիր տեքստերը վերծանելիս ուսումնասիրողի համար ամենամեծ դժվարությունը նրանք են ստեղծում, ուստի և անհրաժեշտ է ծանոթ լինել նրանց սղման սկզբունքի հետ։

Համառոտագրությունները, տարբեր ժամանակներում, կատարվել են տարբեր իմաստով ու նպատակով։

Երկաթագիր տեքստերում պատվագրությունը, իրոք, պատվագրություն է բառի իսկական իմաստով. ժամանակի ընդունված անխախտ սովորությունն է եղել տերունական բառերը, մյուս բոլոր բառերից տարբերելու համար, համառոտել՝ բառի վրա դնելով հատուկ նշան։ Այդ պատճառով է, որ բառի վերևում դրված նշանը կոչվում է ոչ թե համառոտման, այլ՝ պատվի նշան։

Համառոտագրությունների գործածության նպատակը հիմնովին փոխվում է բոլորգիր և նոտրգիր տեքստերում ու հնատիպ գրականության մեջ։ Այստեղ արդեն բառերի մեջ տառեր սղելը համառոտագրություն է իր իսկական նշանակությամբ՝ տեղ և ժամանակ տնտեսելու նպատակով։



Երկաթագիր գրությունների մեջ համառոտագրված են լինում հետևյալ յոթ տերունական բառերը. բերում ենք ուղղական և սեռական ձևերը.

| | |
|---|---|
| **ԱԾ** — աստուած | **ԱՅ** — աստուծոյ |
| **ՅՍ** — Յիսուս | **ՅԻ** — Յիսուսի |
| **ՔՍ** — Քրիստոս | **ՔԻ** — Քրիստոսի |
| **ՍԲ** — սուրբ | **ՍԲՅ** — սրբոյ |
| **ՏՐ** — տէր | **ՏՆ** — տեառն |
| **ԻԷԼ** — Իսրայէղ | **ԻՂԻ** — Իսրայէղի |
| **ԵՂՄ** — Երուսաղէմ | **ԵՂԻ** — Երուսաղէմի |

Բոլորգիր և նոտրգիր տեքստերում ու հնատիպ գրականության մեջ շարունակվում է նշված բառերի համառոտագրությունը, բայց նրանց կողքին առաջանում են հարյուրավոր նոր համառոտագրություններ։ Նրանց բոլորի վրա մեզ դժվար է կանգ առնել, ուստի մենք կխոսենք միայն այն հապավումների մասին, որոնց վերծանությունը որոշ դժվարությունների հետ է կապված։

Համառոտագրություններից ամենից շատ դժվարության տեղիք են տալիս միատառ համառոտագրությունները, այսինքն՝ այն համառոտագրությունները, որոնք մի տառով արտահայտում են մի ամբողջ բառ։ Այս խմբի համառոտագրությունները դժվարընթեռնելի են մանավանդ այն ժամանակ, երբ բարդված կամ միացված են հանդես գալիս նախադասությունների մեջ։ Բերենք մի քանի նմուշներ.

**պ** — պէս։ Այս ձևով համառոտագրվում են։

| | |
|---|---|
| պ պ — պէս պէս | նոյնպ — նոյնպէս |
| այսպ — այսպէս | ընդհանրապ — ընդհանրապէս |
| որպ — որպէս | յայտնապ — յայտնապէս |
| իսկապ — իսկապէս | այնպ — այնպէս և այլն |

**ք** — քան։ Այս ձևով համառոտագրվում են.

| | |
|---|---|
| քգի — քանզի | որք — որքան |

| | |
|---|---|
| այսք—այսքան | քար—քանքար |
| այնք—այնքան | նոյնք—նոյնքան և այլն |

ը — ընդ։ Այս ձևով համառոտագրվում են.

| | |
|---|---|
| ըունայն—ընդունայն | ըարձակ—ընդարձակ |
| ըդէմ—ընդդէմ | ըգրկել—ընդգրկել |
| ըէ՞ր—ընդէ՞ր | ըհանուր—ընդհանուր |
| ըունելութիւն—ընդունելութիւն | ըխմաբան—ընդխմաբան |
| ըօրինակել—ընդօրինակել | ըունակ—ընդունակ |

կ—կամ։ Այս ձևով համառոտագրվում են.

| | |
|---|---|
| կակոր—կամակոր | ակայ—ակամայ |
| կաւոր—կամաւոր | կակից—կամակից և այլն։ |

Կան նաև որոշ թվով հատուկ անուններ, որոնք համառոտագրվում են մի տառով՝ վերևում ընդունելով սուղի նշան։ Սակայն այս համառոտագրությունները գրությունների մեջ շատ քիչ են գործածվում. Նրանք ավելի շատ հանդիպում են «Նշանագիր իմաստնոց»-ներում.

| | |
|---|---|
| Գ°—Գէորգ | Մ°—Մխիթար |
| Զ°—Զաքարիա | Յ°—Յովհաննէս |
| Է°—Էմմանուէլ | Պ°—Պետրոս |
| Թ°—Թէոդորոս | Տ°—Տրդատ |
| Կ°—Կոստանդնուպոլիս | Ղ°—Ղուկաս և այլն։ |

Տեքստերում անհամեմատ շատ են երկտառ համառոտագրությունները. բառը պատվագրում են երկու տառով—մեկը վերցնում են բառի առջևի տառը, իսկ մյուսը՝ վերջին կամ նախավերջին վանկերի բաղաձայն տառերից մեկն ու մեկը։ Երկտառ համառոտագրություններից գործածական են հետևյալները.



| | | |
|---|---|---|
| թւ—թուական | թվ—թվական | հց—հարց |
| յղ—յաղագս | վս—վասն | նխ—նախ |
| վր—վերայ | քհ—քահանայ | ամ—ամենայն |
| սս—սապէս կամ այսպէս | ոպ—որպէս | կմ—կամ |
| մդ—մարդ | խճ—խոճայ | պտ—պատասխան |
| | գլ—գլուխ | |

Հաճախ են պատահում երեք և ավելի տառերի հապավումները, որոնք կազմված են լինում սկզբի տառից, վերջին տառից և միջին բաղաձայն տառերի մեկն ու մեկից։ Որպես նմուշ կարելի է բերել հետևյալները.

| | | |
|---|---|---|
| թգր—թագաւոր | ճշտ—ճշմարիտ | պկս—պակաս |
| շւղ—շաւիղ | ահլ—աւրհնեալ | բլր—բոլոր |
| վսյ—վասնորոյ | նհջ—նահանջ | սհպ—սահիպ |
| գւր—գինւոր | վրդ—վարդապետ | բրր—բարերար |
| բգմ—բազում | ժմկ—ժամանակ | կմւ—կամաւ |
| յրժմ—յորժամ | չրչր—չարաչար | չրդ—չորրորդ |
| երկդ—երկրորդ | երդ—երրորդ | հզր—հազար |
| քղք—քաղաք | ամի—ամենայնի | յռջ—յառաջ |
| կթղկս—կաթողիկոս | եպկս—եպիսկոպոս | վսկ—վասն այսորիկ և այլն։ |

Այդ նույն սկզբունքով համառոտագրվում են նաև հատուկ անունները։ Բերենք մի քանի օրինակներ.

| | | |
|---|---|---|
| Եգս—Եգիպտոս | Սհկ—Սահակ | Մվս—Մովսէս |
| Սրգս—Սարգիս | Վրդ—Վարդան | Շպհ—Շապուհ |
| Դւթ—Դաւիթ | Յհս—Յովհաննէս | Կրկ—Կիրակոս |

| | | |
|---|---|---|
| Գրգր—Գրիգոր | Հրկլ—Հերակլ | Գգիկ—Գագիկ |
| Թրս—Թորոս | Լւն—Լեւոն | և այլն: |

Ամենից շատ հապավվում են «թիւն» վերջավորություն ունեցող բառերը: Նրանք հապավվում են երեք տարբեր ձևով. մի դեպքում կրճատվում է երկու տառ, երկրորդ դեպքում՝ երեք, իսկ երրորդ դեպքում՝ չորս: Բերենք նման կրճատումների մի քանի օրինակներ.

| | | | |
|---|---|---|---|
| Գիտութիւն | —գիտութի | —գիտուի | —գիտւի |
| Միջնորդութիւն | —միջնորդութի | —միջնորդուի | —միջնորդւի |
| Բնութիւն | —բնութի | —բնուի | —բնւի |
| Նմանութիւն | —նմանութի | —նմանուի | —նմանւի: |

Տառերի թվի կրճատման հարցում սահմանված օրենք գոյություն չունի. ամեն մեկն առաջնորդվում է իր հայեցողությամբ:

Եթե «թիւն» վերջավորություն ունեցող բառերը հոլովված վիճակով ունեն «ն» վերջավորություն, այդ դեպքում տվյալ բառը վերծանելիս պետք է գրել ոչ թե մեկ, այլ երկու «ն»: Բերենք օրինակներ.

| | | | |
|---|---|---|---|
| Երաժշտութի | —երաժշտութիւն | —երաժշտութին | —երաժշտութիւնն: |
| Նախադասութի | —նախադասութիւն | —նախադասութին | —նախադասութիւնն: |
| Գրչութի | —գրչութիւն | —գրչութին | —գրչութիւնն: |

Նույն կարգով պետք է վերծանել «թիւն» վերջավորություն ունեցող բառերի հոլովական ձևերը. օրինակ.

Քաջութե, քաջոե, քաջւե—քաջութեան:

Քաջութեն, քաջուեն, քաջւեն—քաջութեանն:

Քաջութեբ, քաջւբբ, քաջւեբ—քաջութեամբ:



Գրեթե միշտ հապավվում են «եալ» վերջավորությամբ բառերը. տեսել—տեսեալ, բերել—բերեալ, գրել—գրեալ, տարել—տարեալ և այլն:

Գրեթե միշտ համառոտագրվում են շաբաթվա յոթ օրերի անունները, որի հետ պիտի ծանոթ լինել: Համառոտագրությունը կատարվում է հետևյալ ձևով.

բշ—երկուշաբթի

գշ—երեքշաբթի

դշ—չորեքշաբթի

եշ—հինգշաբթի

ուրբթ—ուրբաթ

շբթ—շաբաթ

աշբթ—կիւրակէ— (միաշաբթի)

Գանձարաններում, տաղարաններում և շարակնոցներում հաճախ են պատահում երգի ութ ձայների (եղանակների) հապավումները երկու տառով.

| | |
|---|---|
| աձ—առաջին ձայն | գձ—երրորդ ձայն |
| ակ—առաջին կողմ | գկ—երրորդ կողմ |
| բձ—երկրորդ ձայն | դձ—չորրորդ ձայն |
| բկ—երկրորդ կողմ | դկ—չորրորդ կողմ |

Տեղի խնայողությունը և արագությունը հարկադրում են ոչ միայն համառոտագրել բառի առանձին տառեր, այլև տառի առանձին մասեր: Այսպես, փորձեր են կատարվում հապավել եռաճյուղ «ա»-ի երկու ճյուղը և թողնել միայն մեկը: Այդ արվում է բառի միջև գործածված «ա»-ի և ոչ առաջին կամ վերջին «ա»-երի համար: Այսպես օրինակ՝ ճանապարհ բառը գրվում է ճ|ն|պ|ր հ, տաղարան բառը գրվում է տ|ղ|ր|ն և այլն: Սակայն այս հապավումը չի ընդհանրանում և շուտով դադարում է նրա կիրառությունը:

Հապավվող նման տառերից է հանդիպացել նաև «ու» երկհնչյունը, որի առջևի «ո»-ն հապավում են համառոտագրություն-

ների ժամանակ և թողնում միայն «ւ»-ը՝ մքւր—մաքուր, ցւցել—ցուցեալ, նմանւթի—նմանութիւն և այլն։

Սովորաբար միշտ հապավվում են դերանունները երկու կամ երեք տառերով.

| | |
|---|---|
| սց—սոցա | սր—սորա |
| դց—դոցա | դր—դորա |
| նց—նոցա | նր—նորա |
| սմ—սմա | սք—սոքա |
| դմ—դմա | դք—դոքա |
| նմ—նմա | նք—նոքա և այլն |

Որպես կանոն, համառոտագրված բառի վրա անպայման գրվում է պատվի նշան, որը բազմաթիվ ձևեր է ունենում։ Երկաթագրերում այն լինում է ~ ձևով, հետագայում գործ է ածվում — ձևը, որոշ դեպքերում գործ են ածվում երկու կետեր՝ ·· և այլն։ Երկու կետերը սովորաբար գործ են ածվում ձայնավորները սղելու ժամանակ, իսկ մյուսները՝ մյուս բոլոր դեպքերում։ Պատվի նշանները սովորաբար գրվում են բառի վրա այնտեղ, ուր կատարվում է համառոտագրությունը։

Պատվագրության գործածության սկզբունքի մասին վերին աստիճանի ուշագրավ խորհուրդներ է պարունակում Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 9646 ձեռագրի պարունակած ընդարձակ բառարանը։ Այնտեղ պատվագրությունը բաժանվում է չորս հիմնական խմբերի, որոնք անվանված են «դուր», «երկորեակ», «սիւն» և «նշանագիր»[1]։ «Դուր»-ը սովորական պատվի նշանն է, «երկորեակ»-ը՝ բառի վրա գրվող երկու կետերը, «սիւն»-ը՝ բառի միջև եռանկյուն «ա»-ի գրվող մի ճյուղը, իսկ «նշանագիր»-ը՝ գաղափարանշանները, որոնց վրա մենք պիտի հանգամանորեն կանգ առնենք աշխատության հաջորդ բաժիններից մեկում։

Ստորև բերում ենք ձեռագրերում և «Նշանագիր իմաստնոց»-ներում մեզ հանդիպող հապավումների ցանկը՝ ըստ այբբենական կարգի։

[1] ՀՊՄ ձեռ. № 9646, թ. 92ա—բ։



ՍՂՈՒՄՆԵՐ ԵՎ ԿՐՃԱՏՈՒՄՆԵՐ

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| է՞, Է, շ՞ | Աբիսողոմոն | դ̃րկ | Այդորիկ |
| հծ Ջ Ջ | Աբրահամ | դ̃ցկ | Այդոցիկ |
| ⁓օ | Ազգական | դ̃քկ | Այդոքիկ |
| Ծ | Ազինք | դ̃փ | Այդչափ |
| ք ը ռ րն ոյ ջ օ | Ահարոն | դս | Այդպէս |
| ղ̃ղ | Աղաղակ | յդ̃ր | Այդուր |
| ղ̃ի | Աղաւնի | ն̃ակ, ս̃կ | Այնոսիկ |
| ր̃օ, մ̊ր, ր̊, ըս, ր̊ | Աղեքսանդր | ն̃րկ | Այնորիկ |
| Ք Ճ Բ Բ | Աղքատ | ն̃ցկ | Այնոցիկ |
| ղ̃թ | Աղաւթք | ն̃քկ | Այնոքիկ |
| Լբ, ս̃կմ | Ամբակում | Ն, նմ, Ն, Ն | Այնուհետեւ |
| Ձ Ձ Ձ | Ամբարիշտ | հի, չփ, նփ, սփ | Այնչափ |
| Է, Բ Լ Ր | Ամբարտաւան | ն̃ս | Այնպէս |
| տ | Ամենայն | յ̃ր, յն̃ր | Այնուր |
| մն | Ամենեսեան | ա̃կ | Այսոսիկ |
| մց̃ն, աց̊ | Ամենեցուն | ս̃րկ | Այսորիկ |
| մ̃ւն | Ամենեւին | ս̃ցկ | Այսոցիկ |
| մք̃ն, տք | Ամենեքեան | ս̃քկ | Այսոքիկ |
| մ̃քմ̃ք | Ամենեքումբք | Հւ, Ն, հե | Այսուհետեւ |
| մ̃թ | Ամաւթ | սփ | Այսչափ |
| դ̃կ, դս̃կ | Այդոսիկ | ս, ս̃ս | Այսպէս |

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| յր, յոր | Ալյուր | Հ | Անտիոք |
| նթ | Անամաւթ | նթ | Անաւթ |
| նռ, | Անապական | նէ ∇ | Անօրէն |
| Հն Հն Հ | Անասուն | ւր, տ, գ, դ | Աշակերտ |
| առ. | Անառակ | խլ | Աշխարհելի |
| Ա | Անարատ | Յ Դ Գ | Աշխարհ |
| բլ | Անբարգաւաճ | Հ Ղ Ղ | Աշտանակ |
| գմ | Անգամ | Հ Հ | Աշտարակ |
| գ) | Անգին | պշ, պշղ | Ապաշխարող |
| գ | Անգոսն | պսն | Ապաստան |
| դմ | Անդամ | Գ Գ | Առագաստ |
| Ռօ, Ռ | Անդոն | ռպ, պ, ռդ | Առաջնորդ |
| դր | Անդորր | ա, ա | Առաջք |
| դդ, դ, դ | Անդունդ | Ճ | Առաւել քան |
| ստ, տ | Անդուստ | ռ), ռ, ռ, ռ | Առաւաւտ |
| ր, դ | Անդրանիկ | աք | Առաքեալ |
| դօ, դս, դւէ | Անդրէաս | ծ ւծ | Առիւծ |
| Վան | Անկործան | տչ | Առհաւատչեայ |
| Հ Ն Ֆ Չ | Անձն | սց | Ասաց |
| ձև | Անձրև | մ | Ասեմ |
| րճռ | Անճառ | օռ | Ասպարեզ |
| Ր | Անողորմ | ած | Աստուած |
| Ք | Անսաստ | ծծ | Աստուածածին |



| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| րրծ | Արարած | խմ, բխմ | Բարեխնամ |
| րրչ | Արարիչ | բՉ, խա | Բարեխաւս |
| Հէ | Արգանդ | բմ, բձբ | Բարեկամ |
| Ը | Արդար | Բշ, բշտ Բշ | Բարեպաշտ |
| դք | Արդեօք | բր | Բարերար |
| Ֆ | Արեւելք | բ, բ, բ | Բարթողիմէոս |
| Ճ | Արեւմուտք | բր | Բարի |
| ժւր, ծւր | Արժանաւոր | Ճ Հր Հ | Բարձր |
| րրհ | Արհամարհել | ղբ, բղ | Բարսեղ |
| բ, ր ր | Արտաւան | բe | Բարուոք |
| Բ | Բաբելոյն | բկ, բկն, բջ | Բաւական |
| Ք, մբն, Բ, բբ | Բազուկ | բ, կբ, նբի | Բենիամին |
| բե, բզկ | Բազում | Ը, Է | Բերան |
| բզմ | Բազում անգամ | բ, Բ, բց | Բժիշկ |
| Ճ, ւբ | Բամբասել | բցպ | Բժշկապետ |
| Յ, բՅ | Բայց | ա | Բիւր |
| Բ | Բանալի | բվն | Բոլորովին |
| բլ | Բասիլ | ւԲ | Բորբոքել |
| բւ, բ, ռր | Բարբառ | Բ) | Բուրաստան |
| բռլ | Բարբառել | բռդտ | Բռնադատ |
| Բ | Բարեբանեալ | բւռ, բռն | Բռնաւոր |
| բթ | Բարեգութ | գբ | Գաբրիէլ |
| | | գտ | Գալուստ |

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| գթլ | Գայթակղել | դւլ, դձլ | Դարձեալ |
| գշ | Գարշապար | ց | Դաւաճան |
| գն | Գարուն | դթ դ | Դաւիթ |
| գզ | Գաւազան | ժ, գ | Դժոխք |
| գռ, գռ | Գաւառ | դմ, դմ | Դմա |
| գռպ | Գաւառապետ | դն | Դոյնպէս |
| ց, ցկ | Գեղեցիկ | դր | Դորա |
| գյն | Գերագոյն | 2 | Դուռն |
| գզն | Գերեզման | դպ | Դպիր |
| գ | Գէորգ | վ, զ, ~ | Դրախտ |
| գշ, գ | Գիշեր | դմ | Դրամ |
| գդս | Գողգոթա | ը, ~, շ | Դրունք |
| գլ | Գովել | է, դ | Եգիպտոս |
| գոծ, գծ | Գործք | գա | Եզեկիա |
| գշկ | Գուշակ | դբ, դբ | Եղբայր |
| գ, գ, գ | Գրել | դջ, դբ, գ | Եղիազար |
| գ | Գրիգոր | ռ | Եղիաս |
| դօ | Դահեկան | դմ, դ | Եղիսաբէթ |
| դ, դ, դ | Դանիէլ | ա | Եղիսէ |
| ե, ե, ե | Դաստիարակ | դ | Եղիցի |
| դպր | Դատապարտ | փ, փ | Եպիսկոպոս |
| վ, Է, դջ | Դատաստան | լի | Եսայի |
| դւր, դւ | Դատաւոր | եբմ | Երբեմն |



| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| ք | Երբէք | դ, ռ | Զիարդ |
| ըր | Երեմիա | զւր | Զինուոր |
| մ, ճ, օ | Երեմիաս | զ, զ | Զինչ |
| ր | Երիտասարդ | զկ | Զոր աւրինակ |
| հր | Երկայնամիտ | ՅՃԱ | Զուարակ |
| կհր | Երկաքանչիւր | փթ | Զուարթ |
| կռ | Երկիւղ | փ | Զուարճ |
| մի | Երկնաւոր | զր | Զուգաւոր |
| վ | Երկոյշառակ | զ, զ, զօ, զ, զ | Զաւրաբաբէլ |
| ծի | Երկրաւոր | փ, փ | Զաւրաւոր |
| ժ | Երկրպագ | ջ զ | Զաւրութիւն |
| ջ | Երջանիկ | քօ | Զարմանք |
| ր\|\|\| | Երրեակ | զ, ը, է, | Էմմանուէլ |
| ծ ֆ ձ ջ | Եփրեմ | լի, տ, գ | Էսայի |
| դ դ | Զայդ | ը, ըդ | Ընդ |
| փ | Զայն | ըը, վ | Ընդդէմ |
| զզ | Զանազան | յ | Ընդհանուր |
| զհւ | Զարհուրել | ը, ը | Ընթերցուած |
| քօբօ | Զարմանք | ըս ը | Ընկալ |
| զ, զ | Զաւակ | ը, ը | Ըստ |
| զ, զ | Զաքարիա | ա, թ, թգ | Թագաւոր |
| զտ | Զգաստ | թ | Թադէոս |
| զշ | Զգոյշ | թք | Թանաք |

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| թծ թծ | Թեթև | Լ'Լ | Լսել |
| դւ, դւ | Թերևս | խմ, խո | Խնամ |
| թւ | Թև | խ | Խնամի |
| թ, թւր | Թևաւոր | խր, խ | Խնդիր |
| թօ, թ, ռօ | Թէոդորոս | խս | Խնդրուած |
| շ, չ | Թշնամի | խ ∞ | Խոնարհ |
| թյ | Թովմաս | ոլ, դ | Խոստովան |
| շթ, շ | Թռչուն | խ̊ | Խոսրովի-դուխտ |
| ժկ, ժ ժկ | Ժամանակ | յլ | Խորամանկ |
| ժ, ժ, ժկ, ժկ | Ժառանգ | խռլ | Խռովել |
| ժր | Ժառանգաւոր | խխ խխ | Խստերախ |
| ժ), ժլ | Ժողովուրդ | ծ ծ ց | Ծաղիկ |
| ժկլ, ժկլ | Ժուժկալ | ծ | Ծաղր |
| բ, բ | Իբրև | ծ, օմ, ծոյ, ծյմ | Ծառայ |
| ա, ամ, եա | Իմաստուն | ծօ | Ծեր |
| չ, չ, կ | Իշխան | ծւ | Ծնաւ |
| ի | Իսկ | ծյ | Ծնունդ |
| ւն | Իւրեանս | ո̊, դ̊ դ̊ | Կաթողիկոս |
| նց յց | Իւրեանց | ո | Կաթուղիկէ |
| ժ ձ շ | Լեառն | ժ, ժ | Կախարդ |
| ղ, լ ջ | Լեզու | 'կ | Կամ |
| լ-ց | Լուաց | կր | Կարգ |
| լ ւ | Լուաւ | կծ | Կեղծ |



| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| կծր | Կեղծաւոր | հո | Հանգիստ |
| կդ, նո | Կենդանի | հո | Հանդարտ |
| կեր կր | Կերակուր | հյ | Հանդէպ |
| կհէ | Կիւրակէ | ց, ժ, լ, նօ | Հանդուրժել |
| կհս | Կիւրակոս | հճր, հճր | Հանճար |
| կս, ս | Կոյս | հկ, հկ | Հասարակ |
| կ, բ | Կոստանդին | զ | Հարազատ |
| ց | Կործան | օհ, օյ | Հարաւ |
| կպշ | Կռապաշտ | հրկ | Հարկ |
| կր | Կրկին | ծ ց - ն | Հաւասար |
| կր | Կրաւն | հ | Հաւատ |
| ձպ, ռպ | Հազարապետ | համ համ | Հաւատամ |
| փ | Հալաւ | ի, ի), ծ | Հեթանոս |
| հ, հկռ | Հակառակ | ը | Հեռաւոր |
| հւտ | Համառաւտ | ղ, 2°, ծ | Հերձուածող |
| հձկ, | Համարձակ | է | Հերովդէս |
| ը, ւը | Համբարձ | շ, չ, ց | Հիւանդ |
| ը | Համբաւ | հբ | Հիւսիս |
| ք | Համբերել | մ, մ | Հմուտ |
| ջ | Համեմատ | ժ, ժ, փ, դո | Հնազանդ |
| ջ | Հայհոյել | ր | Հոգևոր |
| հօ, գօ, լօ | Հայր | վ | Հոգով |
| հպ | Հանապազ | ց, հ | Հոգոց |

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| հվ | Հովանի | մհո | Մահապարտ |
| հպ | Հպարտ | մէ | Մանասէ |
| հր | Հրամայել | մդ | Մանաւանդ |
| Ϛ | Հրաւիրել | մ̄ս | Մասն |
| ւր- | Հրեշտակ | ց | Մատակարար |
| ձհ | Ձայն | մթ Թ | Մատթէոս |
| ձռ | Ձեռն | գ̂, գ° | Մարգարէ |
| ձ | Ձև | մ̄դ | Մարդ |
| ձր | Ձիր | մդր | Մարդասէր |
| ձռ̲ ձռ | Ձմեռն | ֆ | Մարիամ |
| ձն | Ձուկն | մ°, մ° | Մարկոս |
| ղ՚, յ | Ղեկ | մ՞, մ | Մարմին |
| ղ° | Ղևոնդ | մւր | Մարմնաւոր |
| ղտ, ղ̄տ | Ղովտ | դ, եգ | Մարտիրոս |
| ղւ, ղ°, ղ | Ղուկաս | °գ, գ°, գ, գ° | Մելքիսեդեկ |
| ճ̄չլ | Ճ ա ա լ | մծծ | Մեծամեծ |
| ճգ, ճ, ճ | Ճառագայթ | մր, մր | Մեղաւոր |
| ճտ, ճգ | Ճարտար | գ°, ծֆ | Մեսրոպ |
| ճօապ | Ճարտարապետ | Յէ | Մերձաւոր |
| ճնր | Ճգնաւոր | մձց | Մերձեցաւ |
| ճկ | Ճնճղուկ | մ̄չ | Մինչ |
| ճտ | Ճշմարիտ | ա, ամ | Միջնորդ |
| կ° | Մակեդոն | մ | Միտք |



| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| մ° | Միւս անգամ | կր, Հօ, փ, Ψ | Յուստինոս |
| մթ, մթ, մ | Մխիթար | ն, Ն | Նա |
| ւջ ւջ | Մշտնջենաւոր | մ, ծ | Նաբուգոդոնոսոր |
| վ | Մոլորեալ | ◻, Ն | Նաթան |
| մւց | Մոռացեալ | նժ | Նաժիշտ |
| վ-, վ, վ | Մովսէս | ձ, ձ° | Նախանձ |
| ∽ | Մաւտաւոր | նծ, նօ | Նահապետ |
| Յս | Յաղագս | նսկ | Նահատակ |
| կ, կ, յք | Յակոբ | ձ | Նժդեհ |
| | | նմ մ | Նմա |
| յմ, յժ | Յանժամ | Ն | Նշխար |
| յմ, Յ | Յանդիման | վ̄ս | Նոյնպէս |
| Ռ | Յանդիման | նս | Նոսա |
| Մ ֆ | Յառաջ | ն̄ր | Նորա |
| դ), փ | Յառաջագոյն | նգ նգ | Նորոգել |
| մնա | Յարամնաց | նց | Նոցա |
| յ̄ն | Յաւիտեան | շօ, շ, շ̄ք | Շաբաթ |
| յսկ | Յետ այսորիկ | շ̄րկ | Շարական |
| յժ, փ, ժօ | Յօժար | ւ̄ղ | Շաւիղ |
| Յ- Յ- | Յորդոր | շ̄հ, շ | Շնորհ |
| ֆ, ֆ | Յորժամ | | |
| Յ | Յուդա | շ, շ | Շուշան |
| Հր, Ծ, Յ | Յունան | շք | Շուրջ |

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| շջռ շջռ | Շուրջառ | րխ | Ուրախ |
| շ, մր | Շտեմարան | չխ | Չարախօս |
| շփ | Շոշափել | չր | Չարաչար |
| ղծ | Ողորմած | չվր չվր | Չափաւոր |
| ջ, ջ | Ողջակէզ | պր | Պայծառ |
| ղջ | Ողջոյն | պդր, պդ, փ | Պանդուխտ |
| դի | Որդի | թ, թ, պ, պր, | Պատարագ |
| դվ | Որդով | ւգ, գմ | Պատգամ |
| դց, դց | Որդոց | զգ, զգ, պզ | Պատերազմ |
| ւյ | Որդւոյն | ճռ, ճ | Պատճառ |
| ւք | Որդւովք | կ, կ | Պատմութեան |
| ւց | Որդւոց | պճ, ճ, ճ ճ | Պատշաճ |
| ղ | Որոգայթ | պկն | Պատուական |
| ո, ո, ո, ո | Որովայն | հս | Պատուհաս |
| փս վս փս վս | Որչափ եւ | պստ | Պատրաստ |
| ջ ջ | Որպէս | պտ | Պարարտ |
| Ւ | Ու | զև, ըք | Պարգև |
| ւե | ութեան | պշ | Պարկեշտ |
| ւց | ութեանց | պ | Պետրոս |
| ւն | ութիւն | պռկ | Պոռնիկ |
| ւխր | Ուխտաւոր | պք, պք | Պսակ |
| մմ | Ումեմն | ց, ղ, ղ | Պօղոս |
| ւ | Ուստի | ջ | Ջնջել |



| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| ջ | Ջուր | վլչ | Վայելուչ |
| ջղ | Ջրհեղեղ | վն | Վասն |
| ռ | Ռըստակէս | վդկ | Վասն այդորիկ |
| ե | Սակայն | վնցկ | Վասն այնորիկ |
| սւ | Սակաւ | վսն վսկ | Վասն այսորիկ |
| Յ | Սահակ | վզ, վզ | Վասն զի |
| Յ, Ծ | Սահման | վր, վրյ | Վասն որոյ |
| սս | Սաղմոս | վ, վ | Վարդան |
| Լբ, բ | Սամուել | փ, վ, փ | Վարդապետ |
| սմ | Սանդարամետ | փ, վր | Վերայ |
| սփ | Սարգիս | ստ, ստ | Վերուստ |
| Հ, Հ | Սաւուղ | ջ, վջ | Վերջ |
| վբ, սբ | Սերովբէ | վիշ | Վիշապ |
| փ, ծ | Սկիզբն | վ | Վկայ |
| ջ | Սողոմոն | վ, վս | Վրթանէս |
| ստծ, ծ, ղծ | Ստեղծ | յս, տպ, մս | Տագնապ |
| մք, մջ, մկ, մ | Ստեփանոս | տճ | Տաճար |
| ւվ, սբ | Սրբով | տկ | Տատրակ |
| ւք | Սրբովք | տպ | Տարապարտ |
| ւց | Սրբոց | մն մկ | Տեսան |
| Ը, ԸԵ | Սրտմտել | ժժժ, ծ | Տիմոթէոս |
| Չ | Սքանչ | տո, տ | Տիտոս |
| Ճ | Վախճան | Ն | Տնանկ |

| Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը | Սղումներ և կրճատումներ | Նշանակությունը |
|---|---|---|---|
| տ̊ | Տրդատ | ք, փօ | Փոքր |
| տր- | Տրամեցաւ | փչ, փ̃չ | Փրկիչ |
| տս, տտ, տ̃ն, տմ | Տրտում | փկւ | Փրկութիւն |
| ց | Ցանկ | քօ, ք̊ | Քահանայ |
| ճ, ճ | Ցասումն | ք̃պ | Քահանայապետ |
| ծ), ծց | Ցնծալ | ց, ա | Քաղցր |
| ց, ց | Ցնորք | ք, ք | Քան |
| ց | Ցորեան | ք̃զ | Քանզի |
| փկ, փ̃կ | Փայլատակ | ք, ք; ք) | Քաջալերեաց |
| փտ, | Փայտ | քծ, քծ | Քարկոծ |
| փր, փ | Փառաւոր | ք, ք, ք̃րզ | Քարոզ |
| ֆ, ք, ք, ֆ̀ | Փառք | ք | Քերովբէ |
| փգ | Փափագ | ք | Քոյր |
| ֆ, փ̇, փ | Փենեհեզ | ց | Աւգնական |
| փս, փս | Փիլիսոփայ | ր̃կ | Աւրինակ |
| փր | Փոր | ց, ց | Աւրհնութիւն |
| փ̃ձւի | Փորձութիւն | | |



ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ



## ԹՎԱՆՇԱՆՆԵՐԻ ԳՈՐԾԱԾՈՒԹՅՈՒՆԸ

*ատ ժամանակ չէ ներկայումս օգտագործվող արաբական թվանշանների գործածությունը։ Նրանց հնությունը XVII—XVIII դարերից այն կողմ չի անցնում։ XVII դարում և նրանից առաջ, հայ մատենագրության մեջ թվանշաններն արտահայտվել են հայկական տառանշաններով, ինչպես իր ժամանակին եղել է հունական, ռուսական և այլ ժողովուրդների մատենագրության մեջ։*

*Համարական կարգով հայկական այբուբենը բաժանվում է չորս մասի. «Ա»-ից մինչև «Թ» տառը համարվում է միավոր, «Ժ»-ից մինչև «Հ»-ն՝ տասնավոր, «Ճ»-ից մինչև «Չ»-ն՝ հարյուրավոր և «Ռ»-ից մինչև «Ք»-ն ներառյալ՝ հազարավոր։ Հայկական այբուբենի տառերը գործ են ածվում թվական հետևյալ նշանակությամբ.*

| | | | |
|---|---|---|---|
| Ա —1 | Ժ —10 | Ճ—100 | Ռ—1000 |
| Բ —2 | Ի —20 | Մ—200 | Ս —2000 |
| Գ —3 | Լ —30 | Յ —300 | Վ —3000 |
| Դ —4 | Խ —40 | Ն—400 | Տ —4000 |
| Ե —5 | Ծ —50 | Շ—500 | Ր —5000 |
| Զ —6 | Կ —60 | Ո—600 | Ց —6000 |
| Է —7 | Հ —70 | Չ—700 | Ւ —7000 |

| | | | |
|---|---|---|---|
| Ը —8 | Ձ —80 | Պ—800 | Փ—8000 |
| Թ —9 | Ղ—90 | Ջ—900 | Ք—9000 |

*Հայկական թվանշաններն ունեն արաբական թվանշանների հաջորդականությունը. աջ կողմում միավոր թիվն է գրվում, իսկ նրանից դեպի ձախ, ըստ հաջորդականության, հետևում են՝ տասնավոր, հարյուրավոր, հազարավոր և ավելի մեծ թվերը։*

*Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 1869 ձեռագրում Անդրեաս Եվդոկացին իր այբբենարանի հավելվածում նշում է հայկական թվանշանները գործածելու հետևյալ կանոնը.*

*«Պատով այբն (Ա) մէկ է, բենն (Բ)՝ երկուք է, գիմն (Գ)՝ երեք է, դան (Դ)՝ չորս է, եչն (Ե) հինկ է, զան (Զ)՝ վեց է, էն (Է)՝ եաւթն է, ըթն (Ը)՝ ութն է, թաւն (Թ)՝ ինն է, ժէն (Ժ)՝ տասն է, ինին (Ի)՝ քսան է, լիւնն (Լ)՝ երեսուն է, խէն (Խ)՝ քառասուն է, ծան (Ծ)՝ յիսուն է, կենն (Կ)՝ վաթսուն է, հաւն (Հ)՝ եաւթանասուն է, ձան (Ձ)՝ ութսուն է, ղատն (Ղ)՝ ըննըսուն է, ճէն (Ճ)՝ հարիւր է, մենն (Մ)՝ երկու հարիւր է, յին (Յ)՝ երեք հարիւր է, նուն (Ն)՝ չորս հարիւր է, շան (Շ)՝ հինկ հարիւր է, ոն (Ո)՝ վեց հարիւր է, չան (Չ)՝ եաւթն հարիւր է, պէն (Պ)՝ ութն հարիւր է, ջէն (Ջ)՝ ինն հարիւր է, ըռան (Ռ)՝ հազար է, սէն (Ս)՝ երկու հազար է, վեն (Վ)՝ երեք հազար է, տիւն (Տ)՝ չորս հազար է, րրէն (Ր) հինկ հազար է, ցոն (Ց)՝ վեց հազար է, իւնն (Ւ)՝ եաւթն հազար է, փիւրն (Փ)՝ ութն հազար է, քէն (Ք)՝ ինն հազար է, ժէն և ըռան (ԺՌ)՝ տասն հազար է, ինին և ըռան (ԻՌ)՝ քսան հազար է, լիւն և ըռան (ԼՌ)՝ երեսուն հազար է, խէն և ըռան (ԽՌ)՝ քառասուն հազար է, ծան և ըռան (ԾՌ)՝ յիսուն հազար է, կենն և ըռան (ԿՌ)՝ վաթսուն հազար է, հաւն և ըռան (ՀՌ)՝ եաւթնասուն հազար է, ձան և ըռան (ՁՌ)՝ ութսուն հազար է, ղատն և ըռան (ՂՌ)՝ ըննըսուն հազար է, ճէն և ըռան (ՃՌ)՝ հարիւր հազար է։ (Թերթ 390բ—391ա)։*

*Ի տարբերություն արաբականի, հայկական գրության մեջ զրոյի համար առանձին նշան չի եղել, ուստի և թվերի միջև և վերջում եղող զրոն հասկացվել է բնական ձևով՝ նախորդ տառի թվական նշանակության հետ միասին։ Այսպես, 1080 թվանշանը գրվում է ՌՁ տառերով, 8002-ը՝ ՓԲ, 1608-ը՝ ՌՈԸ, 1002-ը՝ ՌԲ, 8200-ը՝ ՓՄ և այլն։*

*Թվական նշանակությամբ գործածված տառերը սովորական տառերից տարբերելու համար ձեռագրերում, ինչպես և վիմական*



*արձանագրությունների մեջ, սկզբից և վերջից միջակետերի կամ վերջակետերի մեջ են առնվում։ Բացի այդ, թվական նշանակությամբ գործածված տառերի վրա դրվում են պատիվ նշաններ. օրինակ՝ «Յամի :ՌՅՁԹ: արեգ ամսոյ :ԻԲ: լուսինն խաւարեցաւ», «Ի թուականին Հայոց :ՂՅՁԹ: եղեւ մահտարաժամ», «Արշակ թագաւորեաց :ԽԲ: ամ և .Է. ամիս» և այլն։ Թվանշանների առջևում և վերջում դրվող կետերը լինում են միջակետեր կամ վերջակետեր։ Կարող է պատահել առջևում վերջակետ լինի, իսկ վերջում՝ միջակետ և հակառակը։*

*Թվականի վրա դրվող պատվի նշանը տարբեր ձևով է լինում։ Մեծ մասամբ, ամբողջ թիվը առնվում է մի ամբողջական պատվի տակ, բայց երբեմն միավորը, տասնավորը և մյուսները առանձին-առանձին պատիվների տակ են առնվում։ Բերենք մի քանի նման օրինակ՝ 5450—.Ր.Ն.Ծ. 219 —.Մ.ԺԹ. 4119—.ՏՃ.ԺԹ. և այլն։*

*Առանձին կետերի մեջ են առնվում կրկնվող թվականները. օրինակ՝ «Երթ .Կ.Կ.» (այսինքն՝ դուրս արի վաթսուն-վաթսուն), «սովորէին՛ :ԻԵ. ԻԶ: աշակերտք» (սովորում էին 25—26 աշակերտ), «Կանգնեալ էին .Է.Է.» (յոթ-յոթ էին կանգնած) և այլն։*

XVIII *դարի որոշ վավերագրերում պատահում է, որ հայկական տառերի կողքին, զուգընթացաբար, գործածության մեջ է դրըվում զրոն։ Գրում են հայկական տասնավոր, հարյուրավոր և մեծ թվերը և կողքին զրո դնում. օրինակ՝ Ո00 (600), Տ000 (4000), Մ00 (200) և այլն։ Այս ձևով են, օրինակ, գրված հայ առևտրական Եղիաս Մուշեղի (*XVIII *դարի առաջին կես) հաշվեմատյանների թվերը։* XVII—XVIII *դարերում գրված նոտրգիր ձեռագրերում ևս թվերի՝ նման գործածության մեկ-մեկ հանդիպում ենք։ Այսպես, Մարտիրոս դի Առաքելի ժամանակագրության մեջ 1080-ը գրվել է :Ռ0Ձ0: ձևով, 1025-ը :Ռ0ԻԵ: ձևով և այլն։*

*Հազարավորներից բացի, թվերը հաշվել են բյուրերով։ Բյուր է համարվել 10.000-ը (ռուսական* тьма, *հունական* μυρίοι*)։ Հաշվումները հեշտացնելու համար բյուրի համար գործ են ածել ⁀ նշանը։ Դա հնարավորություն է ստեղծել առանց դժվարության միլիոնների, տասնյակ միլիոնների հաշիվներ կատարել։ Բյուրի (չորս զրոյի) այդ նշանը բազմաթիվ տեղերում գործ է ածված* VII *դարի նշանավոր մաթեմատիկոս (համարող) Անանիա Շիրակացու թվա-*

թանության դասագրքում։ Բյուրի նշանը հանդիպում է նույնպես Հովհաննես Սարկավագի, Հովհաննես Երզնկացու և այլ հեղինակների աշխատություններում։

Հայկական այբուբենը բյուրի նշանով ստանում է հետևյալ նոր նշանակությունը.

| | | | |
|---|---|---|---|
| Ա̂ — 10.000 | Ժ̂ — 100.000 | Ճ̂ — 1 միլ. | Ռ̂ — 10 միլ |
| Բ̂ — 20.000 | Ի̂ — 200.000 | Մ̂ — 2 " | Ս̂ — 20 " |
| Գ̂ — 30.000 | Լ̂ — 300.000 | Յ̂ — 3 " | Վ̂ — 30 " |
| Դ̂ — 40.000 | Խ̂ — 400.000 | Ն̂ — 4 " | Տ̂ — 40 " |
| Ե̂ — 50.000 | Ծ̂ — 500.000 | Շ̂ — 5 " | Ր̂ — 50 " |
| Զ̂ — 60.000 | Կ̂ — 600.000 | Ո̂ — 6 " | Ց̂ — 60 " |
| Է̂ — 70.000 | Հ̂ — 700.000 | Չ̂ — 7 " | Ւ̂ — 70 " |
| Ը̂ — 80.000 | Ձ̂ — 800.000 | Պ̂ — 8 " | Փ̂ — 80 " |
| Թ̂ — 90.000 | Ղ̂ — 900.000 | Ջ̂ — 9 " | Ք — 90 " |

Բյուրավոր թվերը։

Այդ նշանը հայկական տառի վրա դնելիս նրա թվական նշանակությունը չորս գրոյով մեծանում է։ Այդ հաշվով, հայկական այբուբենի տառերը ստանում են թվական նոր նշանակություն. օրինակ՝ 6.874.528 թվանշանը հայկական տառանշաններով գրվել է Ո̂Ձ̂Է̂ՏՇԻԸ. 80.024-ը՝ Ը̂.ԻԴ, 1.001.000-ը՝. Ռ̂.Ռ. և այլն։

Հայկական որոշ ձեռագրերում, հատկապես նոտր գրչություն ունեցող ձեռագրերում պատահում է, երբ խախտվում են թվական գործածելու ներկա կանոնները։ Այսպես, երբեմն հազարավոր կամ հարյուրավոր թվերի համար գործ է ածվում ոչ թե տվյալ թվանշանների համապատասխան տառանիշը, այլ թվական մի ամբողջ կոմբինացիա. օրինակ՝ 25.000 գրվում է ոչ թե սովորականի նման .Բ̂.Շ., այլ :Ի̅Ե̅Ռ̅:, կամ 92.400՝ ոչ թե Թ̂.Ս̅Ն̅, այլ :Ղ̅Բ̅Ռ̅Ն̅: և այլն։

Կան դեպքեր, երբ «Ժ»-ից հետո եղած տառերը դառնում են ոչ թե տասնավորներ, այլ մնում են միավոր թվանշանում։ Այդ դեպքում «Ի»-ն հավասար է ոչ թե 20-ի, այլ 11-ի, «Լ»-ն՝ ոչ թե 30-ի, այլ 12-ի, «Խ» ն՝ ոչ թե 40-ի, այլ 13-ի, «Ծ»-ն՝ 14-ի, «Կ»-ն՝



16-ի, «Հ»-ն՝ 17-ի, «Ձ»-ն՝ 18-ի, «Ղ»-ն՝ 19-ի և այլն։ Այսպիսի օրինակ ունենք Մլքե թագուհու ձեռագրում։

Դասական թվանշանները կազմվում են սովորական պատվագրված թվանշանների վրա «րորդ» կամ հապավված «րդ» վերջավորության ավելացումով. օրինակ՝ .Ա.րդ, .Բ.րդ, .Գ.րդ, .Դ.րդ, .Ե.րդ, .Զ.րդ, .Է.րդ, .Ը.րդ, .Թ.րդ և այլն։

Համարական և ոչ համարական թվերում, 11-ից մինչև 19-ը, հակառակ գոյություն ունեցող օրենքի, միավորները տասնավորներից առաջ են գրվում։ ԱԺ-ան (11), ԲԺ-ան (12), ԳԺ-ան (13), ԴԺ-ան (14), ԵԺ-ան (15), ԶԺ-ան (16), ԷԺ-ան (17), ԸԺ-ան (18), ԹԺ-ան (19)։ Այդ սկզբունքով՝ ԲԺ.աներրդ, ԳԺ.աներրդ, ԴԺ.աներրդ, ԵԺ.աներրդ, ԶԺ.աներրդ, ԷԺ.աներրդ, ԸԺ.աներրդ, ԹԺ.աներրդ։ Այս բացառությունը բոլոր ձեռագրերը չեն պահում. կան տեքստեր, ուր նախ տասնավորն է գրվում, ապա՝ միավորը։

Հայկական գրչագրերում մեզ հանդիպում է նաև մի համարիչ ունեցող պարզ կոտորակների գործածությունը։ Նման կոտորակներ կան Շիրակացու թվաբանության խնդրագրքում և «Աշխարհացույց»-ի մեջ։ Կոտորակի նշանակությամբ գործածված թվանշանի վրա դրըվում է թավի նման մի նշան (շատ նման բյուրի նշանին, միայն այն տարբերությամբ, որ այդ նշանը դրվում է ոչ թե տառի հետևից, այլ առջևից)։ Շիրակացու թվաբանության խնդրագրքի 22-րդ խնդրի պատասխանը, $7\frac{3}{11}$, գրվել է հետևյալ ձևով. Է̌, Č, Ե̌, Ի̌, Խ̌Դ, այսինքն՝ 7 գումարած կես, գումարած մեկ հինգերորդ, գումարած մեկ քսաներորդ, գումարած մեկ քառասունչորսերորդ, հավասար է 7 ամբողջ երեք տասնմեկերորդի։

Կա մի ուրիշը. $9\frac{1}{11}$, գրվել է Թ, ԺԱ̌։

Կեսի համար գործ է ածվել լատինական C տառի նման մի նշան։ «Աշխարհացույց»-ի տեքստում հանդիպում ենք այսպիսի մի հատվածի. «Եռոն... ծայրն ի ներքոյ գայ ի ովկիանոս առաւել քան զայլ երկիր մասունս երիս և C, որ լինի ասպարէզք հազար ութն հարիւր և յիսուն»։ 3C=3 և կեսի, այդ հաշվով՝ 5C=5 և կեսի, 7C=7 և կեսի և այլն։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագրերից մեկում ընդօրինակված է մի աղյուսակ «C»-ի գործածությամբ՝ կեսի նշանակությամբ.

«Ժ (Բ) Ե 10 : 2=5-ի

ԺԱ (Բ) ԵC $11:2=5\frac{1}{2}$-ի
ԺԲ (Բ) Զ $12:2=6$-ի
ԺԳ (Բ) ԶC $13:2=6\frac{1}{2}$-ի
ԺԴ (Բ) Է $14:2=7$-ի
ԺԵ (Բ) ԷC $15:2=7\frac{1}{2}$-ի»[1]

Միավոր թիվը հայկական մատենագրության մեջ գրվում է մի քանի ձևով—«մէ», «մէն», «եզ», «մու»։

Գումարման, հանման, բազմապատկության և բաժանման նշանները գործողությունների ժամանակ հայկական մատենագրության մեջ չեն գործածվում։ Շիրակացու Թվաբանության դասագրքից բերենք չորս գործողություններից մեկական օրինակ։

Գումարումը, կամ ինչպես հնում կոչվել է՝ «ընդունելություն»-ը («ընդունել» է կոչվել մի թիվը մյուսի վրա ընդունելու, գումարելու իմաստով), կատարվել է հետևյալ ձևով.

Ա Ա Բ $1+1=2$ Բ Բ Դ $2+2=4$
Ա Գ Բ $1+2=3$ Բ Գ Ե $2+3=5$
Ա Գ Դ $1+3=4$ Բ Դ Զ $2+4=6$
Ա Դ Ե $1+4=5$ Բ Ե Է $2+5=7$
Ա Ե Զ $1+5=6$ Բ Զ Ը $2+6=8$
Ա Զ Է $1+6=7$ Բ Է Թ $2+7=9$
Ա Է Ը $1+7=8$ Բ Ը Ժ $2+8=10$
Ա Ը Թ $1+8=9$ Բ Թ ԺԱ $2+9=11$
Ա Թ Ժ $1+9=10$ Բ Ժ ԺԲ $2+10=12$

Հանումը, կամ ինչպես հնում կոչվել է՝ «բացառություն»-ը կամ «բացերթություն»-ը, կատարվել է հետևյալ ձևով.

Ա Բ Ա 1-ը հանած 2-ից=1-ի
Ա Գ Բ 1-ը հանած 3-ից=2-ի
Ա Դ Գ 1-ը հանած 4-ից=3-ի
Ա Ե Դ 1-ը հանած 5-ից=4-ի
Ա Զ Ե 1-ը հանած 6-ից=5-ի
Ա Է Զ 1-ը հանած 7-ից=6-ի
Ա Ը Է 1-ը հանած 8-ից=7-ի
Ա Թ Ը 1-ը հանած 9-ից=8-ի
Ա Ժ Թ 1-ը հանած 10-ից=9-ի։

[1] ՀՊՄ ձեռ. № 1973, թ. 108բ։



Բազմապատկումը կատարվել է հետևյալ ձևով.

Ա Բ Բ $1\times2=2$-ի Ժ Բ Ի $10\times2=20$-ի
Բ Բ Դ $2\times2=4$-ի Ի Բ Խ $20\times2=40$-ի
Գ Բ Զ $3\times2=6$-ի Լ Բ Կ $30\times2=60$-ի
Դ Բ Ը $4\times2=8$-ի Խ Բ Ձ $40\times2=80$-ի
Ե Բ Ժ $5\times2=10$-ի Ծ Բ Ճ $50\times2=100$-ի
Զ Բ ԺԲ $6\times2=12$-ի Կ Բ ՃԻ $60\times2=120$-ի
Է Բ ԺԴ $7\times2=14$-ի Հ Բ ՃԽ $70\times2=140$-ի
Ը Բ ԺԶ $8\times2=16$-ի Ձ Բ ՃԿ $80\times2=160$-ի
Թ Բ ԺԸ $9\times2=18$-ի Ղ Բ ՃՁ $90\times2=180$-ի։

Հայկական ձեռագրերում պատահում են և բազմապատկման աղյուսակներ, որոնցից մեկն անհրաժեշտ ենք համարում բերել Շիրակացու մատենագրությունից.

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | Բ | Գ | Դ | Ե | Զ | Է | Ը | Թ |
| Բ | Դ | Զ | Ը | Ժ | ԺԲ | ԺԴ | ԺԶ | ԺԸ |
| Գ | Զ | Թ | ԺԲ | ԺԵ | ԺԸ | ԻԱ | ԻԴ | ԻԷ |
| Դ | Ը | ԺԲ | ԺԶ | Ի | ԻԴ | ԻԸ | ԼԲ | ԼԶ |
| Ե | Ժ | ԺԵ | Ի | ԻԵ | Լ | ԼԵ | Խ | ԽԵ |
| Զ | ԺԲ | ԺԸ | ԻԴ | Լ | ԼԶ | ԽԲ | ԽԸ | ԾԴ |
| Է | ԺԴ | ԻԱ | ԻԸ | ԼԵ | ԽԲ | ԽԹ | ԾԶ | ԿԳ |
| Ը | ԺԶ | ԻԴ | ԼԲ | Խ | ԽԸ | ԾԶ | ԿԴ | ՀԲ |
| Թ | ԺԸ | ԻԷ | ԼԶ | ԽԵ | ԾԴ | ԿԳ | ՀԲ | ՁԱ |

Բաժանումը կատարվել է հետևյալ ձևով.

Ա Ց Ց—1-ը՝ 6000 անգամ պարունակվում է 6000-ի մեջ.
Բ Վ Ց—2-ը՝ 3000 անգամ պարունակվում է 6000-ի մեջ.

Գ Մ Յ—3-ը՝ 2000 անգամ պարունակվում է 6000-ի մեջ.
Ե ՌՄ Յ—5-ը՝ 1200 անգամ պարունակվում է 6000-ի մեջ.
Զ Ռ Յ—6-ը՝ 1000 անգամ պարունակվում է 6000-ի մեջ.
Է ՊԾԷ Յ—7-ը՝ 857 անգամ (կլոր թվով) պարունակվում է 6000-ի մեջ.
Ը ՉԾ Յ—8-ը՝ 750 անգամ պարունակվում է 6000-ի մեջ.
Թ ՈԿԵ. Յ—9-ը՝ 665 անգամ (կլոր թվով) պարունակվում է 6000-ի մեջ:

Հայկական թվահաշիվը բյուրով չի վերջացել: Գոյություն են ունեցել բյուրից շատ ավելի մեծ թվեր և նրանց համապատասխան անուններ: Տասը հազար բյուրը կոչվել է գունդ, տասը հազար գունդը՝ ավագ գունդ, տասը հազար ավագ գունդը՝ արքա գունդ և տասը հազար արքա գունդը՝ կայսր գունդ: Այդ թվանշանները, մեր ներկա հաշվով, կարելի է արտահայտել հետևյալ ձևով.

10.000—բյուր.
100.000.000—գունդ.
1.000.000.000.000—ավագ գունդ.
10.000.000.000.000.000—արքա գունդ.
100.000.000.000.000.000.000—կայսր գունդ:

Հայ մատենագրության մեջ պահվել է Մարտիրոս Ղրիմեցու մի հետաքրքիր բանաստեղծությունը՝ նվիրված թվերի վերև բերված հաշվին: Ինչպես երևում է, Մարտիրոս Ղրիմեցին վեճ է ունեցել Պետրոս Ագուլիսեցու հետ թվերի մեծության մասին, և այդ կապակցությամբ նա անհրաժեշտ է համարել գրել մի բանաստեղծություն, որը մաթեմատիկայի պատմության մեջ որոշ հետաքրքրություն է ներկայացնում.

«Իմաստնալի յուշիմ եղբայր, գգրեալս ընկալ խոհեմաբար:
Անցեալ աւուրք բանք վիճաբար, զոր առարկաւ քննողաբար:
Զբիւրն որ ասաք, տասն հազար, է ստուգիւ՝ ծերունեաց շար:
Քառորդ կրկնեալ նոյնքան հազար, նա բոլորի մին գունդ ճարտար:
Նոյնագունակ իսկ և յարմար, ըզգունդն աւագ տեսցուք ի շար:
Զի սա ունի զերկրորդն դար, երկոտասան կետից համար:



Իսկ գունտն արքայ դիմեաց ի սար, որոյ շաւղի ելքն է դժուար:
Գահաւանդակ յերրորդըն դար, վեշտասան կետ սորայն ի շար:
Յետ այսորիկ զօրեղաբար, կայսրն խմբիւք բազմահամար:
Հզօրօք դիմեալ ելնէ ի ծայր, քսան համար կէտն որ ի շար:
Ներհունք ոգին մինչև ցայս վայր, թիւ համարոյ դասիլ ի շար:
Քան զայս աւելն է բռնաբար, առ որս հասումն ասեն դժուար»[1]:

Նույն ձեռագրում ուշ շրջանի մեկնիչներից մեկն անհրաժեշտ է համարել ավելի կոնկրետ նշել թվերից յուրաքանչյուրի մեծությունը: «Ծանիր, ով սիրեցեալք մեր ի Տէր,—գրում է մեկնիչը,—զի ԺՌ-ն մէկ բիւր է, և տասն հազար բիւրն մէկ գունդ է, և տասն հազար գունդն մէկ աւագ գունդ է: Տասն հազար աւագ գունդն մէկ արքա գունդ է: Եւ տասն հազար արքայ գունդն մէկ կայսր գունդ է: Ամենայն համարողութիւն մինչև ցայս վայր երթայ: Ո՛վ ուսումնասէր եղբայր, թէ կամենաս յայս նրբահայեաց և խորհմաստ արհեստիս ձեռն արկանել, որ է մայր ամենայն թուոց, մի՛ ամաչիր, գնա՛ ի մօտ վարդապետաց և ուսիր»[2]:

Հնատիպ գրականության մեջ մեկ-մեկ պատահում են և հռոմեական թվանշաններ: Հռոմում, Վենետիկում, Վիեննայում և, ընդհանրապես, Արևմտյան Եվրոպայի գաղթավայրերում հրատարակված գրքերի հրատարակության թվականները, սովորաբար, նշվում են հռոմեական թվանշաններով: Հռոմեական թվանշանների նշանագրերը արաբականի հետ հարաբերվում են հետևյալ ձևով.

| | |
|---|---|
| I—1 | X— 10 |
| II—2 | XX— 20 |
| III—3 | XXX— 30 |
| IV—4 | XL— 40 |
| V—5 | L— 50 |
| VI—6 | LX— 60 |
| VII—7 | LXX— 70 |
| VIII—8 | LXXX— 80 |
| IX—9 | XC— 90 |

1 ՀՊՄ ձեռ. № 1495, թ. 138ա:
2 Նույն ձեռ., թ. 138ա:

| | | | |
|---|---|---|---|
| C | 100 | XM | 10.000 |
| CC | 200 | XXM | 20.000 |
| CCC | 300 | XXXM | 30.000 |
| CD | 400 | XLM | 40.000 |
| D | 500 | LM | 50.000 |
| DC | 600 | LXM | 60.000 |
| DCC | 700 | LXXM | 70.000 |
| DCCC | 800 | LXXXM | 80.000 |
| CM | 900 | XCM | 90.000 |
| M | 1.000 | CM | 100.000 |
| IIM | 2.000 | CCM | 200.000 |
| IIIM | 3.000 | CCCM | 300.000 |
| IVM | 4.000 | CCCCM | 400.000 |
| VM | 5.000 | DM | 500.000 |
| VIM | 6.000 | DCM | 600.000 |
| VIIM | 7.000 | DCCM | 700.000 |
| VIIIM | 8.000 | DCCCM | 800.000 |
| IXM | 9.000 | DCCCCM | 900.000 |
| | | MM | 1.000.000 |



ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ԳԱՂԱՓԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆ



*եզ հասած հայկական ձեռագիր ժողովածուներում, գլխավորապես ձեռագիր քերականությունների հավելվածների մեջ, հաճախ են մեզ հանդիպում հայկական ներկա գրության անսովոր նշանների ամբողջական ցուցակներ տարբեր վերնագրերով՝* «Նշանագիրք», «Նշանագիր այբուբենից», «Նշանագիր անուանց», «Նշանագիր անուանց. կարճաբանութիւն», «Բացատրութիւն յառաջնոց գրոց և նշանագրաց», «Այս է նշանագիր Հայոց ազգի...», «Վասն պատուագրաց» *և այլն: Պատահում են նաև նշանագրերի ցուցակներ առանց վերնագրի: Հայկական նշանագրերի տեքստերը սովորաբար շարադրված են լինում հետևյալ կերպ. առաջին գծի վրա տրվում է նշանագիրը և ապա՝ նրա վերծանությունը, կամ՝ հակառակը:*

*Այս նշանագրերի ուսումնասիրությամբ զբաղվել են մի շարք ականավոր գիտնականներ և փորձել են պարզել նրանց ստեղծման ժամանակը, հեղինակը, նպատակադրումը և արժեքը հայ մատենագրության պատմության մեջ:*

*Հայկական նշանագրության մասին տպագիր գրականության մեջ առաջին անգամ, միջանկյալ ձևով, կանգ է առել Հ. Մ. Չամչյանը 1784 թվականին՝ իր «Պատմութիւն Հայոց»-ի առաջին հատորում: Խոսելով նախամաշտոցյան գրության գոյության հարցի*

մասին և այդ կապակցությամբ բերելով XIII դարի հայ պատմիչ Վարդան Արևելցու մի վկայությունը, որ նա իր աչքով տեսել է տեղական գրությամբ հեթանոս հայ թագավորների կտրած դրամները, Չամչյանը ենթադրում է, որ դրամների այդ գրերը եղած պիտի լինեն «...նշանագիրք ինչ, որք հնարեալ էին փոխանակ ամբողջ բառից, զոր կան և այժմ ի հին ձեռագիրս այլպիսիք աւելի քան զերկու հարիւր...»[1]:

Ավելի ուշ, 1858 թվականին, հայկական նշանագրերը ուսումնասիրել է անվանի արևելագետ Էմինը և ուսումնասիրության արդյունքները հրապարակել «Об армянском алфавите» խորագրով մենագրության մեջ[2]:

Էմինը հայկական նշանագրերի մասին հանգել է հետևյալ եզրակացության. մեզ հասած հայկական նշանագրերի մի մասը հայկական տառաձևերի փոփոխումից կազմված կապգրություն է՝ ստեղծված սղագրության նպատակով, իսկ մյուս մասը՝ հիերոգլիֆներ է և սկիզբ է առնում հայ հեթանոսական շրջանից: Վերջինըս, նրա կարծիքով, հայկական հեթանոսական շրջանի հայկական նշանագրերի բեկորներից է: Էմինը ենթադրում է անգամ, որ հայկական հիերոգլիֆ այդ գրությունը զարգացման բարձր աստիճանի է հասել և փոխանցվել հարևան ժողովուրդներին. «Մեր քննության առած 305 նշանագրերից,—գրում է նա,—խստագույն վերլուծմամբ, ինչպես կտեսնենք ստորև, շատ քչերն են, որոնց կարելի է վերագրել հայ հեթանոսական ժամանակաշրջանին: Չնայած դրան, փոքրաթիվ այդ բեկորները հարկադրում են մեզ մտածել, որ Հայաստանում, իրոք, երբեմն գոյություն է ունեցել հիերոգլիֆ գրության սիստեմ, որը զարգացման շատ բարձր աստիճանի է հասցվել և միաժամանակ տարածվել ամենուրեք»[3]:

[1] Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Ա գիրք, Վենետիկ, 1784, էջ 761:

[2] Էմինի ներկա ուսումնասիրությունը ռուսերեն լեզվով առաջին անգամ տպվել է 1858 թվականին՝ իբրև չորրորդ հավելված Մովսես Խորենացու Պատմության ռուսերեն իր կատարած թարգմանության: 1865 թվականին հրատարակվել է նույն հոդվածի ֆրանսերեն թարգմանությունը «Revue d'Orient» թերթի մեջ: 1870 թվականին տպագրվել է նրա հայերեն թարգմանությունը «Հայկական աշխարհ»-ի փետրվարի համարում (էջ 42—46): Էմինի ուսումնասիրության ռուսերենը վերահրատարակվել է 1896 թվականին նրա „Исследования и статьи“ ժողովածուի մեջ (էջ 204—230):

[3] Н. О. Эмин, Исследования и статьи, Москва, 1896, էջ 224:



Էմինը նշված ուսումնասիրության հավելվածում հրատարակել է 84 հայկական նշանագիր—հիերոգլիֆներ՝ վերցնելով Լազարյան ճեմարանի № 141 հայերեն ձեռագրի նշանագիր ցուցակից, որը 1620 թվականի ընդօրինակություն է:

Հայկական նշանագրերի ուսումնասիրությամբ զբաղվել է ֆրանսիացի արևելագետ Abbé P. Martin-ը և 257 նշանագիր հրատարակել իր «Des signes hiérogliphiques dans les manuscrits arméniens» խորագրով աշխատության մեջ[1]:

Հայկական նշանագրերին խոշոր նշանակություն է տվել հայտնի ազգագրագետ Գարեգին Վ. Սրվանձտյանը: Նա Տիգրանակերտի հայկական ձեռագրերից հավաքել է մոտ 120 նշանագիր և հրատարակել իր «Թորոս աղբար»-ի մեջ[2]:

Նշանագրերի վրա կանգ է առել բանասեր Ի. Հարությունյանը իր «Հայոց գիրը» խորագրով աշխատության մեջ: Առարկելով Էմինի վերը հիշված տեսակետին՝ հայկական նշանագրերի մի մասի նախաքրիստոնեական շրջանում սկիզբ առնելու մասին, նա գտնում է, որ մեզ հասած հայկական նշանագրերը հին ծագում չունեն, այլ ստեղծվել են հայկական գործածական ներկա տառերի հիմքի վրա միջին դարերում: Իր տեսակետը հիմնավորելու համար Հարությունյանը մատնացույց է անում հետևյալ երեք փաստը. ա) հայկական նշանագրերի մի մասը հայկական ներկա տառերից կազմված համառոտագրություն և կապգրություն է, ուստի և ներկա գրությունից առաջ կազմվել չէր կարող, բ) հայկական նշանագրերի մեջ կան այնպիսիները, որոնք քրիստոնեական գաղափարներ են արտահայտում (Աբրահամ, Սողոմոն, խաչ, եկեղեցի և այլն) և հեթանոսական շրջանից սկիզբ առնել չէին կարող, գ) հայկական որոշ նշանագրեր ուշ շրջանի փոխառություններ են հարևան ժողովուրդներից[3]:

Նույն թվականին Տ. վ. Պալյանը, 17-րդ դարի ընդօրինակություն ունեցող իր մի ձեռագրից քաղելով, առանձին տետրակով[4] հրատարակել է 511 նշանագիր՝ առանց, սակայն, անդրադառնալու նշանագրության հնությանը և արժեքին:

Հետագայում հայկական նշանագրերը, առանց մեկնաբանությունների, հրատարակել են Ի. Վ. Սրապյանը և Ֆրեդերիկ Մու-

[1] Congrès intérnational des orientalistes, 1873, էջ 456 և այլն:
[2] Գ. Վ. Սրվանձտյան, Թորոս աղբար, 1879, էջ 337—340:
[3] Ի. Հարությունյան, Հայոց գիրը, Թիֆլիս, 1892, էջ 107:
[4] Տ. վ. Պալյան, Նշանագիրք Հայոց, Վիեննա, 1898:

րատը․ առաջինը 1902 թվականին հրատարակել է 25 նշանագիր «Հանդէս ամսօրեայ»-ի մեջ[1]՝ հիմք ունենալով Անտոնյան միաբանության Օրթագյուղի մատենադարանի № 112 ձեռագիրը, իսկ երկրորդը հրատարակել է 505 նշանագիր «Հանդէս ամսօրեայ»-ի 1903 թվականի համարներից մեկում[2]՝ վերցնելով Բեռլինի Արքունական մատենադարանի № 805 հայկական ձեռագիր ժողովածուից։

Նոր ժամանակներում հայկական նշանագրերով ամենից լուրջ զբաղվել է մեծանուն պրոֆ. Հ. Աճառյանն իր «Հայոց գրերը» արժեքավոր աշխատության մեջ։ Ուսումնասիրելով հրատարակված, ինչպես նաև Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագիր նշանագրերի տեքստերը, նա ևս մերժել է Էմինի հայտնած կարծիքը՝ նշանագրերի հեթանոսական հայկական գիր լինելու մասին և եզրակացրել, որ «վերոհիշյալ ցուցակին մեջ գտնված նշանագիրները, պատկերագիր թե համառոտագրություն, հետմեսրոպյան շրջանին հայերեն տառերու վրա ձևված կամ առարկային պատկերեն առնված նշաններ են և բնավ կապ չունին մեհենագրոշմներու և հաթյան կամ դանիելյան նշանագրերու հետ»[3]։

Պրոֆ. Հ. Աճառյանն իր վերը հիշված աշխատության Հավելվածում հրատարակել է հայկական նշանագրերի ցուցակներից ամենից ընդարձակը՝ բաղկացած 510 նշանագրից՝ իրենց տարբերակներով։ Մեծանուն գիտնականի այս հրատարակության համար հիմք են ծառայել ինչպես տպագրված ու հայտնի, այնպես և Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի չօգտագործված ութ ձեռագիր ցուցակները։

Հայկական նշանագրերին անդրադարձել ենք մենք ևս մեր երկու աշխատությունների մեջ՝ «Նախամեսրոպյան հայկական գրության հարցի շուրջը» և «Հայկական պալեոգրաֆիա»-ի ութերորդ՝ «Գաղափարագրեր» գլխում։ Հայկական նշանագրերի մասին մենք այն տեսակետն ենք պաշտպանել, որ «Նշանագիր իմաստոնցը հին հայկական գիր համարելը գիտական փաստերով չի հիմնավորվում, բայց որպես սղագրություն՝ այնքան հին է, որքան հին է հայկական գրչությունը»[4]։

---

1 «Հանդէս ամսօրեայ», 1902, էջ 201—202։

2 «Հանդէս ամսօրեայ», 1903, էջ 5—9, 144—146, 333—335։

3 Հ. Աճառյան, Հայոց գրերը, Վիեննա, 1928, էջ 56։

4 Ա. Աբրահամյան, Նախամեսրոպյան հայկական գրության հարցը (Հայկական ՍՍՌ Մատենադարանի «Գիտական նյութերի ժողովածու», հատոր 1-ին, էջ 47)։



Մեր այդ աշխատություններից առաջինի հավելվածում մենք հրատարակել ենք 62 նշանագիր՝ առնելով Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 2371 ձեռագրից և երկրորդի մեջ 339 նշանագիր՝ առնելով նույն Մատենադարանի № 2371 և № 715 ձեռագրերից։

Մեր այս տեսակետը հետագայում վերանայել ենք Բեյրութում մեր կարդացած և տպագրության հանձնած դասախոսություններից մեկի մեջ և այն կարծիքը պաշտպանել, որ Երզնկայի խմբի նշանագրերի ցուցակում կան գաղափարագրեր, որոնք նմանություն ունեն հեթիթական, եգիպտական և հնդկական գաղափարագրերի հետ։ Գաղափարագրերի նմանության հիման վրա մենք այն կարծիքն ենք հայտնել, որ մեր «նշանագրեր»-ը գալու են լուծելու այն կնճիռը, թե ինչով էին գրում մեր նախնիները նախամեսրոպյան շրջանում[1]։

Նշված բոլոր ուսումնասիրողների աղբյուրը նշանագրերի առանձին պատահական ընդօրինակություններ են հանդիսացել։ Նրանցից ոչ ոք իր առջև լուրջ խնդիր չի դրել համեմատել մեզ հասած նշանագրերը, ճշտել նրանց արժանահավատությունը, ընտրել նախագաղափար օրինակը և նրա ուսումնասիրության հիման վրա հանել իր եզրակացությունը։ Չենք խոսում դեռ նշանագրերի այն հրատարակիչների մասին (Պալյան, Սրապյան և Ֆրեդերիկ Մուրատ), որոնք իրենց ներածական խոսքում ձեռագրի աղբյուրագիտական նկարագրություններից այն կողմ չեն անցել։

Ուսումնասիրողների այս շարքում, միակ բացառությունը հանդիսանում է պրոֆ. Հ. Աճառյանը, որը, օգտագործելով նշանագրերի նախորդ յոթ հրատարակությունները, համեմատել է նրանք նշանագրեր պարունակող Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագրերի հետ, լուծել աղբյուրագիտական մի շարք հարցեր։

Մինչև այժմ գիտության մեջ հայտնի էր հայկական նշանագրեր պարունակող 18 ձեռագիր, որոնցից 8-ը՝ արտասահմանյան մատենադարաններում, իսկ 10-ը՝ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանում։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանում մեր կատարած ուսումնասիրություններից պարզվեց, որ այստեղ գտնվում է հայկական նշանագրեր պարունակող ոչ թե 10 ձեռագիր, որոնք հայտնի են եղել պրոֆ. Հ. Աճառյանին, այլ 49, ըստ որում՝ շատ ավելի ընտիր ձեռագրեր, քան գիտության մեջ մինչև այժմ հայտնիներն են։

---

1 Ա. Աբրահամյան, Յոթ դասախոսություններ, Անթիլիաս, 1955, էջ 35։

Հայկական նշանագրերով զբաղվող ուսումնասիրողների գործը դյուրացնելու նպատակով, անհրաժեշտ ենք համարում հրատարակել Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի նշանագրեր պարունակող ձեռագրերի բիբլիոգրաֆիան՝ դասավորված ժամանակագրական կարգով։

| №№ ըստ կարգի | Ձեռագրի №-ը | Թերթերը | Վերնագիրը | Գրիչը կամ ստացողը | Ժամանակը |
|---|---|---|---|---|---|
| 1 | 715 (612) | 150բ—152ա | (առանց խորագրի) | Հովհաննես գրիչ՝ Թումա | 13—դ. |
| 2 | 4149 (ա. 21) | 363բ—368ա | «Նշանագիր այբուբենից» | Կարապետ երեց | 1304—1305 թթ. |
| 3 | 2371 (2374) | 74ա—76բ | «Նշանագիր» | Ստեփանոս Սուրխաթեցի | 1357 թ. |
| 4 | 341 (375) | 105բ—107բ | (առանց խորագրի) | Սիմեոն գրիչ | 1365 թ. |
| 5 | 750 (662) | 126ա—129ա | «Նշանագիր անուանց. կարճաբանութիւն» | Սարգիս Կիլիկեցի | 14-րդ դ. |
| 6 | 2364 (2363) | 7ա | (առանց խորագրի, հատված) | Ստացող՝ Հովհաննես եպիսկոպոս | 14-րդ դ. |
| 7 | 2544 (244) | 185բ—189ա | «Նշանագիր անուանց. կարճաբանութիւն» | Ստացող՝ Վարդան վարդապետ | 14-րդ դ. |
| 8 | 7117 | 320բ—322բ | «Նշանագիր» | (գրիչն անհայտ) | 14-րդ դ. |
| 9 | 8198 (866) | 59ա—60ա | «Նշանագիր այբուբենից» | Եսայի | 14-րդ դ. |
| 10 | 8198 (866) | 62ա | «Նշանագիր անուանց» | Եսայի | 14-րդ դ. |
| 11 | 2382 (2297) | 271բ—272ա | (առանց խորագրի, հատված) | Գրիգոր վարժապետ | 1403 թ. |
| 12 | 5118 (391) | 378բ—381բ | (առանց խորագրի) | Ռստակես Երզնկացի | 1412 թ. |
| 13 | 266 (405) | 93ա—95ա | (առանց խորագրի) | Ամիրդովլաթ բժիշկ | 1468 թ. |
| 14 | 2335 (2380) | 29ա—բ | «Նշանագիր անուամբ այբուբենից» | Կարապետ Երուսաղեմցի | 1476 թ. |
| 15 | 3105 (470) | 7բ | «Նշանագիր» | Թովմա դպիր | 15-րդ դ. |
| 16 | 7250 (77) | 92բ—94բ | (առանց խորագրի) | Մանուկ դպիր | 1517-ից առաջ |
| 17 | 8106 (820) | 62ա—65ա | «Նշանագիր այբուբենից» | (գրիչն անհայտ) | 1595 թ. |
| 18 | 3177 (Գ, 91) | 1ա—4ա | (առանց խորագրի) | Ազարիա գրիչ | 16-րդ դ. |



| | Ձեռագրի №-ը | Թերթերը | Վերնագիրը | Գրիչը կամ ստացողը | Ժամանակը |
|---|---|---|---|---|---|
| 19 | 3197 (390) | 215բ—221ա | «Նշանագիրք» | (գրիչն անհայտ) | 16-րդ դ. |
| 20 | 267 (406) | 314ա—318ա | «Նշանագիր» | Ղուկաս դպիր Արգնի | 1609 թ. |
| 21 | 1719 (1700) | 124բ | (առանց խորագրի) | Զատիկ, որդի պարոն Յագուպի | 1616 թ. |
| 22 | 487 | 166բ | «Այսոքիկ են գրոյս նշանագիրքն...» | (գրիչն անհայտ) | 1618 թ. |
| 23 | 2370 (2373) | 63ա—64բ | «Նշանագիր» | Պողոս Տյուրիկեցի | 1624 թ. |
| 24 | 2370 (2376) | 296ա—բ | (առանց խորագրի) | Պողոս Տյուրիկեցի | 1624 թ. |
| 25 | 2381 (2372) | 65ա—67բ | «Նշանագիր» | Ստեփանոս Քոսա | 1626 թ. |
| 26 | 8575 (1031) | 341բ | (առանց խորագրի, հատված) | Սարգիս աբեղա Ամիթեցի | 1632 թ. |
| 27 | 2291 | 371ա—374ա | «Նշանագիր» | (գրիչն անհայտ) | 1663 թ. |
| 28 | 2619 (Գ. 265) | 210բ—212ա | «Նշանագիրք անուանց կարճաբանութիւն | Աստվածատուր երեց Հալեպցի | 1650 թ. |
| 29 | 1296 (1314) | 1ա—բ | (առանց խորագրի, հատված) | Ղազար սարկավագ Սեբաստացի | 1657 թ. |
| 30 | 3107 (472) | 7բ | «Նշանագիր» (հատված) | (գրիչն անհայտ) | 1676-ից առաջ |
| 31 | 3119 (537) | 124ա—126ա | (առանց խորագրի) | Դավիթ սարկավագ Ղրիմեցի | 1650—1676 թթ. |
| 32 | 3119 (537) | 126ա—127ա | (առանց խորագրի) | Դավիթ սարկավագ Ղրիմեցի | 1650—1676 թթ. |
| 33 | 538 (414) | 136բ—141ա | «Նշանագիրք» | (գրիչն անհայտ) | 1695 թ. |
| 34 | 535 (411) | 238բ—244ա | (առանց խորագրի) | (գրիչն անհայտ) | 17-րդ դ. |
| 35 | 694 (816) | 97ա | (առանց խորագրի, հատված) | (գրիչն անհայտ) | 17-րդ դ. |
| 36 | 2000 (2025) | 187ա—195բ | «Բացատրութիւն յառաջնոց գրոց և նշանագրաց» | Գրիգոր վարդապետ | 17-րդ դ. |
| 37 | 2190 (2290) | 427ա—431բ | (առանց խորագրի) | Աստվածատուր | 17-րդ դ. |
| 38 | 2331 (2370) | 78բ—80ա | «Նշանագիր» | (գրիչն անհայտ) | 17-րդ դ. |
| 39 | 2526 (Մ. 327) | 63բ—66ա | «Նշանագիր» | (գրիչն անհայտ) | 17-րդ դ. |
| 0 | 5126 (399) | 16ա—բ | (առանց խորագրի, հատված) | (գրիչն անհայտ) | 17-րդ դ. |

| №№ ըստ կարգի | Ձեռագրի №-ը | Թերթերը | Վերնագիրը | Գրիչը կամ ստացողը | Ժամանակը |
|---|---|---|---|---|---|
| 41 | 5809 (1194) | 77ա—բ | (առանց խորագրի) | Պետրոս գրիչ | 17-րդ դ. |
| 42 | 8537 (1152) | 62ա—65ա | «Նշանագիր» | (գրիչն անհայտ) | 17-րդ դ. |
| 43 | 9121 | 103ա—բ | «Ցաղագս նշանագրաց...» | Պողոս Վանեցի | 1732—1733 թթ. |
| 44 | 609 (590) | 148բ | (առանց վերնագրի, հատված) | (գրիչն անհայտ) | 1737 թ. |
| 45 | 1842 (1909) | 197ա | «Այս է նշանագրերն Հայոց ազգի, որ կայ ի մէջ Հայոց | Հարություն քահանա (Լիմ անապատ) | 1771 թ. |
| 46 | 2623 (Գ. 300) | 558բ—559ա | (առանց խորագրի) | Թուման երեց Բաղիշեցի | 1792 թ. |
| 47 | 123 (127) | 432բ—433բ | (առանց խորագրի) | (գրիչն անհայտ) | 18-րդ դ. |
| 48 | 8716 (408) | 55ա | «Վասն պատուագրաց» | (գրիչն անհայտ) | 18-րդ դ. |
| 49 | 3318 (710) | 72ա—77բ | «Բառ նշանագրաց Եփեստոսի» | (գրիչն անհայտ) | 1802 թ. |

Նշված ձեռագրերի նշանագիր ցուցակները, ըստ իրենց պարունակած նշանագրերի ձևի և նմանության, մենք բաժանում ենք հետևյալ 13 մանր խմբերի, որոնք իրարից են ծագել և կամ գրչության նույն դպրոցի գործերն են.

1 A խումբ՝ №№ 2371, 266, 7250, 267, 1719, 2370, 2381, 2291, 2331, 2526, 8537[1].
2 B խումբ՝ №№ 4149, 8198, 8106, 3197, 538, 2190, 3318։
3 Г խումբ՝ №№ 750, 341, 2544, 2619, 3119, 5809, 8198[2].
4 D խումբ՝ № 3318.
5 E խումբ՝ №№ 7117, 123 և Բեռլինի № 805 (բ մասը).
6 Z խումբ՝ № 535.
7 Ж խումբ՝ №№ 5118, 3177 և Բեռլինի № 805 (ա մասը)
8 K խումբ՝ №№ 3105, 3119, 3107.

[1]. Այս խմբին պատկանում է Լոնդոնի Բրիտանական թանգարանի հայկական ֆոնդի № 127 ձեռագրի տեքստը (տես F. C. Conybeare, A catalogue of the British Museum, London, 1913, էջ 3088)։

[2]. Այս խմբին են պատկանում Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի № 423 և № 277 ձեռագրերի նշանագիր ընդօրինակությունները (առաջինը 1366 թվականի, իսկ երկրորդը՝ 17-րդ դարի) (տես «Բ. վ. Սարգսյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց մատենադարանին Մխիթարյանց», Վենետիկ, 1924, էջ 834 և 936)։



9 O խումբ՝ № 2370.
10 П խումբ՝ № 2623.
11 Y խումբ՝ № 2000.
12 X խումբ՝ № 715.
13 P խումբ՝ (այս խմբի տակ մենք դնում ենք բոլոր տեսակի հատվածները) №№ 2126, 694, 8575, 8716, 1296, 2382, 609, 2364, 1842, 487, 2335, 9121, 5118։

Այս խմբավորումները, հեռավոր կամ մոտավոր նմանությամբ, կապված են իրար հետ և սկիզբ են առնում մեկ նախագաղափար օրինակից, բացի Ж խմբից, որը բացարձակ ոչ մի նմանություն չունի մյուս խմբերի հետ՝ ոչ իր նշանագրերի ձևերով և ոչ էլ նրանց դասավորությամբ։ Անվիճելի է, որ Ж խումբը միանգամայն այլ նախագաղափար օրինակից է սկիզբ առնում։

Ж խմբի հնագույն ձեռագիրը մեզ հասել է Երզնկայի հայկական գրչության դպրոցից (—այդ Հայկ. ՍՍՌ Պետ. Մատենադարանի № 5118 ձեռագիրն է 1412 թվականից, որի գրիչն է Ռըստակես Երզնկացին), ուստի և մենք նրան անվանում ենք Երզընկայի խումբ (այդ անունը պայմանական է, քանի որ կարող է Երզընկայի նախագաղափար օրինակը ծագած լինի այլ վայրից)։ Իսկ մյուս խումբը, որի նախագաղափար օրինակը սկիզբ է առնում կիլիկյան գրչության դպրոցներից, դարձյալ պայմանական ձևով անվանում ենք կիլիկյան խումբ։

Այսպիսով, եթե մենք մտնելու չլինենք վերև բերված խմբերի նմանությունների և տարբերությունների մանրուքների մեջ և վերցնելու լինենք նրանք ըստ բովանդակության, կարող ենք հաստատապես ասել, որ մեզ են հասել հայկական նշանագրության ոչ թե մեկ խմբի բնագիր, ինչպես ենթադրվել է մինչև այժմ, այլ իրարից անկախ և տարբերվող երկու բնագրեր՝ Երզնկայի և Կիլիկիայի։

Նախորդ ուսումնասիրողների հիմնական թերությունը, մեր կարծիքով, կայացել է նրանում, որ նրանք չեն նկատել գոյություն ունեցող այդ խմբավորումները, չեն զատել իրարից երկու խմբերի տարբերակները, բոլորը լցրել են մի կաթսայի մեջ և ուսումնասիրել նրանք առանց զանազանության։

Ծանոթանանք հայկական նշանագրերի այս երկու խմբերի հետ առանձին-առանձին և փորձենք պարզել նրանց կազմման ժամանակը, նպատակը և հեղինակը։ Սկսենք նշանագրերի կիլիկյան խմբից։

Նշանագրերի կիլիկյան խմբի հնագույն ձեռագրերը XIII դարի վերջից են (Հովհաննես գրչի օրինակը), իսկ XIV դարից մենք ունենք արդեն մի քանի ձեռագրեր՝ Կարապետ երեցի ձեռագիրը՝ 1304—1305 թվականներից, Աստմ գրչի ձեռագիրը 1366 թվականից (Վենետիկի Մխիթարյանների մատենադարանում), Ստեփանոս Սուրխաթեցու օրինակը 1357 թվականից, Սիմեոն գրչի օրինակը 1365 թվականից, Սարգիս Կիլիկեցու, Հովհաննես եպիսկոպոսի, Եսայի գրչի ձեռագրերը դարձյալ XIV դարից և այլն։ Անհրաժեշտ է նշել, որ վերը հիշված ձեռագրերում հայկական նշանագրերի ցուցակները մեզ հասել են ոչ թե հատվածներով, այլ ամբողջական վիճակում։

Անշուշտ, վերանայման կարիք ունի պրոֆ. Հ. Աճառյանի այն կարծիքը, որ իբր թե հայկական նշանագրերը փոքր քանակությամբ ստեղծվել են XIV դարում, իսկ հետագայում, աստիճանաբար, լրացվել. «...կրնանք հետևցնել,—գրում է նա,—թե նշանագրերու առաջին գործածությունը ԺԴ դարեն մնած ըլլա, առաջին անգամ սակավ քանակությամբ, որմե հետո քիչ-քիչ շատցած և ընդհանրացած է»[1]։

Վերևում մենք ցույց ենք տվել, որ XIII դարի վերջերից և XIV դարից մեզ են հասել հայկական նշանագրեր պարունակող մի շարք ձեռագրեր, ուստի և հայկական նշանագրերը XIV դարում, այն էլ հատվածաբար ստեղծելու մասին խոսք լինել չի կարող։ Անվիճելի է, որ հայկական նշանագրեր կազմելու վերջին սահմանը՝ XIII դարի վերջն է, դրանից ուշ կազմված լինել չի կարող, որովհետև դարի վերջից արդեն ունենք ձեռագիր։

Սակայն ո՞րն է նշանագրերի ստեղծման ժամանակի առաջին սահմանը։

Այս հարցում մեզ օգնության կարող է հասնել հայկական նշանագրության հնագրությունը և կազմող հեղինակի անձնավորության պարզաբանումը։

Հայկական հնագրությունից մեզ հայտնի է, որ մինչև XII դարը գրված ձեռագրերում հապավված են լինում միայն տերունական բառերը։ XII դարից առաջ գրված ոչ մի ձեռագրում նշված հապավումներից զատ այլ հապավումներ մենք չգիտենք։ Զատվագրությունը, ներկա իմաստով, սկսում է առաջանալ միայն XII դարից հետո։ Եվ քանի որ կիլիկյան խմբի ցուցակի նշանագրերի զգալի մասը, ինչպես կտեսնենք, XII դարից հետո ստեղծված համառոտագրություններ են, ուստի և հայկական նշանագրերի ցուցակը XII դարից առաջ կազմված լինելու մասին խոսք լինել չի կարող։

[1] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 57։



Մի փաստ ևս։ Կիլիկյան ցուցակի հայկական նշանագրերի որոշ մասը կազմված է հայկական տառաձևերի ձևափոխություններից, իսկ ձևափոխված տառաձևերի հիմքը, դժվար չէ նկատել, որ ոչ թե բոլորաձև կամ ուղղագիծ երկաթագրերն են, այլ կիլիկյան շրջանի սովորական բոլորգիրը։ Մեզ հայտնի է, որ բոլորգիրը հայկական ձեռագրերում սկսում է գործածվել XII դարից, ուստի և հայկական նշանագրերը XII դարից ավելի վաղ կազմված լինել չէին կարող։

Այսպիսով, նշանագրերի ընդօրինակությունների և նրանց հնագրության ուսումնասիրության հիման վրա մենք գալիս ենք այն եզրակացության, որ հայկական նշանագրերի ցուցակները, XII դարից շուտ և XIII դարից ուշ կազմված լինել չեն կարող։

Ժամանակի ճշտման խնդրում մեզ կարող է օգնել նաև նշանագրեր կազմող հեղինակի անձնավորության պարզաբանումը։ Եթե մեզ համար պարզվի, թե ո՞վ է եղել նշանագրեր կազմող հեղինակը, դժվար չէ, մոտավոր ճշտությամբ, որոշել նաև նշանագրերի ստեղծման ժամանակը։

Դժբախտաբար, նշանագրերից ոչ մեկի խորագրում չի հիշվում կազմող հեղինակը։ Բացառություն է կազմում Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 3318 ձեռագրի պարունակած ցուցակը, որը վերնագրված է. «Բառ նշանագրաց Եփեստոսի»[1]։

Եփեստոսը, ավելի ճիշտը՝ Հեփեստոսը, Աղեքսանդրյան դպրոցի նշանավոր քերականներից է, ապրել է մեր էրայի IV դարի կեսերին։ Նրա աշխատություններից հայտնի է «’Εγχερίδιον περὶ μέτρων»[2], որը չափական աշխատություն է և ոչ մի առնչություն չունի հայկական նշանագրության հետ։

Կիլիկյան խմբի նշանագրերի արտաքին ձևը պարզ ցույց է տալիս, որ նրանք, հիմնականում, ձևված են հայկական ներկա տառաձևերի հիման վրա, տեղական ծագում ունեն և ոչ մի կապ՝ հունականի հետ։

Այդ դեպքում ի՞նչպես բացատրել հայկական նշանագրերի ընդօրինակության՝ վերնագրում Հեփեստոսի հիշատակությունը։

[1] Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարան, ձեռագիր № 3318, թ. 72ա,

[2] W. Christ, Geschichte der Griechischen Litteratur, München, 1905, էջ 799։

Մեզ թվում է, որ այդ թյուրիմացությունն առաջացել է այն պատճառով, որ հայկական կիլիկյան նշանագրերի խումբը, հիմնականում, որպես սղագրություն, ձևով որոշ նմանություն ունի հունական սղագրությանը։ Այդ դժվար չէ տեսնել համեմատությունից։ Բերենք մի քանի օրինակ՝ վերցնելով հունական սղագրության ընդարձակ մի ցուցակից, որը հրատարակել է գերմանացի գիտնական Գարտհաուզենը և համեմատենք նրանք հայկական համապատասխան բառի նշանագրի հետ ըստ իմաստի[1]։

| | | | |
|---|---|---|---|
| Δi | =δόξα = | ⊕ | —փառք |
| ΔΛΔ | =Δαυίδ = | ηθ | —Դաւիթ |
| Εφ̊ | =ἔοροςἕ = | ռշ | —առաջնորդ |
| αν̂ρ̂ | =Ανδρέον = | ηº | —Անդրէաս |
| ȣ | =ἥλιος = | ☉ | —արեգակ |
| ⏜ºᶜ | =οὐρανός = | ♀ | —երկինք |
| απ̂π̂ | —αποστόλων= | ա̄ք | —առաքեալ |
| πHP | —πατήρ = | հº | —հայր |
| ⌶ | —τάλαντον = | հճ | —հանճար |
| ȝ | — ἄνθρωπος = | 8 | —մարդ |
| ☾ | —σελήνη = | ☾ | —լուսին |
| ℧ | —γή = | ♁ | —երկիր և այլն։ |

¹ V. Gardthausen, Grichische Paleographie, II B., Leipzig, 1913, էջ 342—352։



Կարելի է նման այլ օրինակներ ևս բերել, սակայն բերածները բավական են՝ տեսնելու հայկական նշանագրության և հունական հապավագրության ընդհանուր նմանությունը։ Այսպիսի նմանությունը, պարզ է, պատահաբար առաջանալ չէր կարող։ Մենք գիտենք, որ Վարդան Արևելցին Հեթումի համար իր գրած քերականությունը ոչ թե կազմել է ինքնուրույն ձևով, այլ մեկնությամբ— նա մեկնել է Դիոնիսիոս Թրակացու քերականության հայկական թարգմանությունը։ Եվ քանի որ հունական քերականությունների հավելվածում տեղավորում էին սղագրության ամբողջական ցուցակներ, իսկ Դիոնիսիոս Թրակացու քերականությունը թարգմանված է հունարենից, ուստի և զարմանալի չէ, որ հունական նույն ավանդույթով մեզ մոտ ևս կազմեին նման ցուցակներ՝ հիմք ունենալով, իհարկե, հայկական սեփական նշանագրությունը։ Բացարձակ թյուրիմացության արդյունք պիտի համարել Հեփեստոսի անվան հիշատակությունը հայկական նշանագրերի ցուցակի վերնագրում. ընդօրինակող հայ գրիչը, մեկնելով հունական և հայկական հապավագրության մատնացույց արած նմանությունը և ծանոթ լինելով Հեփեստոսի հետ, նրա անունն է դրել հայկական նշանագրերի ցուցակի վերնագրում՝ որպես քերականության ասպարեզի հեղինակություն։

XII—XIII դարերում հայկական քերականությամբ և գրչական արվեստով զբաղվող հեղինակներից մեզ հայտնի են երեք հոգի՝ Արիստակես գրիչ, Գեորգ Սկևռացի և Վարդան Արևելցի։ Առաջինը գրչության արվեստի մասին գրել է ընդարձակ ուսումնասիրություն[1], երկրորդը լրացրել և ընդարձակել է Արիստակես գրչի աշխատությունը[2], իսկ Վարդան Արևելցին գրել է ծավալուն քերականություն Հեթում թագավորի համար[3]։

¹ Արիստակես գրչի այդ աշխատությունը վերնագրված է. «Վերլուծութիւնք բացառապէս բազմազան բայից և բառից, յոգնախումբ շարադրութեամբ արարեալ զսա Արիստակիսի գրչի ի խնդրոյ բազմաց յարհեստ գրչութեան» (տես Հայկական ՍՍՌ Պետ. Մատենադարանի ձեռագիր № 2371, թ. 78ա)։

² Գեորգ Սկևռացու աշխատությունը վերնագրված է «Գեորգեայ վարդապետի արարեալ ի խնդրոյ Ստեփաննոսի Գոյներիցանց Հայքաննացւոյ» (տես Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագիր № 2382, թ. 219)։

³ Վարդան Արևելցու քերականությունը վերնագրված է. «Յաղագս մեկնութեան քերականին, զոր արարեալ է մեծ վարդապետին Վարդանայ ի խնդրոյ բագաւորին Հայոց Հեթմոյ» (Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագիր № 2283, թ. 1ա)։

Մեր կարծիքով, կիլիկյան խմբի հայկական նշանագիր ցուցակի հեղինակը հանդիսացել է Վարդան Արևելցին. Հեթում թագավորի համար գրելով իր քերականությունը, նա միաժամանակ կազմել է հայկական նշանագրերի մեզ ծանոթ ցուցակը՝ որպես պատրաստի ուղեցույց հայկական համառոտագրության համար:

Մեր այս եզրակացության ճշտությունը հաստատող հիմնական փաստն այն է, որ կիլիկյան խմբի հայկական նշանագրերի ցուցակների հնագույն ձեռագրերի մեծ մասում նրանք ընդօրինակված են Վարդան Արևելցու քերականության և կամ այլ աշխատության հավելվածի մեջ: Այսպես, Սուրխաթում Ստեփանոս գրչի 1387 թվականի ձեռագրում (№ 2371) ընդօրինակված է Վարդանի քերականության հավելվածում, 1365 թվականի Սիմեոն գրչի ձեռագրում (№ 341) ընդօրինակված է «Ժղլանք Վարդանայ Արևելցու ի խնդրոյ Հեթմոյ» աշխատությունից հետո, Վենետիկյան Մխիթարյանների մատենադարանի սեփականությունը կազմող № 423 ձեռագրում նշանագրերն ընդօրինակված են Վարդանի «Յիշատակ բանի» և այլ աշխատություններից հետո. XIV դարի Սարգիս գրիչ Կիլիկեցու ձեռագրում (№ 750) ընդօրինակված են Վարդան Արևելցու «Ժղլանք»-ից և քերականությունից հետո, XIV դարի մի այլ ձեռագրում (№ 2544) նշանագրերի ցուցակն ընդօրինակված է «Վարդան վարդապետի հարցումն և պատասխանի»-ից հետո և այլն: Պարզ է, որ այսպիսի պատահականությամբ նշանագրերը չէին կարող ընդօրինակվել Վարդանի ժողովածուների մեջ և նրա քերականության շարունակության հավելվածում:

Նշանագրերի՝ Վարդան Արևելցու հեղինակությանը վերագրելու և նրա քերականության հավելված համարելու պարագայում լուծվում է մի կարևոր հարց ևս՝ թե ինչու հայկական նշանագրերը վերնագրում չունեն կազմող հեղինակի անունը. Վարդանը քերականության վերնագրում հիշվում է որպես հեղինակ, իսկ քանի որ նշանագրերը շարադրված էին որպես քերականության հավելված, հասկանալի է, որ հարկ չկար հեղինակի անունը կրկնել հավելվածի վերնագրում ևս:

Հայկական նշանագրությունը Վարդան Արևելցու հեղինակությանը վերագրելու և նրա կազմման ժամանակը 13-րդ դարի կեսերը որոշելու դեպքում, միանգամայն անհիմն են դառնում գոյություն ունեցող տեսակետները կիլիկյան խմբի նշանագրերը 13-րդ դարից առաջ ու ետ կազմելու մասին, որոնց վրա, առանձին-առանձին, ավելորդ ենք համարում կանգ առնել:



Այս կապակցությամբ անհրաժեշտ է պարզել մի հարց ևս — ինչ նպատակով է կազմվել հայկական նշանագրությունը: Այդ հարցը հեշտ է լուսաբանել, եթե մենք պարզենք հայ նշանագրության ատաղձը:

Կիլիկյան նշանագրության համար որպես ատաղձ, հիմնականում, հանդիսացել են հայկական տառաձևերը. Նշանագրեր կազմող հեղինակը վերցրել է հայկական տառերը և նրանց այս կամ այն ձևափոխումով, հապավելով կամ կապգրեր կազմելով, ձևել տվյալ նշանագիրը: Համենայն դեպս, կիլիկյան խմբի նշանագրերի ստեղծման նպատակը համառոտագրությունն է հանդիսացել: Այդ, ի դեպ, կազմող հեղինակի կողմից բարեխղճորեն նշված է խմբի նշանագրերի ցուցակի վերնագրում. «Նշանագիրք անուանց. կարճաբանութիւն»: «Կարճաբանություն» բառն այստեղ գործ է ածվել համառոտագրություն իմաստով: Այդ բանը դժվար չէ նաև նկատել նշանագրերի ստեղծման սկզբունքի հետ ծանոթանալու դեպքում:

Կիլիկյան խմբի նշանագրերը ստեղծված են հետևյալ սկզբունքով.

ա) Վերցվում է տվյալ բառի սկզբնատառը և վրան կամ կողքը աջից ավելացվում o նշանը.

| | |
|---|---|
| Բ̊—Բարթողիմէոս | Պ̊—Պետրոս |
| Գ̊—Գէորգ | Յ̊—Յովհաննէս |
| Զ̊—Զաքարիա | Տ̊—Տրդատ |
| Թ̊—Թէոդորա | Դ̊—դահեկան |

և այլն:

բ) Որոշ դեպքերում վերցվում է բառի ոչ թե առաջին տառը, այլ միջին բնորոշող տառերից մեկն ու մեկը կամ՝ վերջինը. և աջից ավելացվում o նշանը.

| | |
|---|---|
| Հ̊—Աբրահամ | ա̊—թագաւոր |
| Ր̊—Աղեքսանդր | զ̊—քարոզ |
| Ո̊—Անտոն | ք̊—զարմանք |
| Ջ̊—Երջանիկ | ղ̊—հերձուածող |

և այլն:

գ) Պատվագրությամբ հապավվում են բառի առաջին և վերջին տառերը.

| | |
|---|---|
| բթ — բարեգութ | փգ — փափագ |
| Գտ — Գալուստ | քծ — քարկոծ |
| գն — գարուն | Ղո — Ղովտ |
| Ձլ — Ձորաբաբել | պտ — պատրաստ |
| | և այլն: |

դ) Հապավման ժամանակ բառի առաջին և վերջին տառերին միանում է միջին տառերից.

| | |
|---|---|
| բւր — բռնաւոր | հպգ — հանապազ |
| գյն — գերագոյն | մհտ — մահապարտ |
| դւր — դատաւոր | մդր — մարդասեր |
| գւր — գինւոր | յմն — յանդիման |
| | և այլն: |

ե) Հապավման ժամանակ որպես նշանագրի նախատառ է վերցվում ոչ թե բառի առաջին տառը, այլ միջին տառերից.

| | |
|---|---|
| — Ահարոն | — աղաւնի |
| — աղաղակ | — աղօթք |
| — առիւծ | — ամօթ |
| — ապաշխարող | — անօթի |
| | և այլն: |

զ) Հապավվում է կապգրով.

| | |
|---|---|
| — բարեպաշտ | — հանճար |
| — գայթակղել | — հմուտ |
| — գինւոր | — հպարտ |
| — կաթողիկոս | — նահատակ |
| | և այլն: |



է) Կապգրված հապավվում են և այնպիսի բառեր, որոնք շատ հեռավոր նմանություն ունեն.

| | |
|---|---|
| (նն) — Նաթան | (դդ) — անդունդ |
| (քցր) — քաղցր | (ծյ) — ծառայ |
| (ւշր) — մշտնջենաւոր | (վսն) — վասն այսորիկ |
| (Յն) — Յովնան | (չր) — չուր |
| | և այլն: |

ը) Կիլիկյան խմբի հայկական նշանագրերի մեջ, մեր կարծիքով, գաղափարագրեր կարելի է համարել հետևյալ 15 նշանագրերը.

| | |
|---|---|
| — աղանդ | — ճանապարհ |
| — Անտիոք | — մարդ |
| — արեգակն | — յանդուգն |
| — ուսարան | — յափշտակել |
| — եկեղեցի | — պայծառ |
| — հրեշտակ | — սատանայ |
| — ղամբար | — փառաւոն |
| — քաղաք | |

(Պրոֆ. Հ. Աճառյանը նշված գաղափարագրերից մի քանիսը ևս հայկական տառաձևերից առաջացած նշաններ է համարում):

Այսպիսով, եթե մենք հաշվի չառնենք վերջին 15 նշանագրերը, ապա կիլիկյան խմբի մյուս նշանագրերի մասին հաստատապես կարող ենք ասել, որ նրանց մեծ մասը ձևված է հայկական տառանշանների հիման վրա:

Չի՞ կարող պատահել, որ Վարդան Արևելցուց առաջ գոյություն ունեցած լիներ հայկական նշանագրերի մի այլ ցուցակ, թարգմանված շատ հնում և կցված Դիոնիսիոս Թրակացու քերականության մեկնություններից որևէ մեկի հավելվածում։ Անհավանական ոչինչ չկա, բայց այն դեպքում մենք պիտի ընդունենք, որ հին ցուցակի նշանագրերը հիմնավորապես ձևափոխվել են XIII դարում գործածական բոլորգիր տառերի հիման վրա, որը քիչ հավանական է։

Հարց է առաջանում, եթե կիլիկյան նշանագրերի խումբը կազմված է հայկական տառաձևերից և նրա նպատակը եղել է ղաղտնագրությունը, ապա կա՞ն փաստեր, որ այդ նշանագրերը երբևէ ձեռագրերում գործածված լինեն որպես ղաղտնագրություն։ Այո, կան։ Դրա անհերքելի ապացույցը մեզ տալիս է Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 644 ձեռագիրը, ուր ընդօրինակված տեքստերը գրված են նշանագրերի այնպիսի հապավումներով, որ ամենափորձված ազբյուրագետն անգամ, առանց ձեռքի տակ ունենալու հայկական նշանագրերի ցուցակը, չի կարող վերծանել։ Չենք խոսում մենք հայկական բազմաթիվ նշանագրերի մասին, որոնք ընդհանուր գործածության մեջ են դրվել հայկական գրեթե բոլոր միջնադարյան ձեռագրերում։

Այսպիսով, կիլիկյան խմբի հայկական նշանագրության ուսումնասիրությունից պարզվում է, որ այս խմբի նշանագրությունն առաջացել է 13-րդ դարում, և նրա հավանական հեղինակն է հանդիսացել Վարդան Արևելցին։ Նշանագրերի այս խմբի զգալի մեծամասնությունը կազմված է հայկական տառաձևերի ձևափոխությունից։ Նշանագրերի ստեղծման նպատակն է եղել ղաղտնագրությունը։

Վերև բերված մեր եզրակացությունը, սակայն, վերաբերում է հայկական նշանագրերի կիլիկյան խմբին։ Մեզանից առաջ այս նույն կարծիքը հայագիտության մեջ հայտնվել է։ Միանգամայն այլ բովանդակություն ունի նշանագրերի Երզնկայի խումբը։ Այս խումբը, դժբախտաբար, մինչև այսօր դուրս է մնացել բանասիրության ուշադրությունից, եթե հաշվելու չլինենք, որ այդ խմբի մի ընդօրինակությունը, առանց մեկնաբանության, հրատարակել է Ֆրեդերիկ Մուրատը «Հանդէս ամսօրեայ»-ում[1]։

Երզնկայի նշանագրերի ձեռագրերը շատ քիչ են—ընդամենը՝ երեքը—Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 5118,

[1] «Հանդէս ամսօրեայ», 1903, էջ 5—8։



№ 3177 և Բեռլինի Կայսերական մատենադարանի № 805 ձեռագիրը։ Ձեռագրերից հնագույնը № 5118-ն է, որն ընդօրինակված է 1412 թվականին։

Երզնկայի նշանագրերի ցուցակը, կիլիկյան խմբի համեմատությամբ, ունի հետևյալ բնորոշ առանձնահատկությունները. ա) նշանագրերը շարադրված են ոչ թե ըստ հայերեն վերծանված բառերի այբբենական կարգի, այլ խառը, բ) նշանագրերի ցուցակները չունեն վերնագիր և գ) նշանագրերի մեծ մասը գաղափարագրեր են։

Ե՞րբ և ո՞ւմ կողմից է կազմվել Երզնկայի խումբը։

Հեղինակի մասին դժվարանում ենք որևէ բան ասել, որովհետև փաստական բացարձակ ոչ մի տվյալ չունենք ձեռքի տակ, իսկ ստեղծման ժամանակը, մեր կարծիքով, պիտի լինի XIII—XIV դարերը։ Այդ դժվար չէ որոշել այդ խմբի այն նշանագրերի հիման վրա, որոնք հայկական տառանիշերի ձևափոխություններ են։ Այսպես օրինակ՝

| | | | |
|---|---|---|---|
| Ած | —Աստուած | ք | —քերովբէ |
| Յ | —միտք | պշ | —պաշտօն |
| մր | —մարմին | Դթ | —Դաւիթ |
| ւղ | —շաւիղ | տծ | —տրտում |
| գռ | —գաւառ | հկ | —հակառակ |

և այլն։

Հիմք ընդունելով հայկական հնագրությունը, հաստատապես կարող ենք ասել, որ վերև բերված հայկական ա, մ, ւ, ղ, գ, ռ, դ, պ, շ, թ, հ, կ, ք տառերը, ըստ ձևի, XIII—XIV դարերից ավելի հնավաղ լինել չեն կարող, և քանի որ այս խմբի նշանագրերի այս գույն ձեռագիրը 1412 թվականից է, ուրեմն, նշանագրերի այս ցուցակի ստեղծման ժամանակը կարող ենք սահմանել XIII—XIV դարերը, հավանական է՝ 14-րդ դարը։

Երզնկայի նշանագրերի խմբում գիտության համար բացառիկ արժեք են ներկայացնում գործածված ավելի քան 180 գաղափարագրերը, որոնք մի քանի տեսակների են բաժանվում։

Այս գաղափարագրերի մի մասը առարկայի պարզ պատկերն է։ Այսպես օրինակ՝

—լուսին —մատանի

—խորան —գաւազան

—տապանակ —վիշապ

—յոնք —նետ

—լեզու —պտուղ

—խաչ —աստիճան

և այլն։

Գաղափարագրերի մի այլ մասը արտահայտում է տվյալ բառի բնորոշ իմաստը։ Այսպես օրինակ՝

—աղբիւր—կլոր մի կետ, որից սկիզբ է առնում և հոսում ջուրը.

—փառասէր—իրար վրա բարձրացող օղակներ.

—արծաթասէր—բերանը բաց արած մեծ քսակ.

—մեղաւոր—կարճ ճանկերով գլուխ.

—կեղծաւոր—լեզու, որ երկու մասի է բաժանված.

—քաղաք—պարիսպով շրջափակված տարածություն.

—գարուն —գարնան խորհրդանշան հանդիպացող թռչուններ.

—առաւօտ—արեգակի և լուսնի միջին տարածությունը.

—անսպառ—կլոր գիծ, որպես անվերջության խորհրդանշան

—հեթանոս—տաճար, ուր կանգնած մարդը նայում է դեպի արևմուտք և այլն։



Եվ, վերջապես, կան գաղափարագրեր, որոնց դժվար է իմաստավորել.

—պատճառ —հաւասար

—ահաւասիկ —խոնարհ

—կռապաշտ —թարգման

—արևելք —գթած

և այլն։

Աղբյուրագիտական խիստ կարևոր հարց է պարզել, թե ինչ աղբյուրից են ծագում Երզնկայի խմբի մեջ մտնող ավելի քան 180 գաղափարագրերը։ Միջին դարերում, հայկական նշանագրերի ստեղծման ժամանակ, ոչ Հայաստանում և ոչ էլ հարևան որևէ երկրում գաղափարագրով գրություն գոյություն չի ունեցել, որ վերցնեին ուրիշից։ Կարելի է մտածել, որ գրչության արվեստով զբաղվող մի հեղինակ երևակայությամբ ձևել է այս կամ այն նշանագիրը, եթե, իհարկե, այդ նշանագրերից մի մասը, իր ձևով և նմանությամբ, չառնչվեր Արևելքում գործածվող գաղափարագրերին։

Հայկական նշանագրերով զբաղվող գիտնականներից էմինն է եղել առաջինը, որ կարծիք է հայտնել, թե հայկական նշանագրության որոշ մասը Հայաստանի հեթանոսական շրջանի գիրն է։ Սակայն քանի որ նրան ծանոթ և հրատարակված հայկական նշանագրերը եղել են ոչ թե Երզնկայի, այլ կիլիկյան խմբից, որոնք, ինչպես տեսանք վերևում, մեծամասնությամբ հայկական տառանշանների ձևափոխություններ են, բնական է, չէին կարող չհանդիպել հետագա ուսումնասիրողների լուրջ առարկությանը։ Այդ նույնը չի կարելի ասել Երզնկայի խմբի նշանագրերի մասին։

Երզնկայի խմբի նշանագրերի ծագումը պարզելու համար անհրաժեշտ համարեցինք նրանք համեմատել գաղափարագիր սիստեմով առաջնորդվող գրության հետ։

Առաջին համեմատությունը մենք կատարեցինք հեթիթականի հետ։ Ժամանակին համեմատման այդպիսի փորձ կատարել է պրոֆ Հ. Աճառյանը։ Նա նմանություն է տեսել հետևյալ նշանագրերի մեջ[1].

[1] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 54—55։

| Հեթիթերեն նշանագրեր | Հայկական նշանագրեր |
|---|---|
| Աստված | ավետարան կամ ⊙ սեղան |
| Syennesis աստված | դրախտ |
| թագավոր | թագավոր |
| թագավոր dsario | յոնք |
| dsarayi *(ծառայ)* | լեառն |
| որդի, ժառանգ | Սահակ |
| hati | փարթամ |
| գարկեմիշ *(ճշմարիտ)* | ճշմարիտ |
| ka, ak, k | մարգարէ |
| n, ni | տես |
| t'— | եղբայր |
| m | ավետարան |
| mi | սկիզբն |
| բառասկիզբն | Եսայի |

*Որոշ նմանություններ, ինչպես տեսնում ենք, կան այստեղ*

*Մենք փորձեցինք հայկական նշանագրերը համեմատել եգիպտական հիերոգլիֆների հետ։ Պարզվեց, որ հայկական նշանագրերի մեջ կան որոշ նշանագրեր, որոնք նմանվում են եգիպտականին. նրանց մի մասը նմանվում է և՛ ձևով, և՛ նշանակությամբ, իսկ մյուս մասը՝ միայն ձևով։ Անհրաժեշտ ենք համարում զուգահեռաբար բերել հայկական և եգիպտական նմանվող նշանագրերը՝ առաջին աղյուսակում տալով եգիպտականը և նրան զուգահեռ հայկական նշանագրերը*[1].

[1] *Եգիպտական հիերոգլիֆները տես* Brugsch H., «Hieroglypisch-Demotisches Wörterbuch, the fullest and best Ancient Egyptian lexicon», *իսկ հայկական նշանագրերը վերցված են մեր կազմած ցանկից։*



| Եգիպտական հիերոգլիֆներ | | Հայկական նշանագրեր |
|---|---|---|
| pĕḥ | վանկ | քաղաք |
| mā | » | տապանակ |
| mĕr | » | երաժիշտ |
| mēh | » | կախարդ |
| nĕfĕr | » | մարտիրոս |
| nĕm | » | փառասեր |
| naṣ | » | ճանապարհ |
| su | » | Մանասէ |
| star *(աստղ)* | | աստեղ |
| xĕr *վանկ* | | քաղաք |
| bunch of flowers *(ծաղկեփունջ)* | | բուրաստան |
| hĕtĕp *վանկ* | | կշիռն |
| hĕm | » | լուսին |
| crossing *(խաչաձևել)* | | յիշատակ |
| to raise *(բարձրանալ)* | | ճանապարհ |
| sun *(արև)* | | արեգակն |
| maritime *(ծովային)* | | երկիր |
| hilly country *(լեռնաշխարհ)* | | լեառն |
| country divided *(բաժանված աշխարհ)* | | քաղաք |
| man *(մարդ)* | | աղքատ |
| head *(գլուխ)* | | գլուխ |
| water *(ջուր)* | | ջրհոս |
| dikes, *(պատվար)* | | կերպարան |

| Եգիպտական հիերոգլիֆներ | | Հայկական նշանագրեր | |
|---|---|---|---|
| | grains *(հացահատիկ)* | | *պտուղ* |
| | tooth *(ատամ)* | | *Սամուէլ* |
| | serpent *(օձ)* | | *վիշապ* |
| | circle *(շրջան)* | | *անսպառ* |
| | trees of all kinds *(ծառ)* | | *անթառամ* |

*Ավելի ապշեցուցիչ եղան Երզնկայի հայկական նշանագրերի համեմատության արդյունքները Հնդկաստանի Մոխենջո-Դարոյի պեղումներից հայտաբերված նշանագրերի հետ*[1]*. պարզվեց, որ այս սիստեմի նշանագրերի մեծ մասը հեռավոր կամ մոտավոր նմանություն ունի մեր նշանագրերի հետ։*

*Ծանոթության կարգով ասենք, որ արևելագետներից ոմանք փորձեր արել են կարդալու Մոխենջո-Դարոյում և Խարապայում (իսկ հետագայում պեղված նաև Չանխու-Դարոյում և Ջուխուկարում) հայտաբերված հին հնդկական գրերը։ Այսպես,* Landon*-ը և* Hunter*-ը այս գրչությունը փորձել են կարդալ բրահմական գրության հիման վրա,* Gadd*-ը փորձել է կարդալ սանսկրիտերենով, Լուկոտկան՝ Պասխա կղզու գրությամբ և այլն։ Սակայն այդ փորձերը, ինչպես իրավացի նշել է նշանավոր չեխ արևելագետ Հրոզնին, ոչ մի դրական արդյունքի չեն հասցրել, և «մինչև այժմ հայտնի չէ այդ նշանագրերից ոչ մեկի ընթերցանությունը»*[2]*։*

[1] *Հնդկաստանի հյուսիս-արևելքում, Հինդոս գետի հովտում, Մոխենջո-Դարո կոչվող վայրում, 1922—1927 թվականներին կատարած պեղումների ժամանակ, գետնի տակ բացվեց գիտության մեջ անհայտ հնագույն մի կուլտուրա, որի ժամանակը սահմանվում է երրորդ հազարամյակի սկիզբը մեր էրայից առաջ, այսինքն՝ մոտ մեկ հազարամյակ ավելի առաջ, քան հնդիկների ենթադրվող գաղթը դեպի Հնդկաստան։ Գետնի տակ բացվեց զարգացած մի ժողովրդի մշակույթ՝ ուղիղ փողոցներ, խոշոր առևտրական շենքեր, պահեստներ, քաղաքային բաղնիքներ, իր ժամանակի համար զարգացած ջրմուղ և այլն։ Տները կառուցված էին թրծաղյուսով։ Ավերակ շենքերում գտնվեցին մոտ 2500 կնիքներ, որոնց վրա կային գրեր։ Հայտաբերված այս կուլտուրական արժեքների մասին ընդարձակ ուսումնասիրություն են գրել հնագիտական պեղումները ղեկավարող հնագետներ Մարշալը և Մակկեյը։*

[2] Б. Грозный, Протоиндийские письмена и их расшифровка (*տես* „Вестник древней истории“ № 2, 1940, *էջ 22*)։



*Նախահնդկական այդ գրության վերծանությամբ զբաղվել է նաև պրոֆ. Հրոզնին։ Նա գտել է, որ հին հնդկական այդ գրությունը հանդիսանում է վանկային, նրանց մեջ գտել է հեթիթական նշանագրերին նմանվող գրեր և փորձել վերծանել հեթիթական գրությամբ։ Հրոզնու հին հնդկական այդ գրության վերծանությունը ընդունված է արևելագիտության մեջ։ Այսպես, Լուկոտկայի վերջերս լույս տեսած «Գրի զարգացումը» աշխատության մեջ հեղինակը գտնում է, որ Հրոզնու վերծանությունը անվիճելի է*[1]*։*

*Մենք ծանոթ ենք Հրոզնու «Նախահնդկական գրությունը և նրա վերծանությունը» խորագրով աշխատության հետ, որը լույս է տեսել 1940 թվականին* «Вестник древней истории»*-ի № 2-ում, և գտնում ենք, որ Հրոզնու մատնացույց արած հեթիթերենի համեմատությամբ*[2] *հայկական նշանագրերի նմանությունն ավելի մեծ է։*

*Բերենք ստորև մեր կատարած համեմատությունը՝ առաջին շարքի վրա տալով հնդկական գրությունը, իսկ հետո՝ մեր նշանագրերը։*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| — | *եղբայր* | | — | *ամբարիշտ* | |
| — | *թագուհի* | | — | *աղքատ* | |
| — | *լեռան (նախորդը՝ լեռնաշղթա)* | | — | *նշխար* | |
| — | *ղեկավար* | | — | *եղբայր* | |
| — | *դուռն* | | — | *զոհ* | |
| — | *անսպառ* | | — | *արքայություն* | |
| — | *ճառագայթ* | | — | *տաճար* | |
| — | *ամենակալ* | | — | *Յակոբ* | |
| — | *աղանդ* | | — | *կառք* | |
| — | *ի սկզբան պատկերազմ* | | — | *քաղաք դատաստան*[3] | |

[1] *Զ. Լուկոտկա, Գրի զարգացումը, Երևան, 1955, էջ 80։*

[2] *Հեթիթերենին* [signs] *նմանվող նշանագրերից են համարվում և այլն։*

[3] *Նախահնդկական բոլոր նշանագրերը վերցրել ենք Հրոզնու վերևնշված աշխատության մեջ բերված օրինակներից։*

հանդերձ
խորան
ծառայ
դաւաճան
ջուր
կենդանի
անեղծ
անդաստան
ճշմարիտ
աշուն

պղերգ
աղեղնաւոր
հափշտակել
հանճար
աստղ
հրեշտակ
խոնարհ
անմահ
այսուհետ
ողորմած

Գրության այս կամ այն սիստեմի համեմատությունը մի ուրիշի հետ միշտ էլ կարող է նմանություններ տալ, մանավանդ որ մեր ձեռքի տակ եղած ցանկի հայկական նշանագրերը 180-ից անցնում են, իսկ այդքան մեծ թվով նշանագրերի մեջ միշտ էլ կարելի է նմանվող նշանագրեր գտնել։ Սակայն այստեղ խոսքը իրար նմանվող առանձին նշանագրերի մասին չէ, այլ ողջ սիստեմի. Մոխենջո-Դարոյի գրեթե բոլոր նշանագրերն, աննշան բացառությամբ, գրեթե իրենց երկվորյակներն ունեն Երզնկայի հայկական նշանագրերի ցանկում։ Ինչո՞վ բացատրել այդ։

Մենք հեռու ենք այս նմանությունների հիման վրա հապճեպ եզրակացություններ անելուց՝ գրության մի սիստեմը բխեցնելու մյուսից, սակայն չենք կարող և աչք փակել այս նմանությունների վրա։ Մեր կարծիքով, եթե հայկական նշանագրերը ստեղծված լինեին մի առանձին անհատի կողմից և նրա մտացածին քմահաճույքով, պարզ է, որ այսպիսի նմանություններ երբեք չէին լինի։

Մենք գիտենք, որ հեթանոսական Հայաստանում եղել են



մեհյաններ, որոնք ոչ միայն կրոնական կենտրոններ են հանդիսացել, այլև կուլտուրայի և մատենագրության օջախներ։ Քրիստոնեական հին հայկական մատենագիրները, որոնք ջանք չէին խնայում սևացնելու հեթանոսությունը, չեն ժխտում մեհենական գրականության առկայությունը Հայաստանում։ Առջևում մենք մատնացույց ենք արել պատմահայր Մովսես Խորենացու մի տեղեկությունը, որ վերաբերում է Դարանաղյաց Անիի մեհենական մատենագրությանը։

Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ հայ ժողովուրդը ոչ թե չինական ինչ-որ պարսպով անջատված է եղել արևելյան մյուս ժողովուրդներից, այլ նրանց հետ ապրել է սերտ փոխազդեցության մթնոլորտում։ Վերջին տարիներս Կարմիր բլուրում, Դվինում, Զանգեզուրում և Գառնիում կատարված պեղումների ժամանակ հայտաբերված հնագիտական նյութերը եկան անվիճելիորեն փաստելու հայ ժողովրդի՝ իր հարևանների հետ ունեցած տնտեսական և կուլտուրական գործուն փոխհարաբերությունների առկայությունը. պեղումների ժամանակ տեղական արդյունագործության արտադրանքի կողքին գտնվեցին չինական, հնդկական, պարսկական, եգիպտական և հարևան այլ երկրների զարդարանքներ, ամաններ, դրամներ և այլն։ Այս բոլորից հետո չի՞ կարելի արդյոք մտածել, որ Երզնկայի հայկական գաղափարագրերի մի շարք նշանագրեր, որոնք նմանվում են եգիպտական, հեթիթական և Մոխենջո-Դարոյի նշանագրերին, պատահական չեն։ Եթե մենք ընդունում ենք, որ Երզնկայի խմբի նշանագրերից 180-ը գաղափարագրեր են, իսկ այդ անվիճելի է, եթե մենք գտնում ենք, որ Երզնկայի այդ գաղափարագրերը առանձին անհատի մտացածին ստեղծագործություն չեն, քանի որ նրանց զգալի մասը նմանվում է մեր հարևան ժողովուրդների գործածած հիերոգլիֆներին, ապա մնում է մեզ եզրակացնել, որ Երզնկայի խմբի նշանագրերի մեծ մասը, միջնորդաբար կամ անմիջականորեն, գաղափարագրությունից են։ Անհավանական չէ նաև, որ նրանք հայ հեթանոսական մեհենական գրերն են, որոնք ոչնչացվեցին հայկական մեհյանների հետ և թաղվեցին նրանց փլատակների տակ։

Հարց է առաջանում՝ ի՞նչ կապ կարող է լինել հայկական «Նշանագիր իմաստնոց»-ի և հնդկական գաղափարագրերի միջև։ Դրա պատասխանը մենք գտնում ենք Ջենոբ Գլակի «Պատմության

Տարոնոյ»-ի[1] մեջ։ Այստեղ մանրամասն նկարագրվում է այն լարված պայքարը, որ տեղի է ունենում հեթանոսության և քրիստոնեության միջև։ Զենոբ Գլակի հաղորդած տեղեկությունից երևում է, որ հայ հեթանոսների ղեկավարներից երկու քրմապետներ հնդիկներ են եղել, մեկի անունը Դիմետրե, իսկ մյուսինը՝ Գիսանես, որոնք կազմակերպել են հեթանոսական բանակը և ճակատ առ ճակատ կռվել Տրդատի և Լուսավորչի գլխավորած պետական բանակի դեմ։ Ըստ որում՝ I դարից Հայաստանում հիմնվել էր հնդկական գաղթավայր[2] և, հավանական է, այս գաղութից էին ժառանգաբար ընտրվում Հայաստանի քրմապետները։

Եթե հետագա ուսումնասիրություններն ու հայտնագործությունները գան փաստելու մեր եզրակացության ճշտությունը, այն ժամանակ վերջնականապես լուծվում է հայագիտության մեջ հարյուրամյակներ տևող վեճը՝ նախամեսրոպյան հայ մատենագրության գոյության մասին։

Մենք նորից ուզում ենք նշել, որ վերապահությամբ ենք դնում այս հարցը, քանի որ դեռ ճշտման կարիք ունեն Երզնկայի նշանագրերի աղբյուրը, ժամանակը և այլն, որոնցով մենք այժմ զբաղվում ենք։

Կանգ առնենք այժմ մի հարցի վրա ևս և վերջացնենք։ Գիտական ինչ արժեք ունի հայկական նշանագրությունը մեզ համար։

Հայկական նշանագրերի հետ ծանոթանալը, ամենից առաջ, կարևոր է հայկական ձեռագիր աղբյուրների վերծանության համար։ Տոմարական տեքստերում գրեթե բոլոր համաստեղությունները, աստղերը, երկինքը, երկիրը, աշխարհը և տիեզերական մյուս մարմինները ոչ թե գրվում են, այլ նշանագրվում։ Ալքիմիական տեքստերում գրեթե բոլոր մետաղների և ալքիմիայի մեջ գործածվող մյուս կարևոր նյութերի անունները, ընթերցողների լայն շրջանին անհասկանալի դարձնելու համար, գաղտնագրվում են նշանագրերով։ Եվ, վերջապես, պատահում են ձեռագրական տեքստեր, ուր հայկական ներկա գրության հետ խառը գործ է ածվում նաև նշանագրությունը։ Չենք խոսում այն նշանագրերի մասին,

[1] Յովհան Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 67—155։

[2] Р. А. Абрамян «Из истории армяно—индийских связей» (տես «Պատմա-բանասիրական հանդես» 1958 թ. № 2)։



որոնք մտել են միջնադարյան գրեթե բոլոր ձեռագրերում և լայն քաղաքացիություն ստացել։ Պարզ է, որ հայկական նշանագրերը չճանաչող մասնագետը չի կարող ճիշտ վերծանել ձեռագիր տեքստերում հանդիպող նշանագրերը։

Հայկական նշանագրերն արժեքավոր են նաև հայ ժողովրդի և նրա հարևան ժողովուրդների կուլտուրական փոխհարաբերությունների պատմության համար։ Մենք նկատի ունենք հայկական նշանագրերի որոշ մասի նմանությունը արևելյան գաղափարագիր սիստեմ ունեցող նշանագրերին։

Եթե հետագա ուսումնասիրություններով վերջնականապես ապացուցվի հայկական նշանագրերի հին ծագումը, ապա՝ լուծվում է մեհենական հայ գրության առեղծվածը, ծանրակշիռ նոր փաստ ենք ունենում հայ-հնդկական կուլտուրական վաղեմի կապերի մասին, և հարց է առաջանում վերանայելու Հրոզնու տեսակետը՝ հնդկական նշանագրերը հեթիթերենով վերծանելու հարցում, և փորձեր անել հնդկական նշանագրերը կարդալու հայկական գաղափարագրերով, որոնց իմաստը, բարեբախտաբար, պահել են հայկական ձեռագրերը։

Մենք ստորև տալիս ենք հայկական նշանագրերի լրիվ ցանկը՝ որը կազմելու համար օգտագործել ենք հին ձեռագրերի ինչպես Կիլիկյան, այնպես և Երզնկայի ձեռագիր «Նշանագիր իմաստնոց»-ների բնագրերը։

Մենք այստեղ երկու տարբեր խմբի պատկանող հայկական նշանագրերը բերել ենք խառը ձևով, որովհետև մեր նպատակը չի եղել այստեղ զբաղվել նշանագրերի ծագման կամ նրանց այլ նշանագրերի հարաբերակցության հարցով, այլ, կազմելով հայ նշանագրերի ամբողջական ցուցակը, ցանկացել ենք օգտակար լինել հայկական աղբյուրների վերծանությամբ զբաղվող մասնագետին։

Բոլոր դեպքերում, հայկական նշանագրերը անցյալի հայ մատենագրության արժեքավոր փշրանքներից են և անհերքելի ցուցանիշը հայ լուսամիտ մատենագրերի որոնող, ստեղծագործող մտքի։

## ՆՇԱՆԱԳՐԵՐ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԳՐԵՐ

Աբրահամ
Ազգ
Աթոռ
Ականջ
Ահարոն
Ահաւասիկ
Աղ
Աղանդ
Աղբիւր
Աղեղնաւոր
Աղքատ
Ամառն
Ամբակում
Ամբարիշտ
Ամենակալ
Ամենայն
Այծեղջիւր
Այսուհետև
Այսպէս
Անապական
Անարգ
Անդամ
Անդաստան

Անդունդ
Անեղծ
Անզգամ
Անթառամ
Անթառամ
Անիրաւ
Անճառ
Անմահ
Անպարծ
Անսկիզբն
Անսպառ
Անվախճան
Անտիոք
Անցաւոր
Աշակերտ
Աշխարհ
Աշուն
Աշտարակ
Ապստամբ
Առագաստ
Առաջնորդ
Առաւաւտ
Առաքեալ



Առիւծ
Առողջ
Առու
Ասպարէզ
Աստիճան
Աստղ
Արդար
Արեգակն
Արեւելք
Արեւմուտք
Արծաթասէր
Արճիճ
Արուեստ
Արուսեակ
Արքայութիւն
Աւգնական
Աւետարան
Բազում
Բանական
Բանսարկու
Բարեպաշտ
Բերան
Բիւզանդիոն

Բուրաստան
Բուրգն
Գարուն
Գաւազան
Գերեզման
Գթած
Գինի
Գլուխ
Դաստիարակ
Դատաստան
Դժոխք
Դուռն
Դրախտ
Եկեղեցի
Եղբայր
Եղջիւր
Եպիփան
Երաժիշտ
Երևակ
Երիկամն
Երկաւոր
Երկինք

Երկիր
Երկիւղած
Երկմիտ
Երկպառակ
Երկւորեակ
Թագաւոր
Թարգման
Թէպէտ
Թլպատ
Թռչուն
Ժառանգ
Իշխան
Ի սկզբանէ
Իւրաքանչիւր
Լեառն
Լեզու
Լուսաբեր
Լուսին
Լուսնթագ
Լրումն
Խաչ
Խեցգետին
Խոյն
Խոնարհ
Խոստովան
Խոր
Խորան
Խորհուրդ
Ծանաւթ
Ծառայ
Ծերակոյտ
Կախարդ
Կառք
Կատարած
Կարիճ
Կեղծաւոր
Կենդանի
Կերպարան
Կիպրիանոս
Կշիռ
Կշիռ
Կոյս
Կռապաշտ
Հաղորդ
Համասփիւռ
Համեմատ



Հայրապետ
Հանգիստ
Հանդարտ
Հանդերձ
Հանճար
Հաստատ
Հարուստ
Հաւատ
Հեթանոս
Հեշտասէր
Հեռաւոր
Հերմուն
Հոգի
Հրատ
Հրեշտակ
Ձիթենի
Ձմեռ
Ձուկն
Ղամբար
Ճակատ
Ճանապարհ
Ճշմարիտ
Մանանէ
Մատանի
Մարգարէ
Մարդ
Մարդասէր
Մարտիրոս
Մելքիսեդեկ
Մեղաւոր
Մեղր
Մեռեալ
Միջնորդ
Յակոբ
Յանդուգն
Յաջող
Յառաջագոյն
Յարմար
Յաւիտեան
Յափշտակել
Յիշատակ
Յոնք
Յունան
Նահատակ
Նշանագիր իմաստնոց
Նշխար

Նույնպես
Շուշան
Ոխ
Ոխակալ
Ողորմա
Ոսկի
Որոգայթ
Որպես
Պայծառ
Պանդուխտ
Պատգամ
Պատմուճան
Պատուական
Պատրաստ
Պարկեշտ
Պարունակ
Պղերգ
Պոռնիկ
Պտուղ
Ջրհոս
Սահակ
Սահման
Սամուէլ

Սանդուղք
Սատանայ
Սարկաւագ
Սեղան
Սերովբէ
Սէր
Սիրտ
Սկիզբն
Սնդիկ
Սողոմոն
Սոյնպէս
Սպասաւոր
Վախճան
Վարագոյր
Վարդապետ
Վերակացու
Վերին Երու-սաղէմ
Վիշապ
Տաճար
Տապանակ
Տես
Տնանկ
Տրտունջ



Ցանկ
Ցնծայ
Ցուլն
Փայլածու
Փայլակն
Փառաւէր
Փարաւոն

Փարթամ
Փիլիսոփայ
Փոխանակ
Քահանայ
Քաղաք
Քարոզ
Քերովբէ



ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ



## ԿԵՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՌՈԳԱՆՈՒԹՅԱՆ ՆՇԱՆՆԵՐԸ

Կետադրությունը, տառաձևերի նման, ժամանակի ընթացքում շատ է փոփոխվել։ Նա այնքան փոփոխական է եղել, որ կարելի է ասել, թե յուրաքանչյուր դարաշրջան ունեցել է իր կետադրությունը՝ իր ուրույն կարգով և գործածության կանոններով։ Համենայն դեպս, հին հայկական կետադրությունը նմանության ավելի քիչ եզրեր ունի ներկայիս գործածական կետադրության հետ, քան թե հին հայկական տառերը՝ ներկայիս տառերին։

Կետադրության գործածության սկզբունքը և նրա տեսակները հաշվի առնելով, կարելի է այն խմբավորել ժամանակագրական երեք շրջանների մեջ՝ 1) հնագույն շրջան (մինչև X դար), 2) XI դարից մինչև XVIII դար և 3) XVIII դարից հետո։

Հայկական հին շրջանի կետադրության մասին մեր ունեցած տեղեկությունները շատ է կցկտուր, որովհետև վիմագիր արձանագրությունների փոքրիկ տեքստերում, քարի վրա, հնարավոր չի եղել կետադրության և առոգանության նշաններ փորագրել, իսկ մեզ հասած գրչագրերը, գլխավորապես, կանոնական տեքստեր են և դուրս չեն գալիս սահմանված պաշտոնական շրջանակից։

Հին հայկական կետադրության մասին ուշագրավ տեղեկություններ մենք գտնում ենք միայն հին հայ քերականների մոտ՝ Դավիթ Անհաղթի, Ստեփանոս Սյունեցու, Համամ Արևելցու և մյուսների։ Մեզ ծանոթ կետերից հայ քերականները հիշել են երեքը՝ ստորա-



կետը, միջակետը և վերջակետը, իսկ առոգանության նշաններից տասը՝ շեշտը, բութը, պարույկը, երկարը, սուղը, թավը, սոսկը, ապաթարցը, ենթամիան և ստորատը։

Հայ քերականներն ընդհանրապես մեծ նշանակություն են տալիս կետադրությանը՝ համարելով այն գրավոր խոսքի իմաստավորման գլխավոր որոշիչը, խոսքի զարդը։ Դավիթ Անհաղթն իր «Քերականության մեկնության» մեջ գրում է. «Պարբերության տրոհումը, այսինքն՝ անջատումը և զատումը—իմաստ է տալիս խոսքին, իսկ սխալ տրոհողը նման է անշնորհք՚այն խոհարարին, որը չգիտե միսը ճիշտ կտրատել մասերի, մի միտք չի բաժանում մյուսից, մի խոսք չի զատում մյուսից, ուստի և պարբերության իմաստն անորոշ է մնում, լսողի համար հասկանալի չի դառնում, և ինքը դրսևորում է իր անվարժությունը»[1]։

Հակառակ հայ քերականների կետադրության մասին ունեցած այս պարզ ցուցումին և տարբեր կետերի մասին եղած հիշատակություններին, մինչև X դարը մեզ հասած վիմագիր արձանագրությունների և ձեռագրերի մեջ գործ է ածվել միայն մի նշան—միջակետը. հնագույն տեքստերում այլ կետեր մեզ չեն հանդիպում։ Ինչո՞վ բացատրել այդ։ Հավանական է, որ հայ քերականների մատնացույց արած կետադրական և առոգանության բոլոր նշանները գործ են ածվել, բայց գործ են ածվել ավելի պատմագիտական գրականության մեջ։ Համենայն դեպս, 971 թվականի նշանավոր թղթի ձեռագիրն ունի բոլոր կետադրական նշանները։

Միջակետն ունեցել է երկարող քառանկյունի ձև և դրվել է ոչ թե տողի վրա, այլ քիչ վերև, ներկայիս վերջակետի վերին կետի տեղը։ Որոշ տեքստերում նա ունի երկարող բարակ պոչիկ։ Բոլոր հին տեքստերում միջակետը փոխարինել է նաև ստորակետին և վերջակետին։ Բերենք հնում գործածվող մի նախադասություն.

**Ովիծովսերմանէ·գձկունսկերակրէ·**

վերծանվում է. «Ով ի ծով սերմանէ, գձկունս կերակրէ»։

Տվյալ նախադասության մեջ առաջին միջակետը դրվում է ստորակետի տեղ, իսկ երկրորդը՝ վերջակետի։

---

[1] Н. Адонц, Дионисий Фракийский и армянские толкователи СПБ, 1915, էջ 88։

X դարից սկսում են երևալ հայկական մյուս կետերը ևս՝ վերջակետը, ստորակետը, իսկ XI—XII դարերում նրանք լայն գործածության մեջ են դրվում:

Նշաններից հին հայկական գրությունների մեջ գործ է ածվել մեջբերումների նշանը, որ ունենում է հունական սիգմայի ձև՝ ς և դրվում է մեջբերված տեքստի բոլոր տողերի առջևում—քանի տող որ մեջ է բերվում, այնքան էլ նշաններ են լինում նրանց առջևում: Բերենք մեկ օրինակ.

Եւ կրկնեալ անդրէն ասեն պատգամաւորք
ς թշնամւոյն թէ՝ Արա զայդ և ապրեսցես դու
ς և տուն քո և ամենայն մնացորդք երկրի քո.
ς ապա թէ ոչ՝ հրամայեցաւ յինէն ունել ածել
ς զքեզ առ իս ակամայ կամաւք (Կաղանկատվացի):

Հնագույն տեքստերում գործ է ածվում նաև պատվի նշանը որը փոքր-ինչ տարբերվում է ներկայումս գործածվող պատվի նշանից: Նա, ինչպես ասել ենք հապավման գլխում, դրվում է միայն տերունական յոթ բառերի վրա՝ ՏՐ, ՍԲ, ԻԼՂ, ԵՂՄ, ՅՍ, ՔՍ, ԱԾ: Դրությունը հիմնովին փոխվում է XI դարից, երբ տեքստերում սկսում են գործածել մեզ ծանոթ բոլոր կետերը և առոգանության նշանները: Այժմ խնդիր է առաջանում ոչ միայն ճիշտ սահմանագծել խոսքի առանձին մասերը, այլև հանգով առոգանել նրանք: Սահմանվում է կետերի և առոգանության նշանների հաստատուն մի կարգ, որը շատ շուտ քաղաքացիություն է ստանում:

Ուշադրության արժանի է այն, որ XII—XIV դարերի հայ գրիչները ոչ միայն իրենց ընթացիկ աշխատությունների մեջ առաջնորդվում են կետադրության այս նոր սկզբունքով, այլև սկսում են ուղղել իրենց ընդօրինակած հին ձեռագրերի կետադրությունը:

Մեկ-մեկ պատահում է, որ հին ձեռագրերի կետադրությունն ուղղող գրիչները, քննասեր ընթերցողի հանդիմանությանը չարժանանալու համար, անհրաժեշտ են համարում կատարած փոփոխությունների մասին հիշել իրենց հիշատակարաններում և ընթերցողի ներողամտությունը խնդրել «անմեղադիր լերուք» բառերով:

Հակոբ գրիչը 1311 թվականին, ընդօրինակելով Հովհան Մանդակունուն վերագրվող ճառերը պարունակող մի հին ձեռագիր, իր հիշատակարանում գանգատվում է, որ նախագաղափար ձեռագրի տեքստը «խառնափնդոր շփոթեալ էր», որովհետև չուներ «ուարտակէտ կամ ստորակէտ կամ միջակէտ», չէին գործածված առոգանության նշանները, ուստի և «անհրաժեշտ և անյարմար էր»: Եվ ահա նա շտկում է նախագաղափար օրինակի ընդօրինակությունը և վերացնում «թերութիւններ»-ը[1]:



Հակոբ Կրակցի գրիչը խնդրում է հիշել իրեն, որովհետև ինքը մեծ ջանք է թափել ուղղելու Փիլոն Եբրայեցու աշխատության հայերեն բնագրի կետերը, ստորակետերը, շեշտերը, բութերը և առոգանության նշանները[2]:

Այսպիսով, գրիչները կետադրության հին կարգը փոխում են իրենց ժամանակ քաղաքացիություն ունեցող նոր կարգով, «արդիականացնում» են այն:

Մեզ ծանոթ երեք կետերը՝ ստորակետը, միջակետը և վերջակետը գործ են ածվում ճիշտ այն նշանակությամբ, ինչ գործ ենք ածում ներկայումս[3]:

Կետերի նշանակության և նրանց գործածման եղանակի վրա կանգ են առել XII—XVII դարերի բոլոր հայ քերականները: Դավիթ Ջեյթունցին իր «Մեկնութիւն քերականութեան» աշխատության մեջ, խոսելով երեք կետերի մասին, հետևյալ պատկերավոր օրինակն է բերում. «Օրինակ վերցնենք լեռը, ուր բարձրանալ է կամենում մեկը. երբ ճանապարհորդը հասնում է լերան ստորոտը, մի անգամ փոքր-ինչ հանգստանում է: Շարունակելով իր ճանապարհը դեպի վեր, նա լերան կիսում կրկին անգամ հանգստանում է: Այնուհետև շարունակում և բարձրանում է լերան գագաթը»: Դավիթ Ջեյթունցին առաջին հանգիստը համեմատում է նախադասության մեջ գործածվող ստորակետի հետ, զառիվեր լեռը բարձրանալիս, ճանապարհի կիսում կանգ առնելը՝ միջակետի, և լեռան գագաթը հասնելը, որը նրա ճանապարհորդության նպատակակետն է՝ վերջակետի, կամ, ինչպես ինքն է ասում՝ «կէտ աւարտեալ»-ի[4]:

Հայ քերականները, հիմնականում, ուղեցույց են ընդունում կետերի մասին Դիոնիսիոս Թրակացու տված հետևյալ ցուցումը. «Կէտ է (խոսքը վերջակետի մասին է—Ա. Ա.) տրամախոհութեան

[1] ՀՊՄ ձեռ. № 5077, թ. 288ա:

[2] ՀՊՄ ձեռ. № 2057, թ. 180բ:

[3] Հայկական կետադրության մասին ուշագրավ աշխատություն է Ա. Մ. Մխիթարյանի «Пунктуация армянского языка и обучение ей в средней школе» ավտոռեֆերատը և նույն հեղինակի «Առոգանություն» վերնագրով հոդվածը, որը հրատարակվել է «Էջմիածին» ամսագրի 1958 թ. №9-ի մեջ (էջ 54—61):

[4] ՀՊՄ ձեռ. № 2330, թ. 110բ:

յանգեցելոյ նշան», այսինքն՝ մտքի ավարտման նշան, «և միջակ՝ նշան յոգի սակս ընդունելոյ», այսինքն՝ նշան հանգստի՝ որպես օժանդակ կետ և «ստորակէտ է տրամախոհութեան չև ևս յանգեցելոյ. այլ ևս կարաւտացելոյ նշան»[1], այսինքն՝ մի նշան, որի գործածությամբ միտքը դեռ չի ավարտվում և կարիք ունի ավարտվելու:

Այդ նույն միտքը Գևորգ Սկևռացին իր գրչության խրատի մեջ ձևակերպել է ավելի հակիրճ՝ «Արդ՝ ստորակէտ, որ է ըստ կարգի առաջին, որպէս նախերգան է, և միջակն՝ պատճառ և ուարմեալն՝ վճիռ»[2]:

XV դարի գրիչներից մեկը, խոսելով ընդօրինակած ձեռագրի մեջ իր կատարած կետադրական փոփոխությունների մասին, որը կատարել է նա «սխալաշատ բնագրի» համեմատությամբ, հիշում է վերև բերված երեք կետերը փոքր-ինչ այլ անուններով՝ ստորակետը—«կիսակէտ», միջակետը—«միջնակէտ» և վերջակետը—«յետին կէտ»[3]:

Ուշ դարերում, պարբերությունների վերջում վերջակետի համար սովորական երկու կետից բացի, գործ են ածվում հետևյալ ձևի նշաններ ևս.

:— := ∵ ∴ :\\ :\\\ :\\\\

XI դարից սկսած միջակետը կորցնում է նախկին իր քառակուսի ձևը, վերից իջնում, նստում է տողի վրա: Ստորակետը աննշան փոփոխությամբ պահել է իր նախկին ձևը մինչև այսօր:

Այս երեք կետերի գործածության սկզբունքը պարզ է, և ավելորդ ենք համարում օրինակներ բերել:

Հայկական ձեռագրերի մեջ միջին դարերում հայկական տեքստերը, հունականի նման, շեշտադրվել են երկար, կարճ կամ բութ նշաններով՝ ընթերցանությունը ճիշտ հանգով կատարելու համար: Հնում սովորություն է եղել ոչ միայն խոսքը կետադրության բաժանման ընդհատումներով կարդալ, այլև հանգերով, երաժշտական յուրահատուկ արտասանությամբ կարդալ: XV—XVI դարե-

1 Н. Адонц, Дионисий Фракийский и арм. толкователи, էջ 3:
2 ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 149ա:
3 ՀՊՄ ձեռ. № 6484, թ. 530ա:



րում այդ սովորությունն սկսում է կամաց-կամաց մոռացվել, և բառերը կորցնում են առոգանության նշանները:

Կանգ առնենք առոգանության այդ նշաններից մի քանիսի վրա:

Շեշտը (′)—համապատասխանում է հունական acutus-ին և դրվում է բառավերջի երեք վանկերից մեկն ու մեկի վրա՝ ավելի սուր և բարակ հնչելու համար: «Զի թէ ուժով վերացուցանել կամիս զձայնն, նա զշեշտն ի դէպ է դնել»,—գրում է Վարդան Արևելցին՝ Հեթում թագավորի համար գրած իր քերականության մեջ[1]: Շեշտը, սովորաբար, դրվում է՝ ա, ե, ի, ո ձայնավոր տառերի վրա: Ըստ որում, շեշտը, ըստ դրված վանկի հաջորդականության, ունի հետևյալ երեք անունները՝ «շեշտոլոր» (oxytonon) (երբ դրվում է վերջին վանկի վրա), «յարաշեշտ» (paroxytonon) (երբ դրվում է նախավերջին վանկի վրա) և «նախաշեշտոլոր» (proparoxytonon) (երբ դրվում է երրորդ վանկի վրա վերջից):

Բութը (`)—համապատասխանում է հունական gravis-ին և դրվում է բառի վրա այն դեպքում, երբ բառը բութ է հնչում: «Բութն է վարիա, որ է ծանր, որպէս ոք որ ծանր բեռն յուսն ունի, կորացեալ գնայ»,—կարդում ենք Թրակացու քերականության մեջ: Հովհաննես Երզնկացին բութի գործածության մասին գրում է. «Որպէս շեշտն վեր հանելով սրէ [զձայնն], նոյնպէս և բութն ի խոնարհ իջուցանելով՝ հարթէ»[2]:

Գևորգ Սկևռացին, ավելի մանրամասնելով բութի գործածության դեպքերը, գրում է. «...բութք... այսինքն կարճ կամ ծանր, զի վասն նեղելոյ շրթանցն ի փողելն, ձայնք սոցա նեղք և տկարք լինին, վասն որոյ և բութք ասին, այսինքն գուլ, ընդդէմ շեշտիցն, որ և սուր»[3]:

Բութը դրվում է ը-ի, ռ-ի և ւ-ի վրա:

Պարույկը (°)—համապատասխանում է հունական circumflexus-ին և դրվում է վանկը երկարացնելու համար: Նա կոչվում է նաև շուրջառ:

Պարույկը համարվում է շեշտի և բութի խառնուրդը: «...և յերկոցունց ծայրիցն՝ ի շեշտէ և բթէ բաղկանայ պարոյկն,—գրում է Վարդան Արևելցին,—որպէս ի սևոյ և ի սպիտակէ՝ գոյն»[4]:

1 ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 11բ:
2 ՀՊՄ ձեռ. № 2326, թ. 28բ:
3 ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 144բ:
4 Նույն տեղը:

Պարույկը գրվում է ե-ի, ով-ի և երկբարբառների՝ աւ-ի, եւ-ի, ու-ի, այ-ի և ոյ-ի վրա։

Պարույկի այս նշանը ուշ միջնադարում գործ է ածվում հարցականի համար, սակայն հնում նա բոլորովին այլ նպատակով է գործածվել և ոչ մի կապ չի ունեցել հարցականի հետ։

Պարույկը գրվում է բառի վերջին երկու վանկի վրա միայն. վերջին վանկի վրա գրվելիս նա կոչվում է «պարոյկ», իսկ նախավերջին վանկի վրա գրվելիս՝ «յարապարոյկ»:

Թավը (˅)—ուշ շրջանում ունենում է նաև ∠ և ^ ձևերը։ Թավը տարբեր ժամանակներում տարբեր նշանակությամբ է գործածվել։ Հնագույն շրջանում նա գրվել է ձայնավորի վրա՝ նրա հնչեղությունն ավելի թանձրացնելու, հաստացնելու նպատակով. «Թաւն [գրուի] ի վերայ ձայնաւոր գրոց թաւացելոյ»,—գրում է Թրակացին իր քերականության մեջ (Адонц, Дион. фрак. էջ 41)։

XII—XIII դարերում «թաւ»-ի դերը փոխվում է. նա այժմ գրվում է ոչ թե ձայնավորի, այլ բաղաձայն տառերի վրա՝ նրանց հնչեղությունը դարձյալ հաստացնելու, թավացնելու նպատակով։ Թ-ի վրա նա գրվում է տ չկարդալու համար, փ-ի վրա՝ պ չկարդալու համար, ք-ի վրա՝ կ չկարդալու համար և այլն (օրինակները տես սոսկ-ի բաժնում)։

Ավելի ուշ դարերում թավը գրվում է աւ-ի վրա իր իսկական նշանակությամբ՝ աւ և ոչ թե օ կարդալու համար. «Անիրաւն իբրև արժանի արդարացաւ, և իրաւն իբրև անօրէն առեցաւ» (Կլիմ.). «Ախտ ամբարտաւանութեան միշտ զանձն արդար համարի» (Լամբրոնացի). «Առաւելս ինչ յաւելուլ և վատատկել» (Փարպեցի). «Ոմն մարդ՝ մի և նոյն ելով, է՛ զի սպիտակ և է՛ զի սեաւ լինի» (Արիստոտել). «Հաւ ձայնաւոր» (Վանական). «Իբրև զարծուի յերամ կաքաւուց խոյանայր» (Խորենացի) և այլն։

Թավը գրվում է իւ-ի վրա՝ իվ և ոչ յու կարդալու համար. «Իւ իւիք առաւել՝ քան զայն» (Եզնիկ). «Որք ոչ զպատիւն յինքեանս ձգէին, այլ պատիւն զհետ նոցա ընթացաւ» (Խորենացի). «Թիւ համարոյ ես անէր» (Եղիշե). «Ի յիշատակաց դիւանագիր մատենիցն յունաց». «Բանիւ և գործով» (Ագաթանգեղոս) և այլն։



Սուղը (°)—կոչվում է նաև կարճ։ Գործ է ածվել XII դարից, թեպետև հիշված է Թրակացու քերականության մեջ։ Դրվում է մեծ մասամբ կարճ ձայնավորով վանկերի վրա՝ ե, ո, ւ և ա-ի վրա, երբ կարճ են։ Սուղի նպատակը վանկը կարճացնելն է։ Օրինակ՝ ով որ ասեմք, որպէս որ ասես, թեպետ ելանէ, որպէս յոյնք, ուրանաւր, ապա թէ ոչ, յորժամ զայդ[1] և այլն։

Ուշ դարերում սուղը դրվում է ու-ի վրա՝ այն վ հնչելու նկատառումով։ Զատոն թիւն պատուեն թուական արուեստաւորք» (Տոնական). «Աշխարհս ի յաւդուածոց և ի պէսպէս բնութեանց և ի խառնուածոց հաստատեալ է» (Վեցօրեակ). «Համարիմ զպատուաւղս կոյսդ՝ թշուառագոյն քան զպատուեալսն» (Փիլոն). «Ոչ ըստ թուոյ յառաջ քան ածէ զնուագն» (Նյուսացի) և այլն։

XVII—XVIII դարերում պատահում են ով-ով վերջացող բառեր, որոնք գրվում են ու և վերջինիս վրա սուղ են դնում ով կարդալու համար. օրինակ՝ մերու (պիտի վերծանել մերով), ձերու (ձերով), լալու (լալով) և այլն։

Սուղը դրվում է նաև տողադարձի ժամանակ, երբ վանկատման ժամանակ հնչվող բայց չգրվող ը-ն անհրաժեշտ է լինում գրել։ Օրինակ՝ բը-նու-թիւն, գը-րու-թիւն, նը-մա-նու-թիւն, բօ-բա-փե-լըն, են-թա-մը-նայ և այլն։

Ենթամնա (‿)—Ենթամնան հայկական մատենագրության մեջ գործածվել է սկսած XII դարից և շարունակվում է հետագա երկու-երեք դարերում և ապա մոռացության տրվում։ Նա դրվում է բարդ բառերի տակից, երկու բառերը միացնելու տեղում, այդ պատճառով կոչվում է նաև նեբաադրական։ «Է և ենթամնայդ նշան ներքոյ եղեալ գրոյն,—կարդում ենք քերականություններից մեկի մեջ,—և պիտոյ է յայն տեղիսն, ուր յերկու ստարտեցելոց բառից կապի մի բառ»[1]։

Օրինակներ շատ կարելի է բերել. օրենուսոյց, տիրասպան, պատմագիր, կատակերգակ, երկանուն, ձեռնարկել, ենթամնայ, աւրագիտ, կառավարել, երաչափք, քահանայապետ, մակդիր, համանուն, տարբերութիւն, ներկուռ և այլն։

1 ՀՊՄ ձեռ. № 2271, թ. 146ա-բ։

Ավելի ուշ դարերում ենթամնան սկսում են գործածել նաև տողադարձի համար և դրվում է տողադարձի բառի վերջացող վանկի տակից՝ ժա-մա-նակ, գա-ւա-ռա-պետ, գո-ղա-փար և այլն։ Ըստ որում, տողադարձի ենթամնայի նշանը ավելի փոքր է գրվում քան մյուս ենթամնան։

Սոսկը կոչվում է նաև ողորկ կամ լեաշկ։ Հիշված է Թրակացու քերականության և նրա հայ մեկնիչների մոտ։ Սկսում է գործածվել XII դարից։ Դրվում է տառի վրա նուրբ, բարակ հնչելու համար, հակառակ թավի։ Հնում այդ նշանը դրվել է ձայնավորների վրա, իսկ ԺԲ—ԺԳ դարերում դրվել է բաղաձայնի վրա։ Գևորգ Սկևռացին, սոսկը հակադրելով թավին, գրում է. «Եւ հագագն առոգանութիւն սեռ գոլով, բաժանի 'ի թաւ և 'ի սոսկ։ Եւ պիտոյ են սոքա ոչ ի ձայնաւորսն, այլ՜ յանձայնսն։ Եւ զի 'ի բաղաձայնս որ են անձայնք, են որ խոշորք և թաւք են, որպէս՝ թ̆ն, փ̆իւր, ք̆է, և են, որ լերկ են, որպէս՝ պ̂, կ̂, տ̂»[1]։ Եվ նա զգուշացնում է գրչության արվեստի մարդկանց, որ չլինի թե միկը շփոթի և «արասցէ զքարն կար»։

Ապաթարցը (') կոչվել է նաև Ներսահատ։ Ըստ Թրակացու քերականության, հայ մեկնիչների՝ այդ նշանը հնում գործ է ածվել այն դեպքում, երբ բառի բարդման ժամանակ երկու միահնչուն տառեր կողք-կողքի են գալիս և բառի բարեհնչման համար միահնչուն տառերից մեկը սղվում է, և նրա տեղը դրվում ապաթարց։ Օրինակ՝ Երկ'երիւր (կրճատված է ն-ն), վերա'ճառել (կրճատված է յ), վեր'բերող (կրճատված է ա-ն) և այլն։

Ավելի ուշ շրջանում ապաթարցը գործ է ածվում բառանջատման նպատակով։ Այսպես, ի շաղկապից առաջ ապաթարց է դրվում նախորդ բառից անջատելու համար՝ 'ի նոսա, 'ի նմա, 'ի մէնջ և այլն։ Օժանդակ է-ից առաջ ապաթարց է դրվում նախորդ բառից դարձյալ բաժանելու համար՝ երկար' է (երկար է, և ոչ թե երկարէ իմաստով), պատճառ' է (պատճառ է, և ոչ թե պատճառէ իմաստով), և' է (և ոչ եւէ) և այլն։

Հնում, ինչպես ասել ենք, օ-ի փոխարեն գրվել է աւ։ Սակայն կան բառեր, որոնց մեջ աւ-ն ունի հենց իր բուն նշանակությունը՝ ավ։ Այս երկուսը իրարից տարբերելու համար եթե առաջինի վրա սկսվել է թավ դրվել, ապա երկրորդի համար գործ է ածվում պառկեցրած ութի նման մի նշան՝ ∞, որն իր ձևը

[1] ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 147ա։



վերցրել է, անկասկած, հունական օմեգայից՝ ω։ Օրինակ՝ աւր, աղաւտ, աւգուտ, աւդ, համառաւտ, Պաւղոս, մաւտ, խաւսող, զհաւն, առաւաւտ, աւրինակ և այլն։ Սակայն այս նշանը երկար կյանք չի ունենում հայ մատենագրության մեջ, նրա փոխարեն մտնում է կլոր օ-ն և սրան դուրս մղում ասպարեզից։

Երևում է, որ միջին դարերում կլոր օ-ի համար աւ-ի վրա դրված նշանը շփոթվել է սուղի նշանի հետ, և այդ առթիվ Գևորգ Սկևռացին զգուշացնում է. «Արդ՝ սխալ են ուք զնշանս զայս ի յօի նշանակութեան տեղի դնեն ի վերայ, ուր այբ և ւիւն լինի օւ, որպէս յաւրհնելդ կամ ի զգաւնդ»[1]։

Բացի վերև բերված նշաններից, սկսած XII դարից, Արիստակես գրիչը հայ գրչության մեջ մտցնում է երեք նշան ևս։ Այդ նշանների և նրանց գործածության մասին նա իր «Վերծանութիւն» աշխատության մեջ գրում է հետևյալը. «Գիտասցէ՛ և զայս եղբայրութիւնդ քո, զի երի՛ս նշանախեցիւ զսա ամրապնդեալ եմ։ Մի՛ նշանն որպէս ծակուկ է, սրածայր, յայն տեղիսն դրոշմած է, որ ցուցանէ թէ չի՛ք այլ գիր յայս տեղիս պիտոյ։ Թե վասն լիոյ ինչ կարծիք ընկնի քեզ և կամ յայլ տեղի՝ այլ ինչ գոյ։ Եւ միւս նշանն որպէս տզրկիկ է յայն տեղիսն դրոշմած է, որ ցուցանէ թէ յայս տեղիս այս է սուտգիւ գիրն, թէ յի՛ հանդիպի, և թէ այլ գիր։ Եւ միւս նշանն որպէս փշիկ է՝ և է 'ի վերայ այնց գրեց՝ որոյ զլուխն որպէս ղատի 'է, և չէ՛ ղաա, և ոչ լիւն, որ ի համարողականսն զերեսներորդ թիւն ունի, այդ ղ̆ի'ւն է սա, որ ի ղ̆ատրնացի անունս, և յեղ̆ի եղ̆իս, և ի ղ̆ամա, և յաղ̆եղ̆ուի այս, և ի Նաթանեղ̆ս, և յի̆եղ̆ս, և որ այլ ի սոցին նմանս ուղղակի և նուրբ բերէ, զի որք որպէս զղատ զնա խաւսեցնեն, այն աւեր է և շաղփաղփ։ Եւ որք որպէս զլիւն խաւսեցնեն, այն թանձր է և անյարմար։ Իսկ այս ղ̆իւն 'է սրուկ և նուրբ, քան զլիւնն, որպէս զաւրինակդ ցուցի, և ոչ ղատին պէս, որ բնաւին անկերպ 'է և անհեթեթ»[2]։

Արիստակես գրչի վերջին փշիկ նշանը հայ մատենագրության մեջ կոչվել է վանկ (ˇ)։ Ղ-ի վրա դրվող այդ նշանը, որի նպատակը հնչյունական նրբություն տալն է, մի քանի դար շարունակ

[1] ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 146ա։
[2] ՀՊՄ ձեռ. № 2371, թ. 88բ—89ա։

քաղաքացիություն է ունեցել հայ գրչության արվեստի մեջ։ Նման բառերից կարելի է մատնացույց անել՝ այդ̌, փիղ̌խոփայ, ծուղ̌անալ։

Փշիկ կամ վանկ նշանը XII—XIII դարերում գործ է ածվել նաև շեշտադրության նպատակով։ Օրինակ՝ «ո՜չ ոք ել յերկինս», «յո՜յն տեղիսն դրոշմ°ուած է», «պա՜րտ է երթալ» և այլն։

Գծանշանները անհամեմատ շատ են տաղարաններում, գանձարաններում և շարակնոցներում, մանավանդ՝ խազագրքերում։ Այդ տեքստերում տասնյակ նոր գծանշանների կարելի է հանդիպել։ Այդ նշաններից յուրաքանչյուրն ունեցել է իր անունը։ Ժամանակին առանձին հեղինակներ կազմել են այդ գծանշանների ցանկերը, որոնցից մի նմուշ բերում ենք ստորև։

Ցա՛րաշեշտ — Բաշ — Ստորադիր — Վանկ — Կառ — Զրեհիկ — Խաղ — Դող — Խածբեկ — Խածլէ — Կորճա — Բեր — Բազմեղանակ — Ողոմոմանակ

Հարուկ — Զայնդարձ — Հանգույց — Խունջ — Բմազարդ — Առանձնատրոպ — Բմատրոպ — Ծանրատրոպ — Թագաւորատ

Ընդամենը 23 խազ է, բայց նրանցից կարևորներն են համարվում հետևյալ յոթը՝ իսկ մյուսները սրանց խառնուրդն են համարում՝ նմանեցնելով անուշահոտ համեմունքների հետ՝ դրված համադամ կերակուրների վրա։

(ՀԳՄ ձեռ. № 2068, թ. 356ր՝ 15-րդ դարի գրչությամբ։ Հմմ ՀԳՄ ձեռ. № 605, թ. 47ր՝ 1701 թվականի գրչությամբ)։



Մյուս նշաններից անհրաժեշտ է նշել երկու նշան ևս — տողադարձի և սխալագրության։

Տողադարձի նշանը սկսել է գործածվել XI դարից։ Նա, ինչպես երևում է մի հիշատակարանից, կոչվել է «դարձագիր»։

Ինչ վերաբերում է սխալագրին, ապա նրան կարելի է հանդիպել XI դարից հետո գրված բոլոր ձեռագրերում։

Ձեռագիր գրողները սովորություն չունեին երբեք-սխալ գրված բառի վրա գիծ քաշել, ջնջել, կեղտոտել, այլ սխալ գրված բառի մոտ դնում էին պայմանական մի նշան և լուսանցքում, այդ պայմանական նշանը կրկնելով, գրում էին ճիշտը։ Սխալագրության այդ նշանները շատ են, նրանցից որպես նմուշ մատնացույց կանենք միայն չորսը.

XI—XVIII դարերի գրչագրերում բավականին փոխվում է նաև չակերտի ձևը. նախկին լատինական s տառի փոխարեն այժմ դնում են «չ» տառի վերին գլխիկը ՙ ձևով։

Մենք չենք ուզում խոսել ավելի նոր շրջանի կետադրության մասին, որովհետև գրչագրերում և հնատիպ գրականության մեջ հեղինակներից ամեն մեկն առաջնորդվում է իր նախասիրած կետադրությամբ։ Իրավացի է հանգուցյալ ակադ. Ս. Մալխասյանցի հետևյալ նկատողությունը հայկական նոր շրջանի կետադրության մասին. «Հին ձեռագրերում կետադրությունը շատ անկանոն է։ Նոցանից եղած տպագրությունների մեջ հրատարակողները կետադրությունն արել են ամեն մեկն յուր հասկացողությամբ, հետևելով որևէ եվրոպական լեզվի»[1]։

---

1 Ս. Մալխասյանց, Գրաբարի համաձայնությունը, Թիֆլիս, 1892, էջ 157։



ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ



## ՀԱՅԿԱԿԱՆ ԾԱԾԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*ածկագրությունը հին պատմություն ունի։ Ինչպես բոլոր ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի մատենագրության մեջ հաճախ են պատահում ծածկագրեր, որոնք գործ են ածվել քաղաքական, ռազմական, բժշկական, ալքիմիական և այլ գաղտնի տեղեկություններ ծածկագրելու նպատակով։ Այդ ծածկագրերի շարքում պատկառելի թիվ են կազմում գրչախաղ-ծածկագրերը, որոնք կազմված են անմեղ նպատակով։ Ձեռագրի վրա տարիներ շարունակ տքնող մեղվաջան գրիչը երբեմն ընդմիջում է իր հոգնատանջ աշխատանքը և գրչախաղեր անում—ծածկագրում է ձեռագրի գրչության թվականը, գրչության վայրը, իր անունը, պատվիրատվի անունը և այլն։*

*Գրիչներն իրենց անունները ծածկագրելիս նպատակ ունեն թույլ չտալ, որ տգետ գրիչները ջնջեն իրենց ծածկագրված անունները հիշատակարանից. նրանք ցանկանում են, որ իրենց անունները հայտնի լինեն միայն գիտուն մարդկանց, որոնց կատարելապես վստահում են և համոզված են, որ վերջիններս չեն ջնջի գրչի մշակների անունները և չեն յուրացնի նրանց «ողորմիս»-ը։*

*Ծածկագիր տեքստերը պատմա-աղբյուրագիտական տեսակետից, խոշոր արժեք ունեն։ Երբեմն ծածկագրված են լինում այնպիսի*



*բնագրեր, որոնք մեզ համար շատ ավելի արժեք ունեն, քան սովորական պարզունակ գրությունները։ Այդ նկատառումով է, անշուշտ, որ հնագրության բոլոր լավագույն դասընթացներում հատուկ գլուխ է հատկացվում ծածկագրությանը, որը միջազգային տերմինով կոչվում է* կրիպտոգրաֆիա։ (Կրիպտոգրաֆիա *բառը հունարեն է—կազմված է* κρυπτο΄ς՝ *գաղտնի, և* γραφή՝ *գրություն բառերից)։*

*Ծածկագրությունը հին հայ մատենագրության մեջ կոչվել է տարբեր անուններով՝* «փակագրութիւն», «գրափակութիւն», «գրչափակութիւն», «ծածկագրութիւն» *և այլն։*

*Ուշադրության արժանի է այն, որ ծածկագրող անձինք, իրենց ծածկագրության սկզբում կամ վերջում, թողել են ընթերցողի ուշադրությունը գրավող հետաքրքրաշարժ էպիգրամներ.* «Այս է փակագիր, իմաստունն իմանայ և անիմաստն զարմանայ»[1], «Ո՛վ եղբայր, զայս փակագիրս դու կարդա, թէ ոչ՝ փքիտ տուր *(այսինքն՝ փուքդ փչիր։—Ա. Ա.)* և ճազայ»[2], «Թէ դպիր ես՝ ընթերցիր, թէ ագէտ՝ յիմարացիր»[3], «Ով որ գիտենա(յ)՝ [նա] կկարդա(յ), ով չգիտենա(յ), նա լակորտա(յ) *(այսինքն՝ նա կլակվի, կպապանձվի։—Ա. Ա.)*»[4] *և այլն։ Ձեռագրերի վրա աշխատող աղբյուրագետ մասնագետը, հասկանալի է, չի ցանկանում համբակի դերում գտնվել և փորձում է քանդել հանդիպած ծածկագրի խորհրդավոր հանգույցները։*

*Հայկական ծածկագրության ուսումնասիրությամբ, եթե չհաշվենք առանձին հայագետների պատահական և միջանկյալ անդրադարձումները, լուրջ զբաղվել են երկու անձինք՝ ակադ. Բրոսսեն և Հ. Աճառյանը։ Առաջինը հայ ծածկագրության մասին ֆրանսերեն լեզվով գրել է հատուկ ուսումնասիրություն* «Variétés arméniennes» *վերնագրով և տեղավորել Պետերբուրգում լույս տեսնող Ռուսական Կայսերական գիտությունների ակադեմիայի* «Mélanges Asiatiques» *անունով տեղեկագրում 1864 թվականին (հատոր V, էջ 65—77)։ Իսկ Հ. Աճառյանը ձեռագրերից և տպագիր գրականությունից հավաքել*

---

1 *ՀՊՄ (Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարան), ձեռ. № 7709, էջ 395։*

2 *Հ. Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարյանց ի Վիեննա, 1914—1924, հատոր Ա, էջ 823։*

3 *Երուսաղեմի Ս. Հակոբյանց Մատենադարանի ձեռ. № 1279, էջ 455։*

4 *Ն. Լալայան, Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի, Թիֆլիս, 1915, էջ 250։*

է հայկական ցրված ծածկագրերը և աշխատել մի ընդհանուր սիստեմի բերել նրանք։ Իր ուսումնասիրության արդյունքները նա հրատարակել է «Հայոց գրերը» խորագրով արժեքավոր աշխատության մեջ՝ «Հայերեն ծածկագրերը» գլխի տակ (էջ 460—482)։

Ինչ վերաբերում է ծածկագիր տեքստերին, ապա նրանց մի զգալի մասը հրատարակված է ձեռագրաց ցուցակներում՝ հիշատակարանների հետ միասին։ Ծածկագրություններ կան Հ. Տաշյանի, Բ. Սարգիսյանի, Ե. Լալայանի, Հ. Աճառյանի, Ս. եպիսկ. Սյուրմեյանի և ուրիշների կազմած ձեռագրաց ցուցակներում։ Ծածկագրության առանձին բանալիներ հրատարակել են Գ. Տեր-Մկրտչյանն «Արարատ» ամսագրում[1], Գ. քահ. Աղանյանն իր հայոց պատմության «Դիվան»-ի մեջ[2], Ժիրայր Հիսուսյան քահանան իր մի ուսումնասիրության մեջ, Կ. Ղաֆադարյանը «Ալքիմիան պատմական Հայաստանում»[3] աշխատության մեջ և այլն։ 1958 թվականին «Պատմա-բանասիրական» հանդեսում մենք հրատարակել ենք «Հայկական մի քանի ծածգրությունների վերծանությունը» վերնագրով մի հոդված (էջ 173—189), որից օգտվել ենք այս գրքում։

Չնայած հայ ծածկագրության ուղղությամբ կատարված այս գնահատելի աշխատանքներին, այնուամենայնիվ, հայկական բազմաթիվ ծածկագրեր դեռևս մնում են չուսումնասիրված, չվերծանված և չհրատարակված վիճակում։ Մեր նպատակն է այժմ ի մի հավաքել հայտնի և անհայտ ծածկագրերը, խմբավորել նրանք և, հետագայում ծածկագրության վերծանության գործը դյուրացնելու նպատակով, հրատարակել հայկական կարևոր ծածկագրերի բանալիները։

Անհրաժեշտ ենք համարում նաև նշել, որ հայկական ծածկագրությունը մենք քննության ենք առել ոչ թե նեղ, հայկական մատենագրության առանձնացած շրջանակի մեջ, այլ մեր հարևան երկրներում գործածվող ծածկագիր սիստեմների հետ առնչված։ Ըստ որում, մենք նկատել ենք որոշ նմանություններ հայկական և հարևան ժողովուրդների ծածկագիր սիստեմների միջև։

Հայկական ծածկագրությունը, ըստ ձևի և բովանդակության, բաժանվում է մի քանի խմբերի, որոնք, իրենց հերթին, բաժան-

[1] Միաբան (Գալուստ Տեր-Մկրտչյան), Ներսիսյան ծածկագիր (տես «Արարատ» ամսագիր, 1888, հունվար, էջ 35—49։

[3] Հմմտ. Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 474—475։

[3] Կ. Ղաֆադարյան, Ալքիմիան պատմական Հայաստանում, Երևան, 1940։



վում են ենթախմբերի։ Ծանոթանանք նրանց հետ առանձին-առանձին։

Սկսենք «սյունագիր» ծածկագրից։

## 1. ՍՅՈՒՆԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Այս ծածկագիրը «սյունագիր» է կոչվում այն պատճառով, որ ծածկագրության հիմնական կմախքը սյունագծերից է կազմված։ Նա հայ մատենագրության մեջ կոչվել է նաև «կետագիր» ծածկագիր[1], որը նույնպես ճիշտ է, եթե նկատի ունենանք, որ ծածկագրության մեջ կարևոր դեր են կատարում կետերը։ Գուցե ավելի ճիշտ արտահայտելու համար այս ծածկագրությունը կարելի լիներ անվանել «սյունակետագիր» ծածկագիր, սակայն քանի որ «սյունագիր» անունն արդեն քաղաքացիություն ունի հայագիտական գրականության մեջ, ուստի և այդ անունը մենք թողնում ենք անփոփոխ։

Սյունագիր ծածկագիրը հայ մատենագրության մեջ ամենագործածական ծածկագիրն է. նրանով են գաղտնագրված հայկական ծածկագիր տեքստերի մեծ մասը։

Ծածկագրություն կազմելու սկզբունքը շատ պարզ է—վերցնում են ուղղահայաց սյունագծեր և նրանց մոտ դրված կետերով որոշում համապատասխան տառանիշը—«ա»-ից մինչև «թ»-ն գրում են մեկ գծիկով, «ժ»-ից մինչև «ղ»-ն՝ երկու գծիկով, «ճ»-ից մինչև «ջ»-ն՝ երեք գծիկով և «ռ»-ից մինչև «ք»-ն՝ չորս գծիկով։ Այս գծիկների մոտ, ըստ հայկական այբուբենի համարաշարքի, դրվում են կետերը։ Ըստ որում, կետերը դրվում են գծիկի վրա կամ նրա կողքին՝ աջից։ Երբ դրվող կետերի թիվը շատ է լինում և գծիկների բարձրությունը չի բավարարում, կետերի ուղղահայաց շարքը թեքում են դեպի աջ, կամ դարձնում երկու շարք։

Եվրոպացի հայագետ Մյուլլերը որոշ նմանություն է տեսնում հայկական սյունագիր ծածկագրության և կելտական ogham կոչվող գրության միջև, որը կազմված է հինգ գծիկների զանազան ձևափոխություններից, և կարծում է, որ սյունագիրը վերցված է նրանից[2]։

[1] ՀՊՄ, № 2370, թ. 1ա։

[2] Müller, Nicht-Mesropische Schriftzeichen bei den Armeniern, WVKM, 10, էջ 129—132։

Սյունագիր ծածկագրի մի քանի բանալիներ են հասել մեզ, որոնցից բերում ենք Անդրեաս Եվդոկացու (XVI դար) այբբենարանի հավելվածում ընդօրինակված բանալին[1].




Եվդոկեցու սյունագիր ծածկագրի բանալին։

Սյունագիր ծածկագրի հնագույն տեքստը, որքան մեզ հայտնի է, 1408 թվականից է։ Նա գրված է Հայկական ՍՍՌ Պետ. Մատենադարանի № 763 ձեռագիր մանրուսմունքի հիշատակարանում. ծածկագրված է գրչի անունը—«Ռեստակէսս»։ Ծածկագրությունը վերծանել և հրատարակել է պատմական գիտությունների թեկնածու Լ. Խաչիկյանը[2]։ Բերում ենք ծածկագիր տեքստը և նրա վերծանությունը։




Ուշ շրջանի սյունագիր ծածկագրեր շատ կան։ Անհրաժեշտ ենք համարում բերել նրանցից մի քանի նմուշների վերծանությունը։

Հայկ. ՍՍՌ Պետ. Մատենադարանի № 2 ձեռագրում ծածկագրված են «Ոսկան գրիչ» բառերը (էջ 23)։

Ղալաթիայի մատենադարանի № 30 ձեռագրում ծածկագրված

[1] ՀՊՄ. ձեռ. № 1869, թ. 391ա։

[2] Լ. Խաչիկյան, ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 89։



սյունագիր ծածկագիրը վերծանվում է. «Գրեցաւ ձեռամբ Ակոբ գրչի»[1]։

Հայկական ՍՍՌ Պետ. Մատենադարանի № 2000 ձեռագրում գաղտնագրված սյունագիր ծածկագիրը վերծանվում է. «ՌՄԲ: (1753) Ձեռամբ Գրիգոր աբեղայէ նամսեանն սեպտեմբերի ԺԱ (11)-ին («ՀՊՄ ձեռ. № 2000, թ. 151ա—բ)։

Ակադ. Ն. Յա. Մառն իր կազմած Պետերբուրգի Արևելյան ակադեմիայի հայերեն ձեռագրաց ցուցակում բերել է սյունագիր մի ծածկագրություն[2], որը վերծանվում է. «Յիշատակ է քարոզգիրքս Սրապիոն վարդապետին»։

Հայկ. ՍՍՌ Պետ. Մատենադարանի № 6273 ձեռագրի հիշատակագիրը թողել է սյունագիր հետևյալ ծածկագրությունը (բերում ենք միայն վերծանությունը). «Ի վայելումն Կուքանցի Պետրոս արքեպիսկոպոսի հազար ութ հարիւր տասներեք մայիսի եօթին» (թ. 409)։

Սյունագիր ծածկագրի այս խմբին է պատկանում նաև Ֆրեդերիկ Մուրադի «Հանդէս ամսօրեայ»-ում հրատարակած ծածկագիրը, որը վերծանվում է. «Փիրում»: (Սխալ է «Գիրում» ձևը, ինչպես առաջարկել է հրատարակիչը)[3]։

Ազգագրագետ Ե. Լալայանը իր Վասպուրականի ձեռագրաց ցուցակում բերել է Շատախի Թաղ գյուղում երբեմնի գտնված մի ձեռագրի պարունակած հետևյալ ծածկագրությունը.

ՎՄԷԹԲԻ. ՌԷՐԴՌՕՌԽ.

Լալայանին չի հաջողվել վերծանել ծածկագրությունը։

Պատմական գիտությունների թեկնածու Լ. Խաչիկյանը XIV դարի հիշատակարանների ժողովածուի մեջ հրատարակել է Ե. Լալայանի վերև բերված ծածկագիրը և փոխարինագիր ծածկագրով վերծանել

[1] Օգտվել ենք Բ. վ. Կյուլեսերյանի կազմած ձեռագրաց ցուցակից (էջ 127), որը Կիլիկիայի կաթողիկոսության սեփականությունն է և չի հրատարակված։

[2] Ն. Յա. Մառ, Հայկական ձեռագիրք Ճեմարանի Արևելյան լեզվաց ի Պետերբուրգ (տես «Հանդէս ամսօրեայ», 1892, էջ 52)։

[3] Տես «Հանդէս ամսօրեայ», 1903, էջ 334։

միայն առաջին տողը, իսկ շարունակությունը համարել «անհասկանալի»[1]:

Նշված ծածկագրության տեքստում թույլ տված մի քանի կետերի սխալներն ուղղելուց հետո վերծանվում է: Բերում ենք ուղղված տեքստը և մեր վերծանությունը.

ՎՄԷԹԲԻ ՌԷՐԴՌԵՌԽ.
Գիրքս է աւետարան

ծ ա ռ յ ի Գ ր գ ա

Ձեռագրերում պատահում են սյունագրի այնպիսի տեքստեր, ուր սյունագծի վրա կամ նրա կողքին դրված կետերը, նախորդ սյունագրի համեմատությամբ, մի տառանշանով պակաս արժեք ունի. այսպես, «ա»-ն գրվում է առանց կետի, «բ»-ն գրվում է մեկ գիծ, մեկ կետով, «գ»-ն՝ մեկ գիծ, երկու կետով և այդ հետևողականությամբ՝ մյուս բոլոր հայկական այբուբենի տառերը:

Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 2939 ձեռագրում, (թ. 583բ): 1796 թվականի գրչությամբ, այս ծածկագրով գաղտնագրրված է գրչի անունը և գրչության թվականը (բերում ենք տեքստը և մեր վերծանությունը).

տ է ր Մ ա ր տ ի ր ո ս է

մայիս
գրվեցաւ թվին հայոց Ռ Մ Խ Ե Ի Ե

Եվ, վերջապես, պատահում են մեզ սյունագիր ծածկագրի այնպիսի տեքստեր, որոնք վերծանելու համար, բացի սյունագիր ծածկագրի բանալուց, պետք գործածել նաև եղբայրագիր կամ փոխարինագիր ծածկագրի բանալիներ: Այս մասին խոսք կլինի առջևում:

## 2. ԿԵՏԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Ծածկագրության այս տեսակը իր սիստեմով շատ նման է սյունագրին. տարբերությունը միայն նրանում է, որ այստեղ սյուներին փոխարինում են հայկական համապատասխան տառերը:

[1] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրեր հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 322:



Այս խմբի հնագույն ծածկագիրը Գրիգոր եպիսկ. Տուտեորդու նշանավոր ծածկագիրն է՝ 1154 թվականից: Հրատարակել է Հ. Ղ. Ալիշանը «Այրարատ»-ում:

Գրի ա... ճ::: ռ::. վարդապե ռ:: ճ:::
ռ::. ա:: ժժ: սս:: գճ: էռ: սս: ալ:[1]

Ծածկագիրը վերծանվում է. «Գրիգոր վարդապետ որդի Տուտայ»:

Ծածկագրի այդ խմբին են պատկանում սկսած. Բրոսսեի հրատարակած հայկական ծածկագիր տեքստերից մի քանի բառ միայն՝ նախորդից մի թվանշան պակաս արժեքով (բերում ենք տեքստը և վերծանությունը).

«Զաքարիայ գծողս մի բերան յիշեալ ա:: ռ::: Ած ա::. ռ:::
ե ւ Ած գ ք –
ա:: ա::. յիշեալ...»[2]:
ե գ

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 193 ձեռագրում այս ծածկագրով գաղտնագրված է.

«ա:::. ա::: ժ::. ա ռ:: ա:: [ա] ռ. ժ. ճ.
ա ռ. ռ... ճ::. ռ::: ճ... ա:: ռ. (թ. 174բ)»:

Վերծանվում է. «Թէ կարդաս՝ իմաստուն ես»:

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 6644 ձեռագրում գրված է այս խմբի մի ծածկագիր. սակայն ծածկագրողը չի սահմանափակվել հայկական մի քանի տառերով միայն, այլ օգտագործել է հայկական բոլոր տառանիշերը՝ վրաները դնելով համապատասխան մեկից մինչև չորս կետեր (բերում ենք տեքստը և մեր վերծանությունը).

Վերծանվում է. «Յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր Արեւելցիս»:

[1] Հ. Ղ. Ալիշան, «Այրարատ», Վենետիկ, 1890, էջ 167:
[2] Brosset (տես «Me'langes Asiatiques», հատ. V, էջ 71):
[3] ՀՊՄ ձեռ. № 6644, թ. 132բ:

## 3. ԳՐԱԿԵՏԱԹԻՎ ԾԱԾԿԱԳԻՐ

*Հայկական ծածկագրության այս տեսակի անունը մենք ենք դրել՝ նկատի ունենալով նրա գաղտնագրվելու սկզբունքը—գրվում են հայկական սովորական տառեր՝ «ա»-ից մինչև «ժ» տառը, և վրան ավելացվում մեկից մինչև չորս կետ։*

*Այս ծածկագրով մեզ հայտնի է միայն երկու ծածկագիր—մեկը Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի № 234 ձեռագրում, իսկ մյուսը՝ Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 5198 ձեռագրում։*



ՀՊՄ-ի № 5198 ձեռագրի ծածկագիրը։

*Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի № 234 ձեռագրում այս խմբի ծածկագրված տեքստը հետևյալն է.*

*«Գրեցաւ գիրս ձեռամբ յոգնամեղ և տրուպ* բ բ բ ե զ դ բ : ռռ. ժժ. ճճ · բ · գ · յյ · մմ · ժժ»։ *Ծածկագրված է այստեղ, անկասկած, գրչի անունը։*

*Ծածկագրության այս տեքստը իր կազմած ցուցակում հրատարակել է բանասեր Բ. Սարգիսյանը, սակայն չկարողանալով վերծանել, հետևյալ ծանոթությունն է տվել. «Յուրաքանչյուրին վրա կետեր դրված, որ անուն և մականուն կձևացնեն, բայց ինձ համար մնացին անլուծելի»*[1]։



*Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 5198 ձեռագրի ծածկագրության մեջ ևս ծածկագրված է գրչի անունը։ Նախորդ էջում բերել ենք ծածկագրություն պարունակող ամբողջ հատվածը։*

*Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 5198 ձեռագրի այս խմբի ծածկագրությունը նույնպես չի վերծանված։ Մատենադարանում ձեռագրի քարտը լրացնող մասնագետը թողել է հետևյալ նշումը. «Անունը ծածուկ է մնում»։*

*Ծածկագիրը կազմելու սկզբունքը հետևյալն է. կետերը ցույց են տալիս, թե հայկական այբուբենի չորս իննյակ տառերից որն է, իսկ տառերը՝ տվյալ իննյակի համարաշարքը։ Այս ծածկագիրը, իր սկզբունքով, շատ նման է գծակետագիր ծածկագրին, միայն այստեղ գծերի դերը կատարում են կետերը, իսկ կետերի դերը հայկական այբուբենի ինը միավոր թվանշան ունեցող տառերը։*

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ճ | մ | յ | ն | շ | ո | չ | պ | ջ |
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ռ | ս | վ | տ | ր | ց | ւ | փ | ք |

Գրակետագիր ծածկագրության բանալին։

[1] *Հ. Բ. Սարգիսյանի ցուցակ, հատոր Բ, էջ 536։*

Ծածկագրության միստեմը մեզ հայտնի դառնալուց հետո, այնուհետև դժվար չէր վերծանել վերև բերված ծածկագրերի տեքստերը:

Բանասեր Հ. Բ. Սարգիսյանի հրատարակած ծածկագրի առաջին մասը, կետադրական անհրաժեշտ շտկումներ կատարելուց հետո, վերծանվում է.

Բ̈̈ Բ̈ Բ̈̇ Ե̇ Ջ̈̇ Ռ̈́ Բ̈
Ս ի մ ե ո ն ի

Ծածկագրության երկրորդ մասը սովորական գումարգիր ծածկագիր է և վերծանվում է նույն անունը.

ՌՌ. ԺԺ. ՃՃ. ԲԳ. ՅՅ. ՄՄ.
Ս ի մ ե ո ն

Այսպիսով, Վենետիկի Մխիթարյանների № 234 ձեռագրի գրիչը՝ Սիմեոնն է.

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 5198 ձեռագրի տեքստը վերծանվում է.

Դ:. Զ:. Ե:: Դ:: Զ:. Է:: Դ:. Զ:
Ն ո ր տ ո ւ ն կ

Ուրեմն, նշված ձեռագրի գրիչն է հանդիսացել Նորտունկ գրիչը: Հավանական է սա լինի Կիրակոսի որդի Նորտունկը, որը 1463 թվականին Արծկեում վաճառքի միջնորդ է հանդիսացել Հովհաննես գրչի և տանուտեր Եղիշահի միջև[1]: Եթե մեր այս ենթադրությունը ճիշտ է, այն դեպքում ձեռագրի գրչության ժամանակը պետի համարենք ո՛չ թե 16-րդ դարը, ինչպես նշված է ձեռագրի քարտի վրա, այլ 15-րդ դարը:

Պետական Մատենադարանի վերև բերված ծածկագիրը պարունակող պարբերության մեջ կա գումարգիր մի խառը ծածկագիր, որը, բաց թողած տառերի լրացումները կատարելուց հետո, վերծանվում է.

| | աա | [cc] | սս | 22 | [բգ] | խխ | եե | ճճ |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Բաց թողած տառեր | բ | | — | — | — | — | — | — |
| Վերցրել է գումարը | — | ա | — | — | ե | — | — | — |
| Վերցրել է գումարի հաջորդը | | | ր | ս | | ղ | ի | |
| Վերցրել է գումարի երրորդը | | | | | | | | ն |
| | Բ | ա | ր | ս | ե | ղ | ի | ն |

[1] Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Դ, էջ 85:



Այսպիսով, նշված պարբերությունը ամբողջովին վերծանված ձևով կկարդացվի.

«Արդ գրեցաւ սուրբ տառս, որ ասի Մաշթոց, ձեռամբ բազմամեղ և անիմաստ սուտանուն Նորտունկ ջահընկալիս, անուամբ ջահընկալ և գործովս մեղսամած և մեղսասէր: Արդ՝ երես անկեալ աղաչեմ ձեզ արտասուաթոր աչաւք, որք հանդիպիք այս աստուածախաւս տառիս ո՞վ սուրբ մանկունք եկեղեցւոյ կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք մաքրափայլ յաղաւթս ձեր զանարժան գծող սորա և զուսուցիչն իմ Բարսեղ, զոր Տէր Աստուած...» (այստեղ ընդհատվում է տեքստը):

## 4. ՕՂԱԿԵՏԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Սյունագիր ծածկագրի խմբին է պատկանում նաև օղակետագիր ծածկագիրը: Նրա մեջ ևս չի օգտագործվում հայկական ոչ մի տառանիշ. հայկական այբուբենը վերցվում է չորս խմբով՝ միավոր տառերի հիմքը դարձվում է մեկ օղ, տասնավորներինը՝ երկու, հարյուրավորներինը՝ երեք և հազարավորներինը՝ չորս ու նրանց վրա, ըստ տառանիշի թվական արժեքի, կետեր են դրվում: Ծածկագրության այդ տեսակը շատ գործածական է եղել սլավոնական մատենագրության մեջ:

Հայկական օղակետագիր ծածկագրին մասամբ նմանվում է սլավոնական „значковый разряд" կոչվող ծածկագիրը[1]: Ծածկագրության այդ տեսակը շատ գործածական է եղել սլավոնական մատենագրության մեջ:

Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 8716 ձեռագրի գրիչը այս ծածկագրի վերծանության մասին տվել է հետևյալ ուշագրավ տեղեկությունը. «Գիր համարոյ Դ տարերաց է: Այս է արհեստ սորա այսպէս. նախ գիտելի է, զի առաջին գիրն և թիւն, այս է՝ ա ժ ճ ռ: Նոյնպէս և սայ 0000, և թէ՝ 0 Ա 0: Բ 0:. Դ և այլն այսպէս: Եւ եթէ 00.Ժ, 00:.Ի, 00Լ:., 00Խ:: և այլն այնպէս: Եւ թէ 000.Ճ, 000:Մ, 000:.Յ, 000::Ն: Եւ թէ՝ 0000.Ռ, 0000:Ս, 0000:.Վ, 0000::Տ: Եւ այլն այս մօքս է, իմացիր, զի Դ տարերաց է սայ: Եւ սայ կոչի գիր տարերաց, զի նողաանին բանայ զմիտ մարդոյն որ կարէ իմանալ ըզբանն, զի բոլորն համա-

[1] Карский, Славянская кирилловская палеография, էջ 256:

*րողական է և տարերքն, բայց նոխտանին վերծանող է։ Բաւ է իմաստնոց»*[1]։

*0. 0: 0:. 0:: 0::. 0::: 0:::. 0:::: 0::::.*

*ա բ գ դ ե զ է ը թ*

*00. 00: 00:. 00:: 00::. 00::: 00:::. 00:::: 00::::.*

*ժ ի լ խ ծ կ հ ձ ղ*

*000. 000: 000:. 000:: 000::. 000::: 000:::. 000:::: 000::::.*

*ճ մ յ ն շ ո չ պ ջ*

*0000. 0000: 0000:. 0000:: 0000::. 0000::: 0000:::. 0000:::: 0000::::.*

*ռ ս վ տ ր ց ւ փ ք*

Օղակետագիր ծածկագրի բանալին։

*Ղալաթիայի մատենադարանի № 249 ձեռագրում ծածկագրված է. «00[0]⁝⁝⁝ 0000⁝∘ 0∘ 00⁝⁝[∘] [00⁝] 000⁝ 0∘ 000⁝∘»*[2]*, որ վերծանվում է* «Ովակ[ի]մայ»։ *Ծածկագիրն առաջին անգամ վերծանվում է մեր կողմից։*

*Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 193 ձեռագրում ծածկագրված է. «000:. 0. 00::: 000::: 0:» (Թ. 174բ)։ Վերծանվում է՝* «Յակոբ»։

## 5. ԿՈՏՈՐԱԿԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

*Կոտորակագիր ծածկագիրը կազմվում է դարձյալ սյունագրի սխեմով, միայն թե այստեղ սյուների փոխարեն օգտագործվում են կոտորակի համարիչ կետերը, իսկ չորս համարաշարքի տառերի փոխարեն՝ հայկական այբուբենի տառերը՝ ըստ թվահաշվի։ Այս ծածկագրի հետաքրքիր մի օրինակ բերել է Գ. վրդ. Սրվանձտյանը «Մանանայ»-ի*[3] *մեջ, որից և մենք ընդօրինակում ենք.*

ե ր կ ի ն ք ո ր ո տ ա ց

գ ա ր ն ա ն ն շ ա ն է

[1] *ՀՊՄ ձեռ. № 8716, թ. 53ա։*

[2] *Կյուլեսերյան, Ղալաթիո ձեռ. ցուց., էջ 192։*

[3] *Գ. վրդ. Սրվանձտյան, Մանանա, էջ 312։*



## 6. ԳԱՎԱԶԱՆԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

*Ծածկագրի այս տեսակը նույնպես ոչ մի կապ չունի հայկական տառերի հետ։ Վերցվում է հայկական այբուբենի չորս դասի ինը գրերի համար իրարից տարբերվող գավազանաձև ինը նշան և չորս կետերի համադրությամբ կազմվում է ծածկագիրը։ Մեկ կետը գործ է ածվում միավորների համար, երկուսը՝ տասնավորների, երեքը՝ հարյուրավորների և չորսը՝ հազարավորների։ Եվ այսպես, զուգակցելով ինը իրարից տարբերվող գավազանները չորս կետերի հետ, կազմվում է ծածկագրությունը։ Այս ծածկագրի իրարից տարբերվող երկու բանալի է մեզ հայտնի։ Նրանցից մեկը՝ Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 2001 ձեռագրում՝ 1773 թվականից է*[1] *և ունի հետևյալ ձևը.*

ա բ գ դ ե զ է ը թ

ժ ի լ խ ծ կ հ ձ ղ

ճ մ յ ն շ ո չ պ ջ

ռ ս վ տ ր ց ւ փ ք

*Մյուսը, որ ընդօրինակված է Մատենադարանի № 2370 ձեռագրից*[2]*, փոքր-ինչ տարբերվում է առաջինից։ Նրա բանալին հետևյալն է.*

[1] *ՀՊՄ ձեռ. № 2001, թ. 223ա։*

[2] *ՀՊՄ ձեռ. № 2370, թ. 1ա։*

Ակադ. Ն. Յա. Մառի հրատարակած ցուցակում Նախկին Պետերբուրգի հայերեն ձեռագրերից բերված[1] է մի ծածկագրություն, որը վերծանվում է. «Խ ա չ ա տ ո ւ ր»։

Էջմիածնի ժողովածուի № 47 ձեռագրում[2], որտեղ գավազանագրով գաղտնագրված է մի ծածկագիր, վերծանվում է. «Զ ա ք ա ր ա յ ծ ա ռ ա յ»։

Ակադ. Բրոսսեի օգտագործած ձեռագրում ծածկագրված է «Զաքարիա» անունը, բայց այս ծածկագրության մեջ կետերի գործածությունը տարբերվում է նախորդներից. այստեղ թվերը գրվում են առանց կետի, տասնավորները՝ մեկ կետով, հարյուրավորները՝ երկու և հազարավորները՝ երեք[3]։

## 7. ԱՐԱԲԱԹԻՎ ԾԱԾԿԱԳԻՐ

Համեմատաբար նոր շրջանի ծածկագիր է այս։ Սկզբունքը հետևյալն է. վերցնում են ծածկագրվող տեքստի հայկական տառերը և ըստ իրենց թվական համարժեքի արաբական թվանշաններ նշանակում։ Այսպես, «ա»-ն հավասար է 1-ի, «բ»-ն՝ 2-ի, «գ»-ն՝ 3-ի և այլն։

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 ա | 2 բ | 3 գ | 4 դ | 5 ե | 6 զ | 7 է | 8 ը | 9 թ |
| 10 ժ | 20 ի | 30 լ | 40 խ | 50 ծ | 60 կ | 70 հ | 80 ձ | 90 ղ |
| 100 ճ | 200 մ | 300 յ | 400 ն | 500 շ | 600 ո | 700 չ | 800 պ | 900 ջ |
| 1000 ռ | 2000 ս | 3000 վ | 4000 տ | 5000 ր | 6000 ց | 7000 ւ | 8000 փ | 9000 ք |

Արաբաթիվ ծածկագրի բանալին։

Այս ծածկագրությունը գործ է ածվել նաև հունական մատենագրության մեջ։ Նա Գարդհաուզենի մոտ կոչվում է "Arabische Zahlenkryptographie„ (արաբական թվագիր ծածկագիր)[1]։

Արաբագիր ծածկագրով է գաղտնագրված Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 3464 ձեռագրի հետևյալ տեքստը մեր վերծանությամբ.

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 9000 | 5000 | 20 | 2000 | 4000 | 600 | 2000 | 20 |
| Ք | ր | ի | ս | տ | ո | ս | ի |

| | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 50 | 1 | 1000 | 1 | 300 | 1 | 30 | 7 | 9000 | 2000 | 1 | 400 |
| ծ | ա | ռ | ա | յ | Ա | լ | է | ք | ս | ա | ն |

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 3000 | 1 | 5000 | 4 | 1 | 800 | 5 | 4000 | 300 | 20 |
| վ | ա | ր | դ | ա | պ | ե | տ | յ | ի |

| | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 500 | 5 | 30 | 20 | 4000 | 7 | 5000 | 1 | 90 | 1 | 700 | 5 | 200 |
| շ | ե | լ | ի | Տ | է | ր | ա | ղ | ա | չ | ե | մ |

## 8. ԹՎԱՆՇԱՆԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Ծածկագրի այս անունը մենք ենք դնում, ելնելով այն փաստից, որ ծածկագրի նշանագրերի հիմքում արաբական թվանշաններն են ընկած։ Ծածկագրի բանալին բերում ենք Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 2373 վերև հիշված ձեռագրից.

ա բ գ դ ե զ է ը թ ժ ի լ խ ծ կ հ ձ ղ

ճ մ յ ն շ ո չ պ ջ ռ ս վ տ ր ց ւ փ ք

Թվանշանագիր ծածկագրի բանալին։

[1] Ն. Մառ. Պետերբուրգի ձեռագրաց ցուցակը (տես «Հանդէս ամսօրեայ», 1892, էջ 82)։

[2] «Էջմիածին», 1951, IV—VI, էջ 82։

[3] Brosset (տես «Mélanges Asiatiques», հատ. V, էջ 68)։

[1] V. Gardthausen, Griechische Palaeographie, էջ 316—317։

[2] ՀՊՄ ձեռ. № 2370, թ. 1ա։

*Այս ծածկագրով գաղտնագրված են Էջմիածնի մատենադարանի ձեռագրի մեջ հետևյալ բառերը. «ՍԲ Գրիգոր»։*

*Ակադ. Բրոսսեի ծածկագրության մեջ գաղտնագրված է. «Զ ա ք ա ր ի ա գ ծ ող ս»։*

*Հայկական ՍՍՌ Պետ. Մատենադարանի №7104 ձեռագրում այս ծածկագրով գաղտնագրված է. «Գ ա լ ո ւ ս տ։ Գ ր ե ր ը Ա բ ր ը հ ա մ ի ն, Մ ո ւ ս է ս ի ն, Ս ա ն ա ս ա ր ի ն, Գ ր ի գ ո ր ի ն, Մ խ ի թ ա ր ի ն է» (թ. 1բ—2ա)։*

## 9. ՃԻՐԱՆԱՎՈՐ ԾԱԾԿԱԳԻՐ

*Գծակետային այս սկզբունքով է կազմված ճիրանավոր ծածկագիրը։ Այստեղ վերցվում է մի օղ, և նրա կողքերից չորս ուղղությամբ ձգվում են մեկից չորս ճիրաններ. միավորի համար դրվում է մեկ ճիրան, տասնավորի համար՝ երկու, հարյուրավորի համար՝ երեք և հազարավորի համար՝ չորս։ Այնուհետև, ըստ տառանիշի թվական արժեքի, դրվում են կետեր։ Կետադրության սիստեմը նման է գծակետային ծածկագրի վերջին տեսակին, այսինքն՝ մի թվանշանով պակաս, քան սովորաբար ծածկագրվում է։ Բերում ենք այս ծածկագրի բանալին.*

ա բ գ դ ե զ է ը թ

ժ ի լ խ ծ կ հ ձ ղ

ճ մ յ ն շ ո չ պ ջ

ռ ս վ տ ր ց ւ փ ք

Ճիրանավոր ծածկագրի բանալին։

*Ակադ. Բրոսսեի հրատարակած տեքստերի մեջ այս ծածկագրով գաղտնագրված է «Գալուստ» անունը[1]։ Բերենք ծածկագրությունը և նրա վերծանությունը.*

Գ ա լ ո ւ ս տ ն

[1] Brosset (*տես «Mélanges Asiatiques», V հատ. 76—77 էջերի միջև տեղավորված ծածկագիր տախտակը*)։



## 10. ՓՈԽԱՐԻՆԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

*Հայ մատենագրության մեջ սյունագրից հետո հաճախ գործածականը փոխարինագիրն է։ Նա փոխարինագիր է կոչվում այն պատճառով, որ ծածկագրության մեջ հայկական այբուբենի մի տառը փոխարինում է մյուսին։ Հայկական այբուբենի 36 տառերը բաժանվում են չորս շարքի՝ միավորների, տասնավորների, հարյուրավորների և հազարավորների՝ յուրաքանչյուրն իննական տառից, և տառաշարքերից ամեն մեկը, ըստ թվական հերթականության, փոխարինում է մյուսին։ Այս սիստեմի ծածկագիր ունեցել են նաև սլավոնները, որը կոչվել է* «тарабарская грамота» *կամ* «литорея»[1]*։ Հայկական և սլավոնական այս սիստեմի ծածկագրության մեջ տարբերվում է միայն դասավորությունը—հայկական այբուբենը կազմված լինելով 36 տառից հնարավորություն է տալիս չորս շարքով փոխարինել իրար, իսկ սլավոնական այբուբենն ավելի քիչ տառեր ունի, ուստի և որոշ ձայնավորներ և բաղաձայններ թողնըվում են նույնությամբ։*

*Փոխարինագիր ծածկագիրն ունի երեք տարբերակ. կանգ առնենք նրանց վրա առանձին-առանձին։*

*Առաջին տարբերակի ժամանակ միավոր թվական ունեցող տառերը փոփարինում են հազարավորներին, իսկ տասնավորները՝ հարյուրավորներին։*

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա<br>ռ | բ<br>ս | գ<br>վ | դ<br>տ | ե<br>ր | զ<br>ց | է<br>ւ | ը<br>փ | թ<br>ք |
| ժ<br>ճ | ի<br>մ | լ<br>յ | խ<br>ն | ծ<br>շ | կ<br>ո | հ<br>չ | ձ<br>պ | ղ<br>ջ |

Փոխարինագրի առաջին տարբերակի բանալին

*Փոխարինագրի առաջին տարբերակի ամենահին ծածկագիրը—այժ. Ավանում գտնված Եզր կաթողիկոսի (630—641 թթ.) երկլեզվյան (հունարեն-հայերեն) արձանագրությունն է, որը հնագույնը պիտի համարել հայկական ծածկագրության մեջ ընդհանրապես։ Այս ծածկագրությունը հայտաբերել և վերծանել է*

[1] Е. Ф. Карпов, Славянская кирилловская палеография, *էջ*, 253—254։

Կ. Ղաֆադարյանը։ Անհրաժեշտ ենք համարում բերել սուրբ Եզր կաթողիկոսի՞այդ արձանագրությունը.

# ՄՐԵՁՐՁՈՒԼՏՁԿԱԹՈՂԻԿՈՍՃՇՄԱ ՐԻՄ ΔWλOCTWΘЄWՍԱՄԵՂՇՈՒԱ ՈՒՔ[Ի]

Արձանագրությունը վերծանվում է «Տ[է]ր Եզր չոկլզ կաթողիկոս ճշմարիտ δωλος τω θεω Սամէղ շուռոլք»։ Այստեղ փոխարինագիր ծածկագրերով են արտահայտված ընդգծված բառերը՝ չոկլզ, որ վերծանվում է «հայոց» և «շուռոլք», որ վերծանվում է «ծառայ»։ Հունարեն բառը նշանակում է «ծառայ Աստուծոյ», իսկ Սամէղ բառի վերջին տառը «Ք»՝ պատվագրված է «Ք[րիստոսի] բառը Այսպիսով, տեքստը կարդացվում է. «Տէր Եզր Հայոց կաթողիկոս ճշմարիտ ծառայ Աստուծոյ. Սամէղ ծառայ Ք[րիստոսի]»[1]։

Փոխարինագրի այս տարբերակի ծածկագրերից մի շարք տեքստեր են հասել, որոնցից ուշադրության արժանի [են հետևյալները.

Վիեննայի Մխիթարյանների № 7 ձեռագրում, որն ընդօրինակված է 1439 թվականին, ունի գրչի հետևյալ ծածկագրությունը. «Կրկին աղաչեմ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր Յ. Բ. Մ. Ի. Խ. Կ. Խ. Ո. Ե. Ռ. Է. Խ. Ռ. Է. Կ. Ե. Բ., որ շատ աշխատեցա...»[2]։ Ծածկագրությունը վերծանվում է. «զՍիմէոն կրաւնաւորս»։

Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 1548 ձեռագրում ծածկագրված է հետևյալ տեքստը (բերում ենք տեքստը և մեր վերծանությունը).

«ՃՄ. յլ. ոս. ռռ. եբ. տտ. լ. կ. գ. բ. ւպ=Յ ո վ ս է փ։

||| ⁝ ||| ⁝ |||| ⁝ |||: | ⁝⁝ |||| ⁝⁝=Յ ո վ ս է փ։

Աբ. վս. ժժ. աբ. յլ. տռ։

Գ ր ի գ ո ր (թ. 384բ)։

Առաջին տողի առաջին «Յովսէփ»-ը և երկրորդ տողի «Գրիգոր»-ը գաղտնագրված են գումարգիր ծածկագրով (այս մասին խոսք կլինի հետո), առաջին տողի երկրորդ «Յովսէփ»-ը՝ փոխա-

[1] Կ. Ղաֆադարյան, Ավանի երկլեզվյան ծածկագիր արձանագրությունը, Երևան, 1945, էջ 7։

[2] Տաշյանի ձեռագրաց ցուցակ, էջ 50։



նակագրի առաջին տարբերակով, իսկ երկրորդ տողի վերջին «Յովսէփ»-ը՝ սյունագիր ծածկագրով։

Փոխարինագրի երկրորդ տարբերակի ծածկագրության ժամանակ միավոր թվական ունեցող տառանիշերին փոխարինում են հարյուրավորները, իսկ տասնավորներին՝ հազարավորները։

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ճ | մ | յ | ն | շ | ո | չ | պ | ջ |
| ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |
| ռ | ս | վ | տ | ր | ց | ւ | փ | ք |

Փոխանակագրի երկրորդ տարբերակի բանալին։

Այս ծածկագրության համար որպես նմուշ կարելի է բերել Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 6644 ձեռագրի (1532 թվականից) պարունակած հետևյալ ծածկագիրը (բերում ենք տեքստը և մեր վերծանությունը).

«Յիշատակ է գիրս այս
ՇՔ. ՍԵ. ՃԳ։ ՃՄ. ՇՔ. ՍԴ» (թ. 78ա)։
եղ իշ այ աբ եղ իճ (Եղիշայ աբեղին)։

Փոխարինագրի երրորդ տարբերակի ժամանակ միավոր թվանիշ ունեցող տառերին փոխարինում են տասնավորները, իսկ հարյուրավորներին՝ հազարավորները։

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |
| ճ | մ | յ | ն | շ | ո | չ | պ | ջ |
| ռ | ս | վ | տ | ր | ց | ւ | փ | ք |

Փոխարինագրի երրորդ տարբերակի բանալին։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 817 ձեռագրում (1414 թվականից) ծածկագրված է երկու բառ, որից առաջինը ծածկագրված է փոխարինագրի երրորդ տարբերակով, իսկ երկրորդը՝ եղբայրագրով (բերում ենք տեքստը և մեր վերծանությունը)[1].

«լ • շ • բ • լ • ց • շ։ դ • տ • լ • պ» (թ. 441բ)։
Գ ր ի գ ո ր դ ր ի չ։

Անկյուրիայի ձեռագրաց ցուցակում հրատարակված է № 164 ձեռագրի կազմողի հետևյալ ծածկագիր հիշատակագրությունը.

[1] ՀԳՄ Լ. Խաչիկյան, ԺԵ դ. հիշատ., էջ 163։

«Վերըստին նորոգեցաւ տարեգիրքս, որ կոչի ճաշոց ձեռամբ և անիմաստ խչ, եձ, ռք, խչ, ծա, զջ, լք, ծն, ռք, զփ»։ Ձեռամբ իմով կազմեցի զայս։ Յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զուսուցիչն իմ Տէր Մկրտիչն, որ բազում աշխատութեամբ ուսուց կազմութեամբ ա[ր]հեստս զայս ձեր։ Ած ողորմի ասէք։ Թվին ՌՃԻԷ յունվար ամսոյ Ի»[1]։

Կազմողի կամ հրատարակչության կողմից ծածկագրությունը չի վերծանված—հրատարակված է այն առանց ծանոթագրության և մեկնաբանման։

Մեզ հաջողվեց այս ծածկագրությունը վերծանել մեծ դժվարությամբ, որովհետև ծածկագրության տեքստում, հավանական է, արտագրության ժամանակ կատարվել են սխալներ։

Վերև բերված ծածկագիր տեքստը, անհրաժեշտ ուղղումներ կատարելուց հետո, փոխարինագիր ծածկագրի երեք տարբերակով վերծանվում է.

խչ · եձ · ռք · խչ · ծա · ծջ · զք · ծն · ռք · չի
Տէ րՊ աղ տէ սա րք հԹ ոխ աթ ցի

Այսպիսով,. տեքստը վերծանվում է «Տէր Պաղտէսար քհ (=քահանայ) Թոխաթցի»։

Մեր այս վերծանությունը կարիք կունենա վերանայման, եթե բնագրից արտագրված օրինակի հիման վրա հնարավոր լինի սրբագրական մի քանի ուղղում առաջարկել ծածկագրության տեքստում, որոնց հիման վրա մեր ուղղումներից մեկ-երկուսը ճշտվեն, ծածկագրության վերծանությունը կհամարենք վերջնական։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 4107 ձեռագրում (1420 թվականից) «ամէն» բառը ծածկագրված է երկու ձևով՝ փոխարինագրի երրորդ տարբերակով և եղբայրագրով։ Բերում ենք տեքստը և վերծանությունը.

«ԺՍՍ(Հ)Դ։ ՃԲԲՁՏ»[2]։
Ամմ է ն ամմէն

---

[1] Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարմիր վանուցն Անկիւրիոյ, Անթիլիաս, 1956, էջ 824։

[2] ՀՊՄ ձեռ. № 4 107, թ. 503ա։



## 11. ԵՂԲԱՅՐԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Եղբայրագիր կոչվում է ծածկագրի այն տեսակը, ուր հայկական այբուբենի տառերը, ըստ հաջորդականության, փոխարինում են իրար։ Այսպես, «ա»-ն փոխարինում է «բ»-ին, «բ»-ն՝ «ա»-ին, «գ»-ն փոխարինում է «դ»-ին, «դ»-ն՝ «գ»-ին և այլն։

Պետք է նկատի ունենալ, որ եղբայրագիր ծածկագրության տեքստում գաղտնագրված տառը կարող է վերցված լինել ինչպես առջևից, այնպես և վերջից։

| | | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ | ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |
| բ | գ | դ | ե | զ | է | ը | թ | ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ | ճ |
| ճ | մ | յ | ն | շ | ո | չ | պ | ջ | ռ | ս | վ | տ | ր | ց | ւ | փ | ք |
| մ | յ | ն | շ | ո | չ | պ | ջ | ռ | ս | վ | տ | ր | ց | ւ | փ | ք | ա |

Եղբայրագիր ծածկագրի բանալին։

Այս խմբի ամենահին ծածկագիրը 1313 թվականից է և պահվել է Փիրղալեմյանի անտիպ «Յիշատակարաններ»-ի ժողովածուում (Փիրղալեմյանն այդ ծածկագիրն արտագրել է Վանում եղած մի ձեռագրից)։ Ծածկագրված է. «ն · ծ · լ · ժ · բ · տ · բ · ն»։ Փիրղալեմյանն այս ծածկագիրը չի կարողացել վերծանել և թողել է հետևյալ ծանոթագրությունը. «Պատուագրեալ անունս Ճնայ լինէն անբացատրելի»[1]։ Ծածկագրությունը եղբայրագիր ծածկագրով շատ ճիշտ վերծանել է պատմ. գիտ. թեկնածու Լ. Խաչիկյանը՝ «Մխիթար»[2]։

Ղալաթիայի Մատենադարանի № 265 ձեռագրում ծածկագրված է (բերում ենք տեքստը և մեր վերծանությունը).

«դ · ց · զ · ւ · բ · փ։ ղ · զ · ս · բ · յ · գ · բ · գ · ց · բ · ձ · բ · յ · լ · շ»[3]։
Գ ր ե ց ա ւ ձ ե ռ ա մ բ Ա բ ր ա հ ա մ ի ն։

Եղբայրագիր ծածկագրով գաղտնագրված մի բառ իր ձեռագրաց ցուցակում բերել է Սարգիսյանը, բայց ծանոթ չլինելով նրա բանալուն, թողել է առանց վերծանության։ Սարգիսյանի ցուցակից բերում ենք ծածկագիր այդ բառը պարունակող նախադասությունը. «Արտակայեցաւ բանքս այս ձեռամբ Ս. Բ. Տ. Գ. [Բ] Յ

---

[1] Փիրղալեմյանի հիշատակարանների ժողովածուն ՀՊՄ-ում, № 6273-ի տակ (տես էջ 123)։

[2] Լ. Խաչիկյանի ԺԴ դարի հիշատակարանների ժողովածու, էջ 93։

[3] Օգտվել ենք Բ. վրդ. Կյուլեսերյանի ցուցակից։

(վերծանվում է «Վարդան») Պոսսագիզէ ի թվաբերութեան Հայկազեան սեռի հազար հարիւր տասն և երկու»[1]։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 6644 ձեռագրի գրիչը՝ Եղիշե աբեղան, 1527 թվականին ընդօրինակած իր ձեռագրի մեջ թողել է եղբայրագիր հետևյալ ծածկագրությունը։ Բերում ենք տեքստը և մեր վերծանությունը.

բց. բկ. չճ. չց. յզ. բճ. և էկ. բս. բճ. լվ։
տր Ած ող որ մե այ և զծ աս այ իս
վչ. փր. բշ. չփշ. ճց. բփշ. բփ. չց. լ. զճ.
սու տ ան ուն կր ուն ա ւոր ի Եղ-
լռ. բճ. բզ. զճ. բճ. լ. լ. զց. ճց. բշ. բցւ.
իշ այ աբ եղ այ ի ի եր կր էն Արց.
բծ. չփ. չց. ճչ. պ. լ.
ախ ու, որ կո չ ի
ծբպ. բշ.
Խաչ էն»[2]։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 8587 ձեռագրում, որն ընդօրինակված է 1373 թվականին Գեորգ գրչի կողմից, գրված է հետևյալ ծածկագիրը, որը հիշատակարանի հետ միասին նախ հրատարակել է պրոֆ. Հ. Աճառյանը Սանասարյան վարժարանի ձեռագրաց ցուցակում[3], ապա՝ պատմ. գիտ. թեկնածու Լ. Խաչիկյանն իր XIV-րդ դարի «Հիշատակարաններ»-ի մեջ[4]։

«բ. լ. ց. ֆ. վ. ը. ճ. բ. ճ. շ. գ. լ. շ. դ. ց. զ. բ. խ. դ. զ. դ. լ. շ., որք կարդայք, յիշեցէք ց. վ. ե. կ. ջ. բ. կ. ե. մ. խ. և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս»։

Պրոֆ. Հ. Աճառյանը ծածկագրությունը թողել է առանց վերծանության, իսկ Լ. Խաչիկյանը տվել է տողատակ հետևյալ ծանոթությունը. «Ծածկագրի վերջին մասը («. . . յիշեցէք»-ից հետո) փոխարինագիր պարզ ծածկագրով կարդացվում է «զգրող սորին», իսկ առաջին մասը մեզ չհաջողվեց վերծանել»[5]։

[1] Բ. Սարգիսյանի ձեռագրաց ցուցակ, Բ հատ., էջ 537։

[2] ՀՊՄ ձեռ. № 6644, թ. 154բ։

[3] Հ. Աճառյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարյան վարժարանի ի Կարին, Վիեննա, 1900, էջ 10։

[4] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռ. հիշատակարաններ, էջ 512։

[5] Նույն տեղը։



Պարզվեց, որ Լ. Խաչիկյանի չվերծանած այս ծածկագրությունը գաղտնագրված է փոխարինագրի առաջին տարբերակով, որը, գրչական որոշ սխալներ ուղղելուց և բացթողումները լրացնելուց հետո, վերծանվում է հետևյալ ձևով։ Բերում ենք տեքստը և մեր վերծանությունը.

բ. լ. ց. ֆ. Վ. ը. ճ. բ. ճ. չ. գ. լ. շ։ դ. ց. զ. բ. խ. Դ. զ. դ. ս. դ. լ. շ
Գ ի ր ք ս է Յ ա կ ո բ ի ն։ Գ ր ե ա լ Գ է ո ր գ ի ն

## 12. ԳՈՒՄԱՐԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Այս ծածկագիրը «գումարգիր» է կոչվում այն պատճառով, որ ծածկագրված ամեն մի բառ, իր թվական արժեքով, հավասար է նշանակված երկու կամ երեք տառերի գումարին կամ բազմապատկին. այսպես, աա հավասար է բ-ի, ժժ հավասար է ի-ի, ճճ հավասար է մ-ի և այլն։ Անդրեաս Եվդոկիեցին իր այբբենարանի հավելվածում բերել է այս ծածկագրի հետևյալ բանալին.

ա · · բ գ դ ե
ա · · աա · աբ բբ բգ ·
զ · է · ը · թ ·
գգ · զգա · դդ · դդա ·
ժ · ի · լ · խ ·
եե · ժժ · ժժժ · իի ·
ծ · կ · հ · ձ ·
իիժ · լլ · լլժ · խխ ·
ղ · ճ · մ · յ ·
խխժ · ծծ · ճճ · ճճճ ·
ն · շ · ո · չ ·
մմ · մմճ · յյ · յյճ ·
պ · ջ · ռ · ս ·
յյմ · ննճ · շշ · ռռ ·
վ · տ · ր · ց ·
սռ · սս · սսռ · վվ ·
ւ · փ · ք · ֆ ·
վվռ · տտ · տտռ · րր · [1]

Գումարգիր ծածկագրի առաջին բանալին:

[1] ՀՊՄ ձեռ. № 1869, թ. 391բ։

Գումարգիր ծածկագրի մի այլ բանալի ընդօրինակված է Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 8717 ձեռագրում, որը փոքր-ինչ տարբերվում է վերև բերված բանալուց, ուստի և այն ևս անհրաժեշտ ենք համարում հրատարակել: Ծածկագրի բանալին պարունակող աղյուսակն ունի այսպիսի վերնագիր. «Գրատախտակ է իմաստասիրաց...»:

| | աա | աօա | բբ | դա | գգ | զա | դդ | ըա |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| եե | ժժ | ժեժե | իի | իեիե | լլ | լելե | խխ | խեխե |
| ծծ | ճճ | գճ | մմ | եճ | զճ | էճ | նն | նօն |
| շշ | բռ | գռ | բռբռ | բռօ | գռգռ | էռ | դռդռ | դռռ |

Գումարգիր ծածկագրի երկրորդ բանալին:

«Յիմաստունն իմանայ և տխմարն զարմանայ,
Բայց դու ջանայ և ուսիր զայս,
Զի շատ պիտոյիւք, պիտոյանայ.
Լաւ իմացիր զկրատ սորայ» (թ. 53բ):

Ծածկագրության այս տեսակը լայն չափով օգտագործված է սլավոնական և հունական մատենագրության մեջ: Օրինակ, նախկին М. Син. Библ. № 70 ձեռագրում аминь բառը ծածկագրված է. „а кк дд. лкч“[1] կամ հունարեն Par. Suppl. Gr. 482 ձեռագրում 1105 թվականից, նույն ʼΑμηʼν բառը ծածկագրված է (բերում ենք բնագիրը և վերծանությունը). „cc · xx · δδ · xexe“[2] Գարդհաուզենը
α μ η ν
ծածկագրի այս տեսակն անվանում է. „Doppelstelligen Zahlen-Kryptographie“, իսկ Կարսկին՝ „мудрая литорея“:

Խաչատուր Կաֆայեցու ժամանակագրության մեջ ծածկագրված է. «զ. իի. ա. էճ. ա. սս. յյ. վշվշ. սշսշ: է. սշսշ. է. վվ. սս. է. եռ. թռ. ժժ. ժեժե. ժժ. նն. յյ. ռռ. կթղկս. լլ. ժժ. եռ. ա. լլ. յյ. ռռ. ռշռշ. ա. եռ. բբ. ա. մմ. մմ. ժժ. լլ. յյ. խեխե. յյ. ռռ. ռռ. ժժ. ճճ. է. յյ. մմ»: (Տեքստում կատարվել է գրչական որոշ ուղղում): Վերծանվում է. «Զխաչատուր էրէց, Տէր Փիլիպոս, Կիրակոս, Վարդան, Նիկոլոս, Սիմէոն»[3]:

[1] Е. Ф. Карский, Славянская кирилловская палеография, էջ 255:
[2] Gardthausen, Griechische Paleographie, էջ 314—315:
[3] ՀՊՄ ձեռ. № 7709, էջ 395:



Ընդարձակ մի ծածկագիր բերել է Արտավազդ արքեպիսկոպոս Սյուրմեյանը իր Հալեպի ձեռագրաց ցուցակի Բ հատորում.

«բգ գգ գդ գգ ծծ բռ յյ եռ լելե
օօ եռ գռ օօ մմ բգ բռ բգ խեխե ծծ օօ գգ
օօ եռ, գռ օօ եռ բբ օօ նն բգ դռ բգ հհ
բռ բգ աա օօ բռ դռ օօ գռ ծծ, բգ էռ,
օօ շշ օօ թն մմ յյ եռ բբ, բռ յյ էռ եռ աա,
լելե եռ բգ են դռ օօ լլ օօ, նն բգ դռ օօ
գռ, դռ օօ ծծ օօ եռ ծծ դհ, բգ, էռ, բգ հհ,
գհ յյ գհ եե հհ բգ խեխե օօ նն օօ եռ
դռ, բգ էռ, օօ մմ օօ շշ, օօ լլ: գհ ծծ են
բգ գռ գդ թռ ծծ թռ եռ ծծ բռ դռ յյ
բռ, հհ ծծ մմ, լելե յյ աբ յյ գռ, օօ բռ
բգ ծի յյ գռ, բգ էռ, բբ յյ էռ, թռ, գհ
ծծ են բգ օօ ծի, ծի ծծ թհ ծծ թռ, օօ
շշ օօ թհ ծծ, օօ լելե բգ խեխե օօ դռ
բգ մմ ծծ մմ, թռ եռ ծծ բռ գռ յյ բռ
ծծ, օօ հհ գդ մմ»[1]:

Վերծանվում է. «Եթէ զիս հարցանես, Եղիազար վարդապետ եմ Սեբաստացի և առաջնորդ Սուրբ Հրեշտակապետաց տաճարին և եմ յոյժ մեղապարտ և անառակ: Յիշեցէք ի Քրիստոս մին հոգոց անելով և դուք յիշեալ լիջիք առաջի անեղ աստենին Քրիստոսի, ամէն»: Վերծանությունը կատարված է ցուցակի հրատարակչի կողմից:

Երկու փոքրիկ ծածկագիր այս-խմբից բերել է Բ. Սարգիսյանն իր ցուցակում. «Ես Մարտիրոս նուաստ քհ եկի ի Հէլիօպաւլիս թվին շշ. ճ. ի. (ՌՃԻ թ.) նն, օօ վս սս ծծ վս յյ ռռ: Ո՞վ եղբայր. զայս փակագիրս դու կարդա, թէ ոչ՝ փքիդ տուր և հազա»[2]: Ծածկագիրը վերծանվում է. «Մարտիրոս»:

«Կազմեցաւ ձեռամբ յոգնամեղ գրչի նն. ծծ. մմ. օօ. ռռ. ծծ. դպրի ի քաղաքս Կամենեց թվին ՋՂԳ (1544)»: Ծածկագիրը վերծանվում է. «Մինասի»:

Կոնիբերը, Բրիտանական թանգարանի հայկական ձեռագրերի իր ցուցակում, բերել է մի պատառիկի գումարգիր ծածկագիրը,

[1] Արտավազդ եպիսկ. Սյուրմեյան, Հալեպի ձեռագրաց ցուցակ, Բ հատոր, էջ 43—44:
[2] Բ. Սարգիսյանի ձեռագրաց ցուցակ, Ա հատոր, էջ 823:

բայց չի կարողացել վերծանել: Ծածկագիրը, գրչական փոքրիկ ուղղումներից հետո, վերծանվում է (բերում ենք ուղղված տեքստը և մեր վերծանությունը).

«Յակովբոսն և ընտանիք իւր յիշեսջիք ի Քս Յս.
նն ա [ավ սս] ժժ ավ յյ ռռ ժժ րտ ռռ
Մ ա ր տ ի ր ո ս ի քս
ռռ սս եդ տտ [ա] մմ յյ ռռ ժժ րտ ռռ
Ս տ ե փ ա ն ո ս ի քս
Ճժճժ ե[ճ] եւ Կարապետ գրիչս յիշեսջի[ք] ի Քս Յս ամէն»[1]:

Ծածկագրի մեջ ուղղված է. բնագրի առաջին շարքի չորրորդ ռռ երկտառը սս ձևով, երկրորդ շարքի երրորդ երկտառի՝ եդ—դ-ն զուրս է նետված որպես ավելորդ տառ, երրորդ տողի առաջին տառախմբի Ճժճժ-ից հետո ե տառը փոխարինված է ս-ով:

Տաշյանի ձեռագրաց ցուցակում (էջ 997) բերված է այս նույն խմբի ծածկագրով գաղտնագրված հետևյալը. «Յիշեա և Ած զձեզ յիշէ. գ · գա · ռռս · եեժ · ժեժե · մմննբն · գնյ · լիիժժ · սս · ա · մնն · ժեե · մմ · գնմն · սսռ · բբ · ժժ · դն · ննն · ժժ · մնմ · գբ · ա · եեժ ռսս. վս. դա. ւ. ա. լի. գգ. խժժի. բբա. [դն. ժեե. մնմ. գա.] գն . ժեե. ւ. սռս · ա · տռ · ա · մն · գն · ռսվռ · դե · նն» (էջ 997): Վերծանվում է. Ջեռիլ Պողատնին որդին յիշեա ի Տ[է]ր և Ա[ստուա]ծ զձեռ [յիշէ] յիւր արքայութեանն»:

Ուշադրության արժանի է, որ ծածկագրության այս տեսակը գործ է ածվել և ախթարական գրականության մեջ: Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 193 ձեռագրի հիշատակագրություններից մեջ ծածկագրված է. «յլ · ժժ · եռ · ա · ժժ · գճ · ռռ · »[2]: Վերծանվում է՝ «Կիրակոս»:

Գումարգիր ծածկագրով է գրված 1727 թվականին Ղարաբաղի Աբրահամ յուզբաշու Բաքվի ռուսական հրամանատարությանը Պողոս յուզբաշու անունով ուղղված նամակի վերնագիրը և ստորագրությունը: Նամակն ունի խիստ գաղտնի բովանդակություն: Աբրահամ յուզբաշին ռուսական հրամանատարությանը խնդրում է, որ Ղարաբաղին շտապ զինական օգնություն ցույց տան, ուստի և նա չի ցանկացել, որ նամակը թշնամու ձեռքն անցնելիս իմացվի, թե ով է ուղարկողը և ում է հասցեագրված նամակը: Վերնագիրը ծածկա-

[1] F. C. Conybeare, Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, London, 1913, էջ 240:

[2] ՀՊՄ ձեռ. № 193, թ. 175բ:



գրված է. «ՋՃ · ԷՌ · ԳԳ · ՆՆ · ՕՕ · ԵՃ · ԷԻ · ԸՃ · ԽԵԽԵ · ՋՃ · ԲՌ · ԻՆ»:

Ստորագրությունը ծածկագրված է. «ՕՕ · ԱԱ · ԵՌ · ՕՕ · ԼԵԼԵ · ՕՕ · ՃՃ · ՋՃ · ԷՌ · ԳԳ · ԵՃ · ԺԺ · ԲԱ · ՋՃ · ԷՌ. ԺԵԺԵ. ԲՌ · ԴՌ · ՕՕ · ԴՃ · ԴԳ · ՋՌ · ԺԺ»[1]:

Ծածկագիրը հեշտ վերծանելու համար նամակագիրը խորհուրդ է տվել թվահամարով վերծանել՝ «Համարով վաղ վաղ գտանես»:

Առաջին տողը գումարգիր ծածկագրով վերծանվում է. «Ուզպաշիե Պ[օ]ղոսին», իսկ վերջին տողերը՝ «Աբրահամ ուզպաշի Գուլուստանցի»:

## 13. ԵՐԿԲԱՆԱԼԻ ԾԱԾԿԱԳԻՐ

Հայկական ծածկագրերը, ընդհանրապես, վերծանվում են միայն մեկ բանալիով: Սակայն մեկ-մեկ պատահում են և երկբանալի ծածկագրեր: Դրանցից մեկի մասին մենք խոսել ենք առջևում՝ սյունագիր ծածկագրության հատվածում:

Երկբանալի ծածկագրության մի ընտիր նմուշ պահել է մեզ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 1424 ձեռագրի ծածկագրությունը՝ 1620 թվականից: Ծածկագրված է գումարգիր և փոխարինագիր բանալիներով: Երբ ծածկագրությունը գումարգրից վեր ենք ածում սովորական տեքստի, ոչինչ չի ստացվում: Վերջնականապես բացվում է, երբ ստացված տեքստում գործ ենք ածում նաև երկրորդ փոխարինագիր բանալին: Ըստ որում, փոխարինագրի մեջ գործ է ածված երեք տարբերակների բարդացումներն էլ: Բացի այդ, առաջին շարքի 11-րդ երկտառի մեջ կատարված է մի տառասխալ—այն պիտի լինի ոչ թե «շմ», այլ «շշ»: Ծածկագրության տեքստը բերում ենք վերջին տառասխալն ուղղած ձևով.

յյ. տա. յմ. րտ. շշ. նն. շշ. յմ. բբ. օս. շշ. օա. շշ.
ո. բ. շ. ք. ռ. պ. ռ. շ. դ. ր. ռ. ա. ռ.
ճճ. բա. ճճ. դա. յմ. սռ. շշ. րտ. շշ. ցո. դա. ռռ.:
մ. գ. մ. ե. շ. վ. ռ. ք. ռ. ւ. ր. ս.[2]:

Ստացված տեքստը վերծանվում է փոխարինագրով.

[1] Ա. Գ. Աբրահամյան, Մի էջ Անդրկովկասի ժողովուրդների և հայ-ռուսական հարաբերությունների պատմությունից, Երևան, 1953, էջ 223:

[2] ՀՊՄ ձեռ. № 1424, թ. 145ա:

*Փոխարինագիրը՝ ռ. բ. շ. ք. ռ. պ. ռ. շ. դ. ր. ռ. ա. ռ։*
*Վերջնական վերծանումը՝ զ մ ե ղ ա պ ա ր ա ծ ա ռ ա։*
*Որ բանալիով՝ 2 2 2 2 3 1 3 1 3 2 2 3 3*

*Փոխարինագիրը՝ մ. գ. մ. ե. շ. վ. ռ. ք. ռ. ւ. ր. ա։*
*Վերջնական վերծանումը՝ ս՛՛ լ ի շ ե լ՛՛՛ ա ղ ա չ ե մ։*
*Որ բանալիով՝ 1 2 3 2 2 2 3 2 3 1 3 1*

*Կրկնագիր ծածկագրի վերին աստիճանի հետաքրքիր օրինակ պահված է Անթիլիասում Մեծի Տանն Կիլիկիո Կաթողիկոսարանի մի խորհրդասենյակում, որի լուսանկարը մենք բերում ենք ստորև.*



Անթիլիասի կետագիր ծածկագիրը։



*Սյունագիր այս ծածկագրությունը դժվարությամբ մեզ հաջողվեց վերծանել։ Վերև բերված երկու բանալիներից և ոչ մեկով մեզ չհաջողվեց բաց անել այս ծածկագիրը։ Փորձեցինք բաց անել եղբայրագիր և փոխարինագիր ծածկագրերով։ Դարձյալ ոչինչ չստացվեց։ Հետո միայն պարզվեց, որ երկրորդ բանալին եղբայրագիրն է երեք բարդացումով—մի դեպքում տառը թողնվում է նույնությամբ, երկրորդ դեպքում վերցվում է ծածկագրված տառի նախորդ տառը հայկական այբուբենում և երրորդ դեպքում վերցվում է նախորդի առաջինը։*

*Ներկա ծածկագրությունն արժեքավոր է մեզ համար այն տեսակետից, որ այն վերջին շրջանից մեզ հասած միակ ծածկագրությունն է, որ կազմված է իրապես ծածկագրության նպատակով և գրչախաղ չէ։ Ծածկագրության հեղինակն է բանասեր Տրդատ եպիսկոպոս Պալյանը, որը ծածկագիր հայտնում է այն մասին, որ իրենք մի վանքի բակում քարե սնդուկի մեջ գանձ են թաքցրել (այդ վանքը գտնվում է Արևմտյան Հայաստանում, և նրա անունը, որոշ նկատառումով, չենք ուզում տալ)։ Բերում ենք սյունագիրը, մեր այբուբենի վերածված տեքստը և նրա վերծանությունը.*

*ցփդդտ գպվ պբխեան*
Տրդատ եպս Պալեան
*Վգշքլո կլց ոլշ*
վանքին կից շին-
*դհ վգցլգրգոլ յգկ*
ած վարժարանի մեծ
*վրբձլ շեցքիշ հ-*
սրահի շենքին ն-
*լվլվդյլշ եսշէշ*
իւսիսային դռնեն
*գոփցվ փոքրլկ*
դուրս, փոքրիկ
*քգկլշ լրջ գդգկ*
փակին մէջ եղած
*լգնեոփկշգցոքո*
սանդուխներուն
*վգցլ կողյ լգրգն*
վերի կողմ լերան

*քյցգլ րբխով երգ*
փորել տալով եառ-
*փ քբրը վջցջփղ*
ք փա[յ]տէ սնտուկ,
*ոցոփշ յըշ կգշ*
որուն մէջ կան
*գբշգգգշ լրեր թրեր*
զանազան իրեր, թէ[պ]ետ
*ցպ գյոպբփ բցիը*
ոչ այնչափ արժէ-
*քգփոց եշ ծշեց*
քաւոր են։ Խնդր-
*գյ յլոգցըք յլոց*
եմ յիշեցէք միշտ
*գաշգրիգշի*
զանարժանի[ս]։

*Այս ծածկագրությունը, մեզանից անկախ, վերծանել է Մես-*

րոպ վարդ. Գրիգորյանը։ Նա իր անձնական նամակներից մեկում առաջարկել էր մի քանի բառերի այլ վերծանում, որը և մենք շնորհակալությամբ հաշվի ենք առել այս վերծանության ժամանակ։

Բոլոր տեսակի սյունագիր ծածկագրերը վերծանելիս պիտի նկատի ունենալ, որ ծածկագրող հեղինակները հաճախ շփոթում են սյունագծերը և կետերը՝ ավելի կամ պակաս են նշանակում, ուստի և վերծանելիս, երբ ծածկագրությունը չի բացվում, պիտի փորձել գործածության մեջ դնել նախորդ կամ հաջորդ տառերը, ինչպես և՝ հայկական այբուբենի նախորդ կամ հաջորդ համարաշարքը։

## 14. ԽՌԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Խառագիր ծածկագիրը հայկական ամենապարզ և միաժամանակ ամենահետաքրքիր ծածկագրերից է։ Մեզ հայտնի է այս ծածկագրի միայն երկու տեքստը—մեկը Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանում՝ Հովհաննես գրչի 1299 թվականին ընդօրինակած ձեռագրում, իսկ մյուսը՝ Բոդլյան գրադարանի սեփականությունը կազմող հայկական մի ձեռագրում (№ 2)։ Այդ նույն խմբին պատկանող ծածկագրությունից մի տող, առանց աղբյուրը ցույց տալու, բերել է Հ. Աճառյանը իր «Հայոց գրերը» աշխատության մեջ[1]։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի խառագիր ծածկագրի տեքստը հետևյալն է.

«ղ՛ջ՛ք՛. հ՛չ՛ւ՛. ջ՛ո՛ց՛. ժ՛ճ՛ռ՛ ե՛ծ՛շ՛. խ՛ծ՛տ՛. ժ՛ճ՛ռ՛. բ՛ի՛մ՛. բ՛մ՛ս՛. բ՛ի՛ս՛. ժ՛ճ՛ռ՛. բ՛ի՛մ՛. դ՛խ՛ն՛, զ՛կ՛ց՛. է՛հ՛չ՛. դ՛խ՛տ՛. զ՛կ՛ց՛. բ՛ի՛ս՛. դ՛խ՛տ՛. ծ՛շ՛ր՛. բ՛ի՛մ՛» (թ. 174բ)։

Բոդլյան գրադարանի հայկական բաժնի № 2 ձեռագիրը, որը բովանդակությամբ գանձարան է, ընդօրինակված 1610 թվականին, պարունակում է բացակա անդամ ծածկագրության հետևյալ տեքստը.

«Արդ գրեցաւ սբ գանձարանս ձեռամբ մեղսամերկ և անհմուտ, անծան և անծող գրչի բիմ. բմս. բիս, ճձե. զկց. դխմ. լոկ անուն երիցուխ, որդի Լուցքացի պրն Նիկոլայովին»[2]։

Ո՛չ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի և ո՛չ էլ

[1] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 467—468։

[2] Տես Տիրայր արքեպ.-ի կազմած General Catalogue of the Armenian Manuscripts in the Bodlian Library at Oxford (Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի արխիվ. բաժ., Տիրան արքեպ.-ի կազմած ձեռագրաց ցուցակ, 7-րդ տետրակ, էջ 24)։



Բոդլյան գրադարանի ձեռագրերի վերև բերված ծածկագրերը մինչև այժմ ոչ ոքի կողմից դեռ չեն վերծանված։

Ծածկագրության երկու տեքստերն էլ, ինչպես տեսնում ենք, կազմված են հայկական երեք տառանիշերից։ Առաջին հայացքից դժվար չէ նկատել, որ երեք տառերի այս խումբը կազմված է որոշ սիստեմով. զուգակցված են այստեղ համարական նույն կարգի տառերը՝ վերցնելով միավորների, տասնավորների, հարյուրավորների և հազարավորների շարքից։ Այսպես, առաջին երեք տառերի թվականների արժեքն է՝ 90, 900, 9000, երկրորդինը՝ 70, 700, 7000, երրորդինը՝ 6, 600, 6000 և այլն։

Խառագիր ծածկագրի բանալին, բարեբախտաբար, մեզ անհայտ աղբյուրի հիման վրա, բերվել է պրոֆ. Հ. Աճառյանի «Հայոց գրերը» աշխատության մեջ։ Ստորև բերում ենք այդ բանալին.

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ժճռ | իմս | լյվ | խնտ | ծշր | կոց | հչւ | ձպփ | ղջք |
| ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |
| աճռ | բմս | գյվ | դնտ | եշր | զոց | էչւ | ըպփ | թջք |
| ճ | մ | յ | ն | շ | ո | չ | պ | ջ |
| աժռ | բիս | գլվ | դխտ | եծր | զկց | էհւ | ըձփ | թղք |
| ռ | ս | վ | տ | ր | ց | ւ | փ | ք |
| աժճ | բիմ | գլյ | դխն | եծշ | զկո | էհչ | ըձպ | թղջ |

Խառագիր ծածկագրի բանալին։

Պրոֆ. Հ. Աճառյանը իր այդ աշխատության մեջ բերել է ստորև բերված մեկ տող ծածկագիր տեքստը և նրա վերծանությունը.

բիմ զկց էհչ եծշ իմս դխտ բիս ծշր բիմ եծշ զկց ըձփ
Մ ո ւ ր բ ն Մ ե ս ր ո պ

Սկզբում ծանոթ չլինելով պրոֆ. Հ. Աճառյանի հրատարակած բանալու հետ, փորձեցինք մենք այս ծածկագիրը բաց անել մեզ ծանոթ հայկական ծածկագրի բոլոր բանալիներով, բայց ոչինչ չստացվեց։ Մեծ աշխատանքից հետո միայն պարզվեց, որ ծածկագրված տեքստի տառանիշերը պիտի փնտրել ո՛չ թե ծածկագրի մեջ, այլ նրանից դուրս։ Այսպես, առաջին երեք տառերի մեջ կան 90-ը, 900-ը, 9000-ը, բացակա է 9-ը, այսինքն՝ թ-ն և այս է, որ ծածկագրված տառն է հանդիսանում։ Երկրորդի մեջ կա՝ 70, 700, 7000, բացակայում է 7-ը, այսինքն՝ է-ն։ Երրորդի մեջ կա՝ 6, 600, 6000, բացակայում է 60-ը, այսինքն՝ կ-ն և այլն։ Սկզբունքը

մեզ հայտնի դառնալուց հետո, առանց դժվարությունների, վերծանեցինք վերև բերված ծածկագրերը:

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 193 ձեռագրի տեքստը վերծանվում է.

դ՛Ջ՛ք. հ՛չ՛ւ. զ՛ո՛ց. ժ՛ճ՛ռ. ե՛ծ՛շ. խ՛ն՛տ. ժ՛ճ՛ռ. բ՛ի՛մ. բ՛մ՛ս.<br>
թ   է   կ   ա   ր   դ   ա   ս   ի-

բ՛ի՛ս. ժ՛ճ՛ռ. բ՛ի՛մ. դ՛խ՛ն. զ՛կ՛ց. է՛հ՛չ. դ՛խ՛տ. զ՛կ՛ց. բ՛ի՛ս.<br>
մ   ա   ս   տ   ո   ւ   ն   ո   մ-

դ՛խ՛տ. ծ՛շ՛ր. բ՛ի՛մ:<br>
ն   ե   ս

Այսպիսով, վերծանվում է. «Թէ կարդաս՝ իմաստուն ոմն ես». այս նույնը վերծանված, գրված է ծածկագրի կողքում:

Բոդլյան գրադարանի վերև բերված ծածկագիրը վերծանվում է.

ԲԻՄ. ԲՄՍ. ԲԻՍ. ՀՁԻ. ՋԿՋ. ԴԽՄ:<br>
Ս   ի   մ   է   ո   ն

Բոդլյան գրադարանի հիշատակարանի այդ հոդվածը վերծանված ծածկագրով կկարդացվի. «Արդ գրեցաւ սբ գանձարանս ձեռամբ մեղաներկ և անհմուտ անձան և անծող գրչի Սիմէոն լոկ անուն երիցուիս, որդի Լուցքացի պարոն Նիկոլայովին»:

## 15. ԱՂՎԱՆԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Այս ծածկագիրը դարձյալ հայկական տառանիշերի վրա է ձևված, սակայն կատարված փոփոխությունն այնքան մեծ է, որ առաջին հայացքից դժվար է նկատել այդ: Եվ եղել են դյուրահավատ հայագետներ, որոնք, հիմնվելով այս ծածկագրության տեքստերի սովորական վերնագրերի վրա (որոնք ունենում են «Աղուանից գիրն է» վերնագիրը), կարծել են, թե, իրոք, այդ մեր հարևան աղվանից այբուբենն է: Սակայն պրոֆ. Հ. Աճառյանը համոզեցուցիչ ձևով ապացուցել է, որ այդ ոչ թե աղվանից գիրն է, այլ հայկական ծածկագիրը: Շփոթությունը, ինչպես ասացինք, առաջացել է վերնագրից, իսկ վերնագիրը, ըստ պրոֆ. Աճառյանի, նախնական օրինակում եղել է ոչ թե «Աղուանից գիր», այլ «աղուեսագիր», իսկ աղվեսագիրը ունեցել է ծածկագրի նշանակություն, ինչպես որ ծածուկ խոսելու լեզուն կոչվում է «ծտի լեզու»: Ծածկագրի այս տեսակը չպիտի շփոթել Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 7117 ձեռագրի «Աղուանից գրի» հետ, որը հրատարարակել են պրոֆ. Շանիձեն և պրոֆ. Ի. Աբուլաձեն:



Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագրերում այս ծածկագրի մի քանի բանալիները կան, որոնցից ավելի գործածականը № 3124 ձեռագրի բանալին է, որը բերում ենք այստեղ.

Այս է ճղուանից այբուբենն:

Աղվանից ծածկագրի բանալին:

## 16. ԲԺՇԿԱԿԱՆ ԾԱԾԿԱԳԻՐ

Բժշկական կոչվող ծածկագրի մասին առաջին անգամ խոսել է բանասեր Ն. Քարամյանը 1886 թվականին՝ իր «Քսան և մեկ նշանագրեր՝ մի կորած այբուբենից» վերնագրով հոդվածում և հրատարակել Բեռլինի Արքունական մատենադարանի հայկական մի ձեռագրից (Ms. Orient. quart 805): Բերում ենք այս խմբի ծածկագրության հետևյալ տեքստը.

(թ. 103բ):

Քարամյանցը ճիշտ վերծանելով ծածկագրությունը՝ «Յիշեցէք զմեղապարտ Յօվասափ սարկաւագն» ձևով, սխալ եզրակացության է հանգել տառաձևերի նկատմամբ՝ համարելով նրանք աղվանական գրեր[1]: Ըստ երևույթին նրան շփոթության մեջ է գցել նշված

[1] Տես «ZDMG», XL, էջ 315—319:

տեքստի կողքին եղած «Գրի աղւանից» հիշատակությունը, որն իրապես ունի ոչ թե աղվանից գիրն է, այլ՝ ծածկագիր է իմաստը։

Այս նույն ծածկագրին 1902 թվականին անդրադարձել է Ֆ. Մուրատը «Հանդէս ամսօրեայ»-ում տեղավորած իր «Նշանագիրք իմաստնոց» հոդվածում և, հակառակ Քարամյանցի, ապացուցել, որ այն ոչ թե աղվանական գիր է, այլ սովորական ծածկագրություն։[1]

Բժշկական ծածկագրության մասին հանգամանորեն խոսել է պրոֆ. Հ. Աճառյանն իր «Հայոց գրեր»-ի մեջ։ Նա է ծածկագրության այս տեսակին «բժշկական» անվանել՝ նկատի ունենալով այն հանգամանքը, որ արտասահմանից իրեն ուղարկված խմբի այդ ծածկագրության մի տեքստը ընդօրինակված է եղել Սեբաստիայում գտնված մի ձեռագրում, որը բովանդակությամբ բժշկարան է եղել։

Պրոֆ. Հ. Աճառյանը Քարամյանցի վերև բերված ծածկագիր տեքստի և Սեբաստիայից ստացած ծածկագիր բառերի հիման վրա կազմել է ծածկագիր 26 նշանագրերի ցանկը, իսկ հայկական այբուբենի մյուս 12 տառանիշերի նշանագրերը մնացել են անհայտ[2]։

Ի դեպ, պրոֆ. Հ. Աճառյանի արտասահմանից ստացած մի տեղեկությունից երևում է, որ բժշկական ծածկագրության բանալին հայտնի է եղել հայ ոսկերիչների նեղ շրջանակում, որոնք իրենց արհեստի գաղտնիքները գաղտնագրելիս են եղել այս ծածկագրով, սակայն խուսափել են հայտնել ծածկագրության բանալին, որովհետև «անոնք,—ինչպես գրում են պրոֆ. Հ. Աճառյանին,—իրենց վարպետին երդում տված են եղել, ուստի ծածկագրին գաղտնիքը երևան չեն հաներ»[3]։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանում, բարեբախտաբար, գտնվեցին այս խմբի ծածկագրերի մի քանի տեքստեր, որոնց հիման վրա հնարավոր է դառնում լրացնել պրոֆ. Հ. Աճառյանի կազմած այս ծածկագրի այբուբենի պակաս ցանկը և վերծանել չվերծանված ծածկագրերը։

Անհրաժեշտ ենք համարում նախ բերել բժշկական ծածկա-

[1] «Հանդէս ամսօրեայ», 1903, էջ 334։
[2] Հ. Աճառյան, Հայոց գրերը, էջ 472—473։
[3] Նույն տեղը, էջ 473։



գրության մեր կազմած ամբողջական բանալին, ապա տալ ծածկագիր տեքստերը և նրանց վերծանությունը.

| | | | |
|---|---|---|---|
| ա | ժ | ճ | ռ |
| բ | ի | մ | ս |
| գ | լ | յ | վ |
| դ | խ | ն | տ |
| ե | ծ | շ | ր |
| զ | կ | ո | ց |
| է | հ | չ | ւ |
| ը | ձ | պ | փ |
| թ | ղ | ջ | ք |

Բժշկական ծածկագրության բանալին։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 6644 ձեռագրի՝ գրիչ՝ Եղիշե կրոնավորը 1527 թվականին իր ընդօրինակած ձեռագրի մեջ թողել է բժշկական հետևյալ երեք ծածկագիր տեքստերը.

Առաջին ծածկագրությունն ունի հետևյալ տեքստը.

«Թէ կարդաս ես քեզ ծառայ եմ»։

Վերծանվում է. «Զարևելցիս զԵղիշայ կրաւնաւոր և զհայրն իմ Մալիք սուլտանն»։ Կողքին գրված է ծածկագրության վերծանությունը միայն «զԵղիշայ» վերծանելու փոխարեն սխալմամբ վերծանվել է «Եղիեայ»։

[1] ՀՊՄ ձեռ. № 6644, թ. 144բ։

Երկրորդ ծածկագրությունն ունի հետևյալ տեքստը.

Վերծանվում է. «Թողութի արարէք ինձ Եղիշայ կրաւնաւորի։ Եւ ես մոլորեցայ ի երկրէն իմ, որ յայժմ Խաչէն կոչի։ Ե[ւ]ս յիշեցէք զմեծ պապն իմ գծալալղալէն որ այժմ Ջալալեցի կոչի յազգն մեր»։ Այս վերծանությունը այլ ձեռագրով գրված է ծածկագրության ներքին լուսանցքում։

[illegible]

Թողութի արարէք ինձ Եղիշայ կրաւնաւորի. և ես մոլորեցայ
ի երկրէն իմ որ յայժմ Խաչէն կոչի ես իշեցէք զմեծ պապն
իմ. զծալալղալէն որ յայժմ Ջալալեցի կոչի յազգն մեր...

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռ. № 6644, բ. 163ա:

Երրորդ ծածկագրության տեքստը, համեմատաբար, ավելի ընդարձակ է։ Նա վերծանվում է. «Գրեցաւ սակաւ աշխատանքս, որ կոչի գաւազանք ի սբ քաղաքս յԵղմ ի հռչակաւոր վանքս Հայոց ի սբ Յակոբ ձեռամբ մեղաւոր գրչի Հայրապետ կրաւնաւորի Սեպաստեցոյ վասն որոյ երես անկեալ աղաչեմ զհանդիպողսդ թողութի մեղաց խնդրել Այ բազմայմեղ գրչիս և ծնողաց իմոց և եղբարց և քերց և յամ զարմից՝ կենդանեաց և ննջեցելոց և Քս զձերն թողցէ նախ, և ապայ՝ զմերն, և նմայ փառք յաւիտեանս ամէն յոյժ ձմեռն եղև Եղմ, և 6 անգամ ձիւն երեկ, որ ոչ ոք յիշէր թվկնին Հայոց ՋՀՋ»։



Ստորև բերում ենք այդ ծածկագրության լուսանկարը։



Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 6644 ձեռ., բ. 165բ.:

Ծածկագրության վերջում գրիչը թողել է հետևյալ ուշագրավ հիշատակագրությունը. «Խիստ հեշտ է՝ թէ շատ որոնես»: Նույն էջի ներքին լուսանցքում հետագայի անվարժ գրչությամբ ավելացված է. «Ես Կիրեղս ուսայ առանց վարպետի. գաւազանայգիր է»:

Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն.-ի № 6731 ձեռագիրը, որն ընդօրինակված է Վանեցի Աստուրի որդի Տեր Հովսափի կողմից 1652 թվականին, ունի հետևյալ ծածկագիր հիշատակարանը.



Հայկական ՍՍՌ Պետ. Մատեն. № 6731, թ. 68ա:

Վերծանվում է. «Ձի գքո [է] արքայութիւն: Թվ. ՌՃԳ: Վանեցի է»:

Կիպրոսի հայկական ձեռագրական ժողովածուի № 16 ձեռագիրը, որն այժմ Անթիլիասի Կիլիկիայի Կաթողիկոսության սեփականությունն է, ունի հետևյալ ծածկագիր հիշատակարանը.

Անթիլիասի Կաթողիկոսարանի Կիպրոսի ձեռագրական ֆոնդ, №-16, թ. 68ա:

Վերծանվում է. «Զմեղապարտ Յովասափն յիշեցէք ի Տ[է]ր. զՄուրատն»:

Անկյուրիայի ձեռագրաց ցուցակում հրատարակվել է Կարմիր վանքի ձեռագրական ժողովածուի № 138 ձեռագրի էջ 342-ում պարունակված հետևյալ ծածկագիրը.

«Արդ գրվեցաւ ձեռամբն մէկ մէկ բ

Ցուցակ ձեռագրաց Կարմիր վանուցն Անկյուրիո, էջ 676:



Բ. վրդ. Կյուլեսերյանը, որ ձեռագրաց ցուցակի կազմողն է, չի կարողացել վերծանել ծածկագրությունը և ցավով նշել է, որ «տվյալ ձեռագրի մասին մյուս տեղեկությունք կպակսին: Գոնե գրչին անունը պիտի գիտնայինք, եթե կարելի ըլլար մեզ քակել 342ա էջի ծածկագրությունը»[1]:

Մեզ, բարեբախտաբար, հաջողվեց քանդել էջ 342ա-ի այդ ծածկագրությունը: Նա, ինչպես պարզվեց, կազմված է գումարգիր օղակեռագիր և բժշկական խառը ծածկագրերից: Բերում ենք ծածկագիրը և մեր վերծանությունը.

մէկ մէկ բ 000 ... 0000 ... 0 ... 00
դ (ա + ա + բ = դ) պ ի . ր է ղ
ի ե ա յ ի ն. ա մ ξ ն:

Այսպիսով, ծածկագրության վերծանությունից պարզվում է, որ Անկյուրիայի № 138 ձեռագրի գրիչը դպիր Եղիան է հանդիսանում:

## 17. ՇՐՋԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Շրջագիր ծածկագիրը կազմված է սովորական հայկական գրերից, միայն թե տառերն այստեղ գրվում են շուռ տված ձևով: Այս խմբի ծածկագրերը վերծանելու համար պետք է պահել հայելու առջև, որը շուռ է տալիս ուղիղ ձևի և դյուրությամբ ստեղծում կարդալու առանց դժվարության: Կարելի է նաև ծածկագիրը հարազատորեն պատճենահանել թափանցիկ թղթի վրա և, լույսի առջև պահելով, կարդալ հակառակ կողմից: Ծածկագրությունը, ընդհանրապես, պարապիր ձևով դասավանդվել է հայ գրչության դպրոցներում:

Բերում ենք ստորև Անդրեաս Եվդոկեցու շրջագիր բոլորգիր ծածկագրության բանալին, որը նա կազմել է 1585 թվականին աշակերտներին դասավանդելու նպատակով.

[1] Ցուցակ ձեռագրաց Կարմիր վանուցն Անկյուրիո, էջ 673:

ե թ ը ժ ր ժ ր թ դ ա
ձ ր ճ ծ ի ճ վ յ վ
ս ռ ջ ա ջ ո ջ մ ւ ն
:Ֆ ժ գ փ ւ ը ղ ա ի

Շրջագիր ծածկագրի բանալին:[1]

Շրջագիր ծածկագրության նմուշներ մեզ պատահում են նաև վիմագիր արձանագրությունների մեջ: Ծածկագրության այս խմբին է պատկանում բանասեր Գ. Տեր-Մկրտչյանի Սևանի կղզում հայտաբերած վիմագիր մի արձանագրությունը (1448 թ.), որի տեքստը և վերծանությունը նա տպագրել է «Շողակաթ»-ի մեջ:

Շուռ տված կողմով կարդացվում է. «Սա է Փրկիչ աշխարհի և լոյս հաւատացելոց, որք երկրպագէք զԿ[արա]պ[ե]տ ք[ա]հ[անա]յ աղաւթս յիշեցէք Ձ[ա]ք[ա]ր կազմող ՊՂԲ»[2]:

Հայկական ՍՍՌ Ճարտարապետական հնությունների պահպանության կոմիտեի արշավախումբը 1944 թվականին Հաղբատի մեծ ժամատան տապանաքարերի մեջ հայտաբերել է շրջագիր-ծածկագիր մի տեքստ ևս 15-րդ դարից[3]:

## 18. ՎԱՆԿԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Այս խմբի ծածկագրերը կազմվում են երկու կամ երեք տառից բաղկացած վանկերից, որոնց մեջ միայն առաջին տառը ունի նշանակություն, իսկ մյուսները կցորդներ են և դրված ծածկագրու-

[1] Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարան, ձեռ. № 1869, թ. 344ա:
[2] Գ. Տեր-Մկրտչյան, Աչից ձախ հայ գրություն («Շողակաթ», Վաղարշապատ, 1913, էջ 139): Հմմտ. Հ. Ղ. Ալիշան, Սիսական, էջ 79:
[3] Տես Կ. Ղաֆադարյան, Ավանի երկլեզվյան ծածկագիր արձանագրությունը, էջ 13—14:



թյան բարդացման համար: Կցման սկզբունքը հետևյալն է. ծածկագրվող բաղաձայն տառին կցվում է ատ, իսկ ձայնավորին միայն տ: Առանց ծածկագրելու գրվում է ու երկհնչյունը:

Այս ծածկագրով գաղտնագրված են Մխիթար Անեցու թվաբանական խնդիրները: Բերենք նրանցից երկու օրինակ.

Ութերորդ խնդիրը. «Մարդ մի տղային երետ 1 (100) սպիտակ՝ թէ 100 հաւ գնէ: Նա գնեաց զղազն սպիտակ, զտանուհաւն մեկ սպիտակ, զճնճղուկն՝ քսան մէկ սպիտակ: Տես թէ քանի՞ եղև ղազն, և զհաւն և զճնճղուկն»[1]:

Հարցումին ծածկագիր պատասխանված է. «Ղատատզատնատ ԺԹ, նատատուատնատ՝ Ա, նատնատնատղատուկատնատ Ձ», որ վերծանվում է. «Ղազն՝ ԺԹ (19), նաւն՝ Ա (1), ննղուկն՝ Ձ (80)»:

Տասներորդ խնդիրը. «Երամ մի հաւ կու գնային: Հաւ մի ի դէմ ելաւ և ասաց. Բարի եկիք հարիւր հաւ: Ասացին. Մեք չեմք հարիւր. մեք, և հանչանք մի քան զմեզ, ու մեր կէսն, ու կիսու կէսնու դուք՝ հարիւր եմք: Տես թէ քանի՞ են եղել»:

Հարցումին ծածկագիր պատասխանված է. «Ետրատսատունատուվատետցատ»: Ծածկագիրը վերծանվում է. «Երսուն ու վեց»:

## 19. ԱՂՅՈՒՍԱԿԱՎՈՐ ԳՐՉԱԽԱՂ ԾԱԾԿԱԳԻՐ

Հայկական ձեռագրերում պատահում են և աղյուսակավոր գրչախաղ-ծածկագրեր, որոնցից որպես նմուշ ստորև բերում ենք Ներսես գրչի թողած աղյուսակը[2]: Ծածկագրի վերծանությունը պետք է սկսել կենտրոնի շղատառ «Զ»-ից և ընթանալ չորս ուղղությամբ՝ վերև, ներքև, աջ և ձախ: Ձեռագրում մեզ հաճախ են պատահում նման աղյուսակ-ծածկագրեր, որոնք վերծանելու համար անհրաժեշտ է փորձեր կատարել զանազան ուղղություններով՝ նայած թե ինչ սկզբունքով են կազմված:

[1] ՀՊՄ ձեռ. № 2961, թ. 124բ:
[2] ՀՊՄ ձեռ. № 1242, թ. 133բ:

| | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | ա | ե | շ | ի | յ | չ | ի | ր | ի | չ | յ | ի | շ | ե | ա | |
| ա | ե | շ | ի | յ | չ | ի | ր | գ | ր | ի | չ | | ի | շ | ե | ա |
| ե | շ | ի | յ | չ | ի | ր | գ | ս | գ | ր | ի | չ | յ | ի | շ | ե |
| շ | ի | յ | չ | ի | ր | գ | ս | է | ս | գ | ր | ի | չ | յ | ի | շ |
| ի | յ | չ | ի | ր | գ | ս | է | ս | է | ս | գ | ր | ի | չ | յ | |
| յ | չ | ի | ր | գ | ս | է | ս | ր | ս | է | ս | գ | ր | ի | չ | յ |
| չ | ի | ր | գ | ս | է | ս | ր | ե | ր | ս | է | ս | գ | ր | ի | չ |
| ի | ր | գ | ս | է | ս | ր | ե | ն | ե | ր | ս | է | ս | գ | ր | ի |
| ր | գ | ս | է | ս | ր | ե | ն | Ն | ն | ե | ր | ս | է | ս | գ | ր |
| ի | ր | գ | ս | է | ս | ր | ե | ն | ե | ր | ս | է | ս | գ | ր | ի |
| չ | ի | ր | գ | ս | է | ս | ր | ե | ր | ս | է | ս | գ | ր | ի | չ |
| յ | չ | ի | ր | գ | ս | է | ս | ր | ս | է | ս | գ | ր | ի | չ | յ |
| ի | յ | չ | ի | ր | գ | ս | է | ս | է | ս | գ | ր | ի | չ | յ | ի |
| շ | ի | յ | չ | ի | ր | գ | ս | է | ս | գ | ր | ի | չ | յ | ի | շ |
| ե | շ | ի | յ | չ | ի | ր | գ | ս | գ | ր | ի | չ | յ | ի | շ | ե |
| ա | ե | շ | ի | յ | չ | ի | ր | գ | ր | ի | չ | յ | ի | շ | ե | ա |
| | ա | ե | շ | ի | յ | չ | ի | ր | ի | չ | յ | ի | շ | ե | ա | |

*Ամեն կողմից կարդացվում է.* «Ներսես գրիչ յիշեա»:



## 20. ՀՈՒՆԱՏԱՌ ԾԱԾԿԱԳՐԵՐ

*Հունատառ հայերեն ծածկագրերի մեջ հայերեն բառերը գրվում են հունարեն տառերով, իսկ հունարեն այբուբենում չեղած տառերի համար գործ են ածվում հայերեն տառանշաններ կամ նոր նշանագրեր:*

*Այս խմբի ծածկագիրը պահել է Երուսաղեմի Ազգային մատենադարանի № 1297 ձեռագիրը, որն ընդօրինակված է 1163 թվականին Հովսեփ գրչի կողմից Հովհաննես Որոտնեցու պատվերով և ունի իմաստասիրական բովանդակություն: (Ծածկագրությունը բերված է ներկա աշխատության երկրորդ գլխում):*

*Ծածկագրված է հետևյալ սկզբունքով.*

*ա) Բնագիրը, հիմնականում, ծածկագրված է հունարեն տառերով: Հունարեն այբուբենից օգտագործված է՝* α, ε, ξ, ϑ, λ, ϰ, γ, ι, ν, ο, ϛ, τ, σ, φ, δ *տառերը:*

*բ) Հայկական այբուբենի այն տառերը, որոնք չկան հունական այբուբենի մեջ, լրացվել են հայերեն այբուբենից՝ բ, հ, խ, ծ, ձ, չ, ջ, ւ, ք տառերով:*

*գ) Ծածկագրությունը բարդացնելու նպատակով դ, պ, վ, ց տառերի համար ստեղծվել են նոր նշանագրեր:*

*Ծածկագրված է հետևյալ տեքստը.*

*«Վասն զի անձամբ անձին յաղթելն քան զամենայն յաղթութիւն առաջի և քաջ է:* Որփեւս»[1]*:*

*«Մի տեսանեն և մի ինչ ասեն, և այդն ամենայն խուլ և համր է. Եւրիպիդէս»:*

*«Հարեցից արօրս իրաւացիկ և զգրունս ահեղից ի պղծոց»:*

«Աշխարհացուցին եկարագրեալ այսպիսի. *Որ զքարինս գգուի, ատակք լինի: Որ ի ծով սերմանէ, զձկունս կերակրէ: Արեգակն կուրաց ոչ ծագէ և ոչ մտանէ»:*

*Զմմառի Մատենադարանի № 2 ձեռագիրը պարունակում է հունատառ հայերեն հետևյալ ծածկագրերը, որոնց մեծ մասի կողքին տրված է նրանց վերծանությունը: Բերում ենք այս ծածկագրից մի նմուշ իր վերծանության հետ միասին:*

CωՐBHλ ՐЄՂωπ

Ս ա մ ու է լ մ ե ղ ա պ-

ωPT ГPOՂ

ա ր տ գ ր ո ղ

[1] *Ընդգծված բառերը գրված են սովորական հայերենով:*

Այս ձեռագիրն արժեքավոր է մեզ համար ոչ միայն որպես ծածկագրի տեսակ, այլ որ նրա հեղինակն է հայ մատենագրության աչքի ընկնող դեմքերից մեկը՝ Սամվել Անեցին։ Ձեռագիրը հանդիսանում է նրա ինքնագիրը։ Գրված է 1178 թվականին։

## 21. ՆԵՐՍԻՍՅԱՆ ԾԱԾԿԱԳԻՐ

Ներսիսյան է կոչվում այն պատճառով, որ նա ստեղծվել և գաղտնի նամակագրության մեջ գործ է ածվել Ներսես Աշտարակեցու կողմից։ Այս ծածկագրով Աշտարակեցուց մի քանի նամակներ են հասել մեզ[1]։ Այդ նամակները վերծանեց և ծածկագրության բանալին կազմեց անվանի հայագետ Գ. Տեր-Մկրտչյանը։ Բերում ենք ծածկագրի բանալին.

| | | | |
|---|---|---|---|
| ա | ի | յ | տ |
| բ | լ | ն | ր |
| գ | խ | շ | ց |
| դ | ծ | ո | ւ |
| ե | կ | չ | փ |
| զ | հ | պ | ք |
| է | ձ | ջ | և |
| ը | ղ | ռ | օ |
| թ | ճ | ս | ֆ |
| ժ | մ | վ | |

Ներսիսյան ծածկագրի բանալին

[1] Այս մասին տես «Արարատ» ամսագիր, 1888, էջ 44։



## 22. ԹԱԼԻՍՄԱՆԱԳԻՐ ԾԱԾԿԱԳԻՐ

Թալիսմանագիր ծածկագրերը մեզ մոտ գործածական գաղտնագրերից են։ Նրանք ընդօրինակված են լինում գլխավորապես աստղաբաշխական, հմայական բնույթի ձեռագրերում։ Մեր նպատակից դուրս է այդ հարցով զբաղվելը, սակայն հետագա ուսումնասիրողների գործը հեշտացնելու համար անհրաժեշտ ենք համարում հրատարակել թալիսմանագրի երեք բանալի։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի առաջին բանալին[1].

Այս նշանագիր է որ գրեն ի տլսմն.
գալս վս այն գրեմ, որ ի տեսանել
ինչ գիր նա համեմատելով լուծել
գնոսալ։

Թալիսմանագրի առաջին բանալին։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագրի երկրորդ բանալին[2].

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | ը | թ |
| ժ | ի | լ | խ | ծ | կ | հ | ձ | ղ |

[1] ՀՊՄ ձեռ. № 8716, թ. 57ա։
[2] ՀՊՄ ձեռ. № 2716, թ. 52ա։

ճ մ յ ն շ ո չ պ ջ

ռ ս վ տ ր ց ւ փ ք

Թալիսմանագրի երկրորդ բանալին։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռագրի երրորդ բանալին[1].

ա բ գ դ ե զ է ը թ

ժ ի լ խ ծ կ հ ձ ղ

ճ մ յ ն շ ո չ պ ջ

ռ ս վ տ ր ց ւ փ ք

Թալիսմանագրի երրորդ բանալին։

## 23. ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԾԱԾԿԱԳԻՐ ԱՌԵՂԾՎԱԾՆԵՐ

Ձեռագրերում հաճախ են պատահում թվականների առեղծվածներ, որոնց մեծ մասը սովորական թվագումար ծածկագրեր են։ Վերծանելու համար անհրաժեշտ է տրված բառի տառերը գումարել ըստ նրանց թվական արժեքի։

[1] ՀՊՄ ձեռ. № 8716, թ. 52ա։



Սարգիս Եվդոկիացին իր ընդօրինակած ձեռագրի թվականը հայտնում է իր հիշատակարանի հետևյալ քառյակում.

«Ի թվականիս Հայոց մեծի,
Շող բառս նըշան քեզ յայտնեսցի,
Կենըն պատուով ի բաց դիցի,
Այլըն ընդ նըմին բարձեալ լիցի»[1]։

Այստեղ թվականը ծածկագրված է Շող բառի տակ, որից, սակայն, պիտի հանել «կենըն պատուով», այսինքն՝ «կ» տառը իր թվական նշանակությամբ՝ 60 (պատվի նշան կրող տառերը թվական են, այդ նկատառումով է ասում «կենըն պատուով»)։ Ծածկագրությունը վերծանվում է. Շ(500)+Ո(600)+Ղ(90)+ 551 (հայկական թվականի տարբերությունը) =1741, հանած 60, կլինի 1681։ Այսպիսով, Սարգիս Եվդոկեցու ձեռագիրը գրվել է 1681 թվականին։

Երեմիա Քյոմյուրճյանը իր «Ստամպօլայ պատմութեան» գրության ժամանակը հայտնում է իր հիշատակարանի հետևյա քառյակում.

«Բաւ է գիտնոց իմաստնոց՝
Ձվերոյգրեալս որ թէ իմանան.
Հայ թուականօք դա զինչ է
Երեմիաս յանգեալ գիւր ընծայն»[2]։

Ծածկագրությունն այս քառյակում գտնվում է երրորդ տողում, որը մեծ վարպետությամբ շարադրված է երկիմաստ. մեկ կարելի է հասկանալ, թե «Հայկական թվականը ի՞նչ թվական է», իսկ մյուսը, թե՝ «Հայկական թվականը—դա (թվագումար) «զինչ է»։ Քյոմյուրճյանը, իհարկե, երկրորդ իմաստով է գրել։ Զինչ է թվականը վերծանվում է. Զ(6)+Ի(20)+Ն(400)+Չ(700)+Է(7)+ +551 (հայկական թվականի տարբերությունը)=1684։ Հետևապես, այդ թվականին է Քյոմյուրճյանը գրել իր պատմությունը։

Վիեննայի Մխիթարյանների մատենադարանի № 321 ձեռագրում Իգնատիոս գրիչը գրության ժամանակը հայտնում է հետևյալ ծածկագրությամբ.

«Ետ ինձ հիքոյս մասն ինչ չիթի,
Աւարտ ածել գճառս խորհրդի,
Սուրբ և յանմահ պատարագի,

[1] ՀՊՄ ձեռ. № 3567, թ. 18ա։

[2] Երեմիա Քյոմյուրճյանի Ստամպօլայ Պատմութիւն, Վիեննա, 1913, էջ 120։

Ի ձմերային ամանակի,
Եւ դըժընդակ օդոյ ցըրտի,
Զոր թիւս եկեալ էր ն՚այսմ յամի,
Քառեակ, կանոն յանջատելի,
Գարնանային յամսոց նախկի,
Կալուածըն կայր հընդից երրի...»[1]։

Գրության տարին «Քառեակ, կաճառ»-ն է, որ վերծանվում է քառեակ = 4 + կանոն Կ(60) + Ա(1) + Ծ(100) + Ա(1) + Ռ(1.000) + +551 (հայկական թվականի տարբերությունը) =1717 թ.։ Ուրեմն, Իգնատիոս գրիչն իր ձեռագիրը գրել է 1717 թվականին։

Ղազար գրիչը իր ընդօրինակած ձեռագրի թվականը հայտնում է հետևյալ քառյակում.

«Ներելովն Աստուծոյ աւարտեցի,
Տխեղծ մատամբ շարադրեցի,
Ի թվականի Հայոց քանակի,
Քառից կրկին հարիւր չափի,
Քառիւ մի պարզ երկ յիսնեկի
Եւ ընդ նմին երկ հարիւրի»[2]։

Ծածկագիր այս թվականը վերծանվում է. «քառից կրկին հարիւր չափի» (4×2×100=800), «քառիւ մի պարզ երկ յիսնեկի» (4+(2×50)=104) «և ընդ նմին երկ հարիւրի» (+200), ուրեմն՝ 800+104+200+551=1655 թ.։ Սխալ է անշուշտ Արտավազդ արքեպիսկոպոսի վերծանած 1607 թվականը (էջ 56)։

Բժշկապետ Ամիրդովլաթն իր ծննդյան թվականը հայտնել է իր «Անգիտաց անպէտ»-ի հիշատակարանի չափածո քառյակում.

«Զորս տարի տիւ և գիշեր աշխատեցայ,
Ի բազում օրինակաց արարի զսա...
Ես բժիշկ Ամիրդովլաթ, հայրս՝ Եղիայ,
Որ ծնեալ եմ ի քաղաքն Ամասիայ,
Հայոց թվականըն լմնայ...»[3]։

Ամիրդովլաթի ծածկագիր լմնայ թվականը վերծանվում է. Լ(30)+Մ(200)+Ն(400)+Ա(1)+Յ(300)+551 (հայկական թվականի

---

[1] Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարյանց ի Վիեննա, Վիեննա, 1895, էջ 765։

[2] Ա. արքեպիսկ. Սյուրմեյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Հալեպի և Անթիլիասի ու մասնավորաց, Հալեպ, 1936, էջ 57։

[3] Ամիրդովլաթ, Անգիտաց անպէտ (հիշատակարանի վերջում)։



տարբերությունը) =1482 թ.—այդ թվականին է ծնվել Ամիրդովլաթը։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 1864 ձեռագրի հիշատակագիրը իր ընդօրինակած ձեռագրի թվականն է համարում «նայ է զի եկայ», այսինքն՝ Ն(400)+Ա(1)+Յ(300)+Է(7)+Զ(6)+ +Ի(20)+Ե(5)+Կ(60)+Ա(1)+Յ(300)+551 (հայկական թվականի տարբերությունը)=1651 թ.։ Ձեռագրի գրչության ժամանակն է ուրեմն 1656 թվականը[1]։

Ալեքսան երեցը իր ձեռագրի թվականը հիշում է հետևյալ ծածկագրով. «Ի թվականիս մեր Հայկազնեայ, որ պատահեցաւ անուն ԱՆՆայ...»։ Թվականը ծածկագրված է «Աննայ» բառի տակ, որը վերծանվում է. Ա(1)+Ն(400)+Ն(400)+Ա(1)+Յ(300)+551= =1653 թ.։ Այսպիսով, Ալեքսան երեցի ձեռագրի գրության թվականն է 1653[2]։

Եղիա գրիչը իր չափածո հիշատակարանում գրության թվականի մասին գրում է.

«Տրամաբանութիւնս աւարտեցի,
Վատ ձեռամբս, Եղիայ դպրի,
Ի թիվն ՆՈՃԼԵ, ամսոյն արէի,
Սխալանագրացս իմ ամօթալի,
Ձեր ոտից հող և փոշի»[3]։

ՆՈՃԼԵ թվականը հավասար է՝ Ն(400)+Ո(600)+Ճ(100)+ +Լ(30)+Ե(5)+551=1686 թ.։ Ձեռագիրը, ուրեմն, գրված է 1686 թվականին։

Ղալաթիայի Մատենադարանի № 262 ձեռագրի գրիչը իր ձեռագրի գրչության ժամանակը յայտնում է հետևյալ չափածո հիշատակարանում.

«Գրեցաւ այս ըռամգիրքըս
Ձեռամբ մեղօք մրճփեալ ողմիս,
Պաղվանդ (?) անուամբ ոչընչիս։
Արա ի թիւ ՁՆՈՃԷ բառիս,
Ինն տասին աւարտ լինիս
Ազգ Արամեան թուականիս»[4]։

---

[1] ՀՊՄ ձեռ. № 1864, թ. 425ա։

[2] Սարգիսյան, Ձեռ. ցուցակ, Ա հատ., էջ 302։

[3] ՀՊՄ ձեռ. № 2311, թ. 175բ։

[4] Բ. վրդ. Կյուլեսերյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց հայոց ի Ղալաթիա (անտիպ), էջ 1426։

Այստեղ թվականը ծածկագրված է ԶՆՈՃԷ» բառի տակ, որը պիտի վերծանել՝ Զ(6)+Ն(400)+Ո(600)+Ճ(100)+Է(7)+«ինն տասնին աւարտ լինիս» (19) և հայկական թվականի տարբերությունը՝ 551=1683։ Ձեռագիրը, ուրեմն, գրված է 1683 թվականին։

Եվրոպայի մասնավոր անձանց սեփականությունը կազմող մի ձեռագրի հիշատակարանում կարդում ենք.

«Ո՞վ ընթերցողք քաղցրաբարբառ,
Եւ նըւագողք մըտօք պայծառ,
Թիւն Հայոց է յոյժ պատկառ,
Որ ի ստորև գըրի երկբառ։
Լաւ համարեա և ի միտ առ,
Զներքոյգրեալ յետին գիր քառ,
Մուտ ի յայգիս ով գերափառ,
Կըթեա սիրով դու Ճ. ծառ»[1]։

Հիշատակագրության թվականն է Ճ. ծառ, որ վերծանվում է Ճ(100)+Ծ(50)+Ա(1)+Ռ(1000)+551 (հայկական թվականի տարբերությունը)=1702 թ.։

Հետաքրքիր թվական ծածկագիր է պահել Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 545 ձեռագրի գրիչն իր չափածո հիշատակարանում, որը բերում ենք ստորև առանձին հատվածներով և տալիս նրա վերծանությունը.

«Զթուական այսպէս արայ.
Անուն նախնուն կրկնապատկեա.
Ըստ նոյն չափուն առ նա դասեա,
Քառ յոբելեան ընդ մու, հարիւրեալ.
Վերաբերեալ ի նոյն յարեա.
Ի ծայրալիր գլխոյ նորա,
Ութն կրկին ի բաց ձգեա.
Զբոլորն առեալ քեզ հաստատեա,
Իսկ նա իսկոյն թիւ բաղկանայ» (թ. 174ա)։

Գրիչը «նախնուն անուն» ասելով նկատի ունի Հայկ Նահապետի անունը՝ Հ(70)+Ա(1)+Յ(300)+Կ(60)=431-ը։ «Ըստ նոյն չափուն առ նա դասեա», այսինքն՝ նույն թիվը կրկնիր՝ 431+431=862, «Քառ յոբելեան ընդ մու հարիւրեալ», այսինքն՝ ավելացրու 4 հո-

[1] Արտավազդ արքեպիսկ. Սյուրմեյան, Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց Եվրոպայի մասնավոր հավաքումներու, հատոր Ա, Փարիզ, 1950, էջ 72։



բելյան (հոբելյանը 50 տարի է) և մեկ հարյուր՝ 862+(4×50)+ 101=1163, «Ութն կրկին ի բաց ձգեա»՝ 1163—16=1147։ Ուրեմն՝ ձեռագիրը գրված է 1147 թվականին։

«Մի բարկանար իմ սիրելի.
Ըզգըժվարալուր բան թուականիս.
Պատրաստ սեղան քեզ սիրելոյդ ի ճռիզա» (թ. 174ա)։

Ուզում է ասել, որ պատրաստ գումարգիր թվականը «ի ճռիզա»-ն է՝ Ի(20)+Ճ(100)+Ռ(1000)+Ի(20)+Զ(6)+Ա(1)= 1147 թվականի։

«Ի յայս հանդէս դու յառաջեա,
Իմաստութեամբ քով ոգորեա.
Մարտիկ ընտիր զքեզ կազմեա,
Խրախուսմամբ զձիդ մտրակեա
Երաեսնեակն ուղիղ պնդեա.
Իբրև զքաջ զմահ ըն[ճ]եա,
Սաստիկ զանիւ զնահ ծեծեա.
Զանունն առեալ շարադասեա,
Բաբունօրէն զա[յ]ն կրկնեա,
Վեցհարիւրիւ վերջայանգեա
Երկու կըրկին և ընդ մուիւ,
Ընդ նոյն յարեալ միաւորեա» (թ. 174ա)։

Այս բանաստեղծության մեջ թվականը ծածկագրված է «մահ» բառի տակ՝ Մ(200)+Ա(1)+Հ(70)=271։ Բաբունօրէն զայն կրկնեա»՝ 271+271=542։ «Վեցհարիւրիւ վերջնայանգեա», այսինքն՝ 542+ +600=1142։ «Երկու կրկին և ընդ մուիւ... միաւորեա»՝ 1142+ +2+1=1147։

«Պահակ թվոյ մեծին Հայկայ.
Նա անպակաս իսկ բաղկանայ,
Է հաւաստի ի ճառիզ իմա.
Քեզ իմաստնոյդ վարդ հաստատեա» (թ. 174ա)։

Թվականը ծածկագրված է «ի ճառիզ»-ի տակ՝ Ի(20)+Ճ(100)+ +Ա(1)+Ռ(1000)+Ի(20)+Զ(6)=1147։

«Ի քննութիւն սորա դու մուտ.
Ո՛վ ճոխաբան ներկուռ հմուտ.
Մտնեա ի ձեռս ծակող լեզուոյդ.
Եթէ իցես ճարտար բրուտ.
Եզն այս անուն միայն յատուկ.

Կրկնապատկեա զքանիքն սոյցն.
Միրեա եղբայր այս արուեստուկ.
Ձի է զբօսան մտավարժոյդ.
Բամեա զբոլորըն խրատոյդ.
Յաւել ի դա եռ հարիւրուկ.
Ուստի գտցես Հայկեան թվուկ.
Ունլով պակաս քսան և հինգն»։

Այստեղ ծածկագրված է «եզն»՝ Ե(5)+Զ(6)+Ն(400)=411 Այնուհետև առաջարկում է կրկնապատկել՝ $411 \times 2 = 822$ և ավելացնել «եռ հարիւրուկ»՝ $822+300=1122$։ Դրան գումարած «պակաս քսան և հինգն», հավասար կլինի՝ $1122+25=1147$։

«Պատրաստ սեղան քեզ սիրելւոյդ.
Ի ճառիզ ասի համայն յատուկ.
Էացուցչի սոյն այս տաղուկ.
Պատմի անուն գլուխ գրոյդ»։

Թվականը ծածկագրված է «ի ճառիզ»-ի տակ՝ Ի(20)+Ճ(100)+Ա(1)+Ռ(1000)+Ի(20)+Զ(6)=1147։

Այսպիսով, գրիչը 7 տարբերակներով ծածկագրել է 1147 թվականը։

Նման մի ծածկագիր թվական պարունակող հիշատակարան պահել է Ղալաթիայի ձեռագրերից մեկը, որը բերված է Բ. վրդ. Կյուլեսերյանի ցուցակում (բերում ենք կրճատումով).

«Ձափ չափելեաց միջին վայրից սորին կենի.
Որպէս ի հայս բաղչան եղեղեալ մէթ էդ պահի.
. . . . . . . . . . . . . . . . . . . .
Ի հայկազեան Պ. եակ, վեց յոբելեան ընդ երիւք վեցեակ.
Եթէ առցես համաքատակ հայկանս թվոյ լինի քանակ։
Ըստ քանակի աւուրց հաշւոյ հայոց թվական.
Մու հազարեակ Բ յոբելիւք, երիւք վեցեան։
Ջայսքան հաշւեա իմաստնական Ի յոբելեան, տասնիւք տասան.
Ընդիքառնն համարական, երիւք լինի մեծ թվական...»[1]։

Ծածկագրված առաջին թվականը «մէթ էդ պահի»-ն է Մ(200)+Է(7)+Թ(9)+Է(7)+Դ(4)+Պ(800)+Ա(1)+Հ(70)+Ի(20)=1118։ Ծածկագրված երկրորդ թվականն է՝ «Պ. եակ»՝ 800։ Դրան գումարած վեց հոբելյան՝ $800+6 \times 50=1100$։ Վրան ավելացրած «երեք վեցեակ»՝ $1100+3 \times 6=1118$։ Երրորդ ծածկագրված թվականն է՝ «մու հազարեակ»՝ 1000, վրան ավելացրած «Բ յոբելեան»՝ $1000+2 \times 50=1100$ և «երիւք վեցեան»՝ $1100+3 \times 6=1118$, Չորրորդ ծածկագրված թվականն է՝ «Ի յոբելեան»՝ $20 \times 50=1000$. գումարած «տասնիւք տասան»՝ $1000+100=1100$, ավելացրած մի ընդիքառն և երեք՝ $1100+15+3=1118$։

Չորս տեսակ տարբեր ծածկագրով գաղտնագրված է 1118 թվականը։

Կան նման կարգի բազմաթիվ ծածկագրեր, որոնք ավելորդ ենք համարում մեջբերել։

Ձեռագրերում երբեմն պատահում են ավելի պարզ թվագումար ծածկագրեր։ Այսպես, Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 8636 ձեռագրի հիշատակարանում (թ. 108բ) ասված է. «Ի թուիս Ն.Ն.Ճ.Ճ.Ծ.Ծ.Ժ.Ժ.Ե.Ե.Գ.Գ. գրեցաւ ձեռամբ յոգնամեղ Գրիգորի Երևանցւոյ»[1]։ Վերծանվում է. Ն(400)+Ն(400)+Ճ(100)+Ճ(100)+Ծ(50)+Ծ(50)+Ժ(10)+Ժ(10)+Ե(5)+Ե(5)+Գ(3)+Գ(3)+551=1687 թ.։ Ձեռագիրը գրվել է 1687 թվականին։

## 24. ԱՆՈՒՆՆԵՐԻ ԾԱԾԿԱԳԻՐ ԱՌԵՂԾՎԱԾՆԵՐ

Ամենապարզ ծածկագրերից է այս. տրվում է ծածկագրված անվան տառերի թիվը, նրանց թվական գումարը և երբեմն նաև՝ առաջին ու վերջին տառերը։

Երուսաղեմի Ս. Հակոբյանց մատենադարանի № 371 ձեռագիր ստացողն իր անունը ծածկագրել է ստորև բերված չափածո տաղում.

«Ըզլետնեալ ստացող սորին,
Որ եօթն տառիւ բաղադրին,
Գիմն նախկին, նաև լիւնն վերջին,
Շարագուգեալ անուն կոչին,
Հինգ հազար թուով յորջոջին,
Բաղադրեալ ընդ վաթսուն երեքին»։[2]

Ծածկագրված է «Գաբրիէլ» անունը, որը բաղկացած է յոթ տառից, սկզբնատառը «Գ»-ն է, վերջինը՝ «լ»-ն, և տառերի թվական գումարը հավասար է 5063-ի։

[1] Բ. վ. Կյուլեսերյան, Ղալաթիայի ձեռ. ցուց. № 18, թ. 268բ։



[1] ՀՊՄ № 8636, թ. 108բ:

[2] Պողարյանի ձեռ. ցուցակ, Դ, էջ 30:

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 4163 ձեռագրի (1435 թ.) գրիչն իր անունը հայտնում է հետևյալ ոտանավոր հիշատակարանով.

«Ես անպիտան գծող սորին,
Որ վեց տառիւ անունս կոչին՝
Գիմն առաջին ու րէն վերջին,
Որ համարով վերաբերին՝
Տասըն հազար բոլորովին,
Եւ վեց հարիւր քսան ու վեցին։
Որք միտս ունին նա հաւանին,
Եւ որք չունին՝ նա շիւարին»[1]։

Գրչի անունը Գրիգոր է. «Գ»-ն՝ բառի առջևում և «ր»-ն՝ վերջում, բառը բաղկացած է 6 տառից, իսկ անվան տառերի թվական գումարը հավասար է տասը հազար վեց հարիւր քսան և վեցի—Գ(3)+Ր(5.000)+Ի(20)+Գ(3)+Ո(600)+5.000=10.626։

Աստվածատուր գրիչը նույն ձեռագրում Գրիգոր անունը ծածկագրել է հետևյալ կերպ.

«Ծաղիկ մի տեսի նա վարդագոյն էր,
Բայց տերևըն վեց՝ որ գոյնըզգոյն էր.
Տեսլեամբ գեղեցիկ որպէս նունուֆէր,
Հոտով քաղցր և սուրբ, րոգիրգ նման էր։
Արդ՝ հաշիւն ասեմ որ և քաջ գիտես,
Խնդրողաց ըզսա ըստուգիւ յայտնես,
Վասն այն որոնեցի՝ Ժ.Ն հազար ես,
Առեալ «ոն», յինին, «զա»յիւն ինձ ասես»[2]։

«Ծաղիկ մի տեսի» ասելով գրիչը նկատի ունի ծածկագրվող մարդու երիտասարդ լինելը, «բայց տերևըն վեց», այսինքն՝ անվան տառերը վեց են, «որ գոյնըզգոյն էր»՝ այսինքն՝ անվան տառերը իրար նման չեն, «րոգիրգ նման էր»՝ առաջին բառը Գրիգոր անվան շրջված ձևն է որպես ծածկագրություն։ Ինչ վերաբերում է երկրորդ քառյակին, ապա այդտեղ հայտնված է ծածկագրված անվան թվական գումարը՝ «տասը հազար»՝ վրան ավելացրած «ոն, յինին, զայիւն», այսինքն՝ 10.000+600+20+6=10.626 որը և համապատասխանում է Գրիգոր անվան թվագումարին՝ Գ(3)Ր(5.000)+Ի(20)+Գ(3)+Ո(600)+Ր(5.000)=10.626։

[1] ՀՊՄ ձեռ. № 4163, թ. 183ա։
[2] ՀՊՄ ձեռ. № 2190, թ. 13ա։



Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 2190 ձեռագրի ընդօրինակող Աստվածատուր գրիչն իր ուսուցչի անունը հայտնում է առեղծված ծածկագրությամբ.

«Այլ և ստացող այս սուղ գըրի,
Որ վեց տառիւք անուն կոչի,
Նուն առաջին և սէն է վերջին,
Որ համարով վերաբերին՝
Յինն հազար թվով իլի,
Այլ և նու ժէ բեն աւելի,
Այսքան թիւս որ շարաբարթի՝
Լինի անունն վարդապետի»[1]։

Ծածկագրված անունը Ներսես է. բաղկացած է 6 տառից, «Ն»-ն առջևում է «ս»-ն՝ վերջում, իսկ անվան տառերի թվական գումարը հավասար է ինը հազար և «նու ժէ բէն»-ի, այսինքն՝ ինը հազար+Ն(400)+Ժ(10)+2=9412, իսկ այդ հավասար է. Ն(400)+Ե(5)+Ր(5.000)+Ս(2.000)+Է(7)+Ս(2.000)=9.412։

## 25. ԱԿՐՈՍՏԻՔՈՍՆԵՐ (ԾԱՅՐԱՆՈՒՆՆԵՐ)

Անչափ շատ են ակրոստիքոսով ծածկագրվող անունները։ Տաղերի և գանձերի զգալի մասի հեղինակների անունները ծածկագրված են ակրոստիքոսով։ Ըստ որում, պատահում են երեք տեսակի ակրոստիքոսներ՝ ա) ծածկագրվում է տողի առաջին բառի առաջին տառով, բ) տողի միջին բառի վերջին տառով, և գ) տողի վերջին բառի վերջին տառով։ Որպես նմուշ այստեղ մենք բերում ենք Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 2370 ձեռագրի չափածո հիշատակարանը, ուր միաժամանակ գործ է ածվել չորս տեսակի ակրոստիքոս.

«Յանկամ գոլով նիազ      Մասամբքս մանրախիտ
Աներբ և յարակս      որակիդ բնաւի
Սահանք ոյգոյս բաղձայ      Երքողեալ ըղձիւ
Ապենիազդ գայցես      ունայնիս խնդիր
Նքթեալ լաբոսագերբ      զմիզացեալիս հոգի
Ըսփոփեալ պալարես      որ բնաւից ես գոյակ

[1] ՀՊՄ ձեռ. № 2190, թ. 13ա։

| | |
|---|---|
| Սալարեալս բալխտրէՆ | Ըրշդեհեալս ի կենաց |
| Որոնեալ տածեսցես | տըրոհեալս յերամո |
| Ղաբանոսք ներհունի | Մատրւակք ոգո |
| Ի խւծելոյս՝ տուք երագ | աւիթ կենաց ձիր |
| Ուլթոց ոգոց ծրած | Ռախարար տաւիդ |
| Պենտեգծիւ ի ծարի | Քըւաբերն առածի»[1]։ |

Ակրոստիքոսը վերծանելու համար անհրաժեշտ է սկսել տողի առաջին բառերի սկզբնատառերից՝ բարձրանալով ներքևից վերև, շարունակել միջին բառերի վերջացող տառերից՝ իջնելով վերևից ներքև, ապա անցնել հաջորդ միջին բառի սկզբնատառերին՝ վերևից ներքև և վերջացնել վերջին բառերի վերջնատառերով՝ վերևից ներքև։ Ակրոստիքոսը վերծանվում է. «Պաւղոսըն ասաց զայս բանս ի գծի մոնոզոն (այսինքն՝ աբեղա) ամարք Տիւրիկցո որդի»։

Բերված տեքստի վերջին բառը՝ «առածի»—գումարգիր ժամկագիր է, որ վերծանվում է Ա(1)+Ռ(1.000)+Ա(1)+Ծ(50)+Ի(20)+551=1623 թ.։

Ճիշտ այս խմբին է պատկանում Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 3082 ձեռագրի ագրոստիկոսը, ուր Գևորգ պատանու Գրիգոր վարդապետին նվիրած բանաստեղծության տողերի առաջին և վերջին տառերից կազմված ակրոստիքոսում հետևյալն է ծածկագրված. «Գեորգ պատանին Ե գրեաց Գրիգորի վարդապետին»[2]։

Չենք ուզում շարունակել օրինակները, որոնք որքան ուզես, կարելի է գտնել միջնադարյան չափածո գրականության մեջ։

---

[1] ՀՊՄ ձեռ. № 2370, թ. 308բ։

[2] ՀՊՄ ձեռ. № 3082, թ. 474բ—475ա։



ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՏԱՐԵԹՎԵՐԻ, ԱՄՍԱԹՎԵՐԻ ԵՎ ՕՐԵՐԻ ՀԱՇՎՈՒՄՆԵՐԸ



ոմարական գիտությունը սերտորեն կապված է եղել հայ գրչության հետ։ Միջնադարյան հայ մատենագրության մեջ և վիմական արձանագրություններում հաճախ են պատահում օրերի, ամսաթվերի, թվականների և ժամանակի այլ չափումներ, որոնք ներկա անուններով և հաշվումներով չեն, ուստի անհրաժեշտ է ծանոթ լինել նրանց վերծանության հիմնական սկզբունքների հետ։

Հայ մատենագրության մեջ «տոմար» է կոչվել այն գիտությունը, որը խնդիր է ունեցել զբաղվել ժամանակի չափումներով։ Նա սերտորեն կապված է աստղաբաշխության հետ, որովհետև ժամանակի հասկացողությունն ինքնին կապված է արեգակի և լուսնի շարժումների հետ։

Ժամանակի չափումների նախնական հասկացողությունը մարդկանց մոտ առաջացել է այն ժամանակ, երբ նախամարդն առաջին անգամ ոտք է դրել համեմատաբար իր զարգացման գիտակցական շրջանը, հիմք է դրել իր տնտեսությանը և զբաղվել անասնապահությամբ ու հողագործությամբ։ Հայտնի է, որ նախնական թափառաշրջիկ և կիսավայրենի մարդը դեռ ոչ մի պատկերացում չի ունեցել ոչ ժամանակի և ոչ էլ նրա չափումների մասին։

Իր պատմության արշալույսը ոտք դրած նախամարդու առաջին ժամանակի չափանիշը—ցերեկն ու գիշերն են հանդիսացել.

իրար հաջորդող աշխատանքային ցերեկը և հանգստի գիշերը, փաստորեն, նախամարդու առաջին օրացույցն է եղել։

Զարգացման փոքր-ինչ բարձր շրջանում մարդիկ սկսել են ժամանակը չափել ըստ լուսնի փուլերի. տեսնելով լուսնի նորելու և կլորելու հաջորդական փազերը, լուսինն են վերցրել հիմք և նրանով չափել ժամանակը։ Ենթադրություններ են եղել այն մասին, որ լուսնական ամիսները որոշ ժամանակաշրջանում գործ են ածվել տարեթվի նշանակությամբ[1]։ Որպես փաստ մատնացույց են արվում Աստվածաշնչում հիշված հրեական նահապետների տարեթվերը։ Այսպես օրինակ, ըստ Աստվածաշնչի, Սեթն ապրել է 912 տարի, Ենոքը՝ 905 տարի, Մաղաղիելը՝ 895 տարի և այլն[2]։ Եթե ընդունենք, որ այս տարեթվերը հիմնված են լուսնական ամիսների վրա, ապա Սեթն ապրած կլինի ոչ թե 912 տարի, այլ՝ 76, Ենոքը՝ ոչ թե 905 տարի, այլ՝ 75, Մաղաղիելը՝ ոչ թե 895 տարի, այլ՝ 74 և այլն։

Ընդհանրապես սխալ է գոյություն ունեցող այն կարծիքը, որ իբր հնում մարդիկ ավելի երկարակյաց են եղել։ Այդ սխալն, անշուշտ, առաջացել է տոմարական սխալ հաշվումների հետևանքով։

Ժամանակի ընթացքում լուսնական այս տարիները մարդիկ սկսել են կապել տարվա եղանակների հետ՝ տարեմուտ ընդունելով գարնանամուտը և թվարկելով լուսինները ըստ հաջորդականության առանց ամիսների անունները տալու։ Այս մասին շատ հետաքրքիր տեղեկություններ է հաղորդում VII դարի հայ ականավոր մաթեմատիկոս և տոմարագետ Անանիա Շիրակացին։ «Ամիսների անունները,—գրում է նա,—սկզբում չկային. գարնանամուտից սկսվող լուսինն անվանում էին առաջին լուսին, նրանից հետո եկողները՝ երկրորդ, երրորդ, չորրորդ և այսպես հաջորդաբար շարունակում մինչև 12-րդ լուսին և ամբողջ տարին այսպես ընթանում է մինչև գարնանամուտ»[3]։

Լուսնական տասներկու ամիսների վրա ստեղծված տարին, արեգակնային աստղաբաշխական ճիշտ տարուց պակաս է մոտ 11 օր. ճշգրիտ հաշվումներով լուսնական տարին ունի 354 օր, 8 ժամ, 48 րոպե, 34 վայրկյան, իսկ արեգակնային տարին՝ 365 օր, 5 ժամ, 4 րոպե և 46 վայրկյան տևողություն։

[1] Պրոֆ. Լ. Սեմյոնով, Ամանոր («Էջմիածին», 1953, № 1, էջ 26)։

[2] «Ծննունդք», գլ. Ե, 6—17։

[3] Անանիա Շիրակացի, Տիեզերագիտություն և տոմար, Երևան, 1940, էջ 76։



Արեգակնային և լուսնական տարիների այս տարբերությունն առաջին անգամ նկատել են Եգիպտոսի աստղաբաշխները, որոնք խնդիր ունեին պարզելու Նեղոսի վարարման ճիշտ ժամանակը, որը տեղի էր ունենում Սիրուս փայլուն աստղի առավոտյան լուսաբացին երկնակամարում երևալու հետ։ Այդ լինում էր ամառնամուտին՝ հունիսի 21-ի երեկոյան։ Այդ գիշերը կոչվում էր «Արցունքի գիշեր», որովհետև ըստ եգիպտական ավանդության, Իզիդա աստվածուհին այդ գիշեր արտասվում էր, արցունքն ընկնում էր Նեղոս գետի մեջ և առաջ բերում մակընթացություն. Նեղոսը վարարում էր և Եգիպտոս բերում բարեբեր տիղմը։

Եգիպտական տոմարագետներին հաջողվեց առաջին անգամ կազմել իրենց ժամանակի արեգակնային ճշտված տոմարը[1]։

Արեգակնային և լուսնական տարիների գաղափարն առաջանալուց հետո, բնական է, պիտի առաջանար և առաջանում է նրա սիստեմատիկ հաշվումների անհրաժեշտությունը—ժամանակագրությունը։ Հասկանալի է, որ առանց թվերի և թվականների չէր կարելի ոչ ժամանակը չափել և ոչ էլ անցյալի ժամանակագրությունը վերհիշել։ Արդարացի է պատմահայր Խորենացու այն դիտողությունը, թե՝ «Ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան»[2]։

Անհրաժեշտ է, սակայն, նկատել, որ հնում թվականների հաշվումները սկսվել են ոչ թե միալար թվականի ձևով, ինչպես այժմ է, այլ գահակալող թագավորների, փարավոնների և այլ քաղաքական աչքի ընկնող անձնավորությունների գահակալության տարիներով։ Այդ սկզբունքով են առաջնորդվել հին հայկական բոլոր պատմիչները։ Օրինակ, ըստ Խորենացու՝ հայոց Խոսրով թագավորը գահ է բարձրացել պարսկական Որմիզդ թագավորի երկրորդ տարին և Կոստանդին կայսեր ութերորդ տարին։ Ըստ Կորյունի, Սահակ Պարթևը մահացել է Հազկերտ թագավորի հինգերորդ տարին։ Համաձայն Մովսես Կաղանկատվացու տեղեկության, Աղվանից Վաչագան թագավորը պարսկական բռնապետության դեմ ապստամբել է Խոսրով թագավորի քսանչորսերորդ և Հուստինիանոս կայսեր տասնչորսերորդ տարին և այլն։ Այսպես են հաշվել թվականները հին հայկական բոլոր աղբյուրներում։

Հայկական տոմարի հետ կապված կարևոր հարցերից մեկը՝

[1] Н. Идельсон, История календаря, Л., 1925, էջ 49։

[2] Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, էջ 224։

ամանորի, այսինքն՝ նոր տարվա հարցն է։ Ինչպես հայտնի է, տարբեր ժողովուրդներ տարբեր ամանոր են ունեցել։ Ներկայումս մեր օգտագործած ամանորը՝ հունվարի 1-ը, հռոմեական է, որը ժամանակին ընդունել են շատ ժողովուրդներ, այդ թվում նաև հայերը։



Աստղաբաշխը երկնակամարն ուսումնասիրելիս:

Տոմարական ուսումնասիրություններից երևում է, որ հին հայկական հեթանոսական տարվա ամանորը եղել է գարնան գիշերահավասարի օրը՝ մարտի 21-ը, որը նվիրված էր հայր աստծուն՝ Արամազդին[1]։ Այդ օրը ժողովուրդը ուրախություն

[1] Այս մասին ուշագրավ է Հ. Ն. Ակինյանի «Հայոց եկեղեցական տարին յոթներորդ դարու սկիզբը» վերնագրով հոդվածը, որը տպագրվել է «Հանդէս ամսօրեայ»-ի 1947 թվականի համարներում։



է անելիս եղել փողերի և թմբուկների նվագակցությամբ։ Ամանորի տոնը կոչվելիս է եղել տոն «ամենաբեր պտղոց» (Ագաթանգեղոս)։ Ի դեպ, ամանորը մարտ ամսում տոնվելը երևում է հենց հայկական ամիսների անուններից. այսպես, քաղոց ամիսը, որը հայկական ամսաթվերում հինգերորդն է, մարտից հետո ընկնում է հուլիս ամսում, ուր իրոք տեղի է ունենում հունձը։

Թե ե՞րբ է սկիզբ առել հայկական տոմարը, դժվար է ասել, աղբյուրները լռում են այդ մասին։ Խորենացու մի տեղեկությունից գիտենք միայն, որ հայոց Արտաշես թագավորը (189—160 թթ.մ.թ.ա.) հատուկ ուշադրություն է դարձրել մի շարք գիտությունների զարգացման վրա, այդ թվում նաև՝ տոմարական գիտության վրա։

Տոմարագետներից ոմանց կարծիքով, հեթանոսական հայկական թվարկության սկիզբը կապված է եղել «Հայկ» կոչվող համաստեղության ծագման հետ և սկիզբ է առել 2494 թվականին մեր թվականությունից առաջ։ Պրոֆ. Լ. Սեմյոնովը, անդրադառնալով հին հայկական տոմարի սկզբնավորության հարցին, գրում է. «Երկնակամարի ամենագեղեցիկ համաստեղությունը, որը շատ ուրիշ ազգերի կողմից անվանվում է Օրիոնի համաստեղություն, նվիրված էր հայ առասպելական նախահայր և հերոս Հայկին և այդ համաստեղությունը կոչվում էր «Հայկ»։ Այդ համաստեղությունը շատ մոտ էր գտնվում Մեծ Շան համաստեղությանը, որի գլխավոր աստղը Սիրուսը կամ Սոթիսն է։ Եվ եթե առաջին հազարամյակում մեր թվականությունից առաջ Սոթիսի հելիոտիկ ծագումը տեղի էր ունենում հուլիսի 19-ին, ապա նույնը Հայկի համաստեղության համար տեղի էր ունենում օգոստոսի 11-ին»[1]։

Ավանդաբար հին հայկական այդ թվականի հետ են կապում Հայկի՝ Բելին սպանելու առասպելը։

Հին հայկական տոմարական տարին նմանվում էր ճիշտ եգիպտականին, որը բաղկացած էր 13 ամիսներից՝ 12-ը 30-ական օրով, իսկ մեկը, վերջին ամիսը՝ 5 օրով (վերջին հավելյալ 5 օրը հույները կոչում էին «էպագոմեն»)։ Ամսաթվերի այսպիսի հաշվումն անհամեմատ ավելի պարզ էր, քան ներկայիս գործածական հռոմեականը, որի ամիսները ունեն տարբեր թվով օրեր՝ 28, 29, 30 և 31։

[1] Լ. Սեմյոնով, Հայկական տոմարի մի քանի հարցերի մասին (տես «Հայկական ՍՍՌ Պետ. Մատենադարանի գիտական նյութերի ժողովածու», հատ. I, 1944, էջ 113)։

Շատ հնաքրքիր ձևով էին հաշվում նաև նահանջը՝ չորս տարվա ընթացքում 6 ժամերից ստեղծված հավելյալ օրը, որ մենք այժմ ավելացնում ենք փետրվարի վրա և, 28 հաշվելու փոխարեն, հաշվում 29, եգիպտական տոմարում թողնում էին, որ այդ նահանջի օրերը 1460 թվականի ընթացքում կուտակվեն այնքան, որ կազմեն մի ամբողջ տարի, և ավելամուտ այդ տարին, որը կոչվում էր «աստվածային տարի», «մեծ տարի» կամ «շնական տարի», դուրս էին նետում թվականից։

Հայկական տոմարի պատմության լավագույն մասնագետ պրոֆ. Լ. Սեմյոնովը կարծում է, որ տոմարական նման սիստեմով են առաջնորդվել նաև հայերը։ Նրա կարծիքով, հին հայկական հեթանոսական թվականը սկսել է 2494 թվականին մեր ներկա թվականից առաջ, և 1460 տարիների առաջին շրջանը բոլորվել էր 1034 թվականին (մ. թ. ա.)։ 1460 տարիների երկրորդ շրջանը վերջացել է մեր թվականության 428 թվականին, երբ նահանջ մի տարի ևս դուրս է նետվել։ Երրորդ շրջանը վերջացել է 1888 թվականին։

Ուշադրության արժանի է այն, որ անուններ են ունեցել, եգիպտական տոմարի նման, ոչ միայն առանձին ամիսները, այլև ամիսների 30 օրերը։ Հայկական ամիսների օրերի անունները, բարեբախտաբար, հասել են մեզ։ Ստորև բերում ենք այդ ցանկը.

| | | |
|---|---|---|
| 1 Արեգ | 11 Երեգկան | 21 Գրգռ |
| 2 Հրանդ | 12 Անի | 22 Կորդի |
| 3 Արամ | 13 Պարխար | 23 Ծմակ |
| 4 Մարգար | 14 Վանատ | 24 Լուսնակ |
| 5 Ահրանք | 15 Արամազդ | 25 Ցրոն |
| 6 Մազդեղ | 16 Մանի | 26 Նպատ |
| 7 Աստղիկ | 17 Ասակ | 27 Վահագն |
| 8 Միհր | 18 Մասիս | 28 Սեին |
| 9 Ձոպաբեր | 19 Անահիտ | 29 Վարագ |
| 10 Մուրց | 20 Արագած | 30 Գիշերավար[1] |

Ուշադրության արժանի է այն, որ թվարկված ամսանուններ մեջ կան հայկական հեթանոսական մեզ հայտնի անունների մեծ

[1] «Հայկական աշխարհ» օրագիր, 1868, էջ 261։



մասը՝ Արամազդ, Վահագն, Աստղիկ, Անահիտ և այլն։ Անունների մի մասը հայկական խոշոր լեռների անուններն են։ Հավանական է, հին Հայաստանում ամսօրերից ամեն մեկը նվիրված էր պաշտվող մի աստծու կամ մի սրբության։

Հին հայկական տոմարում իրենց անուններն ունեին նաև օրվա 24 ժամերը։ Դրանք են.

| Գիշերային ժամերը | | Ցերեկային ժամերը | |
|---|---|---|---|
| 1 Խաւարային | 7 Հաւթափեալն | 13 Այգն | 19 Շանթակալն |
| 2 Աղջամուղջն | 8 Գիսակն | 14 Ծայգն | 20 Հրակաթն |
| 3 Մթացեալն | 9 Լուսաճեմն | 15 Զօրացեալն | 21 Հուրթափեալն |
| 4 Շաղաւոտն | 10 Առաւօտն | 16 Ճառագայթեալն | 22 Թաղանթեալն |
| 5 Կամաւոտն | 11 Լուսափայլն | 17 Շառաւիղեալն | 23 Առավարն |
| 6 Բաւականն | 12 Փայլածուն | 18 Երկրատեսն | 24 Արփողն |



Ջվարբնոցի արեգակի ժամացույցը, VII դարից։

Այժմ ծանոթանանք հայ մատենագրության մեջ գործածվող թվականներին և նրանց հաշվումներին։

Հայ մատենագրության մեջ գործածվող թվականներից հնագույնը արարչության կոչվող թվականներն են։ Ավանդական այս թվականները հայ գրականության մեջ հիշվում են տարբեր անուններով՝ «Թուականութիւն Ադամայ», «Թուական յելանելոյ Ադամայ ի դրախտէն», «Ժամանակ սկզբանց արարչութեան» և այլն։

Արարչության այս թվականները մի քանի տասնյակ տարբեր հաշվումներ ունեն։ Հովհաննես Իմաստասերն իր «Մեկնութիւն տոմարիս Հայկազնեայ» աշխատության մեջ անդրադառնալով թվականների այս տարբերությանը, գտնում է, որ թեպետ շատ տոմարագետներ են զբաղվել արարչության թվականի ճշտումով, սակայն դրանք բոլորն էլ ենթադրություններ են, որովհետև «Մարդկանցից ոչ ոք կարող է իմանալ արարչության ժամանակը»[1]։

Հայ մատենագրության մեջ արարչության թվականներից, հիմնականում, գործ են ածվել միայն հինգը՝ կայսերական, յոթանասնից, Շիրակացու, աղեքսանդրյան և հրեական։ Կանգ առնենք նրանց վրա առանձին-առանձին և բերենք որոշ օրինակներ.

ԱՐԱՐՉՈՒԹՅԱՆ ԿԱՅՍՐԱԿԱՆ ԹՎԱԿԱՆ

Այս թվականը կոչվում է նաև Կոստանդնուպոլսի կամ Բյուզանդական։ Գործ է ածվել գլխավորապես Բյուզանդական կայսրության մեջ կամ նրա հետ կուլտուրական մոտիկ հարաբերության մեջ գտնվող երկրներում։ Այս թվականի սկզբից մինչև մեր ներկա թվականը հաշվվում է 5508 տարի։ Տարեմուտն սկսում է սեպտեմբերի 1-ից։ Ի դեպ, մինչև 1700 թվականը Ռուսաստանում գործածվող պաշտոնական թվականն այս է եղել և գործածությունից դուրս է հանվել Պյոտր I-ի՝ 1699 թվականի դեկտեմբերի 13-ի հրովարտակով ու գործածության մեջ դրվել մեր ներկա թվագրությունը[2]։

Սոկրատի եկեղեցական պատմությունը և Սեղբեստրոսի վարքը Փիլոն Տիրակացին թարգմանել է «Յամի վեց հազարերորդի երկերերորդի չորրորդի կենցաղումս անցաւորի, որպէս ունի ժամանակագրութիւն սուրբ Սոփի աւագ եկեղեցի տիեզերական մայրաքա-

[1] Ա. Գ. Աբրահամյան, Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը, Երևան, 1957, էջ 164։

[2] Л. В. Черепнин, Русская хронология, М-ва, 1937, էջ 24—33։



ղաքին Կոստանդնուպաւլսի»[1]։ Ըստ մեր վերև բերված հաշվի, թարգմանությունը կատարված է 696 թվականին (6204—5508==696)։

Դիոնիսիոս Արիսպագացու «Յաղագս եկեղեցական և երկնային քահանայութեան» աշխատությունը Ստեփանոս Սյունեցին թարգմանել և մեկնել է «Ի վեց հազարերորդի երկերիւրերորդի քսաներորդի ամի արարածոց աշխարհիս, ըստ յունարէն թուոյ ի չորեքտասաներորդի ընդիկտիսնին, յերկրորդ ամի թագաւորութեանն Փիլիպպոսի...»[2]։ Թարգմանությունը կատարվել է 712 թվականին (6220——5508==712)։ Փիլիպոս կայսեր երկրորդ տարին, իրոք, 712-ն է. նա գահակալել է 711 թվականին։

Սեբաստիայի ս. Նշան վանքի №2 ձեռագիրն ընդօրինակված է «...Ի թուիս յաւիտենից, որ է Ադամա(յ)՝ ՑՊԻԱ (6821), և ըստ հայկազեան թուականի ՉԿԲ, յամսեանն յուլիսի ԺԸ...»[3]։ Ձեռագիրն ընդօրինակվել է 1313 թվականին (6821—5508=1313), որը համապատասխանում է հայկական ՉԿԲ թվականին (762+551==1313)։

ԱՐԱՐՉՈՒԹՅԱՆ ՅՈԹԱՆԱՍՆԻՑ ԹՎԱԿԱՆ

Ըստ յոթանասնից թվահաշվի, արարչությունից մինչև մեր ներկա թվականի սկիզբը հաշվվում է 5200 տարի, իսկ քրիստոնեական հայկական տոմարով՝ 5198։

Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի №129 ձեռագրի ընդօրինակությունն ավարտված է Թեոդուպոլսում «... յելիցն Ադամայ ի դրախտէն մինչև առ մեզ հազարաց վեցից և չորից հարիւրից, երեսուն յաւելեալ ամաւք։ Իսկ ի ծագմանէ բանին Աստուծոյ՝ հազարի միոյ և երկուց հարիւրից, երեսուն և երկուս յաւելեալ ամաւք, եւ Հայկազնեան տումարիս՝ վեցից հարիւրից եւթանասուն և ինն ամաց...»[4]։ Ձեռագիրը գրված է 1230 թվականին (6430——5200=1230)։ Նա համապատասխանում է հայկական թվականին (679+551=1230) և քրիստոնեական հայկական թվականին (1232——2=1230)։

[1] Մ. վրդ. Տեր-Մովսեսյան, Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական պատմութիւն, Վաղարշապատ, 1897, էջ ԺԷ։

[2] Գարեգին Կաթողիկոս Հովսեփյան, Հիշատակարանք ձեռագրաց, էջ 53։

[3] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագիր հիշատակարաններ, էջ 96։

[4] Բ. Սարգիսյան, Ցուցակ ձեռագրաց Մխիթարյանց, հատ. Ա, էջ 572։

Աստվածատուր վարդապետի թողած նամակից երևում է, որ նա Երուսաղեմ առաջնորդ է հրավիրվել «ՋՌ.երորդի ութ Ճ.երորդի քառասներորդի և վեցերորդի արարածոց ի սկզբանէ աշխարհի, և Ռ.երորդի ՋՃ.երորդ և Խ.երորդ Է.երրորդի մարդանալոյն Աստուծոյ և փրկութեան աշխարհի, և Ռ.որդ Ղ.որդ չորրորդի արեթական տոմարի և Հայկազեան թուականի բազմեցաք ի գահոյս... Ս. Աթոռոյս»[1]: Այս հաշվով, Աստվածատուր վարդապետը պատրիարքական գահ է բարձրացել 1645 թվականին (6846 – 5200= =1646):

Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի մի ձեռագրում «Պատճառ սահմանաց գրոց» աշխատության թարգմանության թվականն է հիշված. «Յելանելոյն Ադամայ ի դրախտէն մինչ ի լաւարտումն գրոցս էր թիւ ժամանակիս ՑՇԴ, զի յելանելոյն Ադամայ մինչ ի Քրիստոս էր ՐՃՂԸ, և ի ծննդենէն Քրիստոսի ՌՅԺԶ ամ, իսկ թվին մեծ Հայոց էր ՉԿԳ»[2]: Եթե այստեղ ուղղելու լինենք գրչական մի սխալ՝ ՑՇԴ-ն՝ ՑՇԺԴ ձևով, ապա բոլոր թվականները կհամապատասխանեն իրար. արարչության թվականը հավասար է 1314-ի (6514—5200=1314): Այս համապատասխանում է հայկական մեծ թվականին՝ ՉԿԳ-ին (763+551=1314): Նկատի ունենալով, որ հիշված քրիստոնեական թվականը հայկական հաշվով է և պիտի հանենք 2 միավոր, այն ևս կհամապատասխանի արարչության յոթանասնից թվականին (1326—2=1324):

Օհաննես Թմոքվեցի գրիչը Արարատյան նահանգի Սերկևիլ գյուղում ընդօրինակած «Տոնական»-ի ավարտման թվականն է համարում «...ի թուաբերութեանս հայկազեան տաւմարի ՊՂԱ, և կենար-(ար)ին փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՆԽԴ, և յելանելոն Ադամայ ի դրախտէն ՑՈԽԲ»[3]: Ձեռագրի գրության թվականն է 1442 (6642—5200=1442): Այս թվականը համապատասխանում է հայկական թվականին (891 + 551=1442): Հիշատակարանում զուգահեռ հիշվածը քրիստոնեական թվականն է, ուստի նրանից պետք է հանել 2 միավոր (1444—2=1442):

[1] Ն. եպիսկ. Պողարյան, Ցուցակ ձեռագրաց Երուսաղեմի, հատ. Բ, էջ 151:

[2] Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 525:

[3] Լ. Խաչիկյան, ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 531:



## ԱՐԱՐՉՈՒԹՅԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐՅԱՆ ԹՎԱԿԱՆ

Արարչության Աղեքսանդրյան թվականը կոչվում է նաև «Հինգհարյուրյակ» կամ «Էասյան» թվական այն պատճառով, որ սրա հեղինակը հանդիսացել է Էաս տոմարագետը, որը Աղեքսանդրիայում գումարված տոմարագետների ժողովի հանձնարարությամբ կազմել է 532 տարիների աղյուսակը: Այս թվականով, արարչությունից մինչև մեր ներկա թվականի սկիզբը, հաշվվում է 5423, իսկ քրիստոնեական հայկական թվականը՝ 5425 տարի:

Վենետիկյան Մխիթարյանների № 207 «Ճառընտիր»-ի գրչությունն ավարտված է եղել «...յելանելոյն Ադամայ ի փառակենցաղ դրախտէն ամք ՋՌԷՃԿԶ և ի ծնընդենէ կենարարին մերոյ ամք ՌԳՃԽԳ»[1]: Արարչության թվականն այստեղ հիշված է Աղեքսանդրյան թվականով, ուստի՝ 6766—5425=1341, հետևապես ձեռագիրը գրված է այդ թվականին: Դրան համապատասխանում է քրիստոնեական թվականը՝ 2 թվանշանի հանումով՝ 1343—2= =1341:

Բրիտանական թանգարանի հայկական բաժնի № 19 ձեռագիրը գրված է «... յԱդամայ մինչև ցայսր ամք ՑՋԿԷ, իսկ Հայկազեան թվականիս ՋՂԱ, և հռոմայեցոց մեծ թվականին ՌՄՂԴ, և շրջանն, որ է փոքր թվական՝ ՄԼ, ի յերկիրս Բզնունեաց, որ այժմ Խլաթ ասի»[2]: Այս հիշատակարանը անգլերեն թարգմանությամբ հրատարակել է հայագետ Կոնիբերը, որը, սակայն, ծանոթ չլինելով թվականների վերծանության սկզբունքին, չի կարողացել վերծանել, ենթադրելով, թե տեքստն աղավաղված է և թվականները չեն համապատասխանում իրար[3]: Իրականում ոչ մի աղավաղում չկա, այստեղ Արարչության Աղեքսանդրյան թվականն է, ուստի պիտի հանել ոչ թե 5196, այլ 5425 (6967—5425=1542): Հայկական մեծ թվականը՝ 991+551=1542, հռոմեականը՝ 1294+ +248=1542, հռոմեական փոքր թվականը՝ 230+532+532+248= =1542: Բոլոր թվականներն էլ համապատասխանում են իրար, հետևապես, ձեռագիրը գրված է 1542 թվականին:

[1] Հ. Բ. Սարգիսյան, Ցուցակ ձեռագրաց Վենետիկի Մխիթարյանց, հատ. Բ., էջ 174:

[2] F. C. Conybeare, A catalogue of the armenian manuscripts in the British museum, էջ 34:

[3] Նույն տեղը, էջ 35:

Սարգիս գրիչը «Գործք առաքելոց»-ի ձեռագիրն ընդօրինակել է «... ի ժամանակաշար չափոյն հայկազեան ՉԿԳ, և ի կենարար յայտնութենէն աստուծոյ բանին առ մեզ ՌՅԺԶ, և յելանելո[յն] նախաստեղծիցն ի վայելչական վայրէն մինչև ցայժմ ՑՉ և ԼԹ»[1]։ Ձեռագիրը գրված է 1314 թվականին. արարչության 6739—5425=1314, հայկական մեծ թվականի 763+551=1314, քրիստոնեական հայկական՝ 1316—2=1314։ Ձեռագիրն, անվիճելի, գրված է մեր ներկա թվարկության 1314-ին։

Ստեփանոս գրիչը «Ճաշոց»-ը Սուրխաթում ընդօրինակել է և ավարտել «Ասքանազեան և Յաբեթական տաւմարի ՊԻ, և ըստ նորում շրջանի ՄՁԵ, և ի գալստենէ կենարարին ՌՅՀԳ, և յելիցն Ադամայ ի դրախտէն ՑՂՂՁ»[2]։ Այստեղ հիշված չորս թվականները ևս համապատասխանում են իրար, ձեռագիրը գրված է 1371 թվականին. արարչության աղեքսանդրյան թվականը՝ 6796—5425=1371։ Հայկական մեծ թվականով 820+551=1371։ Հայկական փոքր թվականով՝ 287+1084=1371։ Հայկական քրիստոնեական թվականով՝ 1373—2=1371։

## ԱՐԱՐՉՈՒԹՅԱՆ ՇԻՐԱԿԱՑՈՒ ԹՎԱԿԱՆ

Շիրակացու հաշվով արարչության սկզբից մինչև մեր ներկա թվականն անցել է 5281, իսկ քրիստոնեական հայկական թվականով՝ 5279 տարի։

Թադեոս գրչի Կաֆայում «Հարանց վարք»-ի ընդօրինակությունն ավարտված է «... յԱդամայ ՑՉԺԱ ամի ըստ Անանիա վարդապետին Շիրակացւոյ, և ի ծննդենէ կենարար փրկչին ... ՌՆԼԲ ամի... և թվին հայոց ըստ Աբեթական տոմարի ՊՀԹ»[3]։ Ձեռագիրն ընդօրինակված է 1430 թվականին (6711—5281=1430)։ Այս համապատասխանում է հայկական մեծ թվականի 879-ին (879+551=1430) և հայկական քրիստոնեական թվականի 1432-ին, որից պիտի հանել երկու ավելորդ տարիները (1432—2=1430)։

Արարչության թվականների հաշվումների ժամանակ կարող է մեկ տարվա տարբերություն լինել, նկատի պետք է ունենալ, որ արարչության տարին սկսվում է սեպտեմբեր ամսում։

---

[1] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 101։

[2] Նույն տեղը, էջ 496։

[3] Նույն տեղը, էջ 401։



Բացի վերև հիշված արարչության հինգ թվականներից, կան բազմաթիվ արարչության այլ թվականներ ևս, որոնց վրա մենք կանգ չենք առնում, որովհետև նրանք չեն գործածվել մեր մատենագրության մեջ։

## ՀՌՈՄԵԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԳՈՐԾԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Հայ մատենագրության մեջ շատ քիչ գործ են ածվել նաև հռոմեական թվականները։ Այս թվականները հռոմեական են կոչվում այն պատճառով, որ նրա սկզբնավորությունը, ըստ ավանդության, կապվում է Հռոմ քաղաքի հիմնադրության հետ։ Վարրոնի հաշվումներով Հռոմ քաղաքը հիմնադրվել է 753 թվականին մեր ներկա թվականությունից առաջ, և մեր թվականության 753-ին, Փիլիպոս կայսեր չորրորդ տարում, բոլորվել է նրա հազարամյակը և 248 թվականին նոր հազարամյակի սկիզբ դրվել։ Հայ մատենագրության մեջ այս թվականը կոչվում է նաև հունական, անշուշտ հռոմեական իմաստով։

Հռոմեական մեծ թվականը մեր ներկա թվականին վերածելու համար նրա վրա պետք է ավելացնել 247, իսկ հռոմեական թվականը հայկական մեծ թվականին վերածելու համար՝ պիտի ավելացնել 303 կամ 304. եթե հայկական թվականն ընդունել է ավելադիր տարին, պիտի գումարել 303, եթե չի ընդունել՝ 304։ Բերենք այս թվականի օգտագործման մի քանի փաստեր։

Ստեփանոս Ասողիկն իր պատմությունը վերջացրել է «... ըստ Յունաց թուականին ի Փիլիպպոս կայսերէ՝ ամք ՉԾԷ, և ըստ հայերէն չափոյ թուականիս մերոյ՝ ամք ՆԾԳ»[1]։ Ստեփանոս Ասողիկը, ըստ այդ հաշվի, իր պատմությունը վերջացրել է 1004 թվականին. Հռոմեական 757 թվականի վրա ավելացնելով 247, կստանանք 1004։ Հայկական 453 թվականին գումարելով 551, հավասար է դարձյալ 1004-ի։

Ներսես Շնորհալու դավանաբանական բովանդակությամբ մի աշխատության գրչության ժամանակն է.

Ի թիւ եօթանց տանց հարիւրոց,
Կատարեցաւ բանս հաւատոց,

---

[1] Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական, ՍՊԲ, 1885, էջ 285։

Ի վեց հարեւր թուական Հայոց,
Յինըն հարեւր չորք Հռոմոց»[1]։

Աշխատությունը գրված է հայկական թվականի 1151-ին (600+551=1151)։ Հռոմեական 904-ը հավասար է 1151-ի (904+247=1151)։ Երկու թվականներն էլ համապատասխանում են իրար։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 492 ձեռագիրը, որը բովանդակում է Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, գրվել է «... ի թուականութեանս Հայոց ՈԼԳ, և շրջանին երթալոյ ի բաց ՃԱ, որ կոչի փոքր, իսկ Հռոմին ՆԵ»[2]։ Ձեռագրի գրության հայկական 633 թվականը հավասար է 1184-ի (633+551=1184)։ Հայկական փոքր թվականով 101-ը հավասար է դարձյալ 1184-ի (101+1083=1184)։ Հռոմեական թվականներից այստեղ հիշված է փոքրը, որը գտնելու համար, 247-ից բացի, պետք է գումարել 532 տարիների շրջանը ևս. այսպիսով Հռոմեական 405 փոքր թվականը հավասար կլինի՝ 405+532+247=1184-ի։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 5602 ձեռագրում, որն ունի Օրբելյանների պատմության մասին անչափ արժեքավոր մի հիշատակարան, գրված է «... յամի Ռ.որդի եւթան առ քսանիւ թուաբերութեան Հայկազնեան քրոնիկոնիս, իսկ Նորոյ շրջանի իննսնի և չորից և ի կենարարին մերոյ ծննդենէ հազար և հարիւր եւթանասուն և ինն ամացն շրջագայութիւնք։ Իսկ Հռովմին շրջանի երեք հարիւր իննսուն և ութ էին բովանդակութիւն ամաց»[3]։ Ձեռագիրը գրված է հայկական մեծ թվականի 627+551+1178, հայկական փոքր թվականի՝ 94+1084=1178, հռոմեական փոքր թվականի՝ 398+248+532=1178։ Բոլոր թվականները համապատասխանում են իրար. ձեռագիրը գրված է 1178 թվականին։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 1971 ձեռագիրն ընդօրինակված է գումարգիր ծածկագրով՝ Հայոց՝ ՌԱՀԱԳԱ ԱԴԱ և ՈՆԻ ԼԱԼԱ, բուն Հռոմայեցւոց թվականին ԾԱՌ ՄԵԾ ԽԼԱԹ և փոքր ՄԱ ՃԱ ԹԱԺ[4]։ Ծածկագիր այս թվականները վերածելով

[1] Ներսես Շնորհալի, Բանք չափաւ, Վենետիկ, 1830, էջ 223—224։

[2] Գարեգին կաթողիկոս Հովսեփյան, Հիշատակարանք ձեռագրաց, էջ 505։

[3] ՀՊՄ ձեռ. № 5602, թ. 270բ։

[4] ՀՊՄ ձեռ. № 1971, թ. 123ա։



ներկա թվահաշվի, ստացվում է՝ 1000+1+70+1+3+1+1+4+1=1082 և 600+400+20+30+1+30+1=1082, 1082+551=1633։ Հռոմեական թվականով՝ 50+1+1000+200+5+50+40+30+1+9=1386, 1386-ին գումարենք 247=1633։ Հռոմեական փոքր թվականով՝ 200+1+100+1+9+1+10=322, իսկ այդ հավասար է 322+532+532+247=1633-ի։

## ՀԻՋՐԱՅԻ ԹՎԱԿԱՆԻ ԳՈՐԾԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Հիջրայի կամ մուսուլմանական թվականի սկիզբը համարվում է 622 թվականի հուլիսի 16-ը Հուլյան տոմարով, երբ տեղի է ունեցել Մուհամմեդի փախուստը Մեկկայից դեպի Մեդինա։ Արաբական տոմարական տարին՝ մաքուր լուսնական տարի է, նա բաղկացած է 12 ամիսներից՝ հաջորդական 29 և 30 օրերով. լի տարին ունի 354 օր, իսկ նահանջը՝ 355 օր։ Արեգակնային տարին, ինչպես ասել ենք, ունի, կլոր հաշվով, $365^{1}/_{4}$ օր, այսինքն՝ մոտ $11^{1}/_{4}$ օր ավելի լուսնական տարուց, ուստի և մոտ 33 տարվա ընթացքում լուսնական տարին մի տարի առաջ է ընկնում։ Տված հիջրայի թվականը մեր ներկա թվականին վերածելու համար գոյություն ունի հաշվելու երկու եղանակ, մեկը՝ պարզ, տված թվականը մոտավոր ձևով գտնելու համար, իսկ մյուսը բարդ՝ ճիշտ թվականը և օրը գտնելու համար[1]։

Հաշվելու պարզ եղանակը հետևյալն է. տրված թվականը բաժանում ենք 33-ի վրա՝ իմանալու համար, թե որքան նահանջ տարի է մուտք գործել տվյալ թվականի մեջ, ապա ստացված թիվը դուրս ենք հանում տրված թվականից, հետո մնացած թիվը գումարում Մուհամմեդի փախստյան 622 թվականին։ Այսպես օրինակ, մեզ տրված է հիջրայի 1201 թվականը վերածել ներկա թվականի։

1) 1201:33=36+1=37 (մնացորդի դեպքում մեկ տարի ավելացնում ենք)։

2) 1201—37=1164։

3) 1164+622=1786։

Հիջրայի բարդ, բայց ավելի ճիշտ թվականը որոշելու համար

[1] Հիջրայի թվականները մեր ներկա թվականներին վերածած համեմատական ցանկ է հրատարակել ակադեմիկոս Հ. Օրբելին 1940 թվականին "Синхронические таблицы для перевода исторических дат по хиджре на европейское летоисчисление„ խորագրով։

*պետք է վերցնել հիջրայի լուսնական 30 տարիների շրջանները, որոնք անփոփոխ կրկնվում են։ Յուրաքանչյուր լուսնական շրջան, որը տոմարագիտության մեջ կոչվում է ցիկլ, ունի 10.631 օր։ Այնուհետև պետք է պարզել, թե տվյալ թվականը քանի՞ լուսնական ցիկլ է պարունակում իր մեջ, ապա ստացած թիվը բազմապատկել լուսնի ցիկլի վրա և ստացած թիվը բաժանել* $364^{1}/_{4}$*-ի վրա։*

*Հիջրայի թվականի հաշվումների գործն ավելի դյուրացնելու համար, բերում ենք տոմարական վեց աղյուսակներ, որոնք մենք վերցրել ենք դոցենտ Գ. Մամեդբեյլիի* “Синхронические таблицы для перехода от лунного летоисчисления к солнечному и обратно„ *աշխատությունից, որը հրատարակվել է Բաքվում 1949 թվականին։*

## Ա. ԼՈՒՍՆԱՑԻՆ ԵՐԵՍՆԱՄՅԱ ՑԻԿԼԵՐԻ ՕՐԵՐԻ ԹԻՎԸ

(Սկսած 6-րդ դարի վերջին օրից)

| | | |
|---|---|---|
| 30— 18863 | 510—188959 | 990 - 359055 |
| 60— 29494 | 540—199590 | 1020—369686 |
| 90— 40125 | 570—210221 | 1050—380317 |
| 120— 50756 | 600—220852 | 1080—390948 |
| 150— 61387 | 630 —231483 | 1110—401579 |
| 180— 72018 | 660—242114 | 1140—412210 |
| 210— 82649 | 690—252745 | 1170—422841 |
| 240— 93280 | 720+263376 | 1200—433472 |
| 270—103911 | 750—274007 | 1230—444103 |
| 300—114542 | 780—284638 | 1260—454734 |
| 330--125173 | 810—295269 | 1290—465365 |
| 360—135804 | 840—305900 | 1320—475996 |
| 390—146435 | 870—316531 | 1350—486627 |
| 420—157066 | 900—327162 | 1380—497258 |
| 450—167697 | 930—337793 | 1410—507889 |
| 480—178328 | 960—348424 | 1440—518520 |

## Բ. ԼՈՒՍՆԱՑԻՆ ՕՐԵՐԻ ԹԻՎԸ 30 ՑԻԿԼԻ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՏԱՐՎԱ ՍԿԶԲՈՒՄ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1— 0 | 8—2481 | 15—4961 | 22—7442 | 29— 9922 |
| 2— 354 | 9—2835 | 16—5315 | 23—7796 | 30—10277 |
| 3— 709 | 10—3189 | 17—5670 | 24—8150 | |
| 4—1063 | 11—3544 | 18—6024 | 25—8505 | |
| 5—1417 | 12—3898 | 19—6379 | 26—8859 | |
| 6—1772 | 13—4252 | 20—6733 | 27—9214 | |
| 7—2126 | 14—4607 | 21—7087 | 28—9568 | |



## Գ. ԱՄԻՍՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՕՐԵՐԻ ԹԻՎԸ ԸՍՏ ԼՈՒՍՆԱԿԱՆ ՏՈՄԱՐԻ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| I Մոհառռամ 0 | II Սաֆար 30 | III Ռաբի I 59 | IV Ռաբի II 89 | V Ջումադա I 118 | VI Ջումադա II 148 |
| VII Ռաջաբ 177 | VIII Շաբան 207 | IX Ռամազան 236 | X Շավալ 266 | XI Զուլդադա 295 | XII Զուլհիջա 325 |

## Դ. ՕՐԵՐԻ ԹԻՎԸ ԴԱՐԵՐՈՎ

(6-րդ դարից մինչև 22-րդ դարի սկիզբը)

| | |
|---|---|
| 600— 0 | 1400—292200 |
| 700— 36525 | 1500—328725 |
| 800— 73050 | 1600—365240 |
| 900—109575 | 1700—401764 |
| 1000—146100 | 1800—438288 |
| 1100—182625 | 1900—474812 |
| 1200—219150 | 2000—511337 |
| 1300—255675 | 2100—547861 |

## Ե. ՕՐԵՐԻ ԹԻՎԸ ԸՍՏ ՔԱՌԱՄՅԱԿՆԵՐԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒԹՅԱՆ

| | | |
|---|---|---|
| 4— 1461 | 36—13149 | 68—24837 |
| 8— 2922 | 40—14610 | 72—26298 |
| 12— 4383 | 44—16071 | 76—27759 |
| 16— 5844 | 48—17532 | 80—29220 |
| 20— 7305 | 52—18993 | 84—30681 |
| 24— 8766 | 56—20454 | 88—32142 |
| 28—10227 | 60—21915 | 92—33603 |
| 32—11688 | 64—23376 | 96—35064 |

## Զ. ՕՐԵՐԻ ԹԻՎԸ ԸՍՏ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱՄՍՎԱ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒԹՅԱՆ

| | I | II | III | IV | V | VI | VII | VIII | IX | X | XI | XII |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 0 | 0 | 31 | 60 | 91 | 121 | 152 | 182 | 213 | 244 | 274 | 305 | 335 |
| 1 | 366 | 397 | 425 | 456 | 486 | 517 | 547 | 578 | 609 | 639 | 670 | 700 |
| 2 | 731 | 762 | 790 | 821 | 851 | 882 | 912 | 943 | 974 | 1004 | 1035 | 1065 |
| 3 | 1096 | 1127 | 1155 | 1186 | 1216 | 1247 | 1277 | 1308 | 1339 | 1369 | 1400 | 1430 |

*Բերված աղյուսակներից օգտվելն այնքան էլ դժվար չէ, միայն անհրաժեշտ է ծանոթ լինել նրա ընդհանուր սկզբունքի հետ։ Ենթադրենք մեզ տրված է պարզելու, թե մեր ներկա թվականով*

ե՞րբ է տեղի ունեցել Հիջրայի 782 թվականի ռամազան ամսի 19-ին Բաղդադում տեղի ունեցած երկրաշարժը: Մենք կատարում ենք հետևյալ հաշվումները: Նախ պարզում ենք, թե 782 լուսնական տարիները քանի օր են պարունակում.

780 տարին=284. 638 օր (Ա աղյուսակով).
երկրորդ տարին=354 օր (Բ աղյուսակով).
ռամազանի սկիզբը=236 օր (Գ աղյուսակով).
ամսաթիվը= 19 օր.

285. 247 օր: Ուրեմն՝ հիջրայի 782 թվականի ռամազանի 19-ը բաղկացած է այդքան օրերից: Ստացված այս թիվն այժմ բաժանում ենք աստղաբաշխական տարվա օրերի վրա.

1300 տարին=255. 675 օր (Դ աղյուսակով).
մնացորդ՝ 29. 572 օր
80 տարին = 29. 220 օր (Ե աղյուսակով).
մնացորդ՝ 352 օր

Հետևապես, հիջրայի տրված թվականը համապատասխանում է ներկա թվականի 1380 թ. դեկտեմբերի 17-ին:

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի Փղոսկրյա կոչվող նշանավոր ձեռագիրը գրված է «Յամի Թուոյ Հայկազանց ՆԼԸ, և ըստ Թուոյ Հոռոմի ՁԽԲ, լԻսմայելական բռնակալութեանն ՅՀԹ»[1]: Այստեղ, իսմայելական թվական ասելով, գրիչը նկատի ունի հիջրայի թվականը: Ըստ վերը բերված աղյուսակների, հիջրայի թվականը վերծանվում է.

360 տարին=135.804 օրվա,
19 տարին= 6.379 օրվա,
ընդամենը՝ 142.183 օր:
Արեգակնային 900 տարին ունի՝
109.575 օր, որը հանելով 142, 183-ից՝
մնացորդ՝ 32.608 օր:
88 տարին=32.148 օր:
Կմնա՝ 466 օր=1 տարի 4 ամիս:
Այսպիսով՝ 900+88+2=990 թվականին:

[1] Գարեգին կաթողիկոս Հովսեփյան, Հիշատակարանք ձեռագրաց, էջ 158:



Հիջրայի այս թվականը համապատասխանում է հայկական և հռոմեական թվականներին. հայկականը՝ 438+551=989, հռոմեականը՝ 742+247=989: Ձեռագիրը գրված է մարտի 22-ից հետո, այլապես պիտի հայկական թվականի վրա գումարենք ոչ թե 551, այլ՝ 552:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԵԾ ԹՎԱԿԱՆ

Հայկական մեծ թվականի գործածությունը մատենագրության մեջ շատ մեծ հնություն չունի: Նրա գործածությունն սկսում է VIII դարից: Վերանայման կարիք ունի բանասեր Գարեգին կաթողիկոս Հովսեփյանի կարծիքը՝ հայկական հնագույն թվականի գործածությունն Անիի միջնաբերդի բազիլիկ եկեղեցու հարավային պատի արձանագրությունը համարելու խնդրում, որն ընդունում են իբրև 622 թվականի գործ: Այդ արձանագրությունն ունի հետևյալ բովանդակությունը. «(Ե)ս Աբրահամ վարդապետս շինեցի զեկեղեցիս զայս ի Թուականութեանս հա...»[1]: Արձանագրության վերջին մասը թերի է:

Բերված արձանագրության վերջին երկու տառերը՝ «ՀԱ» ոչ թե նշանակում են 71, որին պետք է գումարել 551, այլ «Հայոց» բառի առաջին երկու տառերը, ինչպես որ նույն ձևով հիշվում է Թալինի մայր եկեղեցու վրա՝ «Թուականութեան հայոց» կամ Արուճի արձանագրության մեջ՝ «Թուականին հայոց» և այլն[2]:

Մեզ հասած ամենահին հայկական թվականը պարունակող արձանագրությունը, որի դեմ չի կարելի առարկել, Թալինի մայր եկեղեցու ճախակողմյան սյան վրա Ուխտատուրի թողած արձանագրությունն է՝ 783 թվականին:

Հայկական թվականները, փաստորեն, լայն գործածության մեջ են դրվել IX դարից:

Հայկական թվականը մեր արձանագրությունների և մատենագրության մեջ հիշվում է տարբեր անուններով. «Թուականութիւն Թորգոմեան», «Թիւ Ասքանազեան», «Թուականութիւն Հայկազեան տոհմի», «Թուաբերութիւն Արամեան», «Թուաբերութիւն

[1] Գարեգին վ. Հովսեփյան, Քարտեզ հայ հնագրության (Տես «Շողակաթ», էջ 178):

[2] Այս կարծիքն ունի նաև պրոֆ. Կ. Ղաֆադարյանը (տես նրա «Հայկական գրի սկզբնական տեսակները», էջ 22):

Հայոց տոմարիս», «Թուաբերութիւն, որ Յաբեթեան կոչի» և այլն։
Հայկական թվականը մեկ-մեկ կոչվում է նաև «Խոսրովային»,
անշուշտ, նկատի ունենալով հայոց թվականի սկիզբը պարսից
Խոսրով Անուշիրվանի թագավորության (531—579 թթ.) ժամա-
նակաշրջանին համընկնելը։

Թվականների սկիզբը, սովորաբար, կապվում է պատմական
որևէ կարևոր իրադարձության, քաղաքական աչքի ընկնող անձնա-
վորության հետ։ Օրինակ, հռոմեական թվականը, Հռոմի հիմնա-
դրման հետ է կապվում, սելևկյան թվականը՝ Սելևկոսի տարած
հաղթանակի, քրիստոնեական թվականը՝ Քրիստոսի ծննդյան, հիջ-
րայի թվականը՝ Մուհամմեդի Մեկկայից Մեդինա փախչելու հետ
և այլն։ Սակայն Հայկական թվականը կապված չէ նման որևէ
դեպքի կամ անձնավորության հետ։ Համենայն դեպս, 552 թվա-
կանից մեզ՝ նման ոչ մի դեպք հայտնի չէ։

Մենք մեր «Շիրակացու մատենագրության» մեջ անդրադար-
ձել ենք այդ հարցին և այն կարծիքը հայտնել, որ հայ թվակա-
նության սկիզբը կապված է տոմարական մի աղյուսակի հետ, որը
կոչվում է «ՇԼԲ» աղյուսակ։ Համառոտակի կանգ առնենք այս
աղյուսակի վրա, քանի որ, ինչպես հետո կտեսնենք, նրա հետ են
կապված ոչ միայն հայոց մեծ, այլև հայոց երկու փոքր թվական-
ները ևս։

Քրիստոնեությունը հայաստան մուտք գործելուց և պաշտո-
նական կրոն ճանաչվելուց հետո սահմանվում են որոշ տոներ՝
կապված պաշտամունքի հետ։ Ինչպես հայտնի է, վաղ քրիստո-
նեական շրջանում քրիստոնեական բոլոր երկրներում, այդ թվում
նաև Հայաստանում, օգտագործում են լուսնական 19-ամյա շրջանի
համար կազմված տոնացույցը։ Հետագայում այդ աղյուսակները
փոխարինվում են 95-ամյա աղյուսակներով, իսկ 354 թվականից
սկսում են օգտագործել տոմարագետ Անդրեաս Բյուզանդացու կազ-
մած 200-ամյա շրջանն ընդգրկող աղյուսակը։

Անդրեաս Բյուզանդացու այդ աղյուսակը վերջացավ 553 թվա-
կանին, չկար նրան փոխարինող ճիշտ այլ աղյուսակ, ուստի և տո-
ներն սկսեցին շփոթել։ «...Ի ժամանակս թագաւորին Յուստինիա-
նոսի,—գրում է Հակոբ Ղրիմեցին,—եղև լրումն Մ. ամից կարգացն
Անդրէասայ, և սկսան շփոթել լրմունք զատկաց և գիրք արուես-
տական տումարաց»[1]։

[1] E. Dulaurier, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859,
Ջ 65։



Տոմարական այս շփոթությունը, սակայն, միայն հայերի մոտ
չէր, այլ քրիստոնեական բոլոր ժողովուրդների։ Այս խառնաշփո-
թությունը կարգավորելու համար, ինչպես ասել ենք, 561 թվականին
Ալեքսանդրիայում հրավիրվում է հայտնի տոմարագետների ժողով՝
էաս Ալեքսանդրացու գլխավորությամբ։ Ալեքսանդրիայի այս
ժողովի մասնակիցները կազմում են 532 տարիների տոնական մի
աղյուսակ՝ բաղկացած արեգակնային 28 և լուսնական 19-ամյա շըր-
ջանների բազմապատիկից։ 532 տարիների այս աղյուսակն օգտա-
գործեցին քրիստոնեական բոլոր երկրներում, այդ թվում նաև
Հայաստանում։ Բացառություն հանդիսացավ միայն Կոստանդնու-
պոլիսը, ուր Իրիոն անունով մեկն այս աղյուսակում որոշ փոփո-
խություններ մտցրեց, որը և հետագայում տեղիք տվեց մեծ վեճե-
րի։ Էասի աղյուսակն է, որ նրա ընդգրկած տարիների հաշվով, հայ-
կական թվանշաններով արտահայտված, կոչվեց ՇԼԲ կամ, ավելի
կլորացած թվով, հինգհարյուրյակ (Շ.եակ)։

Հայկական «մեծ» թվականն ահա սկիզբ է առնում այս աղ-
յուսակից, որի առաջին տարին սկսում էր 553 թվականով։ Այս
մասին են վկայում միջնադարյան մեր ականավոր բոլոր մատենա-
գիրները՝ Հովհաննես Կոզեռնը, Հովհաննես Իմաստասերը, Ստե-
փանոս Ասողիկը, Ստեփանոս Օրբելյանը, Կիրակոս Գանձակեցին,
Մխիթար Այրիվանեցին և ուրիշներ։

Շիրակացին VII դարում, Անաստաս Կաթողիկոսի (661—
667 թթ.) հանձնարարությամբ, հավանական է 665 թվականին,
կազմում է հայկական «անշարժ տոմար»-ը, որի պատառիկները,
բարեբախտաբար, հասել են մեզ, և մենք այժմ պարզ պատկերացում
ունենք նրա մասին։

Շիրակացու կազմած այդ «անշարժ տոմար»-ը, այսինքն՝
տոմարական աղյուսակները, իրականության մեջ, անշարժ չէին.
նրանք շարժական էին՝ միայն համարեցված բյուզանդական
աղյուսակներին։ Մենք փաստեր չունենք, որ Շիրակացին հայկա-
կան տոմարի մեջ մտցրած լինի նահանջի սկզբունքը։ Հայկական
տարին, ինչպես ասել ենք, բաղկացած էր 365 օրից, հաշվի չէր
առնվում տարվա մի քառորդ օրը, որը չորս տարվա մեջ մի օր էր
կազմում։ Այդ մի քառորդ օրը չհաշվելու հետևանքով հայկական
տարին չորս տարին մեկ օրով առաջ էր շարժվում։ Այդ սկզբուն-
քով էլ կազմել էր Շիրակացին իր ՇԼԲ աղյուսակը՝ մի երեսի
վրա տալով բյուզանդական անշարժ աղյուսակները, իսկ մյուս
երեսի վրա՝ հայկական շարժականը՝ համարեցված անշարժին։

Սակայն Շիրակացին իր ՇԼԲ աղյուսակում հաշվի չէր առել մի կարևոր հանգամանք—թե ի՞նչ պետք էր անել՝ եթե, չորս տարին մեկ օրով առաջ շարժվելով, հայկական տարին հասներ մինչև այն կետը, երբ գարնանամուտը, որի հետ կապված էին զատկի հաշվումները, կրկնվի։

Շիրակացու այս աղյուսակներով հարթ ընթացան մինչև 1003 թվականը, իսկ 1004 թվականին, չորսական տարիների օրերի հաշիվը հասավ այն կետին, որ գարնանամուտը կրկնվեց։ 1004—1007 թվականներին, փաստորեն, մի տարում երկու գարնանամուտ եղավ, մեկը՝ հունվարի 1-ին, իսկ մյուսը՝ դեկտեմբերի վերջին։ 1008 թվականից սկսած այլևս անհնար էր տառացի առաջնորդվել Շիրակացու աղյուսակով։ Այդ ավելի քան ակներև էր այն ժամանակ, քանի որ եկեղեցական տոմարին զուգահեռ, ժողովրդի մոտ գործածության մեջ էր քաղաքացիական տոմարը, որով տարեմուտն անփոփոխ համարվում էր գարնանամուտը։

Ահա այս փոփոխություններից հետո տոմարական հաշիվները խառնվեցին։ Միակ հնարավոր ելքն այն էր, որ հաշվի չառնվեր ՇԼԲ աղյուսակում հայկական ավելամուտ մեկ տարին։ Այս խառնակ դրությունը շարունակվեց մինչև ՇԼԲ-ի վերջանալը՝ 1084 թվականը։ 1085 թվականին նոր ՇԼԲ կազմեց Հովհաննես Իմաստասերը, որի մասին մենք կխոսենք քիչ հետո։

Տոմարական նեղ մասնագիտական այս հարցերի վրա մենք անհրաժեշտ համարեցինք կանգ առնել, որովհետև այդ ՇԼԲ-ի հետ են կապված հայկական թվականների հաշվումները և գոյություն ունեցող թվական սխալները։

Հայկական մեծ կոչվող թվականի սկիզբը, ինչպես ասացինք, համարվել է 553 թվականը։ Ներկա թվականի 553 թիվը՝ հայկական մեծ թվականով 1 թիվն էր, 554-ը՝ երկուսը և այլն։ Մեր ներկա թվականի և հայկական մեծ թվականի տարբերությունը ոչ թե 551 էր, այլ 552, ուստի 553 թվականից մինչև 1003 թվականը ներառյալ, հայկական թվականը հաշվելիս պետք է ավելացնել ոչ թե 551, այլ 552։

1004 թվականին մեկ տարով փոփոխվում է նաև հայկական թվականի տարբերությունը մյուս թվականների հարաբերությամբ։ Այսպես, ըստ հին հայկական «Պատճէն տոմարի»-ի, հայկական և հռոմեական թվականների տարբերությունը 304 է եղել, իսկ ուշ շրջանի «պատճէն»-ներում՝ 303։



Հայկական մեծ թվականի կապակցությամբ անհրաժեշտ է հաշվի առնել մի այլ կարևոր հանգամանք, որ շատերն անտես են առնում։ Միջնադարյան հայ մատենագրության մեջ գործածված քրիստոնեական թվականը մեր ներկայիս թվականը չէ։ Պարզվում է, որ հնում քրիստոնեական թվականի վերաբերյալ գոյություն են ունեցել տարբեր հաշվումներ՝ հունական, հռոմեական, ասորական, հայկական և այլն։ Հայ տոմարագետների հաշիվներով, Քրիստոսը մեր ներկա թվականից երկու տարի առաջ է ծնվել. ուստի և հայ մատենագրության մեջ, քրիստոնեական թվականը հաշվելիս, եթե, իհարկե, հայ հռոմեական շրջաններից չէ, պետք է հանել 2 միավոր։Բերենք մի քանի փաստեր։

Թվականների զուգահեռ աղյուսակ։

*Գրիգոր գրիչը Սուրխաթում մի ձեռագիր է ընդօրինակել՝ «... Ի մարդեղութենէ կենարարին ՌՅՀԳ, և ի Հայոց մեծի թուականիս ՊԻ ամի»[1]: Հայկական ՊԻ թվականը հավասար է 1371-ի (820+551=1371): Հիշված քրիստոնեական թվականը՝ ՌՅՀԳ (1373), երկու միավորով ավելի է: Պարզ է, որ այստեղ հիշված է քրիստոնեական հայկական թվականը:*

*Մարկոս գրիչն իր ձեռագրի ընդօրինակությունն ավարտել է «... ի թուականիս մեծ յԱդամայ վեցհազարերորդի ութհարիւրերորդի քսաներորդի Զ.երորդի (8626) ի ծննդենէն Քրիստոսի՝ ՌՆԳ* **հայոց հաշուի** *(ընդգծումը մերն է—Ա. Ա.), և ըստ յունաց հաշուի՝ Ռ.երորդի երեք հարիւրերորդի ննսներորդի երրորդի (1393), և ըստ ֆռանգաց հաշուի՝ Ռ.երորդի երեք հարիւրերորդի ննսներորդի Թ.երորդի (1399), և ըստ ասորաց՝ Ռ.երորդի երեքհարիւրերորդի նսուներորդի ութերորդի (1393), և ըստ պատճէն Յաբեթական տումարիս հայոց ՊԾ (1401), տանուտէր տարոյն առեծն...»[2]: Բերված թվականների այս զուգահեռները կարևոր են պարզելու ժամանակագրական այն հաշվումները, որ կատարվելիս են եղել մեզ մոտ միջին դարերում:*

*Վերծանությունն սկսենք հայկական թվականից, որովհետև հայ գրիչները օտար թվականների մեջ կարող էին սխալվել, իսկ հայկականի՝ որով նրանք առաջնորդվում էին, դժվար սխալվեին: Ձեռագրում հիշված հայկական թվականը, որն անվանված է թվական «պատճէն Յաբեթական տումարիս», գրված ՊԾ թվականին, մեր ներկա թվականով հավասար կլինի 1401-ի (850+551=1401): Հիշատակարանում հիշված արարչության թվականը՝ Աղեքսանդրյան հաշվով է, ուստի պետք է նրանից հանենք 5425 (6826—5425=1401):*

*Այս հիշատակարանում, սակայն, ամենից ուշագրավը քրիստոնեական թվականներն են, առանձնապես այն թվականը, որը համարվում է հայոց թվահաշվի Քրիստոսի ծննդյան թվական: Ուրեմն՝ քրիստոնեական տարբեր հաշվումների շարքում կար և հայկական հաշվում, որը ներկա մեր թվականից 2 տարով ավելի էր, 1401 թվականին՝ 1403 էր:*

*Հետաքրքիր են այստեղ նաև քրիստոնեական թվականի մյուս հաշվումները, ըստ որի 1401 թվականին, հույների հաշվով,*

[1] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 481:

[2] Նույնի, ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 19:



*1393 թվականն էր, ֆռանկների հաշվով (նկատի ունի հռոմեացիներին)՝ 1399-ը, ասորիների հաշվով՝ 1398-ը: Նշված թվականներից ինչ-որ թյուրիմացություն կա հռոմեական հաշվի մեջ, որովհետև հռոմեականը հենց մեր ներկա թվականի հաշվումն է և պետք է լիներ 1401:*

*Ի դեպ, այս հիշատակարանում ճիշտ է հիշված նաև տանուտերը. 1401 թվականին տանուտերը, իրոք, եղել է առյուծը:*

*Թվականների նման մի զուգահեռ ունի նաև Երուսաղեմի հայոց պատրիարքարանի մի ձեռագիր, որը գրված է՝*

*«Ի գալստենէ կենարարին»՝ 1383 թվականին,*
*«Յուբեթական տումարի»՝ 830 թվականին,*
*«Ըստ Նորում շրջանի»՝ 297 թվականին,*
*«Ըստ Յունաց»՝ 1389 թվականին,*
*«Ըստ Ֆռանկաց»՝ 1381 թվականին,*
*«Ըստ Ասորւոց»՝ 1374 թվականին[1]:*

*Բոլոր թվականներն էլ համապատասխանում են իրար. հայկական թվականով՝ 830+551=1381, հայկական քրիստոնեական՝ 1383—2=1381, հայկական փոքր թվականով՝ 297+1084=1381: Այս բոլոր թվականները համապատասխանում են քրիստոնեական հռոմեական, այսինքն՝ մեր ներկա թվականին, որը, հայ իրականության մեջ հայտնի է եղել ֆռանկաց թվական անունով:*

*Կարելի է հարյուրավոր այլ փաստեր բերել, երբ հայ մատենագրության մեջ օգտագործված քրիստոնեական թվականը ոչ թե մեր ներկա թվականն է, որը հայագետներից շատ շատերին է թյուրիմացության մեջ գցել, այլ՝ քրիստոնեական հայկականը:*

*Հայ մատենագրության մեջ, սակայն, երբեմն պատահում է, որ գործ են ածում քրիստոնեական հռոմեական թվականը, այսինքն՝ մեր ներկայումս գործածական թվականը: Այդ արվում է, մեծ մասամբ, հռոմեական շրջանների հետ կապված հայ ունիթորների կողմից: Բերենք այս կարգի թվականների օգտագործման մի քանի փաստեր:*

*Այժմ Վենետիկի Մխիթարյանների սեփականությունը հանդիսացող Իսրայել գրչի ընդօրինակած «Ոսկեփորիկ»-ի ավարտման ժամանակը՝ «...Ի թվ. ՁՀՁ, ի Քրիստոսէ՝ ՌԳՃԻԷ, ի Դոմինիկոսէն և ի Ֆրանցիսկոսէ ՃԻԵ տարի է»[2]: Այստեղ հիշված քրիստոնեա-*

[1] Նորայր եպիսկոպոս Պողարյան, Երուսաղեմի ձեռագրաց ցուցակ, հատ. Գ, էջ 130:

[2] Հ. Բ. Սարգիսյան. Վենետիկի ձեռագրաց ցուցակ, Բ հատ., էջ 698:

կան թվականը, անվրճելի, հռոմեականն է, ուստի հայկականի և քրիստոնեականի տարբերությունը 551 է. քրիստոնեական ՌԳՃԻԷ-ն հավասար է 1327-ի. հայկական ՉՀԶ-ն դարձյալ հավասար է 1327-ի (776+551=1327):

Սեբաստիայի ս. Նշանի №2 ձեռագիրը գրված է «Ադամա՝ ՑՊԻԱ, և ըստ հայկական թուականի ՉԿԲ, յամսեանն յուլիս ԺԸ, յաւուր չորեքշաբթի և տանուտէր խոյն»[1]: Այստեղ թեպետ չի հիշված կոնկրետ քրիստոնեական թվականը, սակայն արարչության և հայկական թվականների համեմատությունից դժվար չէ տեսնել, որ քրիստոնեական թվականը հաշված է հռոմեական հաշվով. հայկական թվականը հավասար է 1313-ի (762+551=1313): Արարչությանը՝ կայսերականն է, որից պետք է հանել 5508՝ հռոմեական հաշվումով, կմնա 1313: Այդ թվականին տանուտերը խոյն է եղել:

Թվականների վերծանության հետ գործ ունենալիս պետք է հաշվի առնել մի հանգամանք ևս, որ սկսած XVI դարից քրիստոնեական թվականի գործածությունը հայ մատենագրության մեջ փոխվում է. հիմնականում, սկսում են արդեն գործածել հռոմեական հաշվով կազմած քրիստոնեական թվականը, իսկ մեզ մոտիկ ժամանակներում՝ նույնիսկ մոռանում են այն մասին, որ մենք երբևէ քրիստոնեական ուրույն թվական ենք ունեցել:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՓՈՔՐ ԹՎԱԿԱՆԸ

Ինչպես հայկական առաջին ՇԼԲ աղյուսակներով հայկական մեծ թվականի սկիզբը դրվեց, այնպես էլ երկրորդ ՇԼԲ աղյուսակով՝ հայկական փոքր թվականի:

Հայկական այս նոր թվականը հայտնի է զանազան անուններով՝ «Փոքր թվական», «Սարկավագադիր թվական», «Մորուկ», «Թուական նորոյ շրջանի» և այլն:

1004—1007 թվականներին հայկական գիշերահավասարը կըրկընվելուց հետո, երբ հայկական տոմարական հաշիվները խառնվեցին, նոր Շլբ աղյուսակի բացակայության հետևանքով, հարկադրված եղան հայ թվականի մի տարին հաշվի չառնել խախտված ՇԼԲ-ի աղյուսակներում և այդպես, «կարկատան ձգելով», ինչպես ասում է Հովհաննես Իմաստասերը, մի կերպ, առաջնորդվեցին մինչև աղյուսակների վերջանալը:

[1] Տե՛ս «Հանդէս ամսօրեայ», 1923, էջ 70:



Նշված աղյուսակները վերջացան 1085 թվականին: Հովհաննես Իմաստասերը նոր ՇԼԲ աղյուսակում կրկնեց 1085 թվականը: Շարժական տոմարով 1085 թվականին հայկական ամանորը՝ նավասարդի մեկը, ընկնում էր մարտի 1-ին, սակայն Իմաստասերն անմիջապես չշարունակեց այդ ամսաթիվը: Նա իր առջև հաստատ սկզբունք էր դրել, հայկական տոմարը դարձնել անշարժ, ուստի և անհրաժեշտ էր սահմանել հայկական ամանորի ճիշտ ամսաթիվը: Նա չուզեց վերցնել հարևան երկրներում՝ Բյուզանդիոնում և Պարսկաստանում գործածական տոմարներից ոչ մեկը՝ ոչ հունվարի 1-ը և ոչ էլ մարտի 31-ը, այլ, ուսումնասիրելով հին հայկական մատենագրությունը, աշխատեց պարզել, թե 5-րդ դարում Մեսրոպ Մաշտոցը և նրա աշակերտները ինչ ամանորով են առաջնորդվել: Նա պարզեց, որ 428 թվականին հայկական ամանորը եղել է օգոստոսի 11-ին, այդ էլ նա ընդունեց ամանոր: Այս մասին հանգամանորեն խոսել է տոմարական աշխատությունների մեջ, որոնք մենք հրատարակել ենք «Հովհաննես Իմաստասերի մատենագրություն»-ում: Նրա վրա մենք կանգ ենք առել տեքստի ծանոթագրության մեջ, ուստի չենք ուզում կրկնել[1]:

ՇԼԲ աղյուսակի սկզբի տարին, այսինքն՝ 1085 թվականին, վերադիրը «Ա»-ն էր, յոթներյակը՝ «Գ»-ն, տանուտերը՝ «Խոյ»-ը, տարեգիրը՝ «Վ»-ն, լրումը՝ ապրիլի 13-ին կիրակի օրը:

Հովհաննեսի «անշարժ» այս տոմարը, ինչպես տեսնում ենք, չէր ամփոփվում մեր ներկա տարվա սահմաններում, այլ, սկսելով օգոստոսի 11-ին, անցնում էր դեկտեմբերը և շարունակվում հաջորդ տարին մինչև օգոստոսի 10-ը: Ահա այս է պատճառը, որ փոքր թվականը հաշվելիս պետք է ավելացնել 1083 կամ 1084. եթե տեղի է ունեցել օգոստոսի 11-ից մինչև դեկտեմբերի 31-ը, ավելացվում է 1083, իսկ եթե տեղի է ունեցել հունվարի 1-ից մինչև օգոստոսի 10-ը՝ 1084:

Բերենք Հայկական փոքր թվականի գործածության մի քանի փաստեր: Եղիշեի պատմությունը Կոշա վանքում ընդօրինակվել և ավարտվել է՝ «Ի հայկազեան թուականիս վեցհարիւրերորդի և երկուց տասանց, եզակաւ միով առաւելեալ, և ըստ նորում շրջանիս միոյ յոբելինի և երից տասանց և քառից երկուց, և ըստ ծննդեան

[1] Ա. Աբրահամյան, Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը, էջ 124:

կենարարին ... ՌՃՀԴ»[1]։ Հայկական մեծ թվականը հավասար է (621+551) 1172-ի։ Քրիստոնեական հայկական թվականը հավասար է (1174—2)=1172։ Հայկական փոքր թվականը հավասար է (88+1084)=1172։ Ձեռագիրն, ուրեմն, գրված է 1172 թվականի առաջին կեսում (մենք նկատի ունենք 1084 գումարվելու թվահաշիվը)։

Ստեփանոս գրիչն իր ընդօրինակած ձեռագիրն ավարտել է «...ի թուաբերութեանս ասքանազեան և Յաբեթական տոմարի ՊԱ, և ըստ Նորումս շրջանի ՄԿԹ և ի գալստենէ կենարարին ՌՅԾԴ»[2]։ Հայկական մեծ թվականը հավասար է՝ (801+551)=1352-ի։ Հայկական քրիստոնեական թվականը հավասար է (1354—2)=1352-ի։ Հայկական փոքր թվականը հավասար է (269+1083)=1352-ի։ Այսպիսով, երեք թվականներն էլ համապատասխանում են իրար։ Ձեռագիրը գրված է տարվա առաջին կեսում, օգոստոսի 11-ից առաջ, այդ պատճառով ավելացնում ենք 1084։

Հայկ. ՍՍՌ Պետ. Մատենադարանի սեփականությունը հանդիսացող №7547 ձեռագրի ընդօրինակությունն ավարտված է՝ «Յաբեթական տաւմարի ի ՊԻԴ, և ըստ Նորում շրջանի ի ՄՂԱ, և ի գալստենէ կենարարին ՌՅՀԷ, և յելիցն Ադամայ ի դրախտէն ՅՊ»[3]։ Հայկական մեծ թվականով ձեռագիրը գրված է՝ 824+551=1375-ի։ Քրիստոնեական հայկական թվականով՝ 1377—2=1375-ի։ Արարչության թվականը Աղեքսանդրյանն է, ուստի պետք է հանել 5425՝ կլինի գարձյալ 1375 (6800—5425=1375-ի)։ Հայկական փոքր թվականը հավասար է՝ 291+1084=1375-ի։

Կարելի է բերել բազմաթիվ այլ օրինակներ ևս, բայց, կարծում ենք, բերվածները բավական են նշված թվականները հաշվելու ընդհանուր սկզբունքը պատկերացնելու համար։

Օրինական հարց է առաջանում, թե Հովհաննես Իմաստասերի անշարժ տոմարին զուգընթաց շարունակվե՞ց արդյոք հայկական քաղաքացիական շարժական տոմարը։ Այդ հարցին մենք հանգամանորեն անդրադարձել ենք Հովհաննես Իմաստասերի մատենագրության մեջ և մի շարք օրինակներ բերել շարժական տոմարի գործածության։ Մեր հաշվումներով, 14-րդ դարում հաշված ամսա-

[1] Գարեգին Կաթողիկոս Հովսեփյան, Հիշատակարանք ձեռագրաց, էջ 410—411։

[2] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 399։

[3] Նույն տեղը, էջ 518։



թվերի կեսից ավելին մեզ հասած և հայտնի տեքստերում գրված են շարժական տոմարով։

Ի դեպ, տոմարական այն բոլոր հաշվումների մեջ, որոնք չեն առաջնորդվել Հովհաննես Իմաստասերի տոմարով և շարունակել են շարժական տոմարի հաշվումները, ավելամուտ մի տարի ունեցան հայկական թվականում 1317 թվականին, որովհետև հայկական ամսաթվերում, նահանջը հաշվի չառնելու հետևանքով, Հայկական թվականը չորս տարին մեկ օրով առաջ անցավ այնքան, որ Նավասարդի 1-ը համընկավ հունվարի 1-ին և մի ավելորդ տարի մուտք գործեց հայկական թվականում։ Ճիշտ է, շատ քիչ, բայց պատահում են թվականի այս սկզբունքի հաշվումները։

## ԱԶԱՐԻԱ ՋՈՒՂԱՅԵՑՈՒ ԹՎԱԿԱՆԸ

1616 թվականին վերջացավ «Սարկավագադիր» կամ «Փոքր» կոչվող թվականի առաջին տարում կազմված ՇԼԲ աղյուսակը. անհրաժեշտ էր նոր աղյուսակ կազմել։ Այդ գործը ձեռնարկեց տոմարագետ Ազարիա Ջուղայեցին. նա կազմեց ՇԼԲ-ի նոր աղյուսակ, որով և սկիզբ դրեց նոր թվականի, որը կազմող հեղինակի անունով էլ կոչվեց Ազարիայի թվական։

Ազարիայի թվականը լայն ընդունելություն չգտավ Հայաստանում. նա գործածվեց Պարսկաստանի և Հնդկաստանի գաղթավայրերում միայն։ Կան հայերեն քիչ թվով տապանաքարեր և ձեռագրեր, որոնք թվագրված են այս թվականով։

Ազարիայի տված թվականը մեր ներկա թվականին վերածելու համար անհրաժեշտ է գումարել 1615 կամ 1616. եթե դեպքը տեղի է ունեցել մարտ ամսի 21-ից առաջ, գումարվում է 1616, իսկ եթե հետո՝ 1615։ Պետք է նկատի ունենալ, որ Ազարիան իր տոմարում նոր ամանոր սահմանեց. նա նոր տարին օգոստոսի 11-ից տեղաշարժեց մարտի 21-ը։ Բերենք Ազարիայի թվականի գործածման մի քանի փաստեր։

Նոր Ջուղայի ս. Լուսավորիչ եկեղեցու գավթի մի տապանաքարի վրա կարդում ենք.

«Այս է տապանս Փանոսի,
Անմեղ մանկան նահատակի,
Կրտսեր որդի Խօջամալի,
Խէլօք տղայ քաղցր և բարի,

*Կնքիծ եթող եղբարց սրտի,*
*Փոքր թիվն ՃԷ.ի,*
*Նախայ ամսին մին»*[1]:

Ազարիայի թվականի ՃԷ-ն՝ 107-ը հավասար է 1723-ի (107+1616=1732), իսկ նախա ամսի մեկը՝ հունիսի 19-ին:

Մեսրոպ Սեթն իր «Հայերը Հնդկաստանում» անգլերեն գրված աշխատության մեջ բերում է Հնդկաստանի Ագրա քաղաքի գերեզմանատանը գտնվող տապանաքարի հետևյալ արձանագրությունը (թարգմանում ենք անգլերենից). «Այս է տապան Սամուելի, որդի Ջոհրաբ բեկի: Վախճանվել է Ազարիայի 159 թվականին»[2]: Մեսրոպ Սեթը ինչպես միշտ, այստեղ ևս Ազարիայի թվականին գումարում է 1615 և Ջոհրապ բեկի մահվան թվականը համարում 1774-ը:

Փիրղալեմյանի հավաքած ձեռագրերի հիշատակարանների անտիպ ժողովածուի մեջ բերված է Ազարիա Ջուղայեցու թվականը պարունակող հետևյալ հիշատակարանը, «[Աւարտեցաւ ընդօրինակութիւն ձեռագրիս] ի թուաբերական տումարի ՌՃԵ, և ըստ նորում շրջանի՝ ԽԱ, և ի գալստեանէ կենարարին՝ 1656, և յելիցն Ադամայ՝ 7081, ի հայրապետութեանն Յակոբայ»[3]:

Հայկական մեծ թվականով ՌՃԵ-ն հավասար է 1656-ի (1105+551=1656), Արարչության թվականը հիշված է աղեքսանդրյան հաշվով, ուստի 7081-ից պետք է հանենք 5425, կմնա 1656: Ջուղայեցու ԽԱ թվականը հավասար է 41+1615=1656: Այսպիսով, ձեռագիրը գրված է, անվիճելի, 1656 թվականին:

Նոր Ջուղան վերակառուցելու նպատակով քաղաքի աչքի ընկնող 26 հայ խոջաներ համատեղ մի պայմանագիր են կնքել Ազարիայի 154 թվականին. «Գրվեցավ թիվն 154 նախայ՝ 15»[4],— կարդում ենք պայմանագրի վերջում: Ազարիայի 154 թվականը հավասար է մեր ներկա թվականի 1770-ին (1616+154=1770), իսկ նախայ 15-ը՝ հուլիսի 3-ին:

1798 թվականին Կալկաթայում տպված Էֆիմերտեի մեջ բերված է հռոմեական, հին հայկական, արարչության, հիջրայի և Ազարիայի թվականների զուգահեռ մի ցանկ, ուր առաջին սյունակում ներկա թվականի 1752-ը համաձայնեցված է Ազարիայի 136-ին, հիջրայի 1165-ին, հայկական մեծ թվականի 1201-ին և

[1] Հ. Տեր-Հովհանյանց, Պատմություն Նոր Ջուղայու, հատ. Ա, էջ 231:

[2] Mesrop Seth, Armenians in India, Calcutta, 1937, էջ 127:

[3] ՀՊՄ ձեռ. № 4515, էջ 466:

[4] Հ. Տեր-Հովհանյանց, Պատմություն Նոր Ջուղայու, հատ. Ա, էջ 314:



հրեից թվականի 5512-ին[1]: Ազարիայի 136 թվականը հավասար է 136+1616=1752: Հայկական մեծ թվականը հավասար է՝ 1201+551=1752: Հիջրայի 1165 թվականը դարձյալ հավասար է 1752 թվականին (այս մասին տես առջևում բերված հիջրայի աղյուսակները):

Ազարիա Ջուղայեցին, ի դեպ, փորձել է պարսկական անունները փոխել հայերեն. նա ամիսներին հետևյալ նոր անուններն է տվել.

Ցողաբեր—մարտի 21—ապրիլի 19
Ծաղկավետ—ապրիլի 20—մայիսի 19
Գետահոս—մայիսի 20—հունիսի 18
Պտղաբեր—հունիսի 19—հուլիսի 18
Առատահոս—հուլիսի 19—օգոստոսի 17
Գոհություն—օգոստոսի 18—սեպտեմբերի 16
Պտղակիթ—սեպտեմբերի 17—հոկտեմբերի 16
Տերևաթափ—հոկտեմբերի 17—նոյեմբերի 15
Ձյունաբեր—նոյեմբերի 16—դեկտեմբերի 15
Սառուցյալ—Դեկտեմբերի 16—հունվարի 14
Հողմաշունչ—հունվարի 15—փետրվարի 13
Ձյունահալ—փետրվարի 14—մարտի 15
Մահիլակ—մարտի 16—մարտի 20

Տոմարական հաշվումների գործը դյուրացնելու համար, անհրաժեշտ ենք համարում բերել ներկայիս գործածական, հին հայկական և Ազարիայի ամիսների զուգահեռ ցանկը:

Հին հայկական ամիսների անուններն են.

1. Նավասարդ
2. Հոռի
3. Սահմի
4. Տրե
5. Քաղոց
6. Արաց
7. Մեհեկի
8. Արեգի
9. Ահեկի
10. Մարերի
11. Մարգաց
12. Հրոտից
13. Ավելյաց

[1] Գրգուկ, որ կոչի Էֆիմէրտէ, Կալկաթա, 1798, էջ 91—105:

| | | |
|---|---|---|
| ՊԵ – պե | ՍԽՆԷ – սխնէ | ՏԱ – տա |
| ՊԻ – պի | ՍԽ – սխ | ՏԱՐ – տար |
| ՊԼ – պլ | ՍԿ – սկ | ՏԵ – տե |
| ՊԱՆ – պան | ՍՆ – սն | ՏԻՐԱ – տիրա |
| ՊՈՒ – պու | ՍՈ – սո | ՏՆ – տն |
| ՊԱՐ – պար | ՍԷ – սէ | ՏՈ – տո |
| ՌԱ – ռա | ՎԱ – վա | ՏՍ – տս |
| ՍԱ – սա | ՎՐ – վր | ՏՎ – տվ |
| ՍԹ – սթ | ՎՆ – վն | ՑՐ – ցր |
| ՍԻ – սի | ՎԱՐ – վար | ՔՍ – քս |
| ՍՆ – սն | ՒՈ – ւո | ՐՆ – րն |
| ՓԱ – փա | ՓԱՐ – փար | |
| ՑԻ – ցի | ՑՈ – ցո | |

Կապգրության տարատեսակներից են միացյալ կոչված տառերը, որոնք հանդես են գալիս տպագրության ժամանակ. մ, ճ և վ տառերի աջ թևերը երբ խանգարել են հաջորդ տառերի շարվածքը և մեծ բացատներ ստեղծել, այդ դեպքում հարմար են հա-



մարել երկու տառերը կցնել իրար և միացած ձուլել: Միացյալ ձուլված նման տառերից հնատիպ գրականության մեջ հանդիպում են հետևյալները.

մի մե մխ մթ մկ ճն մէ հն և այլն:

Այլ ձևով են վարվել հնատիպ գրականության մեջ պոչավոր տառերից հետո շարվող տառերի հետ. եթե նրանք ևս կցեին դեպի աջ հակված պոչիկներին, միացյալ այդ տառերը տգեղ ձև կունենային և կաղավաղվեին, ուստի նրանք իրար հետ ձուլել են այնպես, որ երկրորդ տառը դրվել է պոչիկից վերև, նրա ծոցում: Գրերի այդ տեսակները հայ մատենագրության մեջ կոչվել են ծոցագրեր: Որպես նմուշ կարելի է բերել ծոցագրերի հետևյալ օրինակները.

վչ զւ շր լց լբ լր վխ վի լի վկ նշ և այլն:

Հայկական մյուս տեքստերի համեմատությամբ, ամենից շատ փակագրվում են կնիքների տեքստերը: Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի Արխիվային բաժնում պահվում են հազարավոր վավերագրեր XVII—XVIII դարերից, որոնց մեծ մասի վրա կան կնիքներ: Այդ վավերագրերի մեջ կան մեծ թվով ժամանակի հայ քաղաքական, հասարակական և եկեղեցական աչքի ընկնող գործիչների այնպիսի համախոսականներ, որոնք իրենց վրա ունեն տասնյակ կնիքներ: Ի դեպ, կնիքներ են ունեցել անգամ միջակից ցածր համարվող առևտրականները և որակյալ արհեստավորները: Ահա այս կնիքներում շատ քիչ են այնպիսիները, որոնց տերերի անունները փորագրված լինեն կնիքի շրջանակի մեջ առանց փակագրի: Կնիքների տեքստերն ուսումնասիրողների վերծանության գործը հետագայում դյուրացնելու համար, անհրաժեշտ ենք համարում այբուբենական կարգով տալ այն անունները, որոնք հաճախ են հանդիպում կնիքների վրա գրված կապգրերում.

— Աբիսողոմոն

— Աղեքսան

— Արմէն

— Աւետիք

— Աբրահամ

— Առաքել

— Աստուածա-տուր

— Գալուստ

— Դանիէլ

— Դաւիթ

— Խաչատուր

— Կիրակոս

— Կարապետ

— Աղասի

— Ասատուր

— Աւագ

— Գաբրիել

— Գէորգ

— Գէորք

— Գէորգ

— Եսայի

— Երեմիա

— Թադէոս

— Կարապետ

— Կարապետ

— Ղազար

— Խաչատուր



— Մահտեսի

— Մովսէս

— Մկրտիչ

— Յակոբ

— Յարութիւն

— Յօհաննէս

— Յովսէփ

— Պետրոս

— Ռափայէլ

— Սիմէօն

— Ստեփան

— վարդապետ

— Սահակ

— Համբարձում

— Մինաս

— Միքայել

— Մատթեոս

— Մարքար

— Նահապետ

— Պետրոս

— Սարգիս

— Սահակ

— Պօղոս

— Սուքիաս

— Ստեփան

— Փիլիպոս



ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԶԱՐԴԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԶԱՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

արդանկարչությունը մանրանկարչության մասն է կազմում։ Մանրանկարչություն կամ մինիատյուրա են կոչվում ձեռագրերում արված բոլոր կարգի նկարազարդումները՝ զարդանկարները, զարդագրերը, լուսանցազարդությունները և այլն։

Հնում սովորություն է եղել ընդօրինակվող տեքստերն ակնապարար դարձնելու համար զարդանկարել նրանք։ Հռոմեացիների մոտ ընդունված էր ծիրանազարդ, ոսկեգիր ձեռագրեր գրելը։ Քրիստոնեական շրջանում ձեռագրեր նկարազարդելը սկսվեց IV դարում Սիրիայում, իսկ հետագայում քաղաքացիություն ստացավ Արևելքում և Բյուզանդիայում[1]։ Հայաստանը ևս այն երկրներից մեկն էր, ուր ընդունված էր ձեռագրերի նկարազարդումը։

Մեզ հասած հայկական ձեռագրերում հանդիպում ենք զարդանկարչության հետևյալ տեսակներին.

«Խորան»-ներ և «կիսախորան»-ներ—դրանք բնագրերի ըսկըզբում նկարված ճակատազարդ կամարներ են՝ դրված սյուների վրա. եթե սյուները երկարում են ամբողջ էջի երկարությամբ

[1] В. Н. Лазарев, История византийской живописи, М-ва, 1947, հատ. I, էջ 39։



և տիտղոսաթերթ կազմում, ապա նրանք կոչվում են «խորան»-ներ, իսկ եթե երկարում են միայն էջի վերին կես մասի չափով, կոչվում են «կիսախորան»-ներ։

«Լուսանցազարդություն»-ներ — լուսանցքներում նկարված բոլոր տեսակի զարդանկարները, որոնք կազմվում են բուսական, կենդանական և երկրաչափական տարբեր մոտիվներից՝ արմավենիներից (պալմետներից), վարդյակներից (ռոզետներից), աստղազարդերից, վրանաձև շենքերից և այլն։

«Զարդագրեր»— պարբերությունների նկարազարդված բազմաձև և բազմագույն սկզբնատառերը, որոնք տարբեր անուններ ունեն. եթե ծաղիկներով են զարդարել գրերը, կոչվում են ծաղկագրեր, թռչուններով՝ թռչնագրեր, գազաններով՝ գազանագրեր, եթե արտակարգ շքեղ են նկարված՝ փառագրեր, և այլն։

«Նկար»-ներ—հիմնականում պատահում են ավետարանների մեջ, ուր պատկերվում են Քրիստոսի կյանքի զանազան դրվագներ, որոնք կանոնականացրել է քրիստոնեական եկեղեցին։ Բացի այդ, ավետարաններում սովորություն է եղել նաև նկարել չորս ավետարանիչների՝ Մատթեոսի, Մարկոսի, Ղուկասի և Հովհաննեսի նկարները։ Ավելի ուշ շրջանում պատահում են նկարներ նաև աշխարհիկ թեմաներով. նկարազարդում են «Աղեքսանդրի վարքը», տաղարանները, պատմական ու տոմարական որոշ աշխատություններ և այլն։

Գրիչները, ձեռագրերը գրելուց հետո, սովորաբար, սկսում են մանրանկարել։ Սակայն ոչ բոլոր դեպքերում գրիչները նաև մանրանկարիչներ են հանդիսանում. հաճախ գրիչը միայն գրում է ձեռագիրը, իսկ մեկ ուրիշը, որը մանրանկարչության մասնագետ է, մանրանկարում է։ Մեզ են հասել ձեռագրեր, որոնք գրվել, վերջացվել են գրչի կողմից, իսկ զարդագրերի և զարդանկարների տեղը բաց է թողնվել, որպեսզի այն զարդանկարի մանրանկարիչը։ Սակայն պատահել է այնպես, որ ինչ-ինչ պատճառներով ձեռագրերը մնացել են առանց զարդանկարվելու։

Մանրանկարիչները մեզ մոտ կոչվել են զանազան անուններով՝ «ծաղկող», «ծաղկարար», «նաղաշ» և այլն։

Մանրանկարչությունը կարևոր սկզբնաղբյուր է զարդարվեստի պատմության համար. նա հնարավորություն է տալիս պարզելու, թե ինչ նկարներ կամ զարդանկարներ են վրձինվել այս կամ այն մանրանկարչի կողմից, ինչ ճաշակով և վարպետությամբ են կատարված նրանք, որքան նուրբ է նրանց արվեստը և այլն։ Սա-

կույն մանրանկարչությունը միաժամանակ արժեքավոր սկզբնաղբյուր է նաև հասարակության մտավոր կյանքի պատմության ուսումնասիրության համար։ Մանրանկարների մեջ արտացոլված են ժամանակակից մարդկանց պատկերացումները, նրանց աշխարհըմբռնողությունը և հուզող հարցերը։ Մանրանկարներն ունեն նաև ազգագրական մեծ արժեք. մենք մանրանկարներում հանդիպում ենք սոցիալական տարբեր ներկայացուցիչների՝ թագավորից մինչև հասարակ հովիվը և նախրապանը՝ իրենց ինքնատիպ տարազներով, զենքերով կամ գործիքներով։

Հայկական մանրանկարչությունից բավականին հարուստ նյութ է հասել մեզ։ Կարելի է ասել, որ հայկական ձեռագրերի մեծ մասն այս կամ այն չափով պարունակում են մանրանկարներ։ Ամենից շատ մանրանկարված են, իհարկե, կրոնական-կանոնական կոչվող ձեռագրերը։ Թեև սովորություն չի եղել պատմական, փիլիսոփայական և մեկնողական գրականությունը մանրանկարել, բայց կան այս բովանդակությամբ բավականին ձեռագրեր ևս, որոնք նույնպես ունեն լուսանցազարդություններ և զարդագրեր։

Հայ մանրանկարչության ուսումնասիրությամբ զբաղվել են մի շարք անվանի գիտնականներ։ Մանրանկարչական առանձին արժեք ներկայացնող ձեռագրեր ուսումնասիրել են ռուս գիտնականներ Ա. Ս. Ուվարովը, Վ. Վ. Ստասովը, ավստրիացի գիտնական Հ. Ստրժիգովսկին, Վենետիկի Մխիթարյաններից Ղ. Ալիշանը և ուրիշներ։ Հայ մանրանկարչության ուսումնասիրության գործում առանձնապես մեծ վաստակ ունի Գարեգին կաթողիկոս Հովսեփյանը. նա երկար տարիներ նվիրվել է այդ շնորհակալ գործին և իր մեծարժեք մենագրություններով լուծել հայ արվեստի պատմության հետ կապված կնճռոտ բազմաթիվ հարցեր։

Հայ մանրանկարչության ուսումնասիրության ասպարեզում խոշոր աշխատանքներ են կատարվել վերջին տասնամյակում Սովետական Հայաստանում։ Աչքի ընկնող աշխատանքներից պետք է նշել արվեստի պատմության հմուտ մասնագետ Ա. Ն. Սվիրինի «Հին հայաստանի մանրանկարչությունը» խորագրով արժեքավոր ուսումնասիրությունը, որը լույս է տեսել Մոսկվայում 1939 թվականին, ռուսերեն։ Հմուտ գիտնականն առաջին անգամ բարձրացրել է հայ մանրանկարչության մի շարք կարևոր հարցեր և մեծ հետաքրքրություն առաջացրել ինչպես հայ, այնպես և ռուս արվեստագետների շրջանում։ Հայ մանրանկարչության ասպարեզում մեղվաջան աշխատանք է կատարել և այժմ շարունակում է



կատարել արվեստի հմուտ վարպետ Լ. Ա. Դուռնովոն։ Նրա հեղինակությանն է պատկանում հայ ժողովրդին մեծ պատիվ բերող Մանրանկարչության գունատիպ ալբոմը։ Բացի այդ, նա մեղվաջան աշխատանք է կատարում նաև երիտասարդ մասնագետներ պատրաստելու ուղղությամբ։ Նրա ուսանողներից են երիտասարդ շնորհալի մասնագետներ Լ. Ազարյանը, Ա. Ավետիսյանը և ուրիշներ։

Հայ գաղթավայրերում ևս կան առանձին մասնագետներ, որոնք արժեքավոր աշխատանք են կատարում հայ մանրանկարչության ուսումնասիրության ուղղությամբ։ Մենք նկատի ունենք օրիորդ Սիրարփի Տեր-Ներսեսյանին, բանասերներ Ա. Երեմյանին, Հ. Քյուրտյանին և ուրիշներ։

Բարձր գնահատելով կատարված այս մեծ աշխատանքը, սակայն պետք է խոստովանենք, որ մանրանկարչության շատ դրվագներ, հայ մանրանկարչության շատ վարպետներ դեռ մնում են անհայտության խավարի մեջ, և առաջիկայում մեծ աշխատանք է պետք նրանց բացահայտելու համար։ Արդարացի է ռուս գիտնական Ստասովը, երբ գտնում է, որ հայ մանրանկարչությունը մեզ համար մնում է որպես «անծանոթ մի գանձատուն»[1]։ Առանձնապես անմշակ է մանրանկարչության մեզ հետաքրքրող ճյուղը՝ զարդագրությունը։

Մենք հավակնություն չունենք այստեղ լուծելու հայ մանրանկարչության կնճռոտ հարցերը։ Հայ մանրանկարչությունը մեր ներկա աշխատանքում հետաքրքրում է մեզ միայն այն չափով, ինչ չափով նա օգնում է լուսաբանելու հայ գրչության, հատկապես զարդագրերի հետ կապված աղբյուրագիտական որոշ հարցեր։

Հայ մանրանկարչությունը հին պատմություն ունի. նա, կարելի է ասել, այնքան հին է, որքան հին է մեր գրչությունը։ VI դարի հայ մատենագիր Վրթանես Քերթողի մի տեղեկությունից մենք իմանում ենք, որ նկարչությունը, այդ թվում նաև մանրանկարչությունը, սիրված արվեստ է եղել հին Հայաստանում։

Դժբախտաբար, հին հայկական մանրանկարչությունից քիչ նմուշներ են հասել մեզ, որոնք ամբողջական պատկերացում չեն տալիս։

Մեզ հասած ամենահնագույն մանրանկարները հանդիսանում են Փղոսկրյա ավետարանի պատառիկները, որոնք, Ստրժիգովսկու

[1] В. Стасов, Армянские рукописи и их орнаментация (տես, „Журнал МНП". 1886, հուլիս, էջ 133)։

կարծիքով, ժամանակակից են կազմին, այսինքն՝ VII դարից են[1], իսկ Լ. Ա. Դուռնովոն ավելի հին է համարում նրանք՝ V—VI դարերի[2]:

Սակայն հին հայկական մանրանկարչության մասին մենք կարողանում ենք որոշ պատկերացում կազմել X—XI դարերից մեզ հասած մանրանկարչության հիման վրա, քանի որ գրիչները ո՛չ միայն արտագրում էին հին ձեռագրերը, այլև ընդօրինակում հին ձեռագրերում եղած զարդանկարները, ուստի և նրանք պատկերում են իրենց նախորդ շրջանի մանրանկարչությունը ևս: Պատահական չէ, որ հայ զարդաքանդակներով զբաղվող մասնագետներից ոմանք նմանություններ են տեսնում X—XI դարերի հայ մանրանկարչության և VI—VII դարերի հայկական հուշարձանների զարդաքանդակների միջև:

X—XI դարերի հայկական մանրանկարների ուշադիր ուսումնասիրությունը, սակայն, մեզ կարող է օգնել պարզելու ոչ միայն նախորդ դարերից մեզ չհասած մանրանկարչության պատկերը, այլև մոտավոր ճշտությամբ որոշելու, թե հայ մանրանկարչության մեջ ինչ տարրեր հայ հեթանոսական արվեստից են մուտք գործել: Այս ուղղությամբ առաջին դրական քայլն արված է Մատենադարանի գիտական աշխատող Ա. Մնացականյանի կողմից «Հայկական զարդարվեստ» խորագրով աշխատության մեջ:

Մեզ հասած հնագույն հայկական մանրանկարչությունը պարունակող ամբողջական և թվական ունեցող ձեռագիրը 887 թվականի Լազարյան ճեմարանի նշանավոր ավետարանն է, որի առջևում վրձինված են մի քանի մանրանկարներ: Սակայն նրանք վարժ մանրանկարչի ստեղծագործություններ չեն և առանձին արժեք չեն ներկայացնում:

Մանրանկարչական բարձր արժեք ունեցող մեզ հասած ամենահին ձեռագիրը՝ Վասպուրականի Գագիկ թագավորի կնոջ՝ Մլքե թագուհու պատվերով 902 թվականին գաղափարված ավետարանն է[3], որի խորանները և ավետարանիչների նկարները գունատիպ հրատարակել են Մխիթարյանները:

---

[1] I. Strzygovsky, Das Etschmiadzin Evangeliar, 1881, էջ 25—53:

[2] Լ. Ա. Դուռնովո, Հին հայկական մանրանկարչություն, Երևան, 1952:

[3] «Զարդանկարք Աւետարանի Մլքէ թագուհւոյ», Վենետիկ, 1902:



Հայ մանրանկարչության մյուս մեծարժեք ստեղծագործությունը Հայոց ՆԼԸ թվականին (ներկայիս 989 թ.) Վայոց Ձորի Նորավանքում մագաղաթի վրա Հովհաննեսի կողմից գրչագրված ավետարանն է:

X դարի մանրանկարված ձեռագրերից են նաև Մեծշենի ավետարանը՝ 909 թվականից, Սանասարյան վարժարանի ավետարանը՝ 986 թվականից և այլն:

Հայ մանրանկարչության պատմությամբ զբաղվող գրեթե բոլոր ուսումնասիրողներն այս կամ այն կապակցությամբ անդրադարձել են այս ձեռագրերի պարունակած մանրանկարներին և հիացմունքով խոսել նրանց մասին: Այսպես, ռուս գիտնական Սվիրինը, ուսումնասիրելով Մլքեի և Փղոսկրյա ձեռագրերի մանրանկարները, գտնում է, որ «մատնացույց արված այս երկու կարևոր հուշարձանները պատկանում են հին Հայաստանի գրքի արվեստի փայլուն շրջանին»[1]: Իսկ Դուռնովոյի կարծիքով, Փղոսկրյա ավետարանն «իր բացառիկ գեղարվեստական որակով կանգնած է համաշխարհային կուլտուրայի հուշարձանների շարքում»[2]:

Հայ մանրանկարչության պատմությամբ զբաղվող մասնագետներից ոմանք այնքան բարձր արվեստի երախայրիք են համարել նրանք, որ նրանց լայն կիրառումը Հայաստանում չգտնելով, դիտել են որպես օտարներից վերցրած փոխառություններ:

Հին հայկական մանրանկարչությունը համեմատության մեջ դնելով բյուզանդականի և ասորականի հետ, նրանք շեշտը դնում են նմանությունների վրա և եզրակացնում, որ իբր թե X դարի հայ մանրանկարչությունը փոխառություն է բյուզանդական և ասորաիրանական մանրանկարչությունից: Այսպես օրինակ, Սվիրինը անհիմն ձևով գտնում է, որ Փղոսկրյա ավետարանի առաջին թերթերի մանրանկարչությունը «ըստ իրենց ոճի, պատկանում են սիրիական արվեստին», Փղոսկրյա ավետարանի մանրանկարներում նկատելի է «Հելլենիստական բյուզանդական» տարրը և այլն[3]: Ստացվում է այնպես, որ հին հայկական մանրանկարչությունը, հիմնականում, փոխառություն է ուրիշներից:

---

[1] А. Н. Свирин, Миниатюра древней Армении, Ереван, 1939, էջ 30:

[2] А. А. Дурново, Краткая история древнеармянской живописи, Ереван, 1957, էջ 18:

[3] А. Н. Свирин, Миниатюра древней Армении, էջ 31 և 36:

Նախ՝ Հայաստանը, իհարկե, չինական պարսպով անջատված չի եղել իր հարևաններից, այլ գտնվել է կուլտուրական սերտ փոխհարաբերության մեջ. Նա կուլտուրական իր գանձատունը բաց է արել հարևանների առջև, ինչպես և հարևաններից վերցրել է այն, ինչ մոտիկ է եղել իր սրտին: Ըստ որում, հարևաններից վերցրածը, ինչպես շատ ճիշտ նկատել է Դուռնովոն, մշակել է իր «գեղագիտական ունակությունների և իր ժամանակի պահանջների համաձայն»:

Բացի այդ, եղել են մանրանկարչության որոշ սկզբունքներ, որոնք ընդհանուր են եղել քրիստոնեական բոլոր ժողովուրդների համար: Օրինակ, սահմանված է եղել Քրիստոսի կյանքից իլյուստրացիայի ենթարկել միայն որոշ դրվագներ. քրիստոնյա մանրանկարիչը ցանկանում էր այդ, թե ոչ, այս սահմանափակությունից դուրս գալ չէր կարող: Այնպես որ և՛ առաջին, և՛ երկրորդ հանգամանքներն անխուսափելի էին դարձնում նմանությունները:

Սակայն այդ նմանությունները, իհարկե, հիմք չեն տալիս խոսելու փոխառության մասին: Այս տեսակետը հիմնովին սխալ է: Նշված հուշարձանների մանրակրկիտ ուսումնասիրությունը մեզ բերում է բոլորովին հակառակ եզրակացության: Այսպես, Ս. Տեր-Ներսեսյանը, Փղոսկրյա ավետարանի առջևի մանրանկարները համեմատության մեջ դնելով Աղթամարի զարդաքանդակների հետ, ապշեցուցիչ նմանություն է տեսնում նրանց մեջ և գտնում, որ նրանք «զուտ տեղական» են[1]: Դուռնովոն գտնում է, որ Մլքեի ավետարանի «գործող բոլոր անձնավորությունների դեմքերը տիպիկ հայկական են» և ընդհանրապես X—XI դարերում հայկական մանրանկարչությունը «բացահայտ հայկական կնիք ունի իր վրա»[2]: Հայ մանրանկարչության բազմահմուտ մասնագետ Գարեգին կաթողիկոս Հովսեփյանը, անդրադառնալով հին հայկական մանրանկարչությանը և համեմատության մեջ դնելով այն կիլիկյան շրջանի մանրանկարչության հետ, հետևյալ եզրակացությանն է եկել. «Եթե մենք ի նկատի ունենանք հայ ձեռագրական արվեստը մինչև ԺԱ դարի վերջերը և մինչև ԺԲ դարի կեսերը, կտեսնենք, որ նորա բնույթը տարբեր է, քան թե այնուհետև երևան եկող երևույթներն են կիլիկյան շրջանում: Մինչ այդ հայ արվեստի բնույ-

[1] S. Der Nersessian, The date of the initiale Miniatures of the Etschmiadzine Gospil, Chicago, 1933.

[2] Л. А. Дурново, Краткая история древнеарм. живописи, էջ 17 և 25:



թը արևելյան է, համեմատ յուր դրացիների՝ Առաջավոր Ասիայի ազգերի և Պարսկաստանի հետ ունեցած փոխազդեցության»[1]:

X—XI դարերում հայ մանրանկարչության որոշ նմանությունը բյուզանդականի հետ հասկանալի է, եթե նկատի ունենանք, որ այդ դարերում, երբ բյուզանդական գահի վրա բազմում էին ծագումով հայ կայսրներ, Բյուզանդիոնում ստեղծվել էր բավականին խոշոր հայկական գաղթավայր, ուր քիչ թիվ չէին կազմում հայ գիտնականները, զինվորականները և արվեստի մարդիկ: Չպետք է մոռանալ, որ երբ անհրաժեշտ եղավ Այա-Սոֆիան վերակառուցել, գործի հրավիրեցին հայ ճարտարապետ Մանվելին[2]: Բնական է, որ այս իրադրության մեջ հայ վարպետները կարող էին հայ արվեստի որոշ տարրեր տալ բյուզանդականին և որոշ տարրեր վերցնել նրանից: Բոլոր դեպքերում, խոսքը այստեղ կարող է լինել ո՛չ թե ազդեցության, այլ փոխազդեցության մասին:

Երբ խոսվում է հին հայկական մանրանկարչության մասին, աչքաթող չպիտի անել հին հայկական մանրանկարչության այն նմուշները, որոնք ունեն շեշտված արևելյան երանգավորում: Այս խմբի հնագույն նմուշը՝ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի կրկնագիր Մաշտոցն է, որը գրանցված է № 963-ի տակ: Մաշտոցն ընդօրինակված է XIII դարում, սակայն կազմի կողքերում որպես պահպանակ օգտագործված է հին ձեռագրի մագաղաթյա մի թերթ, որը շատ հին է, համենայն դեպս՝ X դարից առաջ: Մանրանկարված է խորան՝ առանց սյուների: Նա ունի հետևյալ բնորոշ առանձնահատկությունները. խորանի մեջ օգտագործված գույների մեջ գերակշռում են կապույտ և կանաչ գույները: Խորանում, առանձին շրջանակների մեջ, նկարված են ավետարանիչներին խորհրդանշող կենդանիները՝ առյուծ, բազե, արծիվ և եզան գլուխ:

Մանրանկարչության այս խմբի նմուշներից է նաև Սանդարյան ավետարանը, որն ընդօրինակված է 986 թվականին: Այս ձեռագրի մանրանկարների վրա կանգ է առել Լ. Ա. Դուռնովոն և համարել այն հայ ժողովրդական, դեմոկրատական մանրանկարչության նախատիպը[3]:

[1] Գարեգին արքեպիսկոպոս Հովսեփյան, Կոստանդին կաթողիկոսը որպես հայ մանրանկարչության մեծ հովանավորող («Նյութեր և ուսումնասիրություններ հայ արվեստի և մշակույթի պատմության»՝ պրակ Բ, Նյու-Յորք, 1943, էջ 14):

[2] К. Л. Оганесян, Зодчий Трдат, Ереван, 1951, էջ 78—100:

[3] Л. А. Дурново, Краткая история древнеарм. живописи, էջ 17—18:

Արևելյան ինքնատիպ այդ ձեռագրերի խմբին են պատկանում Տյուբինգենի ավետարանը՝ գրված 1113 թվականին, Հայկական ՍՍՌ Մատենադարանի ձեռագիրը՝ 1165/6 թվականից և այլն։

Ավելի ուշ շրջանում մանրանկարչության այս ուղղության փայլուն ներկայացուցիչներից է Իգնատիոս մանրանկարիչը[1], որի ստեղծագործությունը կապված է Արևելյան Հայաստանի գրչության երեք կարևոր օջախների՝ Հավուց Թառի, Բագնայրի և Խծկոնքի հետ։ Նրա ստեղծագործության ժամանակաշրջանն ընդգրկում է 1214—1216 թվականները։

Ի՞նչ է բնորոշ մանրանկարչության այս դպրոցի զարդագրչությանը։ Այս մանրանկարչական դպրոցի ձեռագրերում, համեմատաբար, զարդագրեր քիչ են գործածվում, նկարում են միայն բնագրերի սկզբնատառերը կամ կարևոր գլուխների վերնագրերը։ Նկարված զարդագրերը խոշոր են, երբեմն մի տառը ձգվում է էջի ամբողջ երկարությամբ։ Զարդագրերը կազմված են լինում երկրաչափական և հյուսվածքային գեղեցիկ դրվագներից։ Ուղիղ գծում են սյունագծերը և նրանց փաթաթում ճյուղազարդեր՝ մի քանի տեղ խաչաձև հանգույցներ ստեղծելով։ Ըստ որում, սյունագծերի գույնը տարբերվում է փաթաթվող զարդաճյուղերից, զարդաճյուղերին միացնում են փոքրիկ օղակներից կամ կետերից բաղկացած զարդարանքներ։ Հնագույն ձեռագրերում սյունագծերը նկարում են սովորաբար տարբեր գույներով, իսկ XII—XIII դարերի ձեռագրերում ներկը հաճախ փոխարինում են ոսկով։ Զարդագրերի գծվածքները արտակարգ նրբություն չունեն. նրանք, մեծ մասամբ, կազմված են լինում պարզ և հաստ հյուսվածքից, բայց արտաքին տեսքով անչափ գեղեցիկ են. Նրանց պարզությունը և գույների համաչափությունը բացառիկ գրավչություն են տալիս։ Տառաձևերում հաճախ երկարում է ո՛չ միայն սյունագիծը, այլև դեպի աջ դարձող թևը, որը մտնում է տեքստի խորքը։ Սյունագծի ներքևի ծայրը, ինչպես աջ թևի ծայրերը, վերջանում է դեպի մի կողքը սուր ծայր տվող եռաշերտ տերևաձև զարդերով։

Այս խմբի հնագույն մանրանկարված ձեռագրերը չեն ունենում դեռ ավետարանիչների նկարները. Նրանց փոխարեն նկարված է լինում խաչ, հաճախ շատ մեծ, որ զբաղեցնում է մի ամբողջ էջ։ Ըստ որում, խաչերը հավասար կողքեր են ունենում,

[1] Ա. Երեմյան, Իգնատիոս մանրանկարչի արվեստի հիմնական գծերը» (տես «Էջմիածին», 1956, № 111, էջ 36—45)։

ինչպես Փղոսկրյա ավետարանի վրա է։ Խաչն ամրացնում են բուրգաձև մի պատվանդանի, որը զարդարված է լինում։ XII դարի այդ խմբի ձեռագրերում սկսում են արդեն նկարել նաև ավետարանիչներին, մեծ մասամբ, կանգնած վիճակում։ Նկարների մեջ դեմքերը նկարում են արևելյան, ավելի ճիշտ՝ տիպիկ հայկական՝ կարճ մորուք, արտահայտիչ աչքեր՝ մելամաղձոտ արտա-



Կիլիկյան շրջանի մանրանկարչության մի նմուշ։

հայտությամբ, մուգ պղնձագույն դեմք։ Հագուստները նույնպես արևելյան են։

XII—XIII դարերի հայ մանրանկարչության մեջ ուշագրավ է մի ակնառու երևույթ՝ բեկում դեպի զարդանկարչության աշխարհականացումը, որն իրավացիորեն կապվում է Հայաստանում նոր սաղմնավորվող բուրժուական գաղափարախոսության հետ։ Դուռնովոն մանրանկարչության այդ բեկումը տեսնում է Հաղպատի 1211 թվականին գրված նշանավոր ավետարանի մանրանկարներում, որը վրձինված է Մարգար գրչի կողմից[1]։ Այսպես օրինակ,

1 Л. А. Дурново, Краткая история древнеарм. живописи, էջ 30—31։





այդ ավետարանի խորաններից մեկում նկարված է մի մարդ, որը նստել է այգում ծառի տակ և թռչունների դայլայլանքի տակ նըվագում է սազի վրա։ Դարձյալ նկարված է խորաններից մեկի կողքին երկու անձնավորություն՝ տեղական հագուստով, նրանցից մեկը շալակել է մի ձուկ, իսկ մյուսը՝ մի սափոր գինի, որոնք, իհարկե, եկեղեցի չէ, որ տանում են, այլ դեպի խնջույք, ուրախություն։ Նկարված ավետարանիչները նախկին նիհար, գունատ և մտախոհ հայացքի տեր մարդիկ չեն, նրանց փոխարինում են կլոր դեմքերով, կարմրած թշերով և կերած-խմած ուրախ մարդիկ։ Այս խմբի ձեռագրերում սկսում են երևալ նաև մերկ տղամարդիկ և կանայք։ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 4185 ձեռագրում, որը դարձյալ ԺԳ դարից է, լուսանցքներում նկարված են եղել մերկ մարդիկ, որոնք հետագա դարերում կտրել են՝ անպատշաճ համարելով թողնել կրոնական աշխատության մեջ։ Կտրված մարդկանց մարմնի որոշ մասերը, որոնք մոտիկ են եղել տեքստին, մնացել են և մեզ որոշ պատկերացում են տալիս իրենց նախկին ձևի մասին[1]։ Այդ ժամանակաշրջանի մի այլ ձեռագրում, որը գրված է Կիլիկիայում, նկարված է երկար վարսերով մի կին, որի մարմնի վերին մասը մերկ է, իսկ ներքևը ծածկված է կարմիր ծիրանիով[2]։ Եվ, վերջապես, 1274 թվականի Օշինի պատկերով (Նյու-Յորքի համալսարանի սեփականությունը հանդիսացող) մի ձեռագիր, որը գրված է XIII դարում, խորաններից մեկի աջ և ձախ կողքերում նկարված են ադամային մերկությամբ կանգնած երկու կանայք[3]։

Սաղմնավորվող հայ բուրժուազիայի գաղափարախոսությունն արտահայտող այս բեկումը, սակայն, որակ չստեղծեց, որովհետև մոնղոլների ներխուժումների հետևանքով Հայաստանում տեղի ունեցան այնպիսի ծանր ցնցումներ, որ Հայաստանի տնտեսական ու կուլտուրական կյանքը դուրս եկավ իր բնականոն ընթացքից։

Հայ մանրանկարչությունն իր զարգացման փայլուն շրջանն ապրեց առանձնապես Կիլիկիայում, որտեղ մանրանկարված ձեռագրերից բավականին թվով հասել են մեզ։ Այստեղ հանդես են եկել հանճարեղ նկարիչներ, ծաղկողներ, ոսկողներ և վարպետ գեղագրողներ։

1 Ա. Մնացականյան, Հայկական զարդարվեստ, էջ 493։

2 Նույն տեղը, էջ 458։

3 A. Sakissian. Pages d' Art arménien, Paris, 1940, էջ 9—10, նկ. 2։

Կիլիկիայի հայ մանրանկարչությունը, հիմնականում, զարգացել է գիտության և արվեստի երեք խոշորագույն կենտրոններում՝



Մի էջ 1211 թվականի մանրանկարներից:

Դրազարկում, Հռոմկլայում և Սկևռայում: Գրչության կարևոր կենտրոններ են հանդիսացել նաև Գռները և Ակները, սակայն նրանք



ինքնուրույն դեր չեն կատարել և կապված են եղել վերև հիշված գրչության երեք օջախների հետ:

Կիլիկիայի այս երեք կենտրոններից ամեն մեկը չնայած ունեցել է իր յուրահատուկ առանձնահատկությունները, սակայն նրանք տարբեր ուղղություններ չեն ստեղծել, ուստի նրանց մանրանկարչությունը պետք է քննության առնել մեկ ամբողջության մեջ:

Կիլիկիայի հայ մանրանկարչությունը, իհարկե, միանգամից հանդես չի եկել: Կիլիկիայի XII դարի մանրանկարչության մեջ նկատելի է հին Հայաստանի մանրանկարչության ուժեղ ազդեցությունը: Այդ կարգի ձեռագրերից են Գևորգ գրչի Դրազարկում ընդօրինակած ձեռագիրը 1113 թվականին (Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռ. № 6763), Գրիգոր գրչի՝ Սկևռայում ընդօրինակած ձեռագիրը 1193 թվականին (Վիեննայի Մխիթարյանների հավաքածու, № 125) և ուրիշներ:

Դրությունը փոխվում է XIII դարում, հատկապես XIII դարի երկրորդ կեսում: Ձեռագրերի պատվիրատուներն այժմ հանդես են գալիս Կիլիկիայի արքունիքի և Կաթողիկոսության աչքի ընկնող ներկայացուցիչները՝ թագավորները, կաթողիկոսները, եպիսկոպոսները, իշխանները և այլն, որոնց նիստուկացը, հագուստը և այլն զգալիորեն տարբերվում է բուն Հայաստանի իշխաններից: Նրանք մոտից շփման մեջ էին խաչակիրների, Փոքր Ասիայում հաստատված լատինական իշխանությունների, Իտալիայի և եվրոպական զարգացած իշխանավորների հետ, բարձրացել էր նրանց ճաշակը, ուստի պահանջում էին նոր և բարձր արվեստի գործեր: Ծաղկողներն աշխատում էին ավելի շքեղ, ավելի բազմերանգ նկարել ձեռագրերը՝ օգտագործելով ինչպես հայ հին մանրանկարչության լավագույն մոտիվները, այնպես և արևելյան մանրանկարչությունը, որն առանձին շքեղություն է տալիս հայ մանրանկարչությանը: Ըստ որում, հայ մանրանկարիչները, օտարներից փոխառություններ կատարելիս, չեն կրկնում նույնությամբ, այլ վերամշակում են իրենց ճաշակի համաձայն: Գրքի գեղանկարչությունը Կիլիկիայում հասնում է բարձրագույն կատարելության:

Կիլիկիայում հանդես եկող ականավոր մանրանկարիչներից են Կոստանդինը, Գևորգը, Գրիգորը (XII դարում), Կիրակոսը, Հովհաննեսը (XIII դարի երկրորդ կեսում), հայ մանրանկարչության հանճարեղ վարպետներ Թորոս Ռոսլինը (XIII դարի 50—70-ական

թվականներին)[1], Սարգիս Պիծակը[2] (XIV դար) և ուրիշներ:

Կիլիկիայի հայ մանրանկարչությունն ունի մի շարք բնորոշ առանձնահատկություններ, որոնք դժվար չէ ճանաչել առաջին իսկ հայացքից: Կիլիկիայի մանրանկարչության մեջ նախ խորանները կորցնում են իրենց նախկին դերը և դառնում սովորական շրջանակներ՝ զարդանկարներ տեղավորելու համար: Խոյակների վրա սկսում են նկարել ավետարանների սիմվոլիկ չորս գլուխները կամ



Սարգիս Պիծակի զարդագրերից:

զանազան կենդանիներ: Խորանների ֆոնը նկարում են մեծ մասամբ ոսկով: Խորանի վերին մասում նկարում են կրոնական, թատերական կամ կրկեսային ամբողջ տեսարաններ: Մարդկանց մարմինների առանձին մասերը նկարում են համաչափ: Շարժումները տրվում են բացառիկ վարպետությամբ: Դեմքերի նախ-

[1] Ա. Երեմյան, Մանրանկարիչ Թորոս Ռոսլին, («Էջմիածին», 1955, № 1, էջ 42—46, № 2, էջ 22—34):

[2] Նույնը, Մանրանկարիչ Սարգիս Պիծակ («Էջմիածին», 1953, № 9, էջ 45—50, № 10, էջ 30—35, №№ 11—12, էջ 30—40):



կին կանաչավուն գույնը փոխվում է նուրբ մարմնագույնով: Մարդկանց նկարում են մեծ մասամբ առանց մորուքի, սափրված: Մարդիկ նախկին բյուզանդական սրբագրության սառած, անհոգի խամաճիկները չեն. Նրանց դեմքերին նայելով կարելի է անգամ կռահել, թե ինչ ապրումների մեջ են և այլն:

Կիլիկիայի հայ մանրանկարիչների մոտ, զարդանկարչության հետ միասին, զարգանում է նաև զարդագրությունը: Զարդագրերը, նախկինի համեմատությամբ, ամենից առաջ. սկսում են փոքրանալ և շատանալ: Եթե նախկին հյուսվածքային զարդագրերը մի ձեռագրում պատահում էին մի քանի հատ միայն, այժմ նրանք մի ձեռագրում հարյուրների են հասնում: Առաջին էջի վրա, որին մենք այժմ տիտղոսաթերթ ենք անվանում, նկարում են ոչ թե մեկ տառ, ինչպես առաջ էր, այլ մի ամբողջ տող, իսկ երբեմն՝ ամբողջ էջը գրում են զարդագրերով: Զարդագրության մեջ սկսում են գործածել թռչուններ, ծաղիկներ, կենդանիներ, ձուկ, մարդիկ և այլն: Ըստ որում, զարդագրողները մարդկանց և կենդանիները նկարում են շարժման մեջ: Կանգ առնենք նրանցից մի քանիսի վրա.

Նկարել են գայլի և բազեի գլուխներով երկու հուշկապարիկ (սիրեն) դեմառդեմ և ներքևից միացրել բարակ գծիկով: Աջից նրանց մեջ մտել է մի աղվես և դունչը մեկնել դեպի աջ կողմի հուշկապարիկի կուրծքը՝ պոչը երկարելով դեպի աջ. ստացվել է «Ա» տառը (Նկ. 1)[1]:

Վագր են նկարել ուղղահայաց ձգված դիրքով, պոչը փաթաթած հետևի ոտքերին: Վագրը կուլ է տալիս մի թռչուն, որի կեսմասը մտել է վագրի որկորը, իսկ վերին մասը գլխի հետ թուլացած կախ է ընկել ներքև: Նա ձգված, ուղղահայաց դեպի աջ է մեկնել իր առաջին ոտքերը: Եվ այս ներդաշնակ կոմպոզիցիայից ստացվել է «Բ» (Նկ. 2):

Նկարված է մի մարդ կանգնած վիճակում, կրծքից ներքև, մեջքին փաթաթած կապույտ սավան: Մարդը ձեռքով բռնել է դեպի աջ մեկնած մի ծաղիկ: Մարդու գլխարկի վերին ծայրից բռնել է մի թռչուն և կեռվելով՝ իր պոչը միացրել է մարդու մեջքին: Ստացվել է «Գ» (Նկ. 3):

Հետին ոտքերի վրա ձիգ կանգնած է վագրը՝ գլուխը շուռ

[1] Ստորև թվարկված բոլոր զարդագրերը վերցրել ենք Դուռնովոյի հրատարակած ալբոմից:

տված հետև, իսկ առաջին ոտքերը, իրար միացրած, պարզել է դեպի աջ։ Ստացվել է «Դ» տառը (Նկ. 4)։

Ահա ձեզ անչափ բնական՝ և՛ ձևով, և՛ գույնով մի աղվես, որը նստել է հետևի ոտքերի վրա և դեպի աջ մեկնել իր երկար պոչը. ստացվել է «Ե» տառը (Նկ. 5)։

Նույն տառի մի այլ ձևում աղվեսին փոխարինում է կապույտ գույնով եզը, որը նստել է հետին ոտքերի վրա, պոչը կեռել և բարձրացրել առջևի ոտքերը (Նկ. 6)։

Նկարել են գլխիվայր վիճակում մի սիրամարգ, որը կուրծքն ու պոչն այնքան է կեռել, որ վերևում կազմվել է մի կլոր։ Նա կտցով բռնած ունի կանաչ տերև և կարմիր պտուղ ունեցող մի ծաղիկ, որը ձգված է դեպի աջ։ Ստացվել է «Զ» (Նկ. 7)։

Աղվեսը նստել է հետին ոտքերի վրա և պոչը կորությամբ երկարել դեպի աջ և ներքև թեքել. մի թռչուն, հավանական է ագռավ, նստել է նրա գլխին և կտցահարում է։ Ստացվել է «Ը» (Նկ. 8)։

Կանգնած է մարդը՝ ձեռքում բռնած օձ, որը մեկնել է դեպի դիմացը կանգնած թռչունի բերանը, որը բաց է արել կտուցը և պատրաստվում է կուլ տալ օձը։ Թռչունի պոչի վրա, վայր հակված վիճակում, միացել է ֆանտաստիկ կենդանու բարակ վիզը։ Ստացվել է «Թ» (Նկ. 9)։

Աղյուսի գույն ունեցող գիշատիչ ինչ-որ կենդանի կանգնել է հետևի ոտքերի վրա և կուլ է տալիս մի թռչուն, որի կեսը գտնըվում է արդեն այդ գիշատչի բերանում. Թռչունի գլուխը կախ է ընկել դեպի աջ։ Մի այլ թռչուն վերևից ներքև է կախվել և դեպի իրեն է ձգում կուլ գնացող թռչունին՝ ցանկանալով ազատել նրան։ Ստացվել է «Ի» (Նկ. 10)։

Նկարել են հպարտ կանգնած մի աքաղաղ, որը, գլուխը վերև բարձրացրած և փոքր-ինչ հետև թեքված, նայում է դեպի աջ, նրա բարակ վիզը բոլորվել է երկարող պոչի հետ և հանգույց կազմել, պոչը թեքվում, ցած է կախվում, կազմելով, «Ծ» (Նկ. 11)։

Ձուկ է նկարված առյուծի գլխով՝ դեպի ներքև հակված դիրքով։ Մի արագիլ կախ է ընկել ներքև և բռնել է առյուծի գլխից։ Ստացվել է «Ճ» (Նկ. 12)։

Երկու առյուծ, մեկը կարմիր, իսկ մյուսը կապույտ, կանգնած են գլխի վրա դեմ դիմաց, իսկ վերևում փաթաթել իրենց հետևի ոտքերը և պոչերը։ Ստացվել է «Ո» տառը (Նկ. 13)։

«Ո» տառի մի այլ տառաձևում առյուծներին փոխարինում



Կիլիկյան մանրանկարչական դպրոցի մանրանկարներ։

են երկու սոխակներ, որոնք գլուխները վերև բարձրացրած դայլայլում են։ Սոխակների կտուցները վերև թեքված միացնում է մի գծիկ (Նկ. 14)։ Մի երրորդ տառաձևում սոխակներին փոխարինում են պոչի վրա կանգնած երկու ձկներ (Նկ. 15)։

Նկարված է թռչուն՝ մարդու գլխով՝ միացված մի ծաղկի։ Նրան փաթաթվել է մի օձ, որը ցանկանում է վերև բարձրանալ։ Օձն իր բերանում ունի երկճյուղ ծաղիկ, իսկ վերևում նրան է կպել թռչունը։ Ստացվել է «Յ» (Նկ. 16)։

Նկարված է ձգված վիճակում երևակայական մի կենդանի, որը կանգնել է հետին ոտքերի վրա՝ վարսաձև երկար պոչը փաթաթելով իրար կպցրած հետին ոտքերին։ Այդ կենդանու բաց երախի մեջ իր գլուխն է մտցրել մի թռչուն՝ կեռած պոչով։ Կենդանին առաջին վերև բարձրացրած ոտքերով բռնել է մի գիրք, իսկ ձախից ունի փետրով թևեր, որոնց բաց է արել։ Մանրանկարն արտահայտում է «Ք» տառը (Նկ. 17)։

Կարելի է բերել հարյուրավոր նման զարդանկարչության օրինակներ, որոնք նկարված են աննախընթաց գեղեցկությամբ և երևակայությամբ։

Կիլիկյան այս զարդանկարչությունը իր խորունկ ազդեցությունն ունեցավ հետագայում հայկական մյուս դպրոցների մանրանկարչության վրա։ Նրա որոշ տարրերն անցան անգամ տպագրության մեջ։

Կիլիկիայի հայ մանրանկարչության մասին խոսելիս չի կարելի չանդրադառնալ հայ արվեստի պատմության մեջ քաղաքացիություն ունեցող սխալ այն տեսակետին, որ իբր թե Կիլիկիայի հայ մանրանկարչությունը «արքունական մանրանկարչություն» է։ Չի կարելի ժխտել, իհարկե, որ այդ մանրանկարչության մեջ մասնակից են եղել ավատական իշխող շրջանների ներկայացուցիչները ևս։ Չի կարելի աչքաթող անել նաև այն իրողությունը, որ ինչպես կիլիկյան, այնպես և հայ մյուս մանրանկարչության ուղղությունների վրա իր կնիքն է դրել հայ պաշտոնական եկեղեցական թեմատիկ սխեման։ Եվ, վերջապես, չպետք է ժխտել, որ Կիլիկիայում վրձինված հայ մանրանկարչական ձեռագրերի մեծ մասը գրված է ավատական իշխող շրջանների պատվերով. պատվիրատուներ են հանդիսացել Կոստանդին Ա կաթողիկոսը, Հեթում Ա թագավորը, Սմբատ Գունդստաբլը, Հեթում Բ և ուրիշներ։ Սակայն չպիտի շփոթել ձեռագրի պատվիրատուին ձեռագիրը գրող և նկարող «սև մշակ»-ների հետ, որոնք սեր-

տորեն կապված էին ժողովրդի հետ և նրանից էին քաղում իրենց ստեղծագործության լավագույն տարրերը։ Նույն մանրանկարիչը հաճախ երկու տարբեր որակի արտադրություն էր տալիս. եթե նա նկարում էր մեծահարուստ մեկի պատվերով, աշխատում էր մեծ քանակությամբ ոսկի գործածել, ավելի շատ մանրանկարներ նկարել, ավելի մեծ խնամք էր տանում նրանց նկարման ժամանակ, իսկ մյուս դեպքում, երբ նա նկարում էր առանց պատվերի, նկարում էր ավելի պարզ, առանց ոսկի գործածելու, առանց առանձին շքեղության։ Տվյալ մանրանկարիչը մի դեպքում, իհարկե, իշխող ավատական մանրանկարչության ներկայացուցիչը չէր, մյուս դեպքում՝ սոցիալական ցածր խավերի։

Մանրանկարչի սոցիալական պատկանելության մասին շատ բնորոշ փաստ է Թորոս գրչի իր պատվիրատուին՝ Հեթում թագավորին ուղղած խոսքը «Եւ ես գիտեմ,—գրում է նա—այս չէ թագաւորական իրք, այլ ոսկեգիր պիտէր և ճարտար գրիչ։ Եւ ես շատ պատճառ ունէի, որ խափանէր իմ այս ձեռնարկութեան՝ ակարութիւն, և մութն խրճթիս և հողմն պախարու փոշեխառն փչելով ընդ պատուհանս, և պաղն օդոյս»[1]։ Թորոս գրիչը, տվյալ ձեռագիրը նկարազարդելով Հեթում թագավորի համար, հայ ավատական կուլտուրան չէ, որ զարգացնում էր։

Հայ մանրանկարչության ուշագրավ դպրոցներից է Սյունիքի մանրանկարչությունը։ Սյունիք ասելով, մենք նկատի ունենք Թանահատի, Գլաձորի, Գնդևանի, Երերուքի, Հերմոնի վանքի և Տաթևի մանրանկարչությունը։ Դրանց մեջ առանձնապես կուլտուրայի խոշոր կենտրոն է հանդիսացել Գլաձորը XIV—XV դարերում՝ Ներսես Մշեցու, Եսայի Նչեցու, Գրիգոր Տաթևացու և Հովհաննես Որոտնեցու ուսուցչապետության շրջանում։ Գլաձորի համալսարանում սովորելու են եկել աշակերտներ ինչպես Արևելյան Հայաստանից, այնպես և հեռավոր Կիլիկիայից, Արևմտյան Հայաստանի զանազան գավառներից։ Գլաձորում դասավանդում, աշակերտներին սովորեցնում էին ոչ միայն փիլիսոփայություն, տիեզերագիտություն, տոմար, ճարտասանություն, աստվածաբանություն, գրչություն և այլն, այլև սովորեցնում էին աշակերտներին նաև մանրանկարչություն։

Սյունիքի դպրոցը ևս օգտագործել է հին հայկական մանրանկարչությունը, առանձնապես Նորավանքի ծաղկած շրջանի

[1] Ա. Գ. Աբրհամյան, Հայկական պալեոգրաֆիա,. էջ 170։



մանրանկարչությունը, որի ցայտուն նմուշն է Փղոսկրյա ավետարանը։ Սակայն XIV—XV դարերի մանրանկարչության վրա իր որոշակի ազդեցությունն է թողել նաև Կիլիկիայի մանրանկարչությունը։ Սյունիք սովորելու եկող ուսանողները ոչ միայն գալիս, սովորում էին Սյունյաց դպրոցներում, այլև իրենց իմացությունը և արվեստը բերում էին Սյունիք և մուծում հայ ժողովրդի ստեղծագործական գանձարանը։

Սյունյաց դպրոցը տվել է հայ մանրանկարչության մի շարք փայլուն դեմքեր, որոնց ստեղծագործությունները դեռ կարոտ են մասնագիտական լուրջ ուսումնասիրության։ Մենք նկատի ունենք Հովհաննես ծաղկողին՝ Թանահատից (ԺԳ դարի երկրորդ կեսում)[1], Մոմիկին՝ (XIII դարի վերջերը և XIV-ի սկզբները)[2], Ավագին (XIV դարի առաջին կեսում), Թորոս Տարոնցուն Գլաձորից և ուրիշներ[3]։

Սյունիքի դպրոցների մանրանկարչությունը չունի, իհարկե, այն բարձր արվեստը, ինչպիսին Կիլիկիայինն է, սակայն Սյունիքի մանրանկարչության մեջ ավելի շատ են ժողովրդական տարրերը, քան Կիլիկիայի։ Սյունիքում սովորած և նրա մանրանկարչության ավանդույթին հետևող մանրանկարիչներն ավելի են կապված ժողովրդի հետ։ Նրանք իրենց մանրանկարչության մեջ ավելի շատ են գործածում շրջապատի գեղեցկությունները՝ կենդանական և բուսական հարուստ բնությունը։ Թռչուններից սիրում են նկարել կաքավը, աքաղաղը, սոխակը, կենդանիներից՝ իրենց ծանոթ ընտանի և վայրի կենդանիները և ծաղիկները։ Մարդկանց նկարում են տիպիկ հայկական դեմքերով և մորուքով։ Զարդանկարչության մեջ, հիմնականում, օգտագործում են նախկին հյուսվածքային մանրանկարչությունը, սակայն ավելի նրբացրած ձևերով։ Լայն տեղ են տալիս թռչնագրերին։ Մենք ունենք, օրինակ, Տաթևում 1305

[1] Հ. Քյուրտյան, Հովհաննես Թանատի վանաց («Հասկ» հայագիտական տարեգիրք, Բ տարի, Անթիլիաս, 1949—1950 թթ.)։

[2] Մոմիկի մասին տես Ա. Ավետիսյանի հոդվածը «Գլաձորի մանրանկարչական դպրոցի հիմնադիր վարպետ Մոմիկը», որը տպագրված է «Էջմիածին» ամսագրում, 1956, № 8—9։

[3] Գլաձորի դպրոցի մասին վերին աստիճանի արժեքավոր ուսումնասիրություններ ունի Գարեգին կաթողիկոս Հովսեփյանն իր «Խաղբակյանք կամ Պռոշյանք հայոց պատմության մեջ» աշխատության երկրորդ մասում՝ «Գլաձորի բարձր դպրոցը կամ համալսարանը» վերնագրով (էջ 188—279), ուր կանգ է առնում նաև Վայոց Ձորի մանրանկարիչների վրա։



Զարդագրված տիտղոսաթերթ:

*թվականի գրված ձեռագիր, ուր տիտղոսաթերթի գրված բոլոր տառերը զարդանկարված են թռչնագրերով:*

*Բուն Հայաստանի և գաղթավայրերի հայ գրչության նշանավոր դպրոցներից մեզ են հասել մանրանկարված, բարձրարժեք*



*բազմաթիվ ձեռագրեր, որոնց վրա մենք, դժբախտաբար, հնարավորություն չունենք կանգ առնելու: Մանրանկարված ունիկումներ ունենք Տարոնի, Կարինի, Վանի, Տուրուբերանի, Ղրիմի, Երզնկայի, Ատրպատականի հայ գրչության դպրոցներից:*

*Հայ մանրանկարչական դպրոցներից ամենից ինքնատիպը Խիզանի դպրոցն է, որից մեծ ժառանգություն է մեզ հասել: Խիզան ասելով մենք նկատի ունենք ո՛չ միայն Խիզանը, այլ Վանա լճի հարավում և նրա մոտերքում հանդես եկող հայ գրչության մյուս դպրոցները, օրինակ՝ Վանը, Աղթամարը, Բաղեշը և այլն:*

*Խիզանի մանրանկարչության դպրոցի ստեղծագործական շրջանն ընդգրկում է* XIV *դարից մինչև* XVII *դարը ներառյալ: Նրա աչքի ընկնող ներկայացուցիչներեն են Արիստակես մանրանկարիչը* (XIV *դարի կեսերին*), *Ծերուն ծաղկողը* (XIV *դարի երկրորդ կեսին*), *Մկրտիչ Նաղաշը* (XV *դար*) *և ուրիշներ:*

*Խիզանի մանրանկարչությունն ունի մի շարք բնորոշ առանձնահատկություններ, որոնք հնարավորություն են տալիս անմիջապես այդ դպրոցի ստեղծագործությունները տարբերել հայկական մյուս դպրոցների ստեղծագործություններից:*

*Խիզանի ձեռագրերի խորանները չունեն նախկին ճարտարապետական կառուցվածքը: Նրանց սյուները կամարների հետ միանում են առանց բարդությունների և կազմում զարդանկարչական մի ամբողջական շերտ: Զարդանկարչության մեջ հանդիպում են գլխավորապես թռչուններ, հատկապես աքաղաղներ, ձկներ և երևակայական կենդանիներ՝ կիսամարդիկ, կիսաթռչուններ: Զարդանկարչության մեջ սիրված մոտիվը՝ պարուրաձև նախշերն են, որոնք զանազան վարժ գալարումներով կծիկներ են կազմում: Գույների մեջ գերակշռում են աղյուսագույն կարմիրը, գորշ կանաչը և մանիշակագույնը: Ավետարանիչներին նկարում են պարզ խորանների տակ, առանց ճարտարապետական կառուցվածքների: Նրանք նստած են լինում գահավորակի վրա, աջևում ունենալով սեղան՝ գրենական պիտույքներով: Մարդկանց մարմնի անդամները անհամաչափ են: Դեմքերը զուտ հայկական են: Հիպնոզելու ատիճանի արտահայտիչ են նկարում մարդկանց աչքերը: Մարդիկ հագնում են տեղական հագուստներ և գլուխներին կապում չալմա, որը, ըստ երևույթին, ժամանակի սովորությունն է եղել: Ավետարանիչներին նկարում են տարեց հասակում, սպիտակ մորուքով: Գրելու ժամանակ ավետարանիչները իրենց ծնկների վրա դրած ունեն տախտակներ, որոնց վրա վերից ամրացված է լինում գրանյութը:*



Տերուն ծաղկողի ինքնանկարը:

Անչափ շատ են նկարում լուսանցազարդություններ, որոնց մեջ գերիշխում են պարուրաձև դրվագները և սիրենները[1]:

Խիզանի մանրանկարչական դպրոցում զարդագրերը անչափ շատ են: Նրանք մեծ մասամբ լինում են երևակայական կենդա-

[1] А. Н. Свирин, Миниатюра древней Армении, էջ 107—116:



նիներից կազմված. կեսը մարդ են նկարում, կեսը թռչուն կամ վերևը թռչուն է, ներքևի մասը ձուկ և այլն: Տառերը նկարում են ուրվագծերով և քիչ չափով ներկված:

Սվիրինի կարծիքով, «Խիզանի գրքի արվեստի դպրոցը ամենից ինքնատիպ և անկախ դպրոցն է»[1] և հեռու է կանգնած բյուզանդական կանոնական սխեմայից:

Հայկական մանրանկարչությունը որոշ զարթոնք ապրեց XVII—XVIII դարերում, Նոր Ջուղայի հայ գաղթավայրում: Այս գաղութը, ինչպես հայտնի է, հիմնվել էր Շահ Աբասի Պարսկաստան քշած գաղթականներից: Այստեղ XVII դարում հիմնում են գրադարան, տպարան, դպրոց, հավաքում են Հայաստանից և այլ վայրերից բերված ձեռագրեր, ընդօրինակում և զարդանկարում են դրանք: Սկսված շնորհակալ այս աշխատանքը շարունակվում է նաև XVIII դարում:

Նոր Ջուղայի դպրոցում աստվածաբանական, փիլիսոփայական, մաթեմատիկական առարկաներից բացի, աշակերտներին սովորեցնում էին նաև մանրանկարչության արվեստը: Նոր Ջուղայի հայ մանրանկարչության ականավոր դեմքերից են Հովհաննես Մրքուզը, որը մասնակցել է Ամենափրկիչ վանքի որմանկարների նկարազարդման գործին[2], իսկ Մինաս Ջուղայեցին այնքան մեծ հռչակ էր ձեռք բերել, որ աշխատում էր Շահ Սեֆիի մոտ որպես պալատական նկարիչ: Վերջինս է նկարազարդել Էջմիածնի Մայր Տաճարը[3]: Նոր Ջուղայի հայտնի մանրանկարիչներից են Հակոբ Ջուղայեցին, որի մանրանկարած ձեռագրերն արտակարգ գեղեցկություն ունեն[4], Հովնաթան Նաղաշը[5], որը հայտնի է նաև որպես տաղերգու, Բոգդան Սալթանովը[6], որի նկարներից մեկն այնքան մեծ հավանություն գտավ ցարական արքունիքում, որ Միխա-

[1] А. Свирин, Миниатюра древней Армении, էջ 107:

[2] Գ. Լևոնյան, Հովհաննես վարդապետ Մրքուզ—հռետոր, աստվածաբան և նկարիչ 17-րդ դարից:

[3] Գարեգին կաթողիկոս Հովսեփյան, Էջմիածնի Մայր Տաճարի նկարազարդումն ու ծաղկազարդումը ԺԷ—ԺԸ դարերում («Հասկ» հայագիտական տարեգիրք, Բ տարի, Անթիլիաս, 1949—1950, էջ 310—346):

[4] Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի ձեռ. № 122:

[5] Г. Левонян, Овнатаны в истории армянской живописи, Москва, 1939.

[6] Армяно-русские отношения в XVII веке (сборник материалов под редакцией проф. В. А. Парсамяна, Ереван, 1953, էջ 40):

յիլ Ալեքսեևիչ ցարի հրավերով կանչվեց Մոսկվա և երկար աշխատեց ցարական արքունիքում։

Նոր Ջուղայի դպրոցի ստեղծագործությունները հայ մանրանկարչության ամենից շքեղ գործերից են։ Նոր Ջուղայի մանրանկարչության վարպետներն իրենց ստեղծագործությունների հիմքում ունեցել են հին հայկական, Կիլիկիայի, Սյունիքի, Խիզանի դպրոցների մանրանկարչությունը և այն հարստացրել իրանական և եվրոպական մոտիվներով։ Նրանց մանրանկարները նմանվում են զանազան գույնի և տեսակի ծաղիկներից կազմված գեղեցիկ այնպիսի մի ծաղկեփնջի, որի մեջ հավաքված են բազմաթիվ գույնի ծաղիկներ, սակայն գերակշռողը հայրենի ծաղկանոցից քաղածներն են։

Նոր Ջուղայի մանրանկարչությանը հատուկ է արտասովոր շքեղություն, ոսկու և վառվռուն գույների գործածություն։ Մեզ են հասել մեծածավալ այնպիսի ձեռագրեր, որոնց մեջ հազարավոր լուսանցազարդություններ, զարդագրեր և նկարներ կան։ Ուշադրության արժանի է այն, որ այդքան շատ մանրանկարների առկայության դեպքում անգամ ծաղկողները գրեթե չեն կրկնում նախորդ էջում կատարածները։

XVII—XVIII դարերում նկատվում է մի նոր երևույթ ևս—հայ մանրանկարիչները դուրս են գալիս կրոնական գրականության շրջանակներից և սկսում են մանրանկարել նաև աշխարհիկ բնույթի աշխատություններ։ Ուշադրության արժանի է նաև այն, որ հայ մանրանկարիչները միաժամանակ հանդես են գալիս որպես որմնանկարիչներ։ Առաքել Դավրիժեցու վկայությամբ, այդ արվեստի ականավոր վարպետներից էին Մինասը և Հակոբջանը, որոնք ծաղկանկարում էին Ջուղայի «մեծամեծներ»-ի տներն ու ապարանքները «վայելչակերտ գեղեցկատիպ յօրինուածոյ արհեստին»[1]։

Նոր Ջուղայի մանրանկարչական արվեստը լայն տարածում գտավ բուն Հայաստանում և գաղթավայրերում։ Էջմիածնում մեզ հայտնի են մի քանի մանրանկարիչների անուններ, որոնք կրկնել են Նոր Ջուղայի վարպետներին։ Նույնը նկատվում է նաև Կոստանդնուպոլսում, Ղրիմում և այլ վայրերում։

Չպետք է կարծել, որ XVII—XVIII դարերում կամ նրանից առաջ հայ գրչության օջախների կամ առանձին մանրանկարիչների համար պարտադիր է եղել այս կամ այն դպրոցի ստեղծագործությունը, և նրանք պարտավորված են եղել կուրորեն ընդօրինակել. բոլոր դեպքերում մանրանկարչի նախասիրությունը կախված էր իր անհատական ճաշակից, որը դուր էր գալիս մանրանկարչին, այն էլ ընդօրինակում էր։ Ըստ որում, նկարիչները չեն կաղապարվում ազգային նեղ շրջանակների մեջ, այլ դիմում են նաև հարևան ժողովուրդների ստեղծագործություններին և օգտվում նրանցից։ Նոր շրջանում հայ մանրանկարիչներն արտանկարել են անգամ տպագիր գրքերից։ Այսպես, հայտնի է, որ Պիսկատորի Աստվածաշնչի նկարները լայն ընդունելություն են գտել հայ մանրանկարիչների մոտ, և նրանցից շատերն արտանկարել են իրենց զարդանկարած ձեռագրերում։

[1] Առաքել Դավրիժեցի, Պատմութիւն Հայոց, Վաղարշապատ, 1896, էջ 410։



ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ



# ԳՐԱՆՅՈՒԹԸ ԵՎ ԳՐԵՆԱԿԱՆ ՊԻՏՈՒՅՔՆԵՐԸ

ետական կարևոր հրամաններ գրելու համար հնում օգտագործել են նաև պղնձի և կապարի թիթեղները: Գրանյութի համար ստաղձ են ծառայել քարն ու փայտը[1]: Մեր երկրի նախաբնիկները՝ հեթիթները, գրելու համար օգտագործել են կավը, որից պատրաստել են փոքրիկ սալիկներ, թաց վիճակում փորագրել նրանց վրա և թրծել: Հեթիթական տասնյակ հազար թրծադրոշմ սալիկներ են հայտաբերված՝ Բողազ-քյոյի և այլ վայրերի հնագիտական պեղումների ժամանակ:

Եգիպտոսում գրանյութի համար օգտագործել են պապիրուսը: Դժվար է ճշտությամբ որոշել, թե ե՞րբ է գործածության մեջ դրվել պապիրուսը: Ոմանք ենթադրում են, որ այդ եղած պիտի լինի «միջին թագավորության» դարաշրջանում (2200—1500 թթ. մ. թ. ա.)[2]: Եգիպտացիները պապիրուսը պատրաստում էին համանուն բույսից, որն աճում է Նեղոսի ճահճուտներում. հատուկ ասեղներով հանում էին այդ բույսի ծուծը, թրջում, ծեծում և համապատասխան հաստությամբ մամլում: Պապիրուսը սովորաբար պատրաստում էին երկար շերտերով, վրան գրում էին վրձինով, ոլորում ու փաթեթ կազմում:

1 Հին հայ մատենագրության մեջ գրանյութը՝ լինի մագաղաթ թե թուղթ, կոչվել է «քարտես»:

2 Զ. Լուսկտակս, Գրի զարգացումը, Երևան, 1955, էջ 60:



Պապիրուսը հայ գրչության մեջ մասսայական գործածության մեջ չի դրվել: Մեզ հայտնի է պապիրուսի միայն մի պատառիկ, որը գրված է հայատառ հունարենով:

Պապիրուսի չափ գրեթե հավասար հնություն ունի մագաղաթը (պերգամենտը): Մագաղաթի նախնական հայրենիքը Փոքր Ասիայի առևտրական և կուլտուրական խոշոր կենտրոն Պերգամ քաղաքն է հանդիսացել: Ըստ հունական մի ավանդության, Պերգամի Եվմենիոս երկրորդ թագավորը իբր թե ցանկացել է այնպիսի մատենադարան ստեղծել, որն ավելի հարուստ լինի, քան Աղեքսանդրիայի նշանավոր մատենադարանը: Աղեքսանդրիայի Պտղոմեոս թագավորը, իմանալով այդ և չցանկանալով իր առաջնությունը զիջել նրան, արգելել է պապիրուսի արտահանությունը իր երկրից: Պերգամի թագավորին դժվարություններից դուրս է հանել Կրատես անունով մի քերական, որը հնարել է մագաղաթը: Պերգամում հայտաբերված մագաղաթը շատ շուտով տարածվել է և Պերգամ քաղաքի անունով էլ կոչվել պերգամենտ:

Մագաղաթը, պապիրուսի համեմատությամբ, մեծ առավելություններ ունի. նա շուտ չի փչանում, կարելի է գրել երկու երեսի վրա, ցանկացած դեպքում կարելի է լվանալ ու նորից գրել և, վերջապես, չի ջարդվում գրքեր կազմելիս:

Հնում մագաղաթ պատրաստել են ընտանի և վայրի կենդանիների՝ գառան, ոչխարի, այծի, հորթի, նապաստակի, ավանակի և այլ կենդանիների մորթիներից: Աշխարհում հայտնի է նաև մի ձեռագիր, որը գրված է մարդկային կաշվից պատրաստված մագաղաթի վրա: Այդ ձեռագիրն այժմ Լոնդոնի Բրիտանական թանգարանի սեփականությունն է հանդիսանում:

Հին Հայաստանում ամենից գործածական գրանյութը մագաղաթն է հանդիսացել: Նա չի ներմուծվել դրսից, այլ պատրաստվել է տեղում: Այդ մասին մատենագրության մեջ կան բավականին տեղեկություններ: Հովհաննես Որոտնեցին 1354 թվականին արտագրած իր ձեռագրի ստանավոր հիշատակարանում հայտնում է, որ ինքն է իր ձեռքով պատրաստել գրված ձեռագրի մագաղաթը.

«[Ես] Յովհաննէս՝ աշխարհաւ Սիսակէից, գաւառաւ Որոտնէից, զմագաղաթս ձեռամբ իմո[յ] բազկից շինեցի նիւթ պիտոյից»[1]:

1 «Էջմիածին», 1952, № 2, էջ 53:

Հովհաննես Որոտնեցին ոչ միայն ինքն է իր ձեռքով պատրաստել իր գրած ձեռագրի մագաղաթը, այլև այդ արհեստը սովորեցրել է իր աշակերտներին։ Այս մասին ուշագրավ է Գրիգոր Տաթևացու հաղորդած հետևյալ տեղեկությունը. «Զմագաղաթս (ձեռագրի) նոյն ինքն մեծ վարդապետն (Յովհաննէս Որոտնեցի) իւր ձեռօքն գործեաց (այսինքն՝ պատրաստեց—Ա. Ա.) և մեզ ուսոյց զսոյն արուեստ»[1]։

Գրչության խոշոր կենտրոններում գոյություն են ունեցել մագաղաթ պատրաստելու հատուկ արհեստանոցներ։ Այդպիսի արհեստանոցներ եղել են Գլաձորի, Տաթևի, Կիլիկիայի և այլ գրչության դպրոցներին կից։

Հայկական ձեռագրերում պահպանվել են մագաղաթ պատրաստելու եղանակի մասին հատուկ տեղեկանքներ։ Այսպես, ՀՊՄ-ի № 1849 ձեռագրում հետևյալն է առաջարկվում մագաղաթ պատրաստելու համար (բերում ենք թարգմանաբար). «Վերցրու որևէ կենդանու մորթի՝ ուլի, վայրի ոչխարի, տնային ոչխարի, ձիու մտրուկի, նապաստակի, այծյամի, հորթի մորթին և այլն, նրա մազոտ երեսին քսիր լավ մաղած ու ջրի մեջ բացած կրի շաղախ։ Եթե մագաղաթը հաստ է, կրի շաղախը խիտ արա, իսկ եթե բարակ՝ ջրալի։ Երբ նա հասնի, այսինքն՝ աշ առնի, մազերը քերիր մորթու վրայից, մաքուր լվա և պարանով ձգված կապիր արևի տակ, որ չորանա։ Ապա վերցրու քերիչը և քերիր մսի կողմն այնքան, որ միսն ամբողջապես մաքրվի և հարթ երես դառնա։ Չորանալուց հետո քերիր նաև մազի կողմը։ Այնուհետև մագաղաթին քսելու համար վերցրու ձվի սպիտակուցը և սպիտակ կտավհատը, խառնիր իրար, թող երեք օր մնա, մինչև որ կտավհատը մեղրի նման ծոր տա, ապա քսիր մագաղաթին և քերիչով քերիր» (թ. 156բ)[2]։

Նրբագույն մագաղաթները, ինչպես երևում է, պատրաստում էին գառան մորթուց։ Լավ էր ստացվում մանավանդ սատկած վիճակում ծնված գառան մորթուց պատրաստված մագաղաթը։

Մեծ ծավալ ունեցող ձեռագրերի համար օգտագործում էին խոշոր եղջյուրավոր կենդանիների կաշին։ Հայտնի է, որ Մուշի մեծադիր Տոնականը, որը գրվել է 1204 թվականին և իր ծավալով մեզ հասած ամենամեծ ձեռագիրն է Մատենադարանի հավաքա-

[1] Սրվանձտյան, Թորոս աղբար, հատ. Բ, էջ 327։

[2] Ա. Խ. Հարությունյան, Ներկերը և թանաքները հին հայկական ձեռագրերում, Երևան, 1941, էջ 20։



ծուի մեջ (ձեռագրի մեծությունն է 69×51 սմ.), պատրաստված է մոտավորապես 600 հորթի կաշվից։ Հաճախ հանդիպում ենք այնպիսի մեծածավալ մագաղաթյա ձեռագրերի, որոնց համար հարկավոր է եղել օգտագործել ոչխարի մի ամբողջ հոտ։

Մագաղաթը պատրաստելու համար մորթիները հավաքում էին աստիճանաբար և մշակում։ Հնում սովորություն է եղել, որ հավատացյալը, մատաղ անելիս, պետք է մատաղացու անասունի մորթին հանձներ վանքին։ Վանքերը հավաքում էին մորթիները ոչ թե վաճառքի հանելու, այլ մագաղաթ պատրաստելու համար։

Շուտով, սակայն, մագաղաթին փոխարինելու է գալիս թուղթը։ Թղթի գործածությունը ևս բավականին հին է։ Հայտնի է, որ չինացիները մետաքսից և բամբակից թուղթ էին պատրաստում դեռևս առաջին դարում մեր թվականությունից առաջ[1]։ Մերձավոր Արևելքում թղթի գործածությունն սկսվում է VII—IX դարերում։ Կարսկու կարծիքով, թղթի գործածությունը Ռուսաստան մտավ Արևելքից[2]։ Սլավոնական լեզվով մեզ հասած հնագույն թուղթը XIII դարից է։ Արևելքում թղթի պատրաստման համար օգտագործում էին բամբակը։

Մեզ հասած հայերեն հնագույն թղթե ձեռագիրը 971 թվականից է։ Ավելի ուշ, XII—XIII դարերում, թուղթն սկսում է ասպարեզից դուրս մղել մագաղաթին։ Սակայն ուշ միջնադարում ևս մեկ-մեկ հանդիպում են մագաղաթի վրա գրված կրոնական-կանոնական բովանդակությամբ ձեռագրեր։

Հայաստանում օգտագործվող թուղթը գլխավորապես բերվում էր դրսից։ Մերձավոր Արևելքում թղթի պատրաստման հայտնի կենտրոններ էին Թավրիզը և Դամասկոսը։ Ավելի ուշ շրջանում թուղթ սկսեցին ներմուծել նաև Եվրոպայից։ Եվրոպայից բերված թուղթը կոչվում էր «Ֆրանկի թուղթ»։

Հայ գրիչներն իրենց հիշատակարաններում երբեմն հայտնում են, թե որտեղից են ձեռք բերել իրենց օգտագործած թուղթը։ Այսպես, Մատթեոս Մոնոզոնն իր 1417 թվականին գրած հիշատակարանում հայտնում է, որ ձեռագրի պատվիրատու Մանվել քահանան, Երուսաղեմից վերադառնալիս, գնել է «զնիւթ թղթիս ի Դամասկոսէ»[3]։

[1] Թերթ մը թղթոյ պատմութեան («Բազմավէպ», 1874, էջ 292—298)։

[2] Карский, Славянская кириловская палеография, էջ 97։

[3] ՀՊՄ ձեռ. № 8689, թ. 88 ա։

Գրիչների թողած որոշ տեղեկություններից երևում է, որ Դամասկոսի թուղթը, Թավրիզի կամ եվրոպական թղթի համեմատությամբ, ավելի որակով է եղել: Այսպես, Մարկոս գրիչը խնդրում է իր սխալների և գրի «խոշբոտ» լինելու համար անմեղադիր լինել, որովհետև «քարտեզս (այսինքն՝ թուղթը—Ա. Ա.) փառանգի էր»[1]: Այստեղ ֆրանգի ասելով նկատի ունի եվրոպական թուղթը, և քանի որ եվրոպական թուղթը ցածրորակ էր, ուստի և գրիչը ընթերցողներից ներողամտություն է խնդրում:

Հակոբ Ղրիմեցին իր հիշատակարաններից մեկում հայտնում է, որ ձմեռ է, չի կարողանում «Դիմշխի», այսինքն՝ Դամասկոսի թուղթ ճարել, ուստի և հարկադրված է «Թավրիզի» թղթի վրա գրել, որը, սակայն, հաստ է և ծավալը փոքր: (Ղրիմեցու այդ հիշատակարանը պարունակող ձեռագիրը գտնվում է Լենինգրադի Արևելագիտության ինստիտուտի Հայկ. ֆ-ի № 88-ում):

Գնված թուղթը տեղափոխությունների ժամանակ ծալծլվում էր, ուստի և անհրաժեշտ էր կոկել: Պետք է ենթադրել, որ այդ բավական աշխատընկալ մի գործ է եղել, որովհետև գրիչները հաճախ են հիշում թուղթ կոկողներին: Թովմա Մեծոփեցին 1410 թվականին իր գրած ձեռագրում խնդրում է հիշել իր եղբորը, Հովհաննես քահանային, որը «բազում աշխատութեամբ, երթևեկութեամբ» ճարել է թուղթը և «քրտնաջան աշխատութեամբ կոկեաց զսա»[2]: Հակոբ գրիչը 1386 թվականին գրած հիշատակարանում խնդրում է հիշել իր երկու աշակերտներին՝ Կարապետին և Մկրտչին, որոնք թուղթը կոկելու և տաղատելու վրա մեծ ջանք էին թափել[3]:

Թուղթ կոկելու համար գոյություն է ունեցել հատուկ գործիք, որը կոչվել է «թղթի կոկիչ»: Սիմոն գրիչը Ավագ վանքում, 1439 թվականին ընդօրինակած ձեռագիրն ընդմիջելով, գրանցել է փոքրիկ հիշատակագրություն այն մասին, որ կոկիչի սրության պատճառով թուղթը փչացրել է.«Ո՞վ եղբայր, անմեղադիր լեր, զի կակիչն սուր էր՝ զթուղթն աւրեաց» (Հ. Հ. Տաշյան, Ցուցակ ձեռագրաց, էջ 50):

Թղթի գործածությունը Հայաստանում տարածվելուց հետո, ըստ երևույթին, սկսել են այն նաև տեղում պատրաստել: Հայտնի է, որ Սիմեոն Երևանցի կաթողիկոսն Էջմիածնում 1776 թվա-

[1] ՀՊՄ ձեռ. № 1925, թ. 220բ:
[2] ՀՊՄ ձեռ. № 2065, թ. 390բ:
[3] ՀՊՄ ձեռ. № 5707, թ. 485բ:



կանին թղթի հատուկ գործարան հիմնեց և իր արտադրած թուղթն օգտագործեց տպագրության մեջ[1]:


Ձևիչ


Թղթի կոկիչ


Մկրատ


Սնտուկ


Խուփն

Հայ գրչության մեջ օգտագործված գրենական պիտույքների ցանկը շատ մեծ չէ: Գրանյութի մասին արժեքավոր նյութեր պա-

[1] Հ. Աբրահամյան, Թղթի գործարան Հայաստանում (ՀՊՄ-ի «գիտական նյութերի ժողովածու», Երևան, 1941, № 1, էջ 61—72):

րունակում են հայկական մանրանկարները։ Սովորություն է եղել ավետարանների մեջ նկարել ավետարանիչներին իրենց խցիկներում՝ գրենական պիտույքների հետ միասին, ուր և կարելի է տեսնել գրենական այն բոլոր պիտույքները, որոնք գործ են ածել մեր գրիչները։ Այս տեսակետից ուշագրավ է ՀՊՄ-ի № 7643 ձեռագիրը, գրված Երզնկայում 1338 թվականին, ուր ծաղկողը՝ Հովհաննեսը, նկարել է ավետարանիչներին իրենց խցիկներում՝ գրենական պիտույքների հետ, և գրել նրանցից յուրաքանչյուրի անունը։ Նկարված են՝ քանոն, թղթի կոկիչ, գրիչ, ձևիչ, դանակ, կաղամար, գրենական պիտույքների արկղ, նրա խուփը և մկրատ։ Գրենական մյուս պիտույքներից այլ աղբյուրներից մեզ հայտնի են նաև՝ վարավարը, կարկինը, տողաշարը և ներկերի ամանները։

Նախքան գրենական պիտույքների մասին առանձին-առանձին խոսելը, մի քանի խոսք ասենք թանաքի մասին։ Թանաքը հայ մատենագրության մեջ կոչվել է մելան, որը, անշուշտ, փոխառություն է հունական μέλαν բառի՝ սևագեղ իմաստով։

Հայկական մատենագրության մեջ գործ է ածվել գլխավորապես երկու տեսակ թանաք՝ բուսական և երկաթի։ Գործածված երկու թանաքներն էլ շատ բարձր որակի են եղել՝ երկար դարերի ընթացքում նրանք պահել են իրենց գույնը։ Արևը, ջուրը, օդի խոնավությունը չեն ազդել նրանց վրա։ Շատ քիչ կարելի է հանդիպել այնպիսի ձեռագրերի, որոնք գունատված լինեն։

Հայկական ձեռագրերում, բացի սև մելանից, գործ են ածել կարմիր, կանաչ, կապույտ և այլ տեսակի բարձրորակ ներկեր, որոնք հիացմունք են պատճառում դիտողին։

Կարմիր մելանը գործ էին ածում զարդագրության մեջ և գրում էին տեքստերի խորագրերը։ Առօրյա գործածության ընթացքում կարմիր մելանով գրելը թագավորների և կաթողիկոսների մենաշնորհն էր. «Թագաւորք կարմիր մելանաւ գրեն զգիրս», —ասում է Ներսես Շնորհալին։

Ներկերից համաշխարհային հռչակ է ունեցել որդան կարմիր ներկը, որը Հայաստանից արտահանվող կարևոր ապրանքներից մեկն է հանդիսացել և ամենուրեք հայտնի է եղել «հայկական ներկ» անունով։

Թանաքը, ինչպես և մյուս բոլոր ներկերը, պատրաստվել են տեղում։ Այդ մասին բազմաթիվ հիշատակություններ կան ձեռագրերում։ Կարապետ գրիչը 1424 թվականին գրած հիշատակարանում խնդրում է հիշել Թումա Կաֆայեցուն, որն «զկարմիր և



զսև թանաքն ի յամենայն ժամս պատրաստեաց» (ՀՊՄ ձեռ. № 8173, թ. 340 ա)։

«Գիրք արհեստից» և ալքիմիական բովանդակությամբ ժողովածուները պարունակում են զանազան տեսակի թանաքներ պատրաստելու մասին դեղատոմսեր։ Բերենք դրանցից մեկը, որը վերաբերում է սև թանաք պատրաստելուն (տալիս ենք թարգմանաբար). «Վերցրու կանաչ գխտորը, կոտրատիր և լցրու մի խեցե ամանի մեջ։ Քիչ ձեթ ավելացրու վրան։ Դիր կրակի վրա և եփիր այնպես, որ չայրվի։ Փայտով խառնիր մինչև սևանա։ Վերցրու և լցրու մի թասի մեջ և իր չափով նռան կեղև ավելացրու վրան։ Լավ եփիր։ Արջասպ լցրու վրան, թող պարզի և գրիր»[1]։ Նշված ժողովածուն պարունակում է այլևայլ գույնի և տեսակի թանաքներ պատրաստելու բազմաթիվ այլ դեղատոմսեր ևս։

Մեզ է հասել XVIII դարի ականավոր հայ առևտրականներից մեկի՝ Եղիաս Մուշեղի «Գիրք արհեստից» աշխատությունը, որը գրվել է 1720 թվականին։ Այդ աշխատությունը պարունակում է ոսկու, արծաթի և զանազան գույնի թանաքներ պատրաստելու և գործածելու մասին հատուկ դեղատոմսեր։ Այնտեղ կան նաև գաղտնագրության համար հատուկ թանաքների դեղատոմսեր։ Գաղտնագրության թանաքի դեղատոմսերից մեկում ասվում է (բերում ենք թարգմանաբար). «Վերցրու նաշադիր և լցրու ջրի մեջ, թող լուծվի. այդ գրով գրիր թղթի վրա։ Չորանալիս բռնիր մեղմ կրակի վրա. լավ տաքանալուց հետո գիրը կսևանա, և դու կկարդաս»[2]։ Մի այլ դեղատոմսում՝ «Վասն գաղտ գրելոյ ոչ ոք կարդայ» վերնագրով, նա հանձնարարում է. «Վերցրու սառը լեղին և խառնիր ջրի հետ. այս գրով ինչ որ գրես թղթի վրա, անհետանում է։ Իսկ երբ ցանկանում ես կարդալ, այս գրված գրությունը թրջիր ջրում, գիրը կերևա։ Բայց թուղթը ջրի մեջ ձգելիս երկար չպահես, այլ քիչ թող ջրի մեջ և թրջվելիս անմիջապես հանիր»[3]։

Թանաքը պահվում էր հատուկ ամանի մեջ, որը կոչվում էր կաղամար։ Կաղամարը լինում էր մետաղից, ապակուց, փայտից կամ թրծված կավից։ Հնում, սակայն, կաղամար էր կոչվում ո՛չ միայն թանաքամանը, այլև այն տուփը, որի մեջ դնում էին թա-

---

1 Ա. Հարությունյան, Թանաքներ և ներկեր, էջ 19։

2 ГАФКЭ, ф. Сношения России с Арменией, 1724, գ. № 5, թերթ 12։

3 Նույն տեղը, էջ 13։

նաքամանը և գրիչները։ Միջին դարերում նոտարներն այդ գրչատուփերն ամրացնում էին գոտիներին և այդպես շրջում։

Հակոբ անունով մի գրիչ Սպահանում 1654 թվականին գրենական պիտույքների մասին գրած շատ հետաքրքիր մի տաղում կաղամարին նվիրել է հետևյալ քառյակը.

«Եւ արդ ասեմ անօթ գրիս,
Նախ և յառաջ կաղամարիս,
Որ լինքն ունի սև թանաքիս,
Նա կու գրէ որչափ կամիս»[1]։

Հնում ձեռագիրը գրելու համար որպես գրիչ օգտագործում էին երկաթե ձողիկները։ Ոմանք ենթադրում են, որ այդ ձողիկներով գրելու պատճառով է, որ հին հայկական գրերը կոչվել են երկաթագիր։ Անհավանական չէ, որ հայերը գրչի այս տեսակը ժառանգած լինեն իրենց նախորդներից, մասնավորապես հեթիթներից, որոնք իրենց գրությունները մետաղյա գրչաձողերով էին փորագրում կավե աղյուսների վրա։ Հնում ոչ միայն հայերը, այլև Արևելքի շատ ժողովուրդներ երկաթե գրիչներ էին գործածում։ («Գրել գրչաւ երկաթեաւ»—Յոբ, ԺԹ 24)։

Միջին դարերում երկաթե գրիչներին փոխարինում են եղեգնյա գրիչները, որոնք հունարեն կոչվում էին κάλαμος, այստեղից էլ՝ ղալամ բառը։ Պրոկղի «Շաղկապ»-ի մեջ մենք հանդիպում ենք այսպիսի մի դարձվածքի. «Պատճառ գծի գրոյ՝ գրողն, իսկ պատճառակից՝ գրիչ եղէգն»։ Ավելի ուշ շրջանում հայ գրչության մեջ սկսում են գործածել նաև սագի փետուրից գրիչներ։ Այդ գրիչներով, ինչպես երևում է, շատ գրել չէր կարելի և շուտ-շուտ պիտի նորոգեին նրանց ծայրերը։ Գնալով գրչի պատրաստման եղանակը զարգացել է. սկսել են պատրաստել այնպիսի գրիչ-ինքնահոսներ, որոնք շատ թանաք են հավաքում և երկար են գրում։ ՀՊՄ-ի № 1380 ձեռագրի գրչի՝ Ստեփանոսի հիշատակագրությունից երևում է, որ գրիչը մի անգամ թաթախելով 700 տառ է գրել, մոտ մի էջ։ Վերջում թանաքը գրչից կաթել է, ասում է գրողը, «թէ չէ այլ կու գրէի» (թ. 229 բ)[2]։

---

[1] «Էջմիածին», 1950, № VII—VIII, էջ 86։

[2] ՀՊՄ-ի աշխատակցուհի Աստղիկ Գևորգյանը պարզել է, որ հայ գրչության մեջ գործ են ածվել գնդիկավոր գրիչ-ինքնահոսները դեռևս 1166 թվականին Հռոմկլայում (այդ թվականին գրված ձեռագրում նկարված է ավետարանիչը՝ գնդիկավոր ինքնահոսը ձեռքում գրելիս)։



Հակոբ գրիչն իր վերև հիշված տաղում, գրչի մասին, գրում է.

«Երկրորդ՝ ասեմ վասն գրչիս,
Դու ժամէ ժամ է՞ր կու հանգչիս.
Մատունս իմ ոսկոր է և միս,
Մինչ գրեց՝ զայրացաւ հոգիս»[1]։

Գրիչները սովորաբար իրենց մոտ պահում էին սուր զմելիներ՝ գրչի ծայրերը սրելու համար։ Դրանք կոչվում էին «գրչատաշ»-ներ։ ՀՊՄ-ի № 212 ձեռագրում նկարված է ավետարանիչը՝ գրչի ծայրը սրելիս։

Գրչատաշը, գրչի ծայրը սրելուց բացի, օգտագործվում էր նաև սխալները քերելու համար։ Այդ նկատի ունենալով է, որ Հակոբ գրիչը, գրենական պիտույքների մասին իր գրած տաղում գրչատաշի անունից խնդրում է սուր պահել և այլ նպատակի համար չօգտագործել գրչատաշը.

«Երրորդ՝ ասեմ գրչատաշիս,
Որ կու հանէ սխալ գրիս,
Եւ գրչատաշն ասէ ի յիս,
Թէ որ զիս սուր մնալ կամիս,
Մի՛ առաքեր զիս յայլ տեղիս,
Որ այլ զատ կտոր(եմ) կամ միս»[2]։

Ձեռագրերը տողում էին տողաշարով։ Տողաշար կոչվող այդ գործիքը՝ երկու էջի մեծությամբ մի շրջանակ էր, որ աջ և ձախ կողմերում, հավասար հեռավորության վրա, բացված ուներ անցքեր, որից ձգվում էին աղիքի բարակ լարեր[3]։ Տողելու ժամանակ մագաղաթը քիչ թացացնում էին և տողաշարը սեղմում վրան. տողաշարի լարերը հավասար հետքեր էին թողնում մագաղաթի վրա։

Ռուսական հնագրության հայտնի մասնագետ Կարսկու կարծիքով, այդ գործիքն ունեցել է հետևյալ ձևը. (տես հաջորդ էջում)։

Ուշ միջնադարում, երբ գրանյութը, հիմնականում, թուղթն է դառնում, սկսում են տողաշարով միայն նշումներ անել և քանոնով գծել, նկատի ունենալով, որ թուղթը ջրի մեջ գցելու դեպքում կարող է փչանալ։ Տողաշարին շուտով փոխարինում են փարտա-

---

[1] «Էջմիածին», 1950, № VII—VIII, էջ 86։

[2] Նույն տեղը։

[3] Գ. Լևոնյան, Հայ գիրը և տպագրության արվեստը, էջ 14։

վարը և քանոնը: Փարտավարը՝ էջի մեծությամբ մի շրջանակ էր, որով սահմանագծում էին տեքստի չորս բոլորը:



Տողատման գործիք:

Փարտավարով և տողաշարով աշխատելիս անգամ, տողերը գծում էին ո՛չ թե մատիտով կամ գրչով, այլ երկաթի կամ ոսկրի սուր գործիքով, որոնք սև գծեր չէին առաջացնում և չէին



Շիրակացու տոմարական բոլորակներից մեկը:



կեղտոտում: Այդ գործիքների գծումների հետքերը կարելի է տեսնել անգամ այժմ: Հակոբ գրիչն իր բանաստեղծության մեջ քանոնին և փարտավարին նվիրել է երկուական տող.

*«Հինգերորդ՝ ասեմ քանոնիս,*
*Որ՛ ճշմարտութեան օրինակիս,*
*Վեցերորդ՝ փարտավարիս,*
*Որ կու քաշէ պարիսպ գրիս»*[1]:

Հակոբ գրիչը գրենական պիտույքների մասին գրած իր տաղում հիշում է փարկալ անունով մի գործիքի: Փարկալը պարսկերեն կարկինի անունն է: Հայ գրչության մեջ կարկինն օգտագործում էին վաղուց: Տոմարական բովանդակություն ունեցող ձեռագրերում, ուր գծված են լինում տասնյակ բոլորակներ, որոնց գծագրությունը կատարված է կարկինի միջոցով: Ձեռագրերում մնացել են կարկինի ասեղի ծայրի ծակոտիները (տե՛ս նախորդ էջը):

Ուշադրության արժանի է այն, որ փարկալը օգտագործվել է տողաշարի չափերը որոշելու համար: Հակոբ գրիչը փարկալը հիշել է իր տաղում հենց այդ կապակցությամբ.

*«Ութերորդ՝ վասն փարկալիս,*
*Որ շինողն է նա տողաշարիս»*[2]:

Եվ, վերջապես, գրենական պիտույքներից՛ էին սաղափները՝ խեցեմորթուց պատրաստած այն փոքրիկ ամանիկները, որոնց մեջ գունավոր թանաքներն էին լցնում: Հակոբ գրիչն այդ սաղափներին նվիրում է հետևյալ քառյակը.

*«Զորրորդ՝ ասեմ սաղափներիս՝*
*Մինն գնչիս, մինն ղրմզիս,*
*Յործամ գրեն գլուխ բանիս,*
*Նա կու խնդայ սիրտս և հոգիս»*[3]:

Այն ժամանակ օգտագործվող գրենական պիտույքներն իրենց ձևով քիչ էին տարբերվում ներկայումս գործածվող գրենական պիտույքներից:

Հին դարերում, սեղանից բացի, սովորական էր դնակիտ տախտակների գործածությունը:

---

1 «Էջմիածին», 1950, № VII—VIII, էջ 86 (ձեռ. № 16, թ. 350 ա):
2 Նույն տեղում:
3 «Էջմիածին», 1950, հուլիս—օգոստոս, էջ 86:

Ձեռագրերում ավետարանիչներին նկարում են նստած վիճակում, պնակիտ-տախտակները դրված ծնկներին։ Քառակուսի տախտակի երկու անկյունից եռանկյունի ձևով կապված է լինում պարան, որն ամրացվում է առաստաղից։ Գրելիս այդ շարժուն սեղաններին տալիս էին համապատասխան թեքություն. Նրանք ունեին այն առավելությունը, որ կարելի էր թեքել ցանկացած ուղղությամբ։ Տախտակն ունենում էր հատուկ հարմարանք՝ վրան դրված թերթն ամրացնելու համար։

Այս շարժուն տախտակները ամրացվում էին առաստաղից՝ երդիկին մոտիկ, որպեսզի լույս լինի։ Սակայն այդ ուներ այն անհարմարությունը, որ երդիկից ոչ միայն լույսն էր թափանցում, այլև անձրևը։ Անհիմն չէ Կարապետ գրչի գանգատը. «Ո՛հ, ո՛հ, գալս ոչինչ տունս, զինչ յերդէն կու անկանի՝ թռի ի գիրս և ապականէ»[1]։

Ձեռագրի պատրաստումը փաստորեն կոլեկտիվ աշխատանքի արդյունք էր. մեկը ճարում էր գրանյութը, մյուսը՝ գրում, երրորդը՝ մանրանկարում, չորրորդը՝ համեմատում բնագրի հետ և ուղղում բաց թողած սխալները, մեկ ուրիշը թուղթն էր կոկում, մյուսը՝ թանաք պատրաստում, հաջորդը կազմում էր, դարբինը կազմի կոճակն էր պատրաստում և այլն։ Հիշատակարաններում սովորաբար հիշվում էին ձեռագրի վրա աշխատող բոլոր մարդկանց անունները։ Իհարկե, պատահում է, որ այս ամբողջ աշխատանքը կատարում էր և մի անձնավորություն, բայց ձեռագրերի մեծ մասը համատեղ աշխատանքի արդյունք է եղել։

Գրիչների և մանրանկարիչների մասին իր տեղում մենք բավականին խոսել ենք։ Այժմ ուզում ենք երկու խոսք ասել կազմարարների մասին։

Գրչության բոլոր մեծ դպրոցներում պահվում էին հատուկ կազմարարներ։ Կազմարարի պարտականությունն էր համարակալված պրակներն իրար մոտ բերել, սոսնձել և ամրացնել կազմին։

Կազմը, սովորաբար, պատրաստում էին տախտակից և վրան մուգ դեղնավուն կաշի քաշում։ Ձեռագրի երկու երեսներին նրանք զանազան զարդարանքներ էին տպում ճնշումով։ Այդ աշխատանքը կոչվում էր «դաջել», իսկ կատարված աշխատանքը՝ «դաջվածք»։

1 «Էջմիածին», 1950, հուլիս—օգոստոս, էջ 85։



Կազմի ներսից, երկու կողմերում, փակցնում էին կտորներ՝ մետաքսից, շալից և կտավից[1]։ Այդ կտորները մեծ արժեք ունեն պատմագիտության համար, որովհետև մարդկանց հետ գետնի տակ թաղված կտորները փտել, ոչնչացել են, իսկ այլ ճանապարհով մաքուր պահված կտորներ քիչ են հասել, և կազմերի ներքին պատերին փակցված այդ կտորներն են, որ մեզ որոշ պատկերացում են տալիս ժամանակի գործվածքների մասին։

Կազմերի ներքին պատերին փակցված կտորներից կան այնպիսիները, որոնք իրենց հնությամբ և պարունակած զարդարվեստով հատուկ ուշադրության առարկա են հանդիսանում։

Ձեռագրերի կազմողները, եթե այլ անձնավորություններ էին, ապա նրանց անունները անպայման հիշվում են ձեռագրերի հիշատակարաններում։ Կազմարար Մատթեոսը ՀՊՄ-ի № 148 ձեռագրում թողած իր հիշատակարանում խնդրում է հիշել իրեն՝ «տերեվաթափ և անպտուղ զկազմող սորա զՄատթէոս»։ Թորոս գրիչը 1318 թվականին իր գրած հիշատակարանում խնդրում է հիշել Սահակ քահանային, որը բախտակից է եղել իրեն Կիպրոս կղզում և կազմել ձեռագիրը[2]։ Այսպիսի հիշատակարաններ շատ կարելի է բերել։

Սակայն ձեռագրերը որքան էլ լավ կազմված լինեին, դարերի ընթացքում, վատ պահպանության հետևանքով, կազմահան էին լինում, քայքայվում։ Գրչության դպրոցների կարևոր գործերից մեկն էլ եղել է քայքայված ձեռագրերի նորոգումը, կազմահան եղածները նորից կազմելը։ Հայ գրասեր շրջանում այն կարծիքն է գոյություն ունեցել, որ քայքայված ձեռագրի նորոգությունը մեծագույն բարերարություն է։ XVII դարի աչքի ընկնող հայ տաղերգուներից մեկը՝ Վարդան Բաղիշեցին իր թողած մի հիշատակագրության մեջ գտնում է, որ 30—40 ձեռագիր նորոգելը, քայքայված մասերը վերականգնելը «մեծ է քան զեկեղեցիս շինելն»[3]։

Քայքայված ձեռագրերի վերականգնման ուղղությամբ բավական մեծ գործ է կատարել Բաղեշի գրչության դպրոցը։ Միայն

1 Տարբեր ժամանակաշրջանները ներկայացնող այդ կտորներից նմուշներ հրատարակեց 1953 թվականին Դուռնովոն՝ „Армянская набойка“ վերնագրով։

2 ՀՊՄ, ձեռ. № 242, թ. 392ա։

3 ՀՊՄ, ձեռ. № 2748, թ. 358բ (հմմտ. Վ. Հակոբյան, Մանր ժամանակագրություններ, XIII—XVIII դդ., Երևան, 1956, էջ 386)։

XVII դարում, Վարդան Բաղիշեցու ուսուցչապետության շրջանում նշանավոր ծաղկող և կազմող Սահակ Վանեցին կազմել է ավելի քան 70 ձեռագիր[1]: Ըստ որում, նրա այդ կազմածների մեջ եղել են այնպիսի ունիկումներ, որոնք մեզ են հասել շնորհիվ այդ դպրոցի ձեռագրերի նկատմամբ ցուցաբերած բացառիկ հոգատարության և փայփայանքի:

Հայ գրիչների մոտ սովորություն է եղել հիշել ոչ միայն ձեռագրերի վրա աշխատող վաստակավոր մարդկանց անունները, այլև բոլոր նրանց, ովքեր փոքր չափով անգամ աշխատանք են թափել ձեռագրի վրա: ՀՊՄ-ի № 4673 ձեռագրի գրիչն իր հիշատակարանում խնդրում է հիշել Հեթումին, որի դուստրը «երետ գշապկացու կտաւն»: Նույն գրիչը խնդրում է հիշել նաև Աֆինդ-երկաթագործին, «որ աշխատեցաւ ի փակ և կոճակ գրոցս»:

Ինչքա՞ն ժամանակում էին կարողանում ընդօրինակել մի ձեռագիրը և ի՞նչ արժեին նրանք: Բարեբախտաբար, հիշատակարաններում այդ մասին որոշ տեղեկություններ մնացել են:

Կարապետ Տյուրիկեցի գրիչը 1331 թվականին ընդօրինակած ձեռագիրն սկսել է օգոստոսի 17-ին և վերջացրել դեկտեմբերի 20-ին[2]: Ձեռագիրը բաղկացած է 278 թերթից: Յուրաքանչյուր էջի վրա կա, միջին հաշվով, 550 տառանիշ: Գրիչը եթե 123 օրվա ընթացքում վերջացրել է ձեռագրի ընդօրինակությունը, ապա նա յուրաքանչյուր օր, միջին հաշվով, ընդօրինակած պիտի լինի 5 էջ ձեռագիր[3]:

Ստեփանոս գրիչն իր ձեռագրի ընդօրինակությունն սկսել է 1369 թվականի հունիսի 10-ին և ավարտել նույն թվականի սեպտեմբերի 30-ին[4]: Ձեռագիրը միջին մեծություն ունի՝ յուրաքանչյուր էջի վրա հաշվվում է մինչև 750 տառանիշ: Ձեռագիրը բաղկացած է 468 թերթից, այդ հաշվով՝ գրիչը օրական ընդօրինակել է 8—9 էջ:

Մխիթար գրիչն իր հիշատակարանում նշում է, որ նա ձեռագիրն ընդօրինակել է 30 օրվա ընթացքում[5]: Ձեռագիրը բաղկացած է 111 թերթից: Գրիչն օրական ընդօրինակել է 6—7 էջ:

---

[1] Հ. Ն. Ակինյան, Բաղեշի դպրոցը, Վիեննա, 1952, էջ 274—275:

[2] ՀՊՄ ձեռ. № 149, թ. 278ա:

[3] Նույն հաշիվը կատարել է նաև Լ. Խաչիկյանը (տես ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 244, ծանոթություն):

[4] ՀՊՄ ձեռ. № 5883, թ. 468 ա:

[5] ՀՊՄ ձեռ. № 4171, թ. 3 բ:



Կարելի է բերել այլ օրինակներ ևս: Գրչի հիշատակարանները մեզ մոտավոր պատկերացում են տալիս ձեռագրի ընդօրինակման տևողության մասին: Գրիչը մի օրվա ընթացքում, միջին հաշվով, կարող էր ընդօրինակել 5—10 էջ՝ նայած էջի մեծությանը: Միջին մեծության ձեռագիրը, այդ հաշվով, կարելի էր ընդօրինակել 3—4 ամսում: Մեծ ձեռագրերը, օրինակ՝ հարանց վարքերը, հայսմավուրքները, աստվածաշնչերը և այլն, կարելի էր ընդօրինակել մինչև մեկ տարվա ընթացքում:

Պետք է նկատի ունենալ, որ գրիչներն աշխատում էին մեծ խանդաղատանքով, աշխատում էին ամբողջ օրը և հաճախ նաև գիշերը՝ ճրագի աղոտ լույսի տակ: Պատահում էր, իհարկե, որ գրչի համար ստեղծվում էին անբարենպաստ պայմաններ, և գրիչը հաճախ ստիպված էր լինում ընդմիջել աշխատանքը և այդ պատճառով ձեռագրի ընդօրինակությունը տարիներ շարունակ ձգձգվում էր: Մեզ հայտնի են փաստեր, որ ձեռագրի ընդօրինակությունը տևել է մինչև յոթ տարի: Մատթեոս գրիչը Անգեղակոթ գյուղաքաղաքում 1378 թվականին գրած ձեռագրի հիշատակարանում հայտնում է, որ այդ ձեռագիրը «յոգնակի սիրով գրեցի ամըս եօթ»[1]:

Հայ ձեռագրական ժողովածուներում կան գրչագրեր, որոնք գրված են ո՛չ թե մեկ, այլ մի քանի գրիչների կողմից: Սկսել է մեկը, բայց չի կարողացել ավարտել այն, մահացել է, և ձեռագիրը թերի է մնացել: Երկրորդն է սկսել և շարունակել, բայց նա էլ չավարտած՝ մահացել է: Եվ միայն երրորդին է հաջողվել ավարտել ձեռագրի ընդօրինակությունը: Այդ կարգի ձեռագրերում շարունակող գրիչներից ամեն մեկը թողել է իր հիշատակարանը:

Հետաքրքիր է պարզել ձեռագրի արժեքն այն ժամանակվա գներով:

Մատենագրությամբ զբաղվող «գիտակ մարդկանց» համար ընդունված է եղել ասել, որ ձեռագիրն «անգին է», նրա արժեքը դրամական չափանիշով չպիտի չափել: Այդ հասկացողությունը շատ հակիրճ ձևակերպված է Հակոբ գրչի 1386 թվականին գրած չափածո հիշատակարանում.

«...առ յիմարն 〈գրչագիրը〉 ոչինչ չարժի,
'Ի առ իմաստունն՝ գինն աշխարհի»[2]:

---

[1] ՀՊՄ ձեռ. № 2680, թ. 369 ա:

[2] ՀՊՄ ձեռ. № 2178, թ. 91 բ:

Գրանյութի թանկ գնով ձեռք բերվելու հանգամանքը, գրելու տառապալից աշխատանքը, թուղթ կոկելու և կազմելու դժվարությունները և այլն, անդրադարձել են ձեռագրի արժեքի վրա։ Ձեռագրերը հին և միջին դարերում անչափ բարձր գին են ունեցել, այնքան բարձր, որ ամեն մի միջին հարստության տեր մարդու համար անգամ դժվար էր սեփական ձեռագիր ունենալը։

XIV—XV դարերում գրված ձեռագրերի հիշատակարանից երևում է, որ միջին մեծություն ունեցող մի ձեռագիրը գնահատվում էր հարյուրից մինչև հազար դահեկան։ Արժեքը կախված էր ձեռագրի մեծությունից և զարդանկարված լինելու հանգամանքից։

Էլբեգ անունով մեկն իր 1382 թվականին թողած հիշատակարանում հայտնում է, որ ավետարանն ընկել է «ի ձեռն այլասեռից ի գերութիւն», և ինքը 100 դահեկան դրամ է տվել ձեռագիրը գերությունից ազատելու համար[1]։

Ներսես Տարոնցին ձեռագիր գրել տալու համար Թավրիզում թուղթ է գնել՝ վճարելով 600 դրամ։ Ձեռագրի ընդօրինակողներին վճարել է 1500 դրամ։ Չհաշված դեռ այլ կարգի ծախսերը, որոնք նույնպես եղել են, ձեռագրի վրա ծախսվել է 2100 դրամ[2]։

Զաքարիա միայնակյացը 1361 թվականին ճաշոցը գնել է 800 դրամի[3]։

Ոլուբեկը 1383 թվականին ճաշոցը գնել է 1000 սպիտակի[4]։

Ամիրբարն 1590 թվականին ավետարանը գնել է 2000 դահեկանի[5] և այլն։

Դժբախտաբար, մենք չգիտենք այն ժամանակվա դրամի գնողունակությունը և դժվար է այժմ համեմատել մեր ներկա գների հետ։ Բայց մեզ հասել են մեկ-երկու հիշատակարան, ուր ձեռագրերը գնահատված են եղել անասուններով կամ բնամթերքով, որոնցից կարելի է որոշ գաղափար կազմել ձեռագրերի արժեքի մասին։

1668 թվականին ընդօրինակված մի ձեռագիր հիշատակարանից երևում է, որ մի ձեռագիր փոխանակվել է 2 եզան, 2 ձիու և 1 կովի հետ։ Հիշատակարանում այդ մասին ասված է. «Դարձեալ յիշեցէք զգնօղ սուրբ աւետարանիս զՄմարգարիտն, որ ետ երկու եզ, երկու ձի, կով մի և էառ յիշատակ ի մեր Էրիուցս Մեսրոպիս վկայութեամբ ըռայես Թուկասին...»։ (Արթիկի ավետարանը)։

ՀՊՄ-ի № 212 ձեռագրի հիշատակարանում կարդում ենք. «Դարձեալ յիշեցէք և աստուած ողորմի ասացէք Մուրատ Բաշխուն և հօրեղբօրն Անդրէասին, որ տուին իւրեանց հալալ վաստակոցն կով մի Ե (5) փապասի արժէ, Ժ (10) շահի դրամ, Ե (5) քիլայ ցորեն, Ժ (10) փապասի, տուին, ազատեցին յանօրինաց և ի գերութեանց»[1]։

Եթե մենք վերցնելու լինենք ամենից ցածր արժեք ունեցող ձեռագիրը, որը փոխարինվել է մեկ կովի և մեկ ձիու հետ, ապա մեր ներկա դրամով այն արժեր 3000—4000 ռուբլի, մի գումար, որով այժմ կարելի է գնել հարյուրավոր գրքեր։

1 ՀՊՄ ձեռ. № 4171, թ. 3 բ։
2 Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 546—547։
3 ՀՊՄ ձեռ. № 7408, թ. 524 բ։
4 ՀՊՄ ձեռ. № 4656, թ. 506 բ։
5 Լալայանի ցուցակ, էջ 282։



1 Գ. Հովսեփյանի Հիշատակարանների անտիպ ժողովածուից։



ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ



## ԱՂԱՎԱՂՈՒՄՆԵՐ ԵՎ ԱՂՃԱՏՈՒՄՆԵՐ

*րբեմն հայ մատենագրության մեջ մեզ հանդիպում են աղավաղումներ և աղճատումներ։ Նրանք լինում են հինգ տեսակի—1) բացահայտ կեղծիքներ, 2) խմբագրական կամ սրբագրական նպատակադրված փոփոխություններ, 3) ընդմիջարկություններ (ինտերպոլյացիա), 4) տեքստի կրճատումներ և 5) գրչական սխալներ։*

*Բացահայտ կեղծիքը կատարվում է երկու դեպքում—կեղծվում են ձեռագրերի գրչության ժամանակը և գրչի անունը։ Ձեռագրի գրչության ժամանակը կեղծելու մի շարք փաստեր են մեզ հայտնի։ Բանասիրական լուրջ վիճաբանության առարկա է եղել Երուսաղեմի Հայոց մատենադարանի մի ավետարանի գրության ժամանակը, որ եթե հավատալու լինենք հիշատակարանին, գրված պիտի լինի 602 թվականին։ Հիշատակարանում ասված է, «Հյց. թուական ԾԱ... ՋՃԲ.։ Գրեցաւ յԱւձի յաւուրս Մուշեղի։ Գրիգոր երիցէ»[1]։ Սակայն ձեռագրի հնագրական ուշադիր քննությունը, անվիճելիորեն ցույց է տալիս, որ նրա թվականը կեղծված է. ձեռագիրը գըրված պետք է լինի X—XI դարերում։*

*[1] Տես «Հանդէս ամսօրեայ», 1901, էջ 33—35 (հմմտ. Գ. Կ. Հովսեփյանի «Հիշատակարանք ձեռագրաց», էջ 169)։*



*Կեղծված թվականով նման մի ձեռագրի հիշատակարան էլ կա Վենետիկի Մխիթարյանների մատենադարանում, որը թողել է Սարգիս գրիչը. «Ես Սարգիս անարժան քահանայ,—կարդում ենք այդ հիշատակարանում,—գրեցի զսուրբ աւետարանս ՆԺԵ թուականիս թագաւորելոյ ի վերայ մեր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»[1]։ Բանասեր Հ. Բ. Սարգիսյանը իր ձեռագրաց ցուցակում հրատարակելով այս հիշատակարանը, իրավացի, համարել է այն կեղծիք։*

*Թվականների կեղծման պատճառը մեծ մասամբ այն է, որ նրանց տերերը ցանկանում են իրենց ձեռագրերին հնություն տալ։ Այդ կեղծարարները, սակայն, ծանոթ չեն հայ հին մատենագրության տարրական օրենքների հետ, չգիտեն, որ V—VII դարերում մեր մատենագրության մեջ դեռ գործածական չէր որևէ թվական, և թվականները հաշվվում էին միայն թագավորների և կայսրերի գահակալության տարիներով։ Այս մասին մենք խոսել ենք առջևում։*

*Բավականին մեծ թիվ են կազմում ձեռագրի գրչի կամ ստացողի անունների կեղծումները։ Միջին դարերում գտնվել են դյուրին ճանապարհով մեծ հաչակ ձեռք բերող գրագողեր, որոնք ձեռագրի հիշատակարանում ջնջել են ձեռագրի վրա տարիներ տքնող գրչի անունը և իրենցը գրել։ Ձեռագրերում նման մի շարք փաստեր են հայտնի, բայց բոլոր դեպքերում ոչ հմուտ աչքն անգամ կարող է նկատել այդ կեղծիքը։ Հաճախ ջնջված և նոր գրված անվան տակ խոշորացույցով կարելի է կարդալ նախկին գրչի անունը։*

*Նման կեղծիքն այնքան է տարածված եղել, որ երբեմն գրիչները գրագողության առաջն առնելու համար իրենց հիշատակարաններում անեծք են գրել այն մարդկանց հասցեին, որոնք կհամարձակվեն կտրել ձեռագրի հիշատակարանը կամ ջնջել գրիչների անունը։ Բրիտանական թանգարանի սեփականությունը հանդիսացող հայկական մի ձեռագրի հիշատակարանում կարդում ենք. «...ինչ մարդ որ յիշատակարանս կտրել և ճնճել կամի, անուն նորա ի գրոյն կենաց ճնճեալ լինի»[2]։*

*Հին հայկական մատենագրության մեջ կատարված կարևոր*

*[1] Հ. Բ. Սարգիսյան, Ցուցակ ձեռագրաց, հատ. Բ, էջ 1248։*

[2] F. C. Conybeare, A catalogue of the armenian manuscripts in the British museum, *էջ 193։*

աղճատումները խմբագրական բնույթ ունեն: Այդ առանձնապես մեծ է եղել հին հայկական տեքստերում: Մինչև VII—VIII դարերը հայ քրիստոնեական մատենագրության կողքին պահված է եղել հայ հեթանոսական մատենագրության հնավանդությունը: Մինչև այդ դարերը հայ քրիստոնեական եկեղեցին դեռ չէր ստեղծել ազգային իր ինքնուրույն անխախտ կանոնները, դեռ ամբողջովին չէր բեռնաթափվել հեթանոսական մշակության ժառանգություններից: Ահա թե ինչու նա բավականին լայնախոհ էր հեթանոսական մտածողության հանդեպ: Դրությունը փոխվում է VII—VIII դարերում, երբ քրիստոնեական եկեղեցին Հայաստանում ստեղծում է իր անշարժ կրոնական դոգմաները և ժամանակակից տեսանկյունով վերանայում հրապարակի վրա եղած գրականությունը և գրաքննության ենթարկում այն: Գրաքննչական այդ «զտումներ»-ի ընթացքում որոշ աշխատություններ բոլորովին դուրս են հանվում, որոշ աշխատություններ կրճատվում են անճանաչելի աստիճան, իսկ որոշ աշխատություններ՝ խմբագրվում: Տեղեկություններ կան, որ ժամանակի սահմանափակ այդ մտածողության հետևանքով ոչնչացվել են հին հայկական արժեքավոր մի շարք աշխատություններ:

Ձեռագրերի մեջ մեկ-մեկ պատահում են աղանդավորական համարված և արգելված գրականության կամ նրանց հեղինակների ցանկերը: Այսպես, Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 1869 ձեռագրում, որն ընդօրինակված է Անդրեաս գրչի կողմից 1585 թվականին, պարունակվում է արգելված գրականության հետևյալ ցանկը. «Այս են անուանք ԺԶ (16) սուտ գրոցն, որ եկեալ [են] ի հերձուածող ասորոցն, և ոչ ի յուղղափառ ասորոցն, իմանալք, որ է այս. Ադամայ կտակն, Ծիռն աւրհնութեան, Փիփիեանն, Գորտոսակն, Կիրակոսակն, Ղոսիմուն, Պետրոսի տեսիլն, Դիաթեկն, Աստուածածնին պատմութիւնն, Սեբիոսն, Փիւրհոնացիքն, Մանկութիւն Տեառն, Լուսաւորչին տեսիլքն, զանթագչելի մատեանսն, Գրիգորի և Բարսեղի հարցմունքն, զՄանեայ մեկնութիւնն աւետարանի: Եւ որ հաւատայ նոցայ, նզովի»[1]:

Միջին դարերում ամենից շատ փոփոխում, խմբագրում, տեքստի վրա ավելացնում կամ տեքստից պակասեցնում էին, հիմնականում, պատմագիտական և մեկնողական գրականությունը: Կրոնական-կանոնական համարվող աշխատությունների փոփոխությունը խստիվ արգելվել է օրենքով: Վերջիններիս մեջ սխալներ կատարելը համարվել է աններելի հանցանք, ուստի և գրիչներն աշխատել են ավելի զգույշ ընդօրինակել և ընդօրինակությունը վերջացնելուց հետո անպայման «զորդել»:

[1] ՀՊՄ ձեռ. № 1869, թ. 391 բ:



1243 թվականի Սսի ազգային-եկեղեցական ժողովն այդ կապակցությամբ հատուկ որոշում է ընդունել՝ կրոնական գրականության ընդօրինակությունը հանձնարարել միայն «արուեստաւոր», «ուղղափառ» և «գիտուն» մարդկանց, որոնց վստահելի լինելը պետք է երաշխավորվեր «հեղինակավոր» անձանց կողմից[1]:

Աղավաղումների և աղճատումների շարքում բավականին մեծ թիվ են կազմում · տեքստերի կրճատումները:

Տեքստերի կրճատումների փաստեր մենք շատ ունենք: Միջին դարերում Կորյունի «Վարք Մաշտոցի» աշխատությունը կրճատել և ստեղծել են Կորյունի համառոտ տեքստը, որը բանասիրության մեջ հայտնի է «Սուտ Կորյուն» անունով: Շիրակացու «Աշխարհացույց»-ի ընդհանուր տեքստը կրճատել և կազմել են նրա համառոտը, որը հայտնի է «Փոքր» կամ «Աղվեսագրքի» տեքստ անունով: Շիրակացու «Տիեզերագիտութիւն»-ը համառոտել և կազմել են պրոֆ. Ք. Պատկանյանի հրատարակած տեքստը, որը մի քանի անգամ փոքր է, քան վերջերս հայտնի դարձած և հրատարակված տեքստը, և այլն:

Ուշագրավ է Շիրակացու «Տիեզերագիտութեան» մեջ կրճատումներից մեկը. Շիրակացին կանգ է առնում քաղդեական բախտագուշակների այն կարծիքի վրա, որ իբր թե երեխաների որ աստղի տակ ծնվելու հիման վրա նախապես կարելի է գուշակել, թե երեխան հարուստ պիտի լինի, թե աղքատ, չար պիտի լինի, թե բարի և այլն և սպանիչ քննադատության ենթարկում այն: Այս հարցի քննության կապակցությամբ Շիրակացին շատ սրամտորեն տրամաբանում է, որ եթե փոքրիկ անմեղ երեխայի մեջ աստված չարությունն սկզբից է դնում, ինչո՞ւ են դաստիարակում երեխային, քանի որ դաստիարակությունն անկարող է փոխել երեխայի «աստվածատուր հատկությունը»: Եթե երեխայի չարությունը բնածին է, ինչո՞ւ են դատարանները պատժում չարություն անողներին, քանի որ չարություն անողը մեղք չունի, այդ նրա հատկությունն է: Եվ, վերջապես, եթե անմեղ երեխայի մեջ աստ-

[1] Գ. Ե. Հովսեփյան, Նյութեր և ուսումնասիրություններ հայ արվեստի և մշակույթի պատմության, պրակ Բ, Նյու-Յորք, 1943, էջ 12:

ված «ի սկզբանէ» չարութիւն է դնում, կնշանակի չար է ինքն աստվածը:

Շիրակացու այս հատվածը, որ մի քանի թերթ ծավալ ունի համարել են անպատշաճ և կրճատել համառոտ տեքստում:

Բավականին շատ են ձեռագրական տեքստերի այն աղավաղումները, որոնք կատարվել են գրիչների կամ խմբագրողների կողմից՝ նախկին տեքստերը համառոտելու նպատակով: Այդ, մեծ մասամբ, կատարվել է գրանյութը խնայելու նպատակով: Խմբագրողը, ըստ իր հայեցողության, կրճատում է ընդարձակ տեքստից այն ամենը, ինչ ինքն ավելորդ է համարում: Իսկ երբեմն կրճատում է այնպիսի հատվածներ, որոնք չեն համապատասխանում իր ժամանակի մտածողությանը: Բոլոր դեպքերում, նախկին տեքստը ենթարկվում է աղճատման:

Մենք ունենք փաստեր, երբ ընչազուրկ գրիչները, ցանկություն ունենալով որևէ ձեռագիր արտագրել, չեն ունենում անհրաժեշտ քանակությամբ գրանյութ և հարկադրված են լինում նախագաղափար ձեռագրի տեքստը կրճատել կամ խիտ գրել: XII—XIII դարերից մեզ հասած մի ձեռագրի գրիչ, Ավետիս անունով, ընթերցողներից խնդրում է անմեղադիր լինել՝ խիտ, խառնակ և կրճատ գրելու համար, որովհետև «փափագ ունէի և դրամ ոչ. և ես աղերսելով յեղբարցն գծուխտն և գծանաքն, զգրիչն և զայլն, որ այդչափ եղև»[1]:

Ձեռագրական աղճատումների շարքում առանձնապես շատ են ընդմիջարկությունները: Տվյալ դեպքում մենք նկատի ունենք տարեգրությունների վրա հետագա գրիչների կատարած հավելումները, ինչպես և գիտական տեքստերի դժվարահասկանալի հատվածների այն մեկնությունները, որոնք տրվում են ձեռագրի լուսանցքներում և հետագա ընդօրինակությունների ժամանակ արտագրվում են գրիչների կողմից բնագրերի մեջ ու նրանց օրգանական մասը դառնում:

Վանքերում պահվել են հատուկ ձեռագրեր, այսպես կոչված «քյոթուկ»-ներ, որոնք պահվել են այն նպատակով, որ այնտեղ գրանցվեն տվյալ վանքի հետ կապված բոլոր կարևոր իրադարձությունները, կալվածների և կարևոր նվիրատվությունների մասին եղած վավերագրերի պատճենները և այլն: Նման «քյոթուկ»-ներից մի քանիսը հասել են մեզ: Այդպիսի ձեռագրերից են Հաղպատի «քյոթուկ»-ը, Հովհաննավանքի «քյոթուկ»-ը և այլն:

[1] Հ. Բ. Սարգիսյան, Ցուցակ ձեռագրաց, հատ. Բ, էջ 756:



Ժամանակագրություններից և տարեգրություններից անչափ մեծ փոփոխության է ենթարկվել Սամվել Անեցու «Ժամանակագրութիւնը» («Հաւաքմունք ի գրոց պատմագրաց» աշխատությունը): Երբ մենք համեմատում ենք Սամվել Անեցու 1176 թվականի ընդօրինակությունը տվյալ աշխատության ուշ դարերի ընդօրինակությունների հետ, պարզվում է, որ հետագա դարերում գրիչների ավելացրածները մի քանի անգամ ավելի շատ են, քան Անեցու ժամանակակից բնագիրը: Այդ ավելացումներն, իհարկե, անարժեք չեն, հակառակը, նրանք ավելացված են ժամանակակից մարդկանց կողմից և պատմական քիչ արժեք չունեն, քան բնագրերը, բայց անվիճելի է, որ նրանք, ավելացվելով նախնական տեքստի վրա, աղճատել են նախկին բնագիրը: Այդ առանձնապես զգալի է այն աշխատությունների մեջ, որոնց հետ ընդմիջարկությունները այնպես են ձուլվել, որ դժվար է ճանաչել նրանց:

Բոլոր դեպքերում պետք է նկատի ունենալ, որ հին հայ մատենագրերը մեզ հասել են ո՛չ թե հեղինակների բնագրերով (ավտոգրաֆներով), այլ պատճեններով կամ, ինչպես ընդունված է ասել, ընդօրինակություններով: Ներկայիս տպագրության դերը հին և միջին դարերում իրենց վրա են վերցրած եղել մեր գրիչները, որոնք ընդօրինակել, բնագրից ձեռքով պատճենահանել են: Հայ մատենագիրների աշխատությունները մեզ են հասել այդ ընդօրինակություններով: Գրածը մեկը հանդիպել է հետաքրքիր մի աշխատության, անմիջապես ընդօրինակել է կամ ընդօրինակել տվել այն: Այդ ընդօրինակությունները հետագայում պատճենահանվել են երրորդ ձեռքի կողմից, նրանից՝ չորրորդ, հինգերորդ և այսպես տարածվել: Բերենք գրչական սխալների մի քանի օրինակ:

Շիրակացու «Աշխարհացոյց»-ի մեջ հիշվում է այն մասին, որ Գերմանիայի արևելյան սահմանը տարածվում է «մինչև ցՍարամացւոց լերինսն և ցԴանուբ գետ»: Ուշ շրջանում «Աշխարհացոյց»-ի ընդօրինակողներից մեկը, ցանկանալով իր ժամանակակիցներին օգնել հասկանալու, թե որն է Դանուբ գետը, տեքստում Դանուբ բառից հետո ավելացրել է, «որ է Յօզու ռուսաց»: Այդ ավելացումը, անշուշտ, կատարվել է XIII—XIV դարերում, երբ ռուսաց Հաւգա (Յաւգա) գետը հանրածանոթ էր դարձել արդեն:

Նույն «Աշխարհացոյց»-ի մեջ Սարմատիայում հիշվում է Խերսոնի թերակղզին: Ընդօրինակող գրիչներից մեկը Խերսոն անունը մեկնել է իր ժամանակի գործածական անունով: «Խերսոն, որ է Ղրիմ»: Ղրիմ անունը «Աշխարհացոյց»-ում պարզ է, որ կարող էր

հիշվել միայն այն ժամանակ, երբ այն նվաճվել էր արդեն թաթարների կողմից։

Այս երկու անուններն էլ բանասիրական սուր վեճերի առարկա են դարձել։ Սեն-Մարտենը, որ ձեռքի տակ ունեցել է «Աշխարհացույց»-ի նոր և սխալաշատ ընդօրինակությունը, հենվելով վերև հիշված ընդմիջարկությունների վրա, փորձել է «Աշխարհացույց»-ի գրության ժամանակը բերել մինչև X—XI դարերը։ Սակայն «Աշխարհացույց»-ների հնագույն ընդօրինակությունների մեր կատարած ուսումնասիրություններից պարզվում է, որ այդ ընդօրինակություններից ո՛չ մեկը չունեն Սեն-Մարտենին կռվան ծառայած աշխարհագրական անուններից որևէ մեկը[1]։

Ձեռագրական աղճատումներից, սակայն, ամենից շատը՝ գրչական սխալներն են։ Կարելի է ասել, որ չկա նույն տեքստի երկու ընդօրինակություն, որ տարբերություններ չունենա։ Գրչական տարբերակների մասին պարզ պատկերացում կարելի է կազմել գիտական կամ քննական կոչվող տեքստերից, ուր համեմատության մեջ են դրված լինում նույն աշխատության տարբեր ընդօրինակությունների տարբերակները։ Հաճախ այդ տարբերակներն այնքան շատ են լինում, որ ծավալով գերազանցում են բնագրին։

Ինչի՞ հետևանք են այդ տարբերակները։

Գրչական սխալների մի մասը հին տեքստերի սխալ վերծանության հետևանքով է։ Մեսրոպյան երկաթագրերը, ինչպես գիտենք, բառանջատում չունեն և վերծանողի պարտականությունն է վերծանել՝ անջատելով. իրարից բառերը։ Այդ գործը դժվարանում է մանավանդ թղթի կամ մագաղաթի խունացած լինելու հետևանքով։ Ընդօրինակող գրիչը, որքան էլ տիրապետելիս լինի գրչության արվեստին և գիտենա գրական լեզվի առանձնահատկությունները, այնուամենայնիվ, նրա համար անխուսափելի են սխալները։ Բավական է, որ գրիչը բաց թողնի բառանջատման կամ կետադրման մի սխալ, այդ կարող է աղճատել ամբողջ նախադասությունը։

Գրչական կարգի սխալների մի մասը տգետ գրիչների մեղքով է առաջանում։ Այդ նկատել են և իրենց հիշատակարաններում նշել գրագետ ընդօրինակողները։ Այսպես, Ստեփանոս գրիչը Հովհաննեսի ավետարանի մեկնության հիշատակարանում, որ գրված է

[1] Ա. Աբրահամյան, Խորենացուն վերագրվող «Աշխարհացույց»-ի հեղինակի հարցի շուրջ, Երևան, 1940, էջ 49։

[2] ՀՊՄ ձեռ. № 6273 (Փիրղալեմյանի հիշատակարանների ժողովածու), էջ 20։



1117 թվականին, գանգատվում է, որ «...յախմար և տգէտ խուարամած գրագրելոյ այլայլած և թիւրած էր բանքն»[1]։

Մի այլ գրիչ, անդրադառնալով տեքստերում տեղ գտած սխալներին, մեղադրում է տգետ ընդօրինակողներին այն բանի համար, որ նրանք «ապականում են» բնագիրը և իրենք, չքմեղանալով, «դիցեն պատճառս ի վերայ թարգմանողին»[2]։

Տգետ գրչի. մեղքով առաջացած այդ աղավաղումները նկատի ունենալով է, որ գրիչները իրենց պատվիրատուին կամ ուշիմ ընթերցողին հավաստիացնում են, որ իրենք ընդօրինակել են ձեռագիրը «ստոյգ, ընտիր և լաւ օրինակէ»։

Սակայն լինում են և գրագետ գրիչների համար օբյեկտիվ այնպիսի պատճառներ, որոնք տեղի են տալիս սխալների։ Այսպես, օրինակ, Ներսես գրիչը 1257 թվականին իր ընդօրինակած ձեռագրի հիշատակարանում ընթերցողի ներողամտությունն է խնդրում տառերի խոշոր գրելու համար և ավելացնում է, որ բնագրի «գիրն ջնջած էր»[3], այսինքն՝ մագաղաթի վրա եղած տեքստը սրբվել էր։ Կամ Որդանան անունով մի այլ գրիչ իր հիշատակարանում գանգատվում է, որ բնագիրը «եղծած է, փտեալ մագաղաթ է և ոչ կարեմ վերծանել»[4]։

Բերենք նկատված գրչական սխալներից մի քանի նմուշներ[5].

| Ընդօրինակված է | Պետք է լինի |
| --- | --- |
| («Աշխարհացույց»-ից) «Սարդոնիա... ունի գետս հինգ լերինս դժուարանունս»։ | «Սարդոնիա... ունի գետս Ե և լերունս դժուարունս»։ |
| («Աշխարհացույց»-ից) «Ասորիք... ունի...վայրս ընդարձակս և բաքիս»։ | «Ասորիք... ունի... վայրս ընդարձակս և բերրիս»։ |
| («Աշխարհացույց»-ից) «Երուանդ... որքան շատ տայր շատ ևս առելի լինէր»։ | «Երուանդ... որքան շատ տայր շատ ևս աւելի լինէր»։ |
| (Խորենացուց) Մաշտոցը Գողթնի աղանդավորներից «զսակաւսն անդարձս յիշխանութիւն Հոնաց հալածականս առնէ»։ | Մաշտոցը Գողթնի աղանդավորներից «զսակաւսն անդարձս յիշխանութիւն հնոցն հալածականս առնէ»։ |

[1] ՀՊՄ ձեռ. № 6273 (Փիրղալեմյանի հիշատակարանների ժողովածու), էջ 20։

[2] ՀՊՄ ձեռ. № 1465, թ. 12բ։

[3] Հ. Բ. Սարգիսյան, Ցուցակ ձեռագրաց, հատ. Ա, էջ 150։

[4] Նույն տեղը, էջ 162։

[5] Առաջարկվող ուղղումները վերցրել ենք ինչպես մեր, այնպես և այլ բանասերների ուսումնասիրություններից։

| | |
|---|---|
| (Խորենացուց) | |
| Պարսիկք փախստական գնացեալ ժողովեցան ի մի այր»: | Պարսիկք փախստական գնացեալ ժողովեցան ի մի վայր»: |
| (Հովհան Մամիկոնյանից) | |
| «Հասանէր յառաջագոյն ի դաստակերտն իւր յԸռոտոստակն յԱյրարատեան գաւառին ի Վաղարշապատ քաղաքն»: | «Հասանէր յառաջագոյն ի դաստակերտն իւր, առ ոստանն յԱյրարատեան գաւառին ի Վաղարշապատ քաղաքն»: |
| (Կորյունից) | |
| Եւ փախստականսն... տուեալ նոցա տանձս և երիվարս արձակեցին ի Պարսիկս»: | «Եւ փախստականսն... տուեալ նոցա զանձս և երիվարս արձակեցին ի Պարսիկս»: |

Ցույց տալու համար, թե գրչական նման սխալները աղբյուրագիտական ինչ մեծ նշանակություն կարող են ունենալ, ուզում ենք կանգ առնել երկու սխալի վրա, որոնք սերտորեն կապված են հայագիտական խոշոր վեճերի հետ:

Շիրակացու «Աշխարհացույց»-ի նոր ընդօրինակությունների մեջ գրիչները սխալմամբ հեղինակ են հիշում Խորենացուն և նրա անունը գրում վերնագրերում: Սակայն «Աշխարհացույց»-ի ձեռագրերի համեմատական ուսումնասիրությունից մենք գիտենք, որ XVII դարից առաջ գրված ընդօրինակությունները սովորաբար վերնագրված են լինում «Յաղագս աշխարհագրութեան ստոյգ»: Նոր շրջանում, երբ ավելացնում են Խորենացու անունը, «Աշխարհացույց»-ի վերնագիրը դառնում է «Յաղագս աշխարհագրութեան ստոյգ Մովսիսի Խորենացւոյ»: Ընդօրինակող գրիչներից մեկի, ամենայն հավանականությամբ ծերունու մեղքով, «ստույգ» բառի վերջից մոռացվում է «գ» տառը, «ստույգ» գրելու փոխարեն գրում են «ստույ», որի պատճառով փոխվում է ամբողջ վերնագրի իմաստը և ստույգ Մովսես Խորենացին դառնում է սուտ Խորենացի: Սակայն այդ բավական չէ. եվրոպացի հայագետների մեջ գտնվում են մարդիկ, որոնք այդ բառի հիման վրա մի ամբողջ տեսություն են հորինում, որ իբր թե հայ մատենագրության մեջ եղել է երկու Խորենացի՝ մեկը ստույգ Խորենացին է, V դարի անձնավորություն, իսկ մյուսը՝ սուտ Խորենացին, X դարի հեղինակ:

Հնարավոր նման խաթարումներից ազատվելու համար, կանոնական տեքստերի ընդօրինակությունը վերջացնելուց հետո, գրիչները սովորություն են ունեցել իրենց արտագրածը համեմատել



բնագրի հետ: Համեմատելու այդ աշխատանքը հայ մատենագրության մեջ կոչվել է «ղորդել»:

Սամվել գրիչն իր 1413 թվականին ընդօրինակած Սարգիս Շնորհալու «Մեկնութիւն Կաթողիկէից թղթոյ» աշխատության հիշատակարանում խնդրում է հիշել Մատթեոս կուսակրոն քահանային այն բանի համար, որ «զգիրքս ղորդեաց և օգնական եղև մեզ բազում անգամ»[1]:

Գրիգոր Տաթևացին իր չափածո հիշատակարանում ձեռագրի վրա աշխատող և վաստակ ունեցող մարդկանց շարքում հիշում է ձեռագրի «ուղղիչ»-ին՝

«Եւ համօրէն վաստակողաց,
Ի սրբագիրս աշխատողաց
Որք առաջին և վերջին
Ի կենաց գիրն արձանացին:

Եւ աշխոյժ մտօք ընթերցողաց
Եւ բարեսէր ունկնդրօղաց
Եւ զօրինակն շնորհօղաց
Եւ ուղղիչն սխալանաց»[2]: (ընդգծումը մերն է—
—Ա. Ա.):

Մեզ հայտնի են փաստեր, որ արտագրված ընդօրինակությունները բնագրի հետ համեմատվել են ոչ թե մեկ, այլ երկու-երեք անգամ: Այսպես, Կարապետ գրիչը իր հիշատակարանում ընդօրինակողից խնդրում է «ագիտաբար չթիւրել» բնագիրը, այլ վարվել իր նման և ուղղել «կրկին և երեքկին»[2]:

Հայկական բոլոր տեսակի գրերի մեջ կան տառեր, որոնք շատ նման են իրար և ձեռագրի խունացման կամ թանաքի գունաթափման ժամանակ շատ շուտ շփոթվում են: Շփոթվող նմանաձև տառերից կարելի է մատնացույց անել հետևյալները.

Երկաթագիր տեքստերում շփոթվում են.

| | | |
|---|---|---|
| Տ—Մ | Է—Ե | Է—Ը |
| Գ—Դ | Ջ—Չ | Ի—Ւ |
| Ց—Յ | Ծ—Ժ | Խ—ԻՈ |
| Ի—Ւ | Ո—Ռ | Ս—Մ |
| Ձ—Չ | Ք—Բ | Ո—Ս |

[1] ՀՊՄ ձեռ. № 1317, թ. 536բ:
[2] ՀՊՄ ձեռ. № 2072, թ. 231բ:
[3] Հ. Բ. Սարգիսյան, Ցուցակ ձեռագրաց, հատ. Ա, էջ 266:

*Բոլորգիր տեքստերում շփոթվում են.*

| | | | |
|---|---|---|---|
| ա—տ | է—ե | ժ—ծ | ռ—ս |
| բ—թ | զ—գ | կ—հ | վ—զ |
| գ—դ | ստ—աւ | խ—իս | ք—բ |
| տ—ու | շ—չ | ղ—դ | ո—ռ |
| սց—այ | չ—լ | յ—ց | բ—ր |

*Նոտրգիր տեքստերում շփոթվում են.*

| | | | |
|---|---|---|---|
| ս—ռ | ղ—դ | ժ—ց | ա—ու |
| ա—տ | մի—փ | խ—իւ | ղ—շ |
| թ—ր | շ—լ | է—ե | ռ—ս |
| ջ—չ | ժ—ծ | շ—ջ | ղ—զ |
| յ—ց | վ—զ | պ—ալ | ր—ռ |

Տեքստային աղճատումներ են կատարվում նաև ձեռագրերը կազմելու ժամանակ։ Գրիչները, ինչպես ասել ենք, ձեռագրերը գրում էին պրակներով և նրանց առաջին ու վերջին երեսների վրա համարներ էին դնում։ Գիրք կազմողը համարակալված այդ պրակները իրար մոտ է բերում և զետեղում մի կազմի մեջ։ Եղել են գրագետ կազմարարներ, որոնք բարեխղճությամբ կատարել են իրենց այդ պարտականությունը, բայց մեկ-մեկ պատահում են նաև անգրագետ կազմարարներ, որոնք խառնել են ձեռագրի պրակները կամ թերթերը և ետ ու առաջ կազմել։ Ձեռագրերում հաճախ են պատահում կազմարարի մեղքով առաջացած պրակների և թերթերի հետևառաջություններ։

Լինում են թերթերի շփոթություններ նաև գրագետ մարդկանց ձեռքով։ Այդ առանձնապես հաճախ պատահում է քայքայված ձեռագրերը կազմելու ժամանակ։ Կազմելուց առաջ թերթերը դասավորող անձնավորությունը սխալ է կատարում, նրա սխալը կազմարարն օրինականացնում է, իսկ մի այլ անձնավորություն, որն ընդօրինակում է խառնված այդ ձեռագրի տեքստը, ծածկում է տեքստի աղճատման բոլոր հետքերը։

Ձեռագրի ուսումնասիրության ընթացքում այս կարգի բոլոր աղավաղումները, փոփոխությունները պետք է հաշվի առնել և ամեն կերպ աշխատել տեքստերի խղճմիտ ուսումնասիրությամբ բացահայտել ձեռագրական խաթարումները և շտկել նրանք։

---



ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ԳՐՉԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԳՐԻՉՆԵՐԸ



արերի հնություն ունեցող գրչագիր մատյանները կոչվել են գրչագրեր։ Ընդհանրապես, գրչագրեր են կոչվում թղթի կամ մագաղաթի վրա ձեռքով գրված բոլոր տեսակի գրությունները՝ հակառակ մյուս նյութերի վրա գրված գրություններին և նոր ժամանակների տպագրությանը։ Գրչագիր բառացի համապատասխանում է եվրոպական „manuscrit“ բառին՝ «հին ձեռագիր» իմաստով։

Գրչագրությունը՝ հին և միջնադարյան Հայաստանում գրչության հիմնական տեսակն է հանդիսացել։ Նրանով են գրվել մեր բազմահազար ձեռագրերն ու վավերագրերը։

Գոյություն են ունեցել գրչությամբ զբաղվող և նրա մեջ մասնագիտացած հատուկ անձինք, որոնք գրել են ձեռագրերը։ Նրանք կոչվել են «գրիչներ» («գրիչ» ասելով մենք այժմ հասկանում ենք ծայրը կամ գրչակոթը ծայրի հետ միասին, իսկ հնում «գրիչ» ասելով հասկանում էին այն անձնավորությունը, որը գրում, ընդօրինակում էր ձեռագրերը)։ «Յիշեսջիք և զիս՝ զանարժան գրիչս», այսինքն՝ գրողիս, խնդրում են նրանք գալիք սերնդից «ողորմիս»-ը հայոց սովորական հիշատակարաններում։ Գրիչներին անվանել են նաև «գրագիր», «գծագիր», «գծող», «գրող», «մրող» և այլն։

Հայ մատենագրության ասպարեզում գրագետ մարդկանց ո՛չ մի խավ գուցե այնքան մեծ գրական վաստակ չունի, որքան հայ երախտավոր գրիչների խավը: Տպագրության բացակայության պայմաններում նրանք անչափ շնորհակալ գործ են կատարել նոր երկեր ստեղծելու, հին մատենագրական բնագրերն արտագրելու և նրանք կորստից փրկելու գործում: Հաստատապես կարելի է ասել, որ եթե չլինեին միջնադարյան գրիչները, ապա հին հայկական ողջ մատենագրությունը կորած կլիներ մեզ համար:

Գրիչներն իրենց մասնագիտական կրթությունը, մեծ մասամբ, ստացել են գրչության դպրոցներում և, որպես «գրոց աշակերտ»-ներ, աշխատել են կիրառել այն, ինչ սովորել են իրենց վաստակավոր ուսուցիչներից:

Պետք է ասել, որ գրիչների մոտ բացառիկ ակնածանք է գոյություն ունեցել իրենց ուսուցիչների նկատմամբ, նրանք հարգալիր երախտագիտությամբ են հիշում իրենց դաստիարակներին որպես «հոգևոր ծնող»-ների:

Հին և միջին դարերում գոյություն են ունեցել գրչության հատուկ դպրոցներ, որոնց շուրջն են համախմբված եղել գրիչները: Հայագիտության համար խիստ կարևոր հարց է հայ գրչության օջախների ուսումնասիրությունը: Մենք նկատի ունենք ո՛չ թե նրանց տեղագրությունը պարզելու, նրանց գործունեության ժամանակը որոշելու և բանասիրական նման այլ հարցեր պարզաբանելու նկատառումով, այլ գրչության դպրոցները որպես ստեղծագործական օջախներ՝ իրենց գրչական ավանդություններով, իրենց ներքին կյանքով և հայ մշակույթի ասպարեզում իրենց խաղացած դերով ու խնդիրներով:

Միջնադարյան Հայաստանում գրչության կարևոր դպրոցներից կարելի է թվել հետևյալները. Սյունյաց դպրոցը՝ Բագրատունյաց ժամանակաշրջանում, Տաթևի դպրոցը՝ սկսած XII դարից, Անիի դպրոցը՝ XII—XIII դարերում, Վանականի դպրոցը՝ XII դարում, Հաղպատ-Սանահինի դպրոցը՝ XII—XIII դարերում, Հռոմկլայի, Սկևռայի, Դրազարկի, Ակների և Կիլիկիայի մյուս դպրոցները՝ XII—XIV դարերում, Գլաձորի և Մեծոփի դպրոցները՝ XIV—XV դարերում, Երզնկայի և Կարինի դպրոցները՝ XIII—XVII դարերում, Վանի դպրոցը՝ XV—XVII դարերում, Կաֆայի դպրոցը՝ XIV—XVII դարերում, Բաղեշի, Ջուղայի, Էջմիածնի և Կոստանդնուպոլսի դպրոցները՝ XVII—XVIII դարերում և այլն:

Այդ դպրոցների շարքում եղել են այնպիսիները, որոնք այն-



պիսի բարձրության վրա են գտնվել, որ կոչվել են «Համալսարան», «երկրորդ Աթենք», «մայրաքաղաք իմաստության» և այլն, ինչպիսին է, օրինակ, Գլաձորի համալսարանը:

Միջնադարյան հայ գրիչների բնորոշ հատկություններից մեկն է նրանց ծայր աստիճանի աշխատասիրությունը և համեստությունը: Նրանց համեստությունը երբեմն հասնում է ծայրահեղության. պատահում են դեպքեր, երբ, հազարավոր էջերից բաղկացած ձեռագրերի ընդօրինակությունը վերջացնելուց հետո, գրիչը խուսափում է հաղորդելու իր անունը: Նրանք, ի դեպ, իրենց անունները հիշում են նվաստացուցիչ զանազան մակդիրներով, իրենց անվանելով անհմուտ, փանաք, ապիկար, եղկելի, թերավարժ, անարվեստ, ազազուն, ծույլ, փինաս, մատենադեգև, չքին, սխալագիր, սնտանուն, տխմար, փծուն և այլն: Ծանոթանում ես ձեռագրի հետ. հարյուրավոր, երբեմն էլ հազարավոր թերթից բաղկացած ձեռագիր է գրել, նրա յուրաքանչյուր տառը ոչ թե գրել, այլ գծագրել, նկարել է, չունի գրեթե ոչ մի սխալ, ոչ մի ջնջում, և այնպիսի՜ բազմատքուն և խնամոտ աշխատանքից հետո իրեն անվանում է ծույլ, անարվեստ, սխալագիր...

Ձեռագրերի հետ գործ ունեցող մասնագետը չի կարող պատկառանքով չվերաբերվել դեպի գրիչները, որոնք մեծագույն խանդաղատանքով, ճրագի աղոտ, դժգույն լույսի տակ, ամիսներ, երբեմն տարիներ են աշխատել մի ձեռագրի վրա, համբերությամբ և խնամքով գրել և ավարտել իրենց ձեռագիրը: Նրանց հատուկ այդ ձգտումը հետևյալ խոսքերով է բանաձևել հայ բազմերախտ գրիչներից մեկը՝ Մխիթար Անեցին.

« [Հ]արաթ ունիմ ի յիմ սրտիս,
Միշտ տագնապիմ վասն այս բանիս,
Որ մինչ հոգիս է ի մարմնիս,
Ես տեսանեմ զթամամ գըրիս»[1]:

«Թամամ գրիս»՝ այսինքն՝ գրի ավարտելը, ձեռագրի վերջացնելը:

Հիշատակարաններից մեկում մասնագետ գրիչը համեմատված է վարժ նավավարի հետ. ինչպես նավավարն աշխատում է վարպետորեն տանել և հասցնել նավն իր նշանակված հանգրվանը,

---

[1] ՀՊՄ ձեռ. № 4429, թ. 148 բ:

«Նոյնպէս և գրչին՝ ի յետին գիծն», այսինքն՝ մինչև ձեռագրի ավարտումը[1]:

Գրիչների մեծ մասի համար գրչության արվեստը մասնագիտություն է հանդիսացել: Գրչատունը և կաղամարը կողքից կախած, նրանք գնացել են այնտեղ, ուր աշխատանքի են կանչել իրենց: Այդ միջոցով են ապահովել նրանք իրենց օրվա ապրուստը: Եվ այդ մասնագիտությամբ նրանք աշխատել են իրենց ամբողջ կյանքի ընթացքում, մինչև խոր ծերություն:

Մասնագետ գրիչների նշանավոր դեմքերից է հանդիսացել Հովհաննես Մանկասարենցը, որի գրչական աշխատանքների հաշվետվությունը թողել է նրա աշակերտը՝ Զաքարիան:

Հովհաննես Մանկասարենցը, գրում է նա, «ՀԲ (72) տարի՝ ամառն և ձմեռն, գիշերն ու ցերեկ ի գրել եկաց: Որ գրեալ եղև ձեռամբ նորա Խ (40) [յ]այսմաւուրք և տարեգիրք, իսկ փոքր գիրքանէր և աղօթամատոյց, շարակնոց և սաղմոսարան, մաշտոց և գանձատետր՝ Ծ—Կ (50—60) և այլ աւելի, և աւետարանս՝ ԼԲ (32): Եւ զայս Յոհան գլուխս (այսինքն՝ ավետարանի, Հովհաննես ավետարանչի գլուխը—Ա. Ա.) [գրեաց] ի ծերութեան ժամանակիս, որ աչք չէր հայիլ և ձեռն կու դողայր՝ բազում չարչարանօք հազիւ կարաց աւարտել, և այլ չկարաց գրիչ բռնել մինչև ի վախճան, որ հանգեաւ ի Քրիստոս ՁԶ (86) ամաց»[2]: Փաստորեն, Հովհաննես Մանկասարենցը 72 տարվա ընթացքում ընդօրինակել է այնքան ձեռագրեր, որ նրանցից կարելի է մի ամբողջ գրադարան կազմել:

Մանկասարենցի ուղիով է ընթացել Սարգիս գրիչն Ընկուզագոմից, որի թողած մի հիշատակարանից երևում է, որ նա ևս շատերի նման ողջ կյանքում գրչության արվեստով է զբաղվել: Նույնիսկ զառամյալ հասակում, երբ նրա գրելու մատը չորացել է, նա համառությամբ շարունակել է իր գործը. «Գրեցաւ վերջք գրոյս, —գրում է նա,—յաւուր համբարձմանս շատ և անհուն դառնութեամբ և հեծութեամբ, գրչի մատս չորացած է, այնոր համար գիրդ ձագուձու(ռ) է, թողութիւն շնորհեցէք. ԽԲ (42) տարի է, որ կու աշխատեմ, բանս (այսինքն՝ ներկա ընդօրինակությունը—Ա. Ա.) իմ [սր]տովս չէ, մերն (այսինքն՝ մեր կարողությունը—Ա. Ա.) այդչափ [էր]»[3]:

[1] Սյուրմեյանի Երուսաղեմի ձեռ. ցուցակ, էջ 317:
[2] ՀՊՄ ձեռ. № 5256, թ. 291 բ—292 ա:
[3] ՀՊՄ ձեռ. № 8423, թ. 171 ա:



Շատ ավելի սրտառուչ է մի այլ ծերունի գրչի թողած հիշատակարանը՝ իր զառամած լինելու, աչքը վատ տեսնելու, ձեռքերը դողալու և գրչի մատը չորացած լինելու մասին. «Բայց գիտեմ,—գրում է նա,—որ գիրդ բազում բազում պակասութիւն կա և անթիւ, թէպէտ որ շատ կայ, մեր կարն այսչափ էր, ձեռս կու դողայր և աչքս բնաւ չէր տեսնուլ. գրչի մատն չորացած էր, միջին մատամբս ծրեցաք: Ո՜հ դարդ իմ, հիմայ, 42 տարի է, որ մեր բանս այս էր, ապա այսօր նման անդէպ չէր եղեալ, խիստ կու ամաչեմ ի ձեզնէ, թողութիւն արարէք»[1]:

Նույն ձեռագրում նրա աշակերտ Հունան գրչի թողած մի հիշատակագրությունից իմանում ենք, որ իր ուսուցիչը ձեռագրի 22-րդ պրակից հետո գրել է իր 42 տարիների գրչական աշխատանքի վերջակետը. նա մահացել է և թերի ձեռագիրը շարունակել է արտագրել և վերջացրել ինքը Հունանը, որն իր հիշատակագրության մեջ հայտնել է ուսուցչի ողբերգական մահվան և նրա մեծ վաստակների մասին:

Անկյուրիայի Կարմիր վանքի երբեմնի սեփականությունը հանդիսացող մի ձեռագրի գրիչը, ցանկանալով հաշվեհարդարի բերել իր 30 տարիների գրչական աշխատանքը, հետևյալն է գրել. «ԺԵ (15) ամաց էի, ուսայ գրագրութիւն, մինչև ԽԵ (45) հասայ, Լ(30) տարի կատարեալ գիր գրեցի բազում՝ Ի (20) շարական, Գ (3) յայսմաւուր և այլ գիրք, որ համար չի կայ...»[2]:

Գրիչները մեծ մասամբ հասակ առած, տարեց մարդիկ են եղել, բայց նրանց մեջ պատահում են նաև երիտասարդներ, նույնիսկ՝ պատանի գրիչներ. հայտնի է, որ Թոխաթում գրված գեղեցիկ գրչությամբ մի ձեռագրի ընդօրինակողը 12 տարեկան պատանի է եղել. «...դեռ ևս ԺԲ (12) ամաց զոլով... գրեալ եղև սա ի քաղաքն Թոխաթ»,—կարդում ենք պատանու հիշատակարանում:[3]

Պատահում են նաև որոշ գրչուհիներ: Պետական Մատենադարանի ձեռագրերից մեզ հայտնի են՝ Հեղինե, Շուշանիկ, Եղիսաբեթ, Մարիամ, Մարգարիտ, Համիկ, Բրաբիոն և այլ գրչուհիների անունները:

Գրիչներից շատերը գաղափարել են նյութական խեղճության

[1] ՀՊՄ ձեռ. № 4107, թ. 503 ա:
[2] Ցուցակ ձեռագրաց Կարմիր վանուց Անկյուրիո, Անթիլիաս, 1957, էջ 221:
[3] ՀՊՄ ձեռ. № 843, թ. 25 ա:

մեջ։ Բուդաքուցիությունն գտած այն արտահայտությունը, որ մեր գրիչները աշխատել են «մի նշխարքով», «մի կում ջրով», ստեղծվել է նրանց համար իրոք գոյություն ունեցող ծանր պայմանների հետևանքով։

Ահա ձեզ բարերդցի մի գրչի իր ձեռագրի լուսանցքում թողած հիշատակագրությունը. «Զվարդան աղքատս յիշեա ո՛ տեր իմ և անմեղադիր լեր... այսօր բորբոսած հաց եմ կերել և ջրհորի կրաջուր խմել և գրել յԵրուսաղեմում բազում վշտով»[1]։

Զմմառի սեփականությունը հանդիսացող 1414 թվականի ընդօրինակության ձեռագրի գրիչը՝ Հովսեփը, ընթերցողներից հետևյալն է խնդրում. «Ո՜, աղաչեմ անմեղադիր լերուք խոշորութեան, զի ցամաք կորեկ հաց կերայ և գրեցի, անմեղադիր [լերուք]»[2]։ Նույն գրիչն իր այդ խնդրանքը կրկնել է նույն ձեռագրի այլ էջում ևս. «Օրն պահք էր և հացն ցամաք կորեկ, աղաչեմ անմեղադիր լեր»[3]։

Անկյուրիայի Կարմիր վանքի ձեռագրերից մեկի գրիչը աղքատության մասին հետևյալ հիշատակագրությունն է թողել.

«Կերայ զդառնիճն, զի ոչ էր լեղի, քան զաղքատութիւն,
Շալակովս բարձի զաղն, զի ոչ էր ծանր, քան զաղքատութիւն»[4]։

«Դառնիճ»-ը Lactuca virosa բույսն է, որ սարսափելի դառն է։ Գրչի համոզմունքն այն է, որ աղքատությունը այդ դառնիճից էլ ավելի դառը, ավելի լեղի է։

Ղ. Ալիշանը «Սիսուան»-ի մեջ հրատարակել է մի հիշատակարան, ուր գրիչը վշտով արձանագրել է. «Զի նիւթս պակաս, թանաքս ուեր և իմ պիտոյքն ոչինչ, բայց միայն ցամաք հաց»։

Խեղճության մեջ է գտնվել իր ժամանակի խոշոր հեղինակություն հանդիսացող այնպիսի անձնավորություն, ինչպիսին Եսայի Նչեցին է, Գլաձորի դպրոցի հիմնադիրը։ Նա իր ընդօրինակած ձեռագրերից մեկում գանգատվում է, որ ձեռագիրը գրել է

---

[1] Անկյուրիայի ձեռ. ցուցակ, էջ 291։

[2] Մատենադարան Զմմառի ձեռագրաց, № 2, թ. 242 ա։

[3] Նույն տեղը, թ. 248 բ։

[4] Անկյուրիայի ձեռ. ցուցակ, էջ 426։



աղքատ սեղանով. «...Գրեցի զսա աղքատ և չքաւոր սեղանով զծառայակիցսն կերակրելով...»[1]։ «Ծառայակից» ասելով նա նկատի ունի իր աշակերտներին, որոնք օգնել են իրեն ձեռագրերի ընդօրինակման ժամանակ։

Պողոս գրիչն իր հիշատակարանում ընթերցողների ներողամտությունն է խնդրում գրի խոշորության և բաց թողած սխալների համար, որովհետև նա գրել է թշնամու կողմից իր ապրած բնակավայրը շրջապատման մեջ գտնված պահին և կարոտ «մի գդալ» կաթ ու մածնի։

Այսպես, Սիմեոն գրիչը (Եկեղյաց գավառից) 1439 թվականին գրած իր հիշատակարանում հետևյալ գանգատն ունի. «Գրոցս տէրն օր մի զմեզ մէկ հացիւ չյիշեց»[2]։

Մեզ է հասել մի շատ հետաքրքիր բողոք-հիշատակարան, որը գրել է Գրիգոր Ախլցխացին Հերմոնի վանքի միաբանության դեմ՝ իր նկատմամբ ցուցաբերած անբարյացակամ վերաբերմունքի համար։ «Ու ամէն[ն],—գանգատվում է նա իր վիճակից,—խուց ունէին, ու ես՝ ոչ, ամէն[ն] հաց ունէին, ու ես՝ ոչ, ու զվանիցս հացն վերայ իւրեանցն բաժանեցին ու ինձ ոչ տվին՝ թէ նայ ղարիպ է. նրայ բաժին մի տէք։ Ու ամէնն մոնթ, սպասաւոր ունէին, ու ես՝ ոչ, ու ամէնն սիրելի ունէին, որ հաց ու թաց կու բերէին, ու ինձ՝ ոչ, ու ամէնն կու երթէին ի վարդապետի խուցն, ուտէին ու խմէին, ու ես՝ ոչ, ու վարդապետն զամէն մարդու քաղցր գիտենէր ու զիմն՝ ոչ, ու զամէն մարդ միաբանքն մին մին տանէր ի խուցն ու կերակրէր, ու զիս՝ ոչ, ու զամէն մարդու գոհ ու գանգատ հարցանէր, ու զիմն՝ ոչ, ու զամէն մարդ մխիթարէր, ու զիս՝ ոչ, ու ես...Նստեալ էի կու գրէի սոված ու քաղցած ու գնի՝ ոչ։ Տնտեսին գնալն մին դիրն (այսինքն՝ մեկ անգամ—Ա. Ա.) երեք օր հաց չկերայ ու ես ուզեցի ոչ։ Մի դիրն երկու օր անօթի կացի ու ուզեցի՝ նա հաց տվ[ի]ն ոչ։ Ու մին օր մինչև իրիկուն անօթի կացի... ու մենակ մինչ յիրիկուն գիր կու գրէի...»[3]։

Միջնադարյան հայ գրիչների համեստ պայմանները շատ գեղեցիկ պատկերված են Գլաձորի համալսարանի շնորհալի գրիչներից մեկի՝ Մխիթարի, չափածո մի հիշատակարանում, որը տեղավորված է իմաստասիրական բովանդակություն ունեցող մի ստվար ձեռագրի վերջում.

---

[1] ՀՊՄ ձեռ. № 5566, թ. 356բ։

[2] Տաշյանի ձեռ. ցուցակ, էջ 49—50։

[3] Լենինգրադի Համո. գր. № 31, թ. 390ա-բ։

«Տե՛ս թէ քանի՜ աշխատեցայ
Ես Մխիթար գրիչ սորա.
Թուղթս անկոկ ու գրիչ չկայ,
Աւուրքըս ցուրտ ու պարզիկս,
Չարտախս բարձր ու կրակ չկայ.
Դոներս[1] չոր ու սպաս չկայ...
Ես յոյժ նեղած և ճար չկայ...»[2]։

Գրիչների մոտ բազմաթիվ գանգատներ կան նաև աշխատանքի ծանր պայմանների մասին։ Նրանք գանգատվում են ցըրտից, ճրագալույսի պակասությունից և այլն։

Ծերունի Մխիթար Անեցին՝ նշանավոր ժամանակագիրը, իր չափածո հիշատակարանում գանգատվում է հիվանդության, ձեռքերը դողալու, թանաքի թանձրության, ճանճերի շատության և այլ անպատեհությունների մասին.

Մեծ վտանգի կամ յայս նեղոյս,
Զի խիստ յաղթեց ցաւն մարմնոյս։
Եւ ի ձեռացս ի դողալուս,
Այլ չեմ կարող տալ շար գրոյս։
Եւս առաւել ի յայս շողոյս,
Ու ի թանաքի թանձրանալոյս,
Եւ մանաւանդ ի յայս քնոյս,
Զաւր հասարակ մրափելուս,
Եւ յանիծեալ այս ճանճերուս,
Ի սնավաստական կենդանուս,
Որ միշտ նստին ի վերա գրչուս,
Ծըծեն զթանաքն գրերուս։
Կելնէ իմ սիրտս այս ոչընչուս,
Զգիտեմ թէ ի՞նչ առնեմ նզովնուս...»[3]։

Առոմ գրիչը խնդրում է ներողամիտ լինել բաց թողած սխալների համար, որովհետև ձմեռ էր, ցուրտ և «ձեռիկն կու մըրսէր ի գրե[լն]...»[4]։

[1] «Դոներս»—հացի փշրանքները։
[2] Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 226։
[3] ՀՊՄ ձեռ. № 4429, թ. 247բ։
[4] Սարգիսյանի ձեռ. ցուցակ, Բ, էջ 846։



Ծերունի մի գրիչ խնդրում է անմեղադիր լինել գրի խոշորության համար, քանի որ աչքերը վատ էին տեսնում, նեղվում էր ծխից, բքից և կաթիլքից, ինքն էր վառում թոնիրը և այդ պայմաններում գրում ձեռագիրը. «Գրեալ եղև վերացեալ մարմնով, կուրացեալ աչքով ի ծխէն, ի բքէն, ի կաթիլէն. չոչ մարդ եմ, զթոնիրն իմ վառեր, երեք շահու զփայտն գնել, կարս մեր այս է»[1]։

Կարապետ գրիչը գանգատվում է իր տան երդիկից, որից անձրև է թափվում. «Ո՜հ, ո՜հ, զայս ոչինչ տունս, զինչ յերդէն կու անկանի, թոր ի գիրս և ապականի»[2]։

Հովհաննես գրիչը գանգատվում է լվից. «Այլ լուն խիստ զահմաթ կու տայր, զի բազում էր խուցս, զի այլ մարդ չկայր ի ներս և ամենին փոխան զիս կերան»[3]։

Գրիչները, մեծ մասամբ, գրել են խուցերում, ճրագի լույսի տակ, ուստի և հաճախ կարելի է լսել նրանց գանգատը ճրագլույսի վատության մասին։

Սեֆիլ Օհանը 1663 թվականին գրած իր մի ոտանավոր հիշատակարանում հետևյալ գանգատն ունի ճրագի մթության և թղթի վատորակության մասին.

«Ի հազար հարիւր երկու թվին,
Գանգատ ունիմ ճրագի մթին,
Այլ և յետոյ այս խամ թղթին,
Որ չի երթար յետ իմ սրտին...
Աչուերս է բաց, լուսոյ պակաս,
Գրիչը չերթար հետ շար տողին,
Որն է կաղ և որն է կոր,
Թանաք տղզի ի մէջ թղթին»[4]։

Մելիքսեթ գրիչը 1428 թվականին գրած իր հիշատակարանում հայտնում է. «Եթէ յոճ չնստի քեզ գիրս, նա պատճառն այն է եղբայր, որ ձիթի տակն էր և ճրագնլուս պակաս»[5]։

Գրիչների մոտ գանգատներ կան նաև շատախոս մարդկանցից, որոնք ընդօրինակման ժամանակ խոսել և խանգարել են իրենց։

[1] Լալայանի ձեռ. ցուցակ, էջ 749։
[2] «Էջմիածին» 1950, № 11—12, էջ 85։
[3] «Էջմիածին» 1951, № 10, էջ 83։
[4] ՀՊՄ ձեռ. № 5623, թ. 224բ։
[5] ՀՊՄ ձեռ. № 6050, թ. 82ա։

Այսպես, Ալեքսիանոս գրիչը 1409 թվականին գրած իր հիշատակարանում խնդրում է ներողամիտ լինել բաց թողած սխալների նկատմամբ, որովհետև «մահդասիս, որ ինձ ընկեր էր, խիստ կաչկաչան էր» (այսինքն՝ հոհռացող էր—Ա. Ա.)[1]։

## ԲՈՂՈՔՆԵՐ ՊԱՆԴԽՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գրիչների սովորական գանգատներից են պանդխտության մասին արված գանգատները—պանդխտություն երկու ճանապարհով՝ աշխատանք ճարելու և փախուստի։ Մեր պանդուխտ հայ գրիչների հիշատակարաններում հուզիչ խոսքեր են արձանագրված դարիբության, իրենց դժբախտ վիճակի մասին։

Ներսես գրիչը 1318 թվականին գրած իր հիշատակարանում պատմում է, թե ինչպես, դուրս գալով իր հայրենի գավառից, թափառնակի շրջել է տարաշխարհիկ՝ բաժանված հարազատներից և ազգականներից[2]։

Գրիգոր գրիչն իր չափածո հիշատակարանի վերջում գրում է.

«Բայց թէ կամիս հարցող լինել,
Չեմ յայս տեղեացս ես բնական,
Այլ և օտար ի սահմանացս
Եւ անբնակ մոլորական.
Չունեմ դադարք ի մի տեղի
Եւ ոչ մի ուր հանգըստարան»[3]։

Գրիգոր Ախլցխացին իրեն դժբախտ է համարում, որովհետև դարիբ է և խորհուրդ է տալիս դարիբություն չգնալ. «Աստուծոյ համար, ով որ դարիբութիւն չէ գնացել, թող այլ չերթայ...»[4]։

Մխիթար գրիչը դարիբի իր վիշտը հետևյալ ձևով է արտահայտել. «Ցնորեալ և վշտանգեալ [էի] սրտիւք, որ կամք ի դարիպութեան ի դրունս օտարաց, որ հացն լեղի [է] և ջուրն՝ արիւն»[5]։

1 Խաչիկյան, Բ, էջ 99։
2 ՀՊՄ ձեռ. № 356, թ. 251 բ։
3 ՀՊՄ ձեռ. № 2776, թ. 263 ա։
4 Խաչիկյան, Բ, էջ 658։
5 Լալայանի ձեռ. ցուցակ, էջ 674։



Ավելի հետաքրքիր է Մկրտիչ Լեհացու արտահայտած վիշտը դարիբության մասին. «Բայց անմեղադիր լերուք սղալանաց և խոշորութեան գրիս, քանզի զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ, որ կիսէն ի վեր խոշորացուցի զգիրն. այլ ոչ իմ կամաւ, քանզի տնանկութիւն, օտարութիւն և պանդխտութիւն նեղացոյց զիս, վասն այդ պատճառին համար շտապեցի զգիրն և խոշորացուցի, զի միտք իմ ցնորեալ էր ի նեղութենէ և ի խեղճութենէ և ի գթոյ ծնողացս, ընտանեաց և հայրենեաց։ Քանզի դուք լաւ գիտէք սիրելիք հայրք իմ և եղբայրք, որ պանդխտութիւն ծանր և դժար ցաւ է, որպէս ասէ թէ՝ լաւ է անկանել ի ձեռս բարբարոսաց, քան թէ յօտարութեան և պանդխտութեան կեալ։ Եւ իմաստուն Խիկար ասէ՝ Բարձի բեռ մի աղիսս և ոչ էր ծանր, քան զաղքատութիւն և զտնանկութիւն։ Եւ դարձեալ միւս ես՝ Բարձի արճիճ բեռ մի յուսս և ոչ տեսայ ծանր և դժար, քան զղարիպութիւն և զպանդխտութիւն»[1]։

## ՊԱՏՎԻՐԱՏՈՒՆ ԵՎ ԿԱԶՄԱՐԱՐԸ

Մի քանի խոսք ձեռագրերի պատվիրատուների մասին։

Ընչազուրկ և իր արհեստի եկամտով ապրող մասնագետ գրիչն իր գոյությունը, բնական է, չէր կարող պահպանել, եթե չունենար ձեռագրերը վաճառելու և իրացնելու միջոց։ Այստեղ ահա նրան օգնության է գալիս պատվիրատուն՝ այն անձնավորությունը, որը պատվիրում է գրել կամ ընդօրինակել այս կամ այն աշխատությունը։

Պատվիրատուները մեծ մասամբ հանդիսացել են ունևոր մարդիկ՝ ղեկավար քաղաքական գործիչներ, բարձրաստիճան եկեղեցականներ, ականավոր խոջաներ և այլն։ Դրանց մեջ կան թագավորներ, թագուհիներ, կաթողիկոսներ, իշխաններ, եպիսկոպոսներ և մեծահարուստ, մեծանուն անձինք։ Ձեռագրերը հնում բավականին թանկ են արժեցել, և ամեն մեկը չէ, որ ի վիճակի է եղել գնել կամ պատվիրել ցանկացած ձեռագիրը։ Բայց, այնուամենայնիվ, մեկ-մեկ պատահում են միջակ հարստություն ունեցող գյուղացիներ կամ արհեստավորներ, որոնք հանդես են գալիս որպես պատվիրատուներ։

1 Ա. Սյուրմեյան, Երուսաղեմի ցուցակ, 1 հատ. էջ 122։

Ձեռագիր գրելու պատվերը, սովորաբար, ձևակերպվում էր հետևյալ կերպ. պատվիրատուն հանձնարարում էր գրչին գրել իր ցանկացած ձեռագիրը և նկարազարդել այն՝ խոստանալով վճարել համապատասխան գումարը ըստ պայմանավորվածության։ Ձեռագրի ընդօրինակությունը վերջացնելուց հետո գրիչը, պատվիրատուի ցանկության համաձայն, կազմում է ձեռագրի հիշատակարանը, հիշելով այնտեղ ոչ միայն իրեն՝ պատվիրատուին, այլև նրա կնոջը, որդիներին և մոտիկ ու հեռու այլ բարեկամներին։ Հաճախ պատվիրատուի «արյունակից ազգականներ»-ի անուններն ամբողջ էջեր են զբաղեցնում։ Ձեռագրի հետագա տերերը ևս անհրաժեշտ են համարում գրել իրենց անունները որպես ստացողների։

Պատահում է ձեռագրի վաճառքի այլ ձև ևս. գրիչն ընդօրինակում է ձեռագիրը վաճառելու համար, առանց նախապես իմանալու, թե ո՛վ է լինելու գնորդը։ Այդ դեպքում գրիչը, ձեռագրի ընդօրինակությունը վերջացնելուց հետո, գրում է հիշատակարանի ընդհանուր, կանոնականացված մասը, իսկ պատվիրատուի անվան տեղը բաց թողնում։ Ձեռագիրը հանում է շուկա և այստեղ, վաճառելու դեպքում, անմիջապես ավելացնում է հիշատակարանի բաց թողած տեղում գրչի պատվիրատուի անունը և հանձնում նրան։ Մեզ են հասել մի շարք ձեռագրեր՝ պատվիրատուի անվան տեղը հիշատակարաններում բաց թողնված ձևով, վաճառքից հետո լրացնելու համար, սակայն այնպես է պատահել, որ վաճառքը չի կայացել և հիշատակարաններն այդպես էլ մնացել են թերավարտ։

Նախապես պատվիրած ձեռագրերը, մանավանդ, երբ պատվիրատուները մեծահարուստ մարդիկ են լինում, գրչից պահանջում են ավելի գեղեցիկ գրել և լավ նկարազարդել ձեռագրերը։ Այն դեպքում, երբ գրիչը մանրանկարելու և ոսկելու շնորհք չի ունենում, այդ աշխատանքը հանձնարարում են կատարելու մասնագետ մանրանկարչին։

Միջնադարյան Հայաստանում գոյություն է ունեցել լայն տարածված մի սովորություն՝ որն զգալի չափով խթանել է գրչության զարգացմանը. այն մարդը, որ երեխա չի ունեցել, իր բարոյական պարտքն է համարել հիշատակ թողնել մի ձեռագիր, որը համարվել է տվյալ ընտանիքի «որդեգիր»-ը, նրա ժառանգորդը։

Հետենս անունով մի պատվիրատու իր թողած հիշատակարանում հայտնում է, որ ինքը միայնակ էր՝ բաց դաշտի մեջ բուսած թփի նման, զավակ չուներ, ուստի գնել է տվյալ ձեռագիրը 1100 դրամով և իբրև հիշատակ ու «ժառանգորդ դարձրել»[1]։



Գոյություն է ունեցել մի այլ սովորություն ևս. ձեռագիր են գրել տվել մահացած մարդու հիշատակը հավերժացնելու նպատակով։

Ձեռագրի պատվիրատուն ընդհանրապես լինում է մի հոգի, բայց կան ձեռագրեր, որոնց պատվիրատուն են հանդիսանում մի խումբ մարդիկ։ Այդպիսիներից է Սուրխաթ քաղաքում գրված նշանավոր «Ճառընտիր»-ը, որը գրված է տասնյակ արհեստավորների և մի մանր առևտրականի պատվերով։ Ձեռագրի հիշատակարանում խնդրվում է հիշել կոշկակար Պարոնշահին, բազազ Կարապետին, ճոն Կիրակոսին, ջուլհակ Թորոսին, բազազ Սարգսին, ոսկերիչ Մելքիսեդեկին, ներկարար Գևորգին, քաթանագործ Մարգարին և շատ ուրիշների։[2]

## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐԸ ՈՐՊԵՍ ՊԱՏՄԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐ

Գրիչները, հայ մատենագրության ասպարեզում, ձեռագիր ընդօրինակություններից բացի, կատարել են շնորհակալ մի այլ գործ ևս. նրանք իրենց ընդօրինակած ձեռագրերի բացատներում կամ տեքստերի վերջերում թողել են գրառումներ և հաղորդել անչափ արժեքավոր պատմական տեղեկություններ ձեռագրի արտագրության հանգամանքների, գրության վայրի, պատվիրատուի, ժամանակակից քաղաքական իրադարձությունների և բազմաթիվ այլ հարցերի մասին։ Այդ տեղեկությունները մեզ համար անգնահատելի պատմական աղբյուրներ են, որովհետև գրված են իրադարձություններին ականատես, ականջալուր անձնավորությունների կողմից։ Նրանք երբեմն գրված են այնքան անմիջական և ճշմարտացի, որ նրանց միջոցով ծանոթանում ենք ո՛չ միայն գրած ժամանակաշրջանի իրադարձություններին, այլև հայելու պարզությամբ նրանց մեջ տեսնում ենք մեզնից հարյուրավոր, իսկ երբեմն նաև հազարից ավելի տարիներ առաջ ապրած մարդկանց ներքնաշխարհը՝ նրանց հույզերը, զգացմունքներն ու երազանքները։ Գրիչների այդ գրառումները կոչվում են հիշատակարաններ և հիշատակագրություններ (եթե գրիչն անմիջապես իր կողմից է

---

[1] Լալայանի ձեռ. ցուցակ, էջ 362։

[2] ՀՊՄ ձեռ. № 3797 (տարբեր էջերում)։

գրել, այդ կոչվում է հիշատակարան, իսկ եթե այդ գրված է տարիներ հետո այլ անձնավորության կողմից, նա կոչվում է հիշատակագրություն)։

Հայ գրիչներն անհոգ և անվիշտ գրչության ուղի չեն ունեցել, նրանք գրել, ստեղծագործել են կոշմարային ծանր պայմաններում։ Հիշատակարաններում հաճախ ենք կարդում նրանց գանգատները՝ ժամանակի դառնությունների, դժվարությունների մասին։

Գրիչների վրա առանձնապես ծանր են ազդել Հայաստանում հաճախակի կրկնվող ասպատակությունները, երկրում կատարված հարստահարությունները. Նրանք իրենց ուսերի վրա կրել են ժամանակի ողջ ծանրությունը և զգայուն գրչով արձանագրել ժամանակի տառապանքները։

Թերթելով հազարավոր ձեռագրերի հիշատակարաններ, պետք է ասենք, որ մեր բոլոր ձեռագրերից գրիչների լացի ձայնն է լսվում. ուրախալի՝ ոչ մի խոսք։ Նրանք իրենց ժամանակը համարում են դառը, նեղ, անհանգիստ, տխուր, տարտարոս, անբարի, դժնյա, վշտաշատ, պատուհաս, դառնաշունչ, դժնաբեր, խավարամած և այլն։

Երբեմն կատարվել են այնպիսի ծանր իրադարձություններ, որ ցնցել են գրչի հոգեկան ներաշխարհը, բայց այդ բոլորը չեն կասեցրել նրա եռանդն ու ջանքը, ձեռագրի ընդօրինակության և գրական ստեղծագործական աշխատանքներում։ Ահա ձեզ Կիրակոս Աղբակեցի գրիչը, որն այնքան ուժեղ է ազդվել ժամանակի դառնությունից և չարությունից, որ ձեռքը դողացել է գրելիս.

«Գրեցաւ ձեռամբ մեղապարտիս,
Եւ ի ձմերան ժամանակիս.
Մի՛ մեղադրէք ինձ՝ գրողիս,
Վասըն խոշոր և սխալ գրիս,
Զի դողութեամբ ախն էր սրտիս...
Զի ահն և դողըն պատէր զիս,
Ձեռս դողայր ի վեր[այ] թղթիս»[1]։

Այնուհետև գրիչը բնագրի 5 թերթը բաց է թողել, չի արտագրել, պատճառաբանելով, որ «ահ ու վախ էր», թուղթ չէր ճարվում և ամեն ժամ մահ կար։

Պատկերացնելու համար, թե ինչպիսի աննկարագրելի ծանր

1 ՀՊՄ ձեռ. № 4311, թ. 141 ա։



պայմաններում են գրել, ստեղծագործել մեր գրիչները, ցանկանում ենք մի քանի մեջբերումներ անել գրիչների իրենց իսկ հիշատակարաններից՝ ժամանակի քաղաքական ծանր պայմանների, սրածության, սովի, համաճարակի և բնական պատահարների մասին, որին ենթարկվել են նաև գրիչները։

Հովհաննես գրչի հիշատակարանից երևում է, որ նա այնպես է ահաբեկված եղել Դամուրղաշի՝ Երզնկայում 1338 թվականին կատարած վայրագություններից, որ ի վիճակի չի եղել շարունակել ձեռագրի ընդօրինակությունը և ընդհատել է այն[1]։

Բախտիկ անունով կին պատվիրատուի թողած մի չափածո հիշատակարանից երևում է, որ երկրում ստեղծված է եղել այնպիսի կոշմարային դրություն, որ հայրերն իրենց որդիներին էին ուրացել.

«Յութ հարիւրին կատարեցի,
Ի դառն և ի նեղ ժամանակի,
Որ հալածին բազում յերկրի.
Ոմանք մնացի[ն ի] մէջ թփի,
Ոմանք կերակուրք եղան գայլի,
Սովով անցան շատ մի ոգի,
Հարք ուրացան զիւրեանց որդի,
Ամ իմ կամք չէր, որ ես ծաղկի...»[2]։

Ըստ Մշո Առաքելոց վանքի Ճառընտիրի մեջ 1488 թվականին թողած մի հիշատակագրության, շահ Սեֆին երբ վերցնում է Շամախին, այնտեղ գտնված քրիստոնյա և մահմեդական բնակչությանն ամբողջությամբ սրի է քաշում։ Նա գազանաբար սպանում է նաև մանկահասակ երեխաներին աննկարագրելի տանջանքով. «...զմանր տղայքն ժողովեալ առ ինքն և դիզեալ ի վերայ միմեանց հինգ և վեց, և ինքն ի վերուստ նիզակաւ անցուցանէր, մինչև ի ներքին տղայն և վերացուցեալ նիզակաւն կանգնէր և տղայքն աղիողորմ թալկանալին ոտիւք և ձեռօք ի ծայրս նիզակացն, և նա ծափս հարկանէր ուրախութեամբ և ասէր. Այս է հըշմարիտ զաղայն» (այսինքն՝ պատիժը—Ա. Ա.)[3]։ Այսպիսի ցնցող իրադարձություն տեսնող գրչի ուղեղը, բնական է, չէր կարող

1 ՀՊՄ ձեռ. № 7643, թ. 314 ա։

2 Ս. Վ. Տեր-Ավետիսյան, Նկարագրություն Նոր Ջուղայի Ամենափրկիչ և այլ վանքերի... հայկական ձեռագրերի, էջ 171 (օգտվել ենք Խաչիկյանի «ԺԴ դարի հիշատակարաններ»-ից, էջ 388)։

3 Բ. Սարգիսյանի ձեռ. ցուցակ, Բ, էջ 1159—1160։

չգայթել և դուրս չհանել նրան բնականոն վիճակից։ Բայց այնուամենայնիվ, գրիչների երկաթյա կամքը հաղթանակել է, և նրանք շարունակել են իրենց ընդօրինակությունը։

Գրիգոր Խլաթեցին իր չափածո հիշատակարանում, մանրամասն նկարագրելով թշնամու՝ Հայաստանում կատարած վայրագությունները, ամփոփում է հետևյալ տողերով.

«Տապալեցին՚ւ յատակեցին,
Անխնայաբար խոցոտեցին,
Զարըս սըրոյ ճարակ տըւին,
Եւ զկանայսըն գերեցին.
Զոմանց գլուխսըն քերթէին,
Հանդերձ հերօքըն խըլէին,
Զայլոց ըզշունչսն արգելուին,
Եւ հեղձամահըս խեղդէին,
Որպէս ոչխարըս մորթէին,
Փոկս ի թիկանցըն հանէին,
Զկէսըս հըրով խորովէին,
Եւ ճենճերովքըն ցընծային»[1]։

Տեսնելու համար, թե ինչպիսի՛ դառնությամբ են ճաշակել մեր վաստաբախտ գրիչները ժամանակին քաղաքական խժդժությունները և ինչպիսի զգայուն գրչով արձանագրել այն իրենց հիշատակարաններում, պետք է կարդալ Անդրեաս Եվդոկեցի գրչի 1598 թվականին գրած հիշատակարանի հետևյալ տողերը. «Եթէ աղալ, կամ խոշորագիր, կամ անախորժ մտաց ձերոց գտցի ի սմա, անմեղադիր լերուք..., զի է մէջ դառնութեան գրեցի զսայ, այնպիսի դառն և դժուար տանջանօք... երբեմն տրտմէի, և երբեմն հառաչէի, էր որ երբեմն լայի, և էր որ ողբայի ըստ անժուժ բնութեանս իմոյ։ Արդ, զի՞նչ երկարեցից ազգի ազգի տառապանացս, որ ունէի... բազում վշտօք հասայ ի վերջ գրիս»[2]։

Մուրադ գրիչն իր 1684 թվականին գրած հիշատակարանում ընթերցողից խնդրում է անմեղադիր լինել տառերի խոշորության համար, որովհետև.

«Հեծելաշարժ եղև մեր աշխարհիս,
Սիրտս պաղ էր հետ տումարիս»[3]։

[1] ՀՊՄ ձեռ. № 5798, թ. 312 ա։
[2] ՀՊՄ ձեռ. № 1869, թ. 393 ա։
[3] ՀՊՄ ձեռ. № 446, թ. 1 ա։



Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 4472 ձեռագրի գրիչը, խոսելով հիշատակարանի իր տեղում գրված չլինելու մասին, պատճառը համարում է ստեղծված քաղաքական ծանր իրադրությունը և սրտում կուտակված վրդովմունքն արտահայտելու համար, ավելացնում է. «Երբ սիրտն մաշխուլ լինի (այսինքն՝ զբաղված լինի—Ա. Ա.), աչքնլուս պակաս կու հայի. մարդ զմարդոյ ցաւ չգիտէ, կէս գիշերին ժամ կու ձենէ»[1]։

Իսրայել գրիչը, թշնամու՝ Հայաստանում կատարած հարստահարությունները պատմելուց հետո եզրակացնում է. «...Գերեցին, թալանեցին, որ հայր զորդի կանչէր, իսկ մայր՝ զդուստրն. վա՜յ և եղո՛ւկ ազգիս Հայոց։ Ի թիվս Հայոց ՌԻԹ (1580). երանի՜ մեռելին, վա՜յ կենդանոյն»[2]։

Հաճախ թշնամու վախից գրիչներն ստիպված են լինում ձեռագիրը գրել գաղտնի։ Ահա ձեզ Մխիթար գրչի թողած մի հիշատակագրությունն այս մասին. «...ի գիշերի և ի տուընջեան թաքնաբար և երկիւղիւ սևագրեցի վասն տառապանաց, աղքատութեանց, որ կայ յերկար ի մարմինս»[3]։

Հայկական ձեռագրական ժողովածուներում բավականին թիվ են կազմում այն ձեռագրերը, որոնք գրվել են մի քանի տեղերում. սկսել է ձեռագիրը գրել, հանկարծ հարձակվել է թշնամին, փախել է ժողովուրդը, նրա հետ նաև գրիչը և շարունակել ընդօրինակությունը նոր վայրում։

Հովհաննես Որոտնեցու աշակերտներից Հակոբ գրիչը 1386 թվականին գրած իր հիշատակարանում պատմում է, թե ինչպես ինքը ձեռագիրը գրել սկսել է Որոտանում, ուր նա գտնվելիս է եղել Որոտնեցու 60 աշակերտների հետ միասին, թշնամին հարձակվել է Որոտանի վրա, և իրենք հարկադրված են եղել փախչել ու երեք տարի շարունակ թափառել Հայաստանի զանազան գավառներում, և նա իր ձեռագիրը գրել, ավարտել է թափառումների ճանապարհին. «Եւ ես ծանրաբեռն մարմնով,—գրում է նա,—զթուղթ և զօրինակ, զգրիչն և զթանաք ի յուս իմ բարձեալ ի հետ գնայի, կարդայի, և որչափ ժամանէի՝ զսուրբ մատեանս գրէի բազում նեղութեամբ և չարչարանօք, զի ուր սկսաւ, անդ ոչ էառ զկատարումն»[4]։

[1] ՀՊՄ ձեռ. № 4472, թ. 632ա—633բ։
[2] ՀՊՄ ձեռ. № 4173, թ. 95ա։
[3] Բ. Սարգիսյանի ձեռ. ցուցակ, Ա հատոր։
[4] ՀՊՄ ձեռ. № 5707, թ. հատոր։

Մատթեոս գրիչն իր 1469 թվականին գրած հիշատակարանում պատմում է, որ Հասան բեկի գազանություններից սարսափած, թերավարտ ձեռագիրը վերցնում է իր հետ և փախչում: «Եւ մեր առեալ զգիրքս,—գրում է նա,—փախէաք ի տեղէ տեղ, և յամենայն ժամ փախուստ և սոսանումն գայր և հասանէր ի վերայ մեր...»: (ՀՊՄ ձեռ. № 4515) Մատթեոս գրիչն իր ձեռագիրը վերջացնում է իր փախուստից տարի ու կես հետո Եղվարդում:

Գրիչներն իրենց թողած հիշատակարաններում վրդովմունքով են խոսում ժամանակի ծանր հարկապահանջության մասին, որի դառը պտուղները ճաշակել են և իրենք:

Սարկավագ գրիչը պատմում է, որ 1310 թվականին, Ղարապանտ խանի տիրապետության շրջանում, հայ ժողովրդի համար այնքան ծանր վիճակ է ստեղծվել, որ մարդիկ, հարկ վճարելու համար, ստիպված են եղել երեխաներին վաճառել. «Բայց զաղէտ և զողբ տարակուսանացս ո՞ պատմեսցէ, զի ի խիստ և յանհնարին հարկապահանջութենէ ծախեա[լ] լինէին ուստերք և դստերք աշխարհիս մեր, և բազում գեղք և վանորայք աւեր և անհանգիստ...»[1]:

1493 թվականի գրած մի ձեռագրի հիշատակագիր հայտնում է, որ սուլթանը մեկ տարում երեք տարվա հարկ վերցրեց և ավերեց երկիրը: Հիշատակարանի վերջում գրիչը անիծում է սուլթանին. «Աստուած զիւր ումըն կարճ անէ»[2]:

Գրիչների վրա ծանր ազդեցություն են թողել նաև բնական զանազան պատուհասներից եկած դժբախտությունները:

Միջին դարերում մեծագույն աղետներից էր համաճարակը, որին մեր գրիչները «մահտարաժամ» անունն են տալիս: Մարդիկ անզոր են գտնվել հաճախակի կրկնվող համաճարակների առջև, որն անարգել կատարել է իր առատ հունձը: Նա երբեմն ոչնչացրել է ամբողջ ընտանիքներ, ամայացրել է մարդաշատ գյուղեր և քաղաքներ՝ անմխիթար վշտի մեջ թողնելով կենդանի մնացած հարազատներին: Միջին դարերում մահտարաժամը սոսկալի վնասներ է հասցրել ժողովրդին:

Թե ի՛նչ ահռելի վնաս է պատճառել մահտարաժամը, կարելի է պատկերացնել 1549 թվականի գրած մի հիշատակարանի հետևյալ տողերից. «Ի թվականիս Հայոց ՋՂԸ (1549) ամի,—գրում է

[1] ՀՊՄ ձեռ. № 380, թ. 311բ:
[2] ՀՊՄ ձեռ. № 6003, թ. 226ա:



գրիչը,—որում եղև մահտարաժամ աշխարհիս Հայոց և շատ տուն աւիրեցաւ, և շատ ապրանք անտէր մնաց՝ գեհով (այսինքն՝ հոտով—Ա. Ա.) ոչխար մնաց, շատ գուլթան խափանաւ. քանի՜ հայր առանց որդի մնացին, քանի՜ մայր առանց դստեր և եղբօր մնաց... հենց որ կալոյ ժամանակին [հասինք], տղայ չկայր, որ զկամն քշէր»[1]:

Գրիգոր գրիչը 1431 թվականին Ամիդում տեղի ունեցող մահտարաժամի մասին խոսելիս հայտնում է, որ ոչ ոք կարող էր նկարագրել այն ողբը, կսկիծը և հառաչանքը, որ լսվում էր ժողովրդից, իրենց կորցրած հարազատների համար. «...աչք ամենեցուն [եղեն] յաղբերս արտասուաց,—գրում է նա,—յամենայն ուրեք ողբ հառաչանաց և ամենայն տուն կոծս տարակուսանաց, լալումն ողբոց և աղաղակ այրեաց, կըսկիծ ծերոց և մաղկատումն մանկամեռ մարց, յամենայն լեզուէ վա՜յ և յամենայն բերանոյ ապաշաւանք»[2]:

Մեզ է հասել Տիվրիկցի Ներսես անունով մի գրչի մահտարաժամի մասին գրած մի հիշատակարան, որից երևում է, որ նա ձեռագիրն ընդօրինակել է դիակների մեջ, մահվան սարսափի տակ. «Արդ, աղաչեմ չմեղադրել սխալանացս... քանզի տեսանէաք զբազում դիակունս մարդկան մեռեալս առաջի մեր և ցնդէր միտս իմ իբրև զվայրագնաց գազան և հազիւ առ իս ժողովէի յերկիւղէ մահուն, եթէ ոչ ժամանէի յաւարտումն տառիս, քանզի առ մեզ այլ եհաս ի ցաւոց տարաժամ մահուան, այլ ներողութեամբ աստուծոյ զերծաք»[3]:

Գրիչներն իրենց մոտիկ հարազատներին կորցրած օրերին անգամ, արցունքն աչքերին շարունակել են ընդօրինակել ձեռագրերը և հուզիչ հիշատակագրություններ թողել ձեռագրերի բացատներում: Ահա թե նրանցից վաստաբախտ մեկը ինչպես է արտահայտում իր վիշտը. «...միշտ շմորեալ էր այս (շփոթված էր—Ա. Ա.), արտասուքս ի դեղրունքն (այսինքն՝ ներկերի հետ—Ա. Ա.) կու խառնէր ի տեղոց կսկծու, որ աստուած փոխեցաւ երեք տղայ, որ նման էին ոսկւոյ և մարգարտի: Աչքս չեմ իստակել յարտասուաց. աւա՜ղ եղկելւոյս, որ զօրն ի բուն ձեռն ի ծնօտիս հայեմ յԵփրատէս, ա՞հ հանեմ հոգւոյս»,—գրում է իր երեք երեխաները կորցրած մի գրիչ:

[1] ՀՊՄ ձեռ. № 9222, պատառիկ ժ:
[2] ՀՊՄ ձեռ. № 6430, թ. 301ա:
[3] Գ. վ. Սրվանձտյան, Թորոս աղբար, II հատ., էջ 307:

Մահտարաժամից պակաս վնաս չի պատճառել երկրաշարժը, որի առանձին դեպքերի հիշատակությանը հանդիպում ենք հիշատակարաններում։ Ղուլօղլի Երզնկացին, երկրաշարժի ժամանակ թաղելով մորն ու տղային, իր խեղճությունը ողբում է հետևյալ քառյակում.

«Ծո՛ Ղուլօղլի Երզնկացի,
Քեզ ի եղեր խել մի զիան,
Դու ես եղեր խեղճ ու գերի,
Հողն ես դրել մայր ու տղան»[1]։

Բնական այս արհավիրքների մասին, կապված Երևանի հետ, հետաքրքիր չափածո հիշատակարան ունի Պետական Մատենադարանի № 2444 ձեռագրի հիշատակագիր գրիչը.

«Ի թիւ հազար հարիւր վաթսուն,
Երկու աւել ի հետ ի նոյն,
Եկաւ մարախ բազում անհուն
Ի քաղաքին Երևանոյն։

Ծաղկեալ եղև երես օդոյն,
Եհեղ երկնից իբրև զձիւն,
Թռաւ իջաւ մէջ արտերուն,
Սկսաւ ուտել իբրև զշուն։

Մահն եկաւ ի նոյն տարին,
Հաւասարեաց ամէն տեղոյն,
Խիստ կոտորեաց մանր ու մեծոյն
Փառս տացուք ի աստուծոյն։

Սովն եկաւ ի նոյն տարին,
Խանն շահի եղաւ գարին,
Սովն փարդեց դաշտ ոյ սարին,
Աստուած փրկէ եկող տարին։

Սովն եկաւ ի նոյն տարին,
Հաց ոյ դարման լախիր արին,
Խոտ չմնաց բնաւ ի սարին,
Էլ չտեսնենք էսպէս տարին»[2]։

[1] Գ. Վ. Սրվանձտյան, Թորոս աղբար, I հատ., էջ 374։
[2] ՀՊՄ ձեռ. № 2444, թ. 1 ա։



Գրիչները իրենց հիշատակարաններում կանգ են առնում մի այլ աղետի վրա՝ մորեխի, որը հաճախ է երևացել և մեծ վնասներ պատճառել գյուղատնտեսությանը։

Ձեռագրերում մորեխի մասին եղած հիշատակություններից ուշադրության արժանի է Սարգիս գրչի հիշատակարանը։ Նա գրում է. «Արդ՝ յայսմ տարւոջս (այսինքն՝ 1314 թ.) եկն մորեխ սաստիկ ի վերայ երկրի, քանզի ոչ ոք ի մերում ժամանակիս տեսես այնպէս և ոչ ի հնումն պատմեցին մեզ այսպէս խստագոյնս, քանզի զտասն աւուր ճանապարհն ի մի աւուրն անցանէր, և ի քառասուն և մէկ աւուրն այնպէս խստագոյն անցաւ, որ լեզու ոչ կարէ պատմել և ոչ կարէ ընդ գրաւ արկանել զանթիւ բազմութիւն մորեխին, քանզի իբր հեծեալքս բազում, որ երթայ զաւրն և իջևանին ի գիշերն ամենայն, այսպէս գայր մինչև յիրիկունն և ի վաղիւն, յորժամ շողանար արևն՝ յառնէր. և յորժամ յառնէր, այնպէս՞էր նմանութիւնն նորա, որպէս սաստիկ ձիւնոյ կամ զանձրևոյ, երթայր և բարձրանար, որ ոչ ոք կարէր տեսանել զբարձրութիւն նորա, և ի թանձրութենէ նորա փոխէր զգոյնն արեգականն. գոչէր իբրև զգետ, անցանէր իբրև զքամի. և էր աշխարհ ամենայն ի տարակուսանք, լային դառնապէս, ողբային, կոծէին, զմոխիրն ընդ գլխովն արկանէին, ծեծէին զերեսս իւրեանց և ոչ ուստեք եղև փրկութիւն»[1]։

## ԿՏԱԿ-ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ձեռագրերում երբեմն պատահում են գրիչների կտակ-հանձնարարություններ ձեռագրի պահպանման և օգտագործման կարգի մասին, որի՛ հետ ցանկալի է, որ ծանոթ լինեն ձեռագրերի հետ գործ ունեցող մարդիկ։

Գրիչների ցանկությունն է ամենից առաջ այն, որ իրենց ժառանգները, բարեկամները կամ այն հաստատությունը, որին նվիրաբերված է ձեռագիրը, առուծախի առարկա չդարձնեն և գրավ չդնեն այն։ Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 7446 ձեռագրի գրիչը հետևյալ չափածո հիշատակարանն է թողել.

[1] Խաչիկյան, Ա, էջ 102։

«Իշխանութիւն ոչ ոք չունի
Տալ գրաւական վասն արծաթի,
Կամ վաճառել ընդ քանքարի,
Զի է յազատ ամենայնի»[1]։

Գրիչների մյուս խնդրանքն է, որ ձեռագիրն օգտագործման չտրվի տգետ մարդկանց, որոնք կտրում են ձեռագրի էջերը, լուսանցքներում խզմզում են, պոկում են մանրանկարներից և կազմերի վրա «խաչ բեռնելով գծուխծան ծակեն»[2]։

Հովհաննես արքաեղբայրը 1286 թվականին գրած իր հիշատակարանում խստիվ արգելում է երեխաների ձեռքը ձեռագրեր տալը, քանի որ նրանք «մրոտում» են ձեռագրերը և փչացնում (Լ23, էջ 108)։

Գրիչների մյուս խնդրանքն այն է, որ հատուկ ուշադրություն դարձվի ձեռագրի պահպանության վրա՝ շորով բռնեն, կեղտոտ ձեռքով ձեռք չտան, խոնավ տեղ չդնեն, մոմ և ձեթ չկաթեցնեն վրան, հեռու պահեն ցեցերից և այլ միջատներից, թաց մատներով չթերթատեն, չաղտոտեն և այլն։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 2394 ձեռագրի գրիչը չափածո հիշատակարանում գրած տաղարանի օգտագործման և պահպանման մասին ընթերցողներին հետևյալ խրատն է տալիս.

«Ո՛վ սիրելի եղբայր որ էք,
Զայս քեզ խրատ տամ, որ լսես,
Յորժամ ըզտաղս եղանակես՝
Թուղթըն թքով չապականես,
Զկողն անողորմ յետ չի պարզես,
Հանց, որ կապին վնաս գործես,
Կամ անգէտին ձեռըն դընես,
Խզաց մարդկան կոխան շինես։
Զոր տաղ կամիս, որ դու ասես,
Ցանկին համարն յառաջքըն տես.
Տգիտութեամբ չի չարչարես,
Այլ համարով շուտ գտանես։
Ի սօղ պաթներն վայր չի ձգես,
Կամ երկու մարդ բռնես քաշես,
Կամ ի վերան գինի վաթես,
Կամ եղ և մոմ կաթեցընես,

1 ՀՊՄ ձեռ. № 7446, թ. 1ա։
2 Սյուրմեյան, Ցուցակ Եվրոպայի մասնավորներու, հատ. I, էջ 22։



Այլ լուծ սիրով նախախնամես,
Սրբեալ ձեռօք, լաթով բռնես,
Ի հրոյ, ի ջրոյ ի զատ պահես,
՚Ւ ի չորային դեղի դընես»[1]։

Գրիչները բարոյական պարտք են դրել գալիք սերնդի վրա, որ ձեռագրերն ավար տարվելու դեպքում, նրանց պարտականությունն է գնել և ետ վերադարձնել նրանք։

Ստեփանոս գրիչը 1653 թվականին իր գրած ձեռագրի հիշատակարանում ընթերցողներին խրատում է.

«Բան մի խրատ տամ լսեցէք.
Գիրքս ամանաթ ձեզ պահեցէք և կարդացէք,
Գերի երթայ, նա դարձուցէք[2],
Գէճ և ի կաթիլ տեղ մի դրէք,
Զմոմս ի վերայ մի թափուցէք,
Թքոտ մատով մի՛ շրջէք,
Եւ լրբութեամբ մի՛ պատառէք.
Թէ պատռուած խիք լինեցէք,
Բանիս աւարտ կայ, գիտակցէք,
Մեր կուսէն շատ չձանձրացնէք,
Երկու շօրով և շագուսով պակաս չանէք»[3]։

Պետք է ասել, որ գրիչների այս հանձնարարությունը պարտաճանաչությամբ է կատարվել սերունդների կողմից. բազմաթիվ ձեռագրեր են հասել մեզ, որոնք ժամանակին գտնվել են գերության մեջ և առանձին հոգատար սատարողների կողմից ետ են գնվել և վերադարձվել։ Մանչեստրի գրադարանի սեփականությունը հանդիսացող հայկական մի ձեռագրի հիշատակագրությունից երևում է, որ նա ժամանակին գտնվել է գերության մեջ, «Գնեցաք ի Վահկա գյուղացիք գրում են հավաքել և ետ են գնել. «Գնեցաք ի գերութենէ գեղով,— գրում են նրանք իրենց հիշատակագրության մեջ,—մեր հալալ մալովն առաք»[4]։

1 ՀՊՄ ձեռ. № 2394, թ. 4բ—5ա։
2 Ընդգծումը մերն է—Ա. Ա.։
3 Լալայանի ձեռ. ցուցակ, էջ 40։
4 Մենք օգտվել ենք Տիրայր արքեպիսկոպոսի «Catalogue of the armenian manucsripts in the sir john Ryolond's Library at Manchester» ձեռագիր աշխատությունից, որը պահվում է Մատենադարանի ձեռագրական բաժնում։

Ուշադրության արժանի է այն, որ միջին դարերում չէին ասում, թե ձեռագիրը ավար տարան կամ ձեռագիրը ավարից ետ վերադարձրին, այլ ձեռագիրը գերի տարան, ձեռագիրը գերությունից ազատեցին. ձեռագիրը մեր նախնիների կողմից դիտվել է որպես սրբություն և նրա նկատմամբ սերնդից սերունդ ցույց է տրվել հատուկ հարգանք ու ակնածանք։

Ձեռագրի գրիչները կողկողագին խնդրում են նաև ձեռագրի սեփականատերից, որ ձեռագրից ընդօրինակել ցանկանալու դեպքում դժվարություններ չհարուցվեն, քանի որ «փակված ձեռագիրը», նրանց կարծիքով, «կուռք է»։ Վարդան գրիչը Եղիշեի Վարդանանց պատերազմի ձեռագրի ընդօրինակության հիշատակարանում պատվիրել է. «Բայց եթէ խնդրեսցեն զսա վասն կարդալո կամ ընդօրինակելո, մի՛ խնայեսցեն, վասն զի զսա այսր աղագաւ եմ գրեալ, զի ամենեքեան օգտեսցին»[1]։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 4687 ձեռագրում գրված մի հիշատակագրությունից երևում է, որ խոջա Մուրադշենը վճարել է «գերի» տարված մի ձեռագրի փրկագինը, «և ազատեաց զգիրքս ի յանօրինաց», ուստի գրիչը խնդրում է հիշել ձեռագրի «ազատարար»-ին[2]։

Հայկական ՍՍՌ Պետական Մատենադարանի № 5034 ձեռագրի գրիչը հետևյալ խնդրանքն ունի ընթերցողներին։

«Ով սիրելի եղբայր բարի,
Ես եմ չնչին թշուառ գերի,
Գրքոյկս այլոց մի դարձրի,
Այլ օրինակ տուր կամ գրի»[3]։

Հայ գրչությամբ զբաղվող մասնագետը պարտավոր է մշտապես հիշել մեր գրիչների կտակ-հանձնարարությունները և մեծագույն խնամքով վարվել օգտագործվող ձեռագրերի հետ։

Պատասխանենք մի հարցի ևս. ի՞նչն է եղել գրիչների՝ նման ձեռնարկության խթանողը, ի՞նչ հեռանկարով են ձեռնարկել նրանք այդպիսի մի ծանր ու չարքաշ աշխատանք։

Այդ հարցի պատասխանը մեզ տալիս է Բասիլ գրիչը չափածո իր մի հիշատակարանում.

---

1 Խաչիկյան, Ա, էջ 70։
2 ՀՊՄ ձեռ. № 4687, թ. 1ա։
3 ՀՊՄ ձեռ. № 5034, թ. 229բ։



«Վերծանութեան հետևէի,
Նա գրչութեան սէրն ստիպի։
Քանքար չգոյր զի վարձէի՝
Մատամբս քանի՛ ես գրէի...»[1]։

Այսինքն՝ փող չուներ, որ ուրիշի գրել տար, և ինքս էր գրում։ Ձեռագրի գրելու միջոցին գրիչը տարակուսանքի մեջ է ընկնում՝ թե ի՛նչ օգուտ կա, վերջին հաշվով, այդ աշխատանքից, չէ՞ որ ինքը մահանալու է և ձեռագիրը ուրիշին է մնալու.

«Յայս միջոցի[ն] անձն իմ կռծի,
Եւ վարանի յամենայնի՝
Թէ զի՞նչ օգուտ ինձ յայս ջանի,
Որ ընթեռնուլ ինձ ոչ լինի...»[2]։

Բայց շարունակության մեջ հեղինակը հուսադրում է ինքն իրեն հետևյալ երկտողով.

«Մի յոյս միայն գերոյս թողի,
Թէ եկեղոց վայել լինի»[3]։

Հիշատակարանի վերջում գրիչը դիմում է գալիք սերնդին հետևյալ վերջաբանով.

«Թողի ըզտառս ցանկալի
Զկնի եկեղոցդ վայելս բարի։
Ով օգտեսցի յիշել պարտի
Զտառապեալս այլի հոգի»[4]։

Ընդօրինակած ձեռագրերի նկատմամբ գրիչների ցուցաբերած նախանձախնդրությունը և ջանակուռ հոգածությունը պատկերացնելու տեսակետից ուշագրավ է Անկյուրիայի հայկական ժողովածուի երբեմնի սեփականությունը հանդիսացող № 35 ձեռագրի գրիչ Հովհաննեսի հետևյալ կտակ-քառյակը.

«Սևանէրկեալ ի սպիտակին թո՛ղ մնասցէ այդ դրօշուած,
Իսկ առ վաղիւ մատենագրիդ քաւ թէ բնաւ յոյս մնաց։
Ես չգիտեմ, ո՞վ ընթերցցի զգրենոյն մնացուած,
Ես մեռանիմ, այս անշուշտ է, յաւէտ մնայ իմ գրուած»[5]։

---

1 ՀՊՄ ձեռ. № 1418, թ. 127բ—128 ա։
2 Նույն ձեռագրում, թ. 128 ա։
3 Նույն ձեռագրում, թ. 128 ա։
4 Նույն ձեռագրում, թ. 128 ա։
5 Բ. վ. Կյուլեսերյանի Անկյուրիայի ձեռ. ցուցակ, էջ 198։

Շատ ժամանակներ են անցել ձեռագրերը գրելու ժամանակից։ Տպագրական տեխնիկան փոխարինելու եկավ գրիչներին և աստիճանաբար դուրս մղեց նրանց գրական ասպարեզից։ Սակայն եկող սերունդները մոռացության չտվեցին գրիչների վաստակը, այլ աշխատեցին ուշադիր ուսումնասիրել նրանց թողած ձեռագրերը՝ մշակույթի այդ մեծարժեք գանձերը, արժեքավորեցին նրանք և գիտական լայն շրջանառության մեջ դրին։ Եվ ամեն անգամ, մագաղաթի և խունացած թղթի ձեռագրերը թերթելիս, մենք խորունկ երախտագիտական զգացմունքով ենք հիշում մեր բազմերախտ և մեղվաջան գրիչներին, որոնք սրի և հրի փոթորիկների մեջ, ձեթի ճրագի աղոտ լույսի տակ հրաշակերտել են իրենց մարգարտաշար ձեռագրերը և թողել գալիք սերունդներին, որպես «յիշատակ անջնջելի»։

Մենք երախտագիտական խորին ակնածանքով ենք հիշում մեր վաստակավոր գրիչներին։ Եվ մեր ժամանակակիցների երախտագիտական պարտքի գիտակցության լավագույն ապացույցը՝ մեր սիրելի մայրաքաղաքում, Սովետական Հայաստանի կառավարության հոգատար ջանքերով կառուցված Մատենադարանի հոյակապ պալատն է, որն արժանավոր կոթող է հայ գրի և գրականության հանճարեղ հիմնադիր Մաշտոցի անմահ հիշատակին, որի ծննդյան 1600-ամյակը լրանում է հաջորդ տարի։ Մատենադարանի նորակառույց այս պալատը միաժամանակ հուշարձան է հայ մատենագրության ասպարեզում վաստակ ունեցող մատենագիրների, այդ թվում նաև մեր բազմերախտ գրիչների հիշատակին, որոնք, հանգուցյալ Վարպետի սիրազեղ խոսքերով ասած՝

«Մեր հոյակապ հին վանքերի մութ խուցերում, մենության մեջ,
Պատմիչները մեր վշտահար, մեղմ կանթեղի լուսով անշեջ,
Մի նշխարով, մի կում ջրով և ճգնությամբ, գիշերն անքուն
Պատմությունը մեր գրեցին մագաղաթի վրա դժգույն»։

---



## ՁԵՌԱԳՐԵՐԻ ԳԻՏԱԿԱՆ ՆԿԱՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ովորաբար ընդունված է, որ ձեռագրերի ուսումնասիրությամբ զբաղվող յուրաքանչյուր մասնագետ տա իր օգտագործած ձեռագրի նկարագրությունը, կամ, ինչպես ընդունված է ասել, լրացնել ձեռագրի սիգնատուրան։

Ձեռագրի սիգնատուրան լրացնելու երկու կարգ գոյություն ունի. լրացվում է այն համառոտ կամ ընդարձակ. եթե ուսումնասիրության մեջ ձեռագիրն օգտագործվում է միջանկյալ ձևով, սիգնատուրան լրացվում է համառոտված, իսկ եթե ձեռագրից տեքստ է հրատարակվում կամ ձեռագրից վերցված նյութը տվյալ ուսումնասիրության հիմքն է կազմում, այդ դեպքում սիգնատուրան լրացվում է ընդարձակ։

Ձեռագրի ընդարձակ նկարագրության ժամանակ ձեռագրից օգտվողը պարտավոր է պատասխանել հետևյալ հարցերին.

**Ձեռագրի սեփականատերը և համարը.**—Ուսումնասիրողի առաջին պարտականությունն է տալ ուսումնասիրվող ձեռագրի ճիշտ հասցեն, այսինքն՝ նշել, թե ո՛ր գրադարանի, մատենադարանի կամ մասնավոր անձնավորության սեփականությունն է հանդիսանում տվյալ ձեռագիրը։ Հիմնարկության անունը պետք է տալ լրիվ. օրինակ՝ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետական Մատենադարան, Վենետիկի Մխիթարյանների մատենադարան, Բրիտանական թանգարանի Հայկական ֆոնդ, Փարիզի Ազգային գրադարանի Հայկական ձեռագրական ժողովածու, Երուսաղեմի հայոց Պատրիարքարանի մատենադարանի ձեռագրատուն և այլն։ Այնուհետև պետք է նշել ձեռագրի համարը։ Սովորաբար

կլոր փակագծի մեջ նշվում է ձեռագրի նախկին համարը, իհարկե եթե այլ համար նախկինում նա ունեցել է։ Այդ արվում է այն նպատակով, որ հեշտացնի հետագա ուսումնասիրողի գործը, որովհետև կարող է պատահել, որ այդ նույն ձեռագիրը հին համարի տակ օգտագործվել է և հայտնի է գիտության մեջ։

**Վերնագիրը.**—Գրվում է ձեռագրում եղած տվյալ տեքստի վերնագիրը հարազատությամբ։ Եթե ձեռագրի մեջ մտնում են մի քանի նյութեր, այդ դեպքում ձեռագիրը համարվում է ժողովածու և գրվում է ընդհանուր վերնագիրը։ Ցանկալի է, որ վերնագրի հետ միասին տրվի նաև մի քանի տող տվյալ տեքստի սկզբից և վերջից. այդ մեծ չափով օգնում է որոշելու տեքստի խմբագրությունը։

**Թերթերը.**—Ձեռագրերը սովորաբար համարակալված են լինում ո՛չ թե էջերով, այլ թերթերով։ Նկարագրության մեջ նախ պետք է տալ թերթերի ընդհանուր թիվը, իսկ եթե որևէ կապակցությամբ անհրաժեշտ է նաև հիշել այս կամ այն էջը, այն դեպքում նշվում է տվյալ թերթի երեսը. սովորաբար առաջին երեսը նշվում է լատինական „a“ տառով, իսկ հաջորդ, շուռ տված էջը „B“ տառով։ Որոշ հայագետներ լատինական տառերը փոխարինում են հայկական «ա» և «բ» տառերով։

**Պրակները.**—Հնում ձեռագրերը համարակալվել են ո՛չ թե էջերով, այլ պրակներով. նախապես գրելու ժամանակ նշանակել են պրակների համարները, հետո կազմելու ժամանակ միացրել։ Պրակների ստուգումը օգնում է պարզելու տվյալ ձեռագրի ամբողջականությունը, առանձին էջեր կամ մասեր ձեռագրից չե՞ն պակասում արդյոք։

**Մեծությունը.**—Նշվում են ձեռագրի լայնությունը, երկարությունը և հաստությունը սանտիմետրերով։ Եթե չափի մեջ կան նաև միլիմետրեր, ապա այդ նշվում է տասնորդական կոտորակներով։

**Նյութը.**—Հայկական ձեռագրերի նյութը, հիմնականում, թուղթն է և մագաղաթը. պապիրուսի գործածությունը, ինչպես ասել ենք, մեզ մոտ ընդունված չի եղել։ Ցանկալի է նշել նաև օգտագործված նյութի գույնը և որակը։

**Կազմը.**—Նշվում է կազմի ինչ նյութից լինելը, ենթադրենք՝ դրոշմազարդված կաշեպատ տախտակ, խավաքարտ, հասարակ հաստ թուղթ և այլն։ Հաճախ կազմին փակցված է լինում գեղեցիկ դաճվածքով կտոր, այս մասին ևս պետք է նշել, որովհետև



նրանք արհեստի և արդյունագործության պատմության համար մեծ արժեք ունեն։

**Պահպանակները.**—Պահպանակ կոչվում են այն թերթիկները, որոնք դրվում են կազմի ներսից՝ ձեռագրի թերթերը պաշտպանելու համար։ Հրատարակչության մեջ պահպանակները կոչվում են ֆորզաց։ Ձեռագրերի մեծ մասն ունենում են պահպանակներ։ Միջին դարերում նյութի թանկության պատճառով, հին, քայքայված ձեռագրի թերթերը գործ են ածում նոր ձեռագրի համար որպես պահպանակ։ Այդ պահպանակները մեզ համար արժեքավոր են, որովհետև նրանք հանդիսանում են մեզ չհասած ձեռագրերի պատառիկները։ Ցանկալի է պարզել պահպանակի տեքստի պարունակած նյութը և նշել այդ մասին։

**Վիճակը.**—Այս հարցի տակ նշվում է, թե ինչ վիճակում է գտնվում ձեռագիրը—բավարա՞ր է, վնասվա՞ծ է, քայքայվա՞ծ է, տառերը հեշտությա՞մբ են կարդացվում, թե դժվարությամբ և այլն։ Եթե ձեռագիրը քայքայված վիճակում է, ապա պետք է նշել վնասվածքի չափը։

**Գրությունը.**—Խոսքը վերաբերում է ոչ թե գրին, այլ սյունակներին։ Կարճ նշվում է, թե ձեռագիրը գրված է միասյուն, երկսյուն, եռասյուն։ Երեք կամ ավելի սյունակներ մեր ձեռագրերում քիչ են հանդիպում։

**Դատարկ թղթերը.**—Հաճախ է պատահում, որ ձեռագրերի առանձին թերթեր կամ էջեր մնում են չգրված. այդ պատահում է այն ժամանակ, երբ պրակների ավելացրած թերթերը չեն ուզում կտրել և կամ դիտավորյալ թերթեր են թողնում հետագայում ավելացվող հիշատակությունների համար։ Սիգնատուրայում պետք է գրել ինչպես թերթերի, այնպես և էջերի համարները։

**Տողերը.**—Քանի տող է գտնվում ձեռագրի մեկ էջում։ Նրանք սովորաբար հավասար են լինում, որովհետև էջերը տողաշարով են տողատված լինում։ Իսկ եթե էջերում նկատվում են տողերի տարբերություններ, ապա նշվում է նրանց միջին թիվը։

**Գծումներ.**—Գծումները ձեռագրի էջերի վրա սովորաբար լինում են ճնշումով, որը և պետք է նշել։

**Բառանջատում.**—Հայկական հին գրությունը, ինչպես ասել ենք, բառանջատում չունի. այս սյունակի նպատակն է կողմնորոշել ուսումնասիրողներին, թե ինչպիսի՞ տեքստի հետ նրանք գործ ունեն։

**Գիրը.**—Ձեռագիրը ինչ գրով է գրված՝ մեսրոպյան երկա-

թագիր է, ուղղագիծ երկաթագիր է, բոլորգիր է, շղագիր է, նոտր է։ Եթե տվյալ ձեռագիրն անցման շրջանին պատկանող գրություն ունի, ապա այդ մասին նույնպես նշվում է։

**Զարդագրությունը.**—Այստեղ անհրաժեշտ է տալ որոշ ծանոթություն ձեռագրի մանրանկարչական արժեքի մասին, օրինակ, ի՞նչ գույնի թանաքով են գրված վերնագրերը և ինչպիսի զարդագրերով՝ թռչնագիր, ծաղկագիր, կենդանագիր և այլն, կա՞ն արդյոք խորաններ և կիսախորաններ և ի՞նչ մանրանկարչական արժեք են ներկայացնում, մանրանկարչական ի՞նչ դպրոցի գործեր են և այլն։

**Գրիչը.**—Ո՞վ է գրել տվյալ ձեռագիրը։ Եթե ձեռագրի գրիչները մի քանի հոգի են, պետք է հիշել բոլորի անունները, իսկ եթե ձեռագիրն ինքնագիր է, այսինքն՝ գրված է իրեն՝ հեղինակի կողմից, ապա նկարագրության մեջ արձանագրվում է այդ մասին։

**Պատվիրատուն.**—Ձեռագրերը մեծ մասամբ գրված են լինում որևէ մեկի պատվերով, որը և պարտադրում է գրչին առաջին հերթին հիշել իր անունը։ Պատվիրատուները երբեմն իրենց ժամանակի աչքի ընկնող հասարակական գործիչներից են հանդիսանում, և նրանց անունների միջոցով կարելի է լինում պարզել տվյալ ձեռագրի ժամանակը, գրչության դպրոցը և այլն, եթե դրանք հայտնի չեն։

**Ծաղկողը.**—Խոսքը վերաբերում է մանրանկարչին. երբեմն ձեռագրի գրիչը հանդիսանում է նաև ծաղկողը, որն անհրաժեշտ է նշել։ Քիչ չի պատահում, որ ձեռագիրն ընդօրինակելուց անմիջապես հետո հնարավոր չի լինում մանրանկարել, և այդ կատարվում է տարիներ հետո։

**Կազմողը.**—Եթե հիշատակարանից հնարավոր է պարզել ձեռագրի կազմարարին և կազմելու ժամանակը, պետք է այդ մասին ևս նշել այս սյունակում։

**Նորոգողը.**—Ձեռագրի ուշ շրջանի նորոգողները հաճախ թողնում են իրենց հիշատակությունները, որոնցից երբեմն պարզվում է նորոգողի անունը, նորոգման ժամանակը և այլն, որը կարևոր է տվյալ ձեռագրի պատմության համար։

**Ժամանակը.**—Սիգնատուրայի հիմնական հարցերից մեկն է, թե երբ է գրվել ձեռագիրը։ Գրության թվականները սովորաբար հիշատակարաններում տրվում են հայկական թվականով, որը պետք է բերել նույնությամբ՝ կողքին կլոր փակագծում նշելով նաև համապատասխան ներկա թվականը։ Եթե ձեռագիրը գրված է մի



քանի տարվա ընթացքում, ապա այդ ևս նշվում է։ Բավականին թվով ձեռագրեր չունեն հիշատակարաններ, և հայտնի չէ նրանց գրության ժամանակը. այդպիսի ձեռագրերի համար պետք է գրել նրանց մոտավոր թվականը՝ դարերով։

**Տեղը.**—Որտե՞ղ է գրվել տվյալ ձեռագիրը։ Գրության վայրը նշելիս, եթե հանդիպում են այնպիսի վայրերի անուններ, որոնք քիչ ծանոթ են, ապա համապատասխան գրականության հիման վրա անհրաժեշտ է պարզել տվյալ վայրի աշխարհագրական ճիշտ տեղադրությունը և նշել։

**Հիշատակարաններ և հիշատակագրություններ.**—Նշվում է ձեռագրի այն էջի համարը, ուր գտնվում է գրչի հիշատակարանը կամ ուշ շրջանի ձեռագրում արված հիշատակագրությունը։ Ձեռագրի ավելի ընդարձակ նկարագրության դեպքում անհրաժեշտ է ամբողջությամբ կամ կրճատված ձևով բերել հիշատակարանը։

**Ծանոթություններ և այլ տեղեկություններ.**—Այստեղ գլխավորապես տրվում է տվյալ ձեռագրի համառոտ պատմությունը. պատահում է, որ ձեռագիրը մինչև տվյալ ձեռագրական ժողովածուն հասնելը, գտնվելիս է լինում զանազան մարդկանց մոտ, օգտագործված է լինում բանասիրության մեջ և այլն։ Ձեռագրի պատմության հետ մեր ծանոթությունը օգնում է ձեռագրի պարունակած նյութերի նկատմամբ ճիշտ կողմնորոշվելուն։ Եթե կան ձեռագրի հետ կապված արտակարգ այլ նշումներ, ապա այդ նույնպես արձանագրվում է։

Ձեռագրի նկարագրության ժամանակ ուսումնասիրողը քիչ թվով հարցերի է պատասխանում, նշում է միայն ձեռագրի թվահամարը, նրա բովանդակությունը, ընդօրինակող գրիչը, գրչության վայրը և թվականը։

---

## ՏՊԱԳԻՐ ԵՎ ԱՆՏԻՊ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՑՈՒՑԱԿՆԵՐ

Ա. Ն. Կերլայի հայաքաղաքային մայր եկեղեցւոյն հայերէն ձեռագրաց ցուցակը («Հանդէս ամսօրեայ» 1913 թ., էջ 690—697, 1914 թ., էջ 219—228, 667—674:

Աբրահամյան Ա. Գ.—(աշխատակցությամբ Էջմիածնի ճեմարանի ուսանողների)—Ցուցակ Մայր Աթոռ Ս. Էջմիածնի նոր ստացած ձեռագրերի («Էջմիածին» 1950—1952 թթ.):

Ակինյան Ն. վ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Նիկոսիայի ի Կիպրոս («Հանդէս ամսօրեայ» 1953 թ., էջ 206—241, 360—384, 1954 թ., էջ 521—544, 1955 թ., էջ 170—189, 342–367, 525—551, 1956 թ., էջ 15—26, 337—355, 1957 թ., էջ 26—55:

Նույնի—Ցուցակ հայերէն ձեռագրաց Լվովի և Ստանիսլաւովի («Հանդէս ամսօրեայ» 1948 թ., էջ 421—425, 596—607, 1948 թ., էջ 44—54, 1950 թ., էջ 67—79):

Նույնի—Ցուցակ հայերէն ձեռագրաց Հռոմի հայոց հյուրանոցի ի Ս. Վլաս («Հանդէս ամսօրեայ» 1957 թ., էջ 161—177):

Նույնի—Ցուցակ հայերէն ձեռագրաց Համալսարանի մատենադարանին ի Լւով («Հանդէս ամսօրեայ» 1936 թ., էջ 501—519, 1937 թ., էջ 111—150):

Աղայան Գ. Ք.—Հայ գրչագիրներ («Արձագանք» 1888 թ., էջ 112—116, 128—131, 141—143, 156—158, 204—206, 352—353, 367, 378—379, 411—412, 420—439:

Անառյան Հ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր Բայազետի, (արտատպություն «Հանդէս ամսօրեայ»-ից) Վիեննա, 1924 թ.:

Նույնի—Ցուցակ ձեռագրաց Թէհրանի, (արտատպություն «Հանդէս ամսօրեայ»-ից) Վիեննա, 1937 թ.:

Նույնի—Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարեան վարժարանի ի Կարին (արտատպություն «Հանդէս ամսօրեայ»-ից), Վիեննա, 1909 թ.:

Նույնի—Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, (արտատպություն «Հանդէս ամսօրեայ»-ից) Վիեննա, 1910 թ.:

Բասմաջյան Կ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Ազգային Մատենադարանին Պարիսի («Բանասէր» Ա. տարի, 1899 թ., էջ 78—82, 161—167, 253—259, 1900 թ., էջ 141—152):



Բաստամյանց Վ. վ.—Պարիզի Bibliothèque Nationale-ի հայ ձեռագրերը («Արարատ» 1878 թ. փետրվարի համարը):

Գալեմքերյան Գ. վ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց արքունի Մատենադարանին ի Միւնխեն, Վիեննա, 1892 թ.:

Գասապյան Ն.—Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Բուլղարիա («Հանդէս ամսօրեայ» 1937 թ., էջ 77—80, 1940 թ., էջ 239—250, 1941 թ., էջ 99—106, 220—228, 1942 թ., էջ 70—83, 239—256, 1943 թ., էջ 38—48, 1947 թ., էջ 57—58, 473—476, 631—636, 1950 թ., էջ 208—212:

Գուշակյան Թ. եպ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց ի Սեբաստիա («Հանդէս ամսօրեայ» 1922—1930 թվականների համարներում):

Թոփչյան Հ.—Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետ Դադյանի, ժողոված 1878—1898 թթ., մասն Ա., Վաղարշապատ, 1898 թ.:

Նույնի—մասն Բ., 1878—1898 թթ., Վաղարշապատ, 1900 թ.:

Լալայան Ե.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, պրակ առաջին, Թիֆլիս, 1915 թ.:

Նույնի—պրակ երկրորդ, անտիպ (պահվում է Հայկ. ՍՍՌ Պատմության թանգարանի Ազգագրական բաժնում, Ե. Լալայանի արխիվ, թղթ. № 134):

Կանայանց Ս.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Թիֆլիսի Ներսիսյան հոգևոր դպրանոցի, Թիֆլիս, 1893 թ.:

Կարինյանց Հ.—Մայր ցուցակ ձեռագիր մատենից գրադարանի սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, Թիֆլիս, 1863 թ.:

Կյուլեսերյան Բ. վ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց Կարմիր-Վանուցն Անկիւրիոյ, Անթիլիաս, 1957 թ.:

Կորիւն վ.—Ճամբուս վրայ տեսած ձեռագիրներ. Ամասիո Խաչալի գյուղի Քաղցրահայաց վանք, («Բանասէր» 1905 թ., էջ 274—280):

Նույնի-Կ. Պոլսի «Հրեշտակապետ» թաղի Մատենադարանին ձեռագիրները («Բանասէր» 1904 թ., էջ 84—92, 172—180):

Հովհաննես Անեցի—Ազգային ձեռագիրք ի Կերլա («Հանդէս ամսօրեայ» 1890 թ., էջ 19—21):

Նույնի—Կերլայի Մատենադարանէն մեկ-երկու ձեռագիր («Հանդէս ամսօրեայ» 1895 թ., էջ 300—305):

Հ. Յ. Թ.—Հայերէն ձեռագիրք ի Քրաքաւ («Հանդէս ամսօրեայ» 1887 թ., էջ 55—57):

Մառ Ն.—Ցուցակ համառօտ ձեռագրաց վանից Սեւանայ (յամանային ՌՅԼԹ թ. ի Հայաստան ճանապարհորդութենէ), Մոսկվա, 1892 թ.:

Նույնի—Հայկական ձեռագիրք Ճեմարանին արևելեան լեզուաց ի Պետերբուրգ («Հանդէս ամսօրեայ» 1892 թ., էջ 45—54, 80—85, 111—117):

Մաքսուդյանց Մ. վ.—Նկարագրութիւն և յիշատակարանք ձեռագրաց Ս. Թովմայի առաքելոյ վանուց և եկեղեցեացն Վերին Ագուլեաց, եկեղեցւոյն Տանակերտ գեղջ և անձանց մասնաւորաց («Արարատ» 1911 թ., № 1—12, 1914 թ. № 11, 12, 1915 թ., № 1, 4, 5:

Մելիքսեթ-Բեկ Լ.—Նիւթեր հայերէն ձեռագրաց ցուցակների բիբլիոգրաֆիայի համար վրացերեն և ռուսերեն տիտղոսաթերթով, Թբիլիսի, 1939 թ.:

Միսքճյան Հ. վ.—Ցուցակ հայերէն ձեռագրաց քահանայապետական Մատենադարանին Վատիկանու («Հանդէս ամսօրեայ» 1892 թ., էջ 211—214, 244—247, 273—275, 339—343):

